ԳԱԳԻԿ ՕԶԱՆԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԵԱՆ



**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ**



1913

ՏՊԱԳՐ. ՆԵՐՍՕ ԵՒ ՍՐԱՊԵԱՆ

ՄԱՐԶՈՒԱՆ

# ՀԵՂԻՆԱԿԻՆ ԽՕՍՔԸ

Հայոց գրականութեան պատմութիւնը տարածուած չէ, և՝ ժողովրդական խաւեր ու նախնական և նոյնիսկ երկրորդական կրթութիւն առնող շատ մը երիտասարդներ կան, որոնք իսպառ անտեղեակ են հայ գրականութեան անցեալին և իրենց մայրենի լեզուի պատմութեան նկատմամբ։ Շատ մը դպրոցներու մէջ տակաւին գրականութեան պատմութեան դասն ալ չկայ, մինչդեռ պէտք էր և վայել էր որ Հայոց գրականութեան պատմութիւնը կարեւոր ճիւղ մը նկատուէր, ինչպէս և է՛ իրաւամբ, և հայ դպրոցներու մէջ խնամով ուսուցուէին հայ լեզուն ու հայ գրականութիւնն՝ իրենց անցեալով ու ներկայով։ Ասիկա դէպ ի մեր անցեալը, դէպ ի մեր նախնեաց գործերը անտարբերութիւն մ'է, որ առնուազն դատապարտելի է։ Հայ լեզուն ու հայ մտքին արտադրութիւնները որչափ կարելի է ուսումնասիրութեան առարկայ դարձնելով է որ մենք կրնանք տեսնել ու ըմբռնել այն մեծ գանձը, որ մթերուած է մեր մատենագրական գործերուն մէջ, և հետզհետէ աւելի ևս սիրել պատմութիւնը այն հերոս ժողովուրդին, որ վերջապէս իր կեանքը պահպանելու յաջողելով հանդերձ, իր հետ գուրգուրանքով պահեր է նաեւ անցեալի հին դարերէն իրեն աւանդ ձգուած գեղեցիկ լեզուն ու հին մատենագիրներու սքանչելի երկերը։

Ներկայ գործին պատրաստութեան ձեռնարկելու ատեն՝ երկու տեսակէտներէ առաջնորդուեցանք։ Նախ՝ մասնագիտական մանրամանութիւններէ խուսափելով ամփոփ ու ամբողջական ուրուագիծ մը յօրինել՝ հայոց լեզուին մասին մինչեւ հիմա եղած գիտական հետազօտութեանց արդիւնքին ու հայոց հին ու նոր բանաւոր բանահիւսութեան և գրականութեան նկատմամբ, և երկրորդ՝ դիւրամատչելի առաջնորդ մը տալ հայ ուսուցչին ու աշակերտին ձեռքը, ծանօթանալու համար հայագիտական այնպիսի պարզ խնդիրներու, որոնք մինչեւ հիմա գժբաղդաբար տարածուած ու ազգային կրթութեան կարեւոր մէկ բաժինը դարձած չեն։ Ներկայիս մէջ հայագիտութիւնը շատ տարածուած է եւրոպացի գիտնականներու շրջանակին մէջ։ Անոնք եռանդով, ոգեւորութեամբ ու միեւնոյն ատեն սքանչանքով կը հետեւին հայ լեզուին ու հայկական դպրութեանց պատմութեան, նախնեաց գործերու հրաշալի հատորներուն ու հայ մտքին ստեղծագործ կարողութիւններու արդիւնաւորութեան։ Եւ հայոց մէջ ալ ունինք պատկառելի դէմքեր, որոնք միեւնոյն ճիւղին նուիրած են ինքզինքնին։ Կ'արժէ սիրցնել հայ լեզուն, հին ու նոր հայ մատենագրութիւնը և գրականութիւնը, հայ բանահիւսութիւնը, Հայ Մի՛տքը մէկ խօսքով։

Բ

Այս ճիւղերուն տեղեակ եղողներ դիւրաւ կրնան ըմբռնել թէ որչափ դժուար է գործը անոնց, որ կ'առաջադրեն յօրինել հայ լեզուին ու բանահիւսութեան պատմութիւնը, և միեւնոյն ատեն անհատական զոհողութեամբ ալ հրատարակել զայն։ Իրաւ է թէ ասկէ առաջ հրատարակուած նման գործեր կրնան աստիճան մը դիւրութիւններ տալ, բայց ընդհանուր առմամբ տաժանելի աշխատութիւն մ'է ամեն պարագայի մէջ։ Կարդալ այս նիւթին շուրջ ստեղծուած հայ և օտար ահագին գրականութիւնը, և ուսումնասիրել անոր գոնէ կարեւոր մասը՝ դիւրին աշխատութիւն մը չէ ժամանակի և հնարաւորութիւններու տեսակէտով։ Հայ լեզուի ու գրականութեան ճիւղին մէջ մեր տասնամեայ դասաւանդութիւնը մեծապէս օժանդակեց մեզ, և հայ կամ օտար բաւական կարեւոր աղբիւրներ ունեցանք, թէեւ պէտք է խոստովանիլ որ, գաւառական միջավայրի մը մէջ, հայագիտական ճոխ մատենադարան մը մեր տրամադրութեան տակ ունենալու դիւրութիւններէն զուրկ էինք անշուշտ։ Հայ լեզուի պատմութիւնը մանաւանդ հում նիւթ է բոլորովին մեր մէջ և դեռ նոր ուսումնասիրութեան առարկայ դարձած։ Երկար տարիներ անձամբ դասախօսելով կը սիրենք յուսալ թէ ըստ բաւականին ուսումնասիրած ենք այսպիսի գործի մը մէջ մտցուելիք ուղղութիւնը և աշակերտներու մէջ հետաքրքրութիւն արթնցնելու եղանակը։ Այսու հանդերձ մենք երբէք չբաւականացանք մեզմով։ Շատ անգամներ գործիս գլխաւոր մասերուն ձեռագիրն ու ընդհանուր ծրագիրը լեզուական և մատենագրական խնդիրներէ հասկցող հմուտ անձնաւորութեանց դիտողութեան ենթարկելէ զատ, վերջին անգամ անոր լիակատար ծրագիրը ներկայացուցինք ամենայայտնի ներհուն բանասէր-մատենագրագէտ Դուրեան Սրբազանի և Սանասարեան վարժարանի հայ լեզուի և գրականութեան նախկին ուսուցիչ ու յայտնի հայագէտ Բրոֆ. Աստուածատուր Խաչատուրեանի, որոնք ազնիւ յօժարութեամբ մը՝ իրենց դիտողութիւնները, քննադատութիւններն ու թելադրանքներն ըրին մեզ և հնարաւորութիւն տուին կարելի եղածին չափ նպատակայարմար դարձնել գործը։ Այս մասին մեզ իր օժանդակութիւնը չզլացաւ նաեւ Անաթոլիա Գոլէճի հայ լեզուի և գրականութեան ուսուցիչ Բրոֆ. Գ. Յ. Կիւլեան։

Գիրքը հրապարակ գալու ժամանակ այս պարագաները յիշատակելէ զատ, անհրաժեշտ կը նկատենք նաեւ կարգ մը բացատրութիւններ՝ գործը ճանչցնելու համար, և թելադրութիւններ՝ հայ լեզուի ու բանահիւսութեան ուսումը դիւրացնելու նպատակով։

1. Մենք նախընտրեցինք ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԵԱՆ անունը, որովհետեւ մեր ծրագիրը կ'ընդգրկէր հայ մտքին բանաւոր արտադրութիւններն ալ։ Բանահիւսութիւն բառն իր երկու մեծ ճիւղերով,— Բանաւոր և Գրաւոր,— աւելի լայնասահման թուեցաւ մեզ։ Եւրոպական լեզուներու Literature բառը ճիշդ

է որ հայերէն Գրականութիւն բառին համապատասխան է. բայց մեր նպատակը եղաւ աւելի Գրական Պատմութիւն մը տալ քան Գրականութեան Պատմութիւն մը։ Իսկ հին հայոց բանաւոր արտադրութիւնները բանահիւսութիւն բառին մէջ միայն զետեղել կարծեցինք։

2. Գործիս սկիզբը դրած ենք արդէն այն գլխաւոր աղբիւրները, որոնցմէ օգտուած ենք։ Ասոնցմէ դուրս կը մնան անշուշտ այն բոլոր գործերը, որոնք այլեւայլ ժամանակներու մէջ այլեւայլ տեղեր կարդացած և ուսումնասիրած ենք։ Թէեւ սովորութիւն է բանասիրական գործերու մէջ ամեն բանի աղբիւրը ճիշդ իր տեղին նշանակել, սակայն մենք չհետեւեցանք այդ եղանակին՝ գործը չխճողելու և ընթերցողին ուշադրութիւնը չընդհատելու համար. զգուշացանք մանաւանդ՝ խորհելով որ դեռատի ուսանողներ շատ պիտի խրտչէին ատկէ։ Առանձինն աղբիւրներու ցանկը դնելով արդէն իսկ կրնայինք ընթերցողներուն ճանչցնել միեւնոյն նիւթին վրայ խօսող ուրիշ հեղինակներ։ Հոս կ'ուզէինք յայտնել միեւնոյն ատեն որ, երբեմն կարեւոր պարագաներու մէջ, փոխանակ ձեւակերպութիւնը պահպանած ըլլալու համար, տարբեր բառերով և ձեւերով տալու ուրիշ հեղինակներու այս կամ այն նախադասութիւնը կամ կարճ պարբերութիւնը, ուղղակի աղբիւրի հեղինակին բառերովը տուած ենք՝ ի հարկէ հարկ եղած բարեփոխութիւնը, յաւելումն ու կրճատումն ընելով մեր տեսակէտով անշուշտ։

3. Թէեւ կ'ընդունինք թէ Հայ Գրականութեան պատմութեան հեղինակ մը աւելի աղէկ է որ տեսած ըլլայ բոլոր մեծ ու փոքր նախնի մատենագիրներու գործերը և անձամբ հետազօտած, սակայն որովհետեւ զրկուած էինք այդ դիւրութենէն, հարկադրուեցանք անոնց գլխաւորներով բաւականանալ և ոմանք՝ իրենց գրախօսականներով միայն ճանչնալ։

4. Հայ լեզուի բաժնին մէջ կարելի էր գրաբարի և աշխարհաբարի պատմութիւնները զատել, սակայն մենք տեղի խնայողութեան և գիրքին ծաւալը չստուարացնելու համար ստիպուեցանք միացնել։ Ասկէ զատ լեզուի պատմութիւնը կարելի էր շրջաններու բաժնել, մինչդեռ մենք դար առ դար դրինք, և անոր խառնեցինք այդ դարու քաղաքական անցքերը, պատմական նօթեր և զանազան ազդակները. այնպէս որ լեզուի պատմութեան ընթացքին մէջ խառնուած օժանդակ նիւթերը կրնան նկատուիլ լեզուի և գրականութեան վրայ ընդհանուր տեսութիւն։ Ուսուցիչներ ազատ են ի հարկին լեզուի զարգացման պատմութեան այդ մասը մատենագրութեան պատմութեան հետ աւանդել դար առ դար։

5. Գործիս ծաւալը թոյլ չէր տար ամեն մանրամասնութիւն դնելու, ուստի ընթերցողներ, ուսուցիչներ կամ ուսանողներ ջանադիր ըլլալու են բուն աղբիւրներուն ալ դիմելու։ Հնարաւորութիւն չունէինք նաեւ իւրաքանչիւր մատենագիրէ կամ գրողէ կտորներ զետե-

ղելու և ա՛յս կերպով զայն քննադատական գնահատութեան ենթարկելու։ Այսու հանդերձ կրկին հետամուտ եղանք անոնց ամեն մէկուն արժէքները գոնէ ընդհանուր գիծերու մէջ ամփոփելու։

6. Գուցէ ակամայ զրկանքներ ըրած ըլլանք այս կամ այն գրչի մարդոց նկատմամբ։ Մեր նպատակը երբէք չէ եղած անտեսել մեր գրականութեան մշակները։ Գործիս սահմանը, նպատակը և մեր միջոցները անձեռնտու էին բազմակողմանի կատարելութեամբ օժտուած հայ գրականութեան պատմութիւն մը տալու։ Կը խոստովանինք որ Արեւելահայ գրական պատմութիւնը թերի է և գուցէ անիրաւութիւններ ալ գործած ենք,—միշտ ակամայ։ Մեր միջոցները կը պակսէին սակայն։ Ռուսահայ գրականութեան պատմութիւնը գրողները միշտ գեղարուեստական գրականութիւնը միայն ուսումնասիրած են. գրական պատմութեան առաջնորդներ չկան։ Այսու հանդերձ աշխատեցանք գլխաւոր դէմքերը ներկայացնել։ Արեւելահայ կամ Արեւմտահայ գրական պատմութեանց մէջ եթէ կան այնպիսի գրչի մարդիկ, որոնք կը զգան թէ իրենց զրկանք եղած է, թող ներողամիտ ըլլան և հաճին մեզ տեղեկացնել իրենց գործերը՝ ծանօթութիւններով, որպէսզի եթէ սխալներ կան՝ երկրորդ տպագրութեան առեն ուղղուին։

7. Ամենահին Մատենագրութիւն ու Քրիստոնէական Մատենագրութիւն գլուխները թէեւ զուտ հայ գրականութեան չեն պատկանիր սակայն մօտիկ առնչութիւն ունենալով դուրս ձգելը ուղիղ չէր ըլլար։

8. Ուսուցիչներ երբեք բաւականանալու չեն այս գիրքով, երբ կը դասախօսեն, այլ՝ դիմելու են ուրիշ աղբիւրներու ալ։ Մենք միշտ խուսափած ենք մանրամասնութիւններէ, որոնց իրենք ծանօթ ըլլալու են սակայն։ Ընդգրկելու են շատ գործնական մեթոտներ՝ այս դըժուարին նիւթը հետաքրքրական, սիրելի և մարսելի դարձնելու համար։ Պատմութեան հետ զուգընթաց երթալու և անոր օժանդակութիւնովը գործելու են։ Քարտէսի գործածութիւնն անհրաժեշտ է։ Թէ՛ հին մատենագիրներէն, և թէ նոր գրագէտներէն և թէ միջնադարեան բանաստեղծներու երգերէն ընթերցումներով նմոյշներ տալու է աշակերտներուն։

Կը մնայ մեր սրտագին շնորհակալութիւնն յայտնել այն բոլոր ազնիւ անձնաւորութեանց և բարեկամներու, որոնք իրենց բարոյական աջակցութիւնը նուիրեցին մեզ, հնարաւոր դարձնելով այս գործին հրատարակութիւնը, որչափ կարելի է շահեկան բովանդակութեամբ։ Յաւակնութիւն չունինք երբեք կատարեալ գործ մը յօրինած ըլլալու։ Մեր նպատակը հայ լեզուին ու գրականութեան դոյզն ծառայութիւն մը ընել եղած է լոկ։

**18 Փետրվար, 1918** **ԳԱԳԻԿ ՕԶԱՆԵԱՆ**

**ՄԱՐՁՈՒԱՆ**

**Ազգ. Ս. Սահակեան Իսասի վարժարան**

# ԱՂԲԻՒՐՆԵՐ


1. Ա. ՄԱՏԱԹԻԱ ԳԱՐԱԳԱՇԵԱՆ. — *Քննական Պատմութիւն Հայոց* (4 հատոր)։

2. ԱՏՐՈՒՇԱՆ (Հ. Ս. Երեմեան). — *Ինքնաքոյս Գրականութիւն* (Հայուն Տարեցոյցը, Սահակ Մեսրոպ), 1912, Կ. Պոլիս)։

3. ԱՐԱՄ ԱՆՏՈՆԵԱՆ. — *Գանձարան* (Բարձրագոյն). Կ. Պոլիս, 1912։

4. ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ. — *Չորսհարիւրամեակ հայ տպագրութեան* (Կոչնակ, 1912, Թիւ 2-5)։

5. ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ. — 1. *Մկրտիչ Պէշիկթաշլեանի կեանքն ու գործը*, 1907 Բարիզ. 2. *Նահապետ Քուչակի դիւանը*, 1902, Բարիզ. 3. *Զանազան յօդուածներ Անահիտի մէջ*։

6. Հ. ԱՐՍԷՆ ԱՅՏԸՆԵԱՆ. — *Քննական Քերականութիւն Աշխարհաբարի կամ արդի հայերէն լեզուի*, 1866, Վիէննա։

7. Հ. ԱՐՍԷՆ ՂԱԶԻԿԵԱՆ. — *Հայկական նոր Մատենագիտութիւն եւ Հանրագիտարան հայ կեանքի*, Ա. պրակ, Ա.— Թ., 1909, Վենետիկ։

8. Հ. ԳԱԲՐԻԷԼ ՄԷՆԷՎԻՇԵԱՆ. — *Արդի լեզուաբանութիւնը*, Վիէննա, 1894։

9. Հ. ԳԱՐԵԳԻՆ ԶԱՐՊՀԱՆԷԼԵԱՆ. — 1. *Հայկական հին դպրութեան Պատմութիւն*, 1897, Վենետիկ. 2. *Պատմութիւն Հայերէն Դպրութեան* (Նոր Մատենագրութիւն), 1905, Վենետիկ, 3. *Պատմութիւն Հայկական տպագրութեան*, 1895, Վենետիկ, 4. *Ուսումնասիրութիւնք Հայ լեզուի եւ Մատենագրութեան յարեւմուտս*, 1895, Վենետիկ։

10. ԳԱՐԵԳԻՆ ԶԻՒԱՆԻ ԼԵՒՈՆԵԱՆՑ. — *Հայոց պարբերական մամուլը*, 1895, Ալեքսանդրապոլ։

11. ԲՐՕՖ. ԳԷՈՐԳ Յ. ԿԻՒԼԵԱՆ. — *Լեզուաբանական-բանասիրական յօդուածներ* (Հայկունի, 1911) և *բանախօսութեանց ձեռագրեր*։

12. ԳԷՈՐԳ ՄԵՍՐՈՊ.— 1. Քրիստոնէութեան մուտքը ի Հայս Գրիգոր Լուսաւորչէն առաջ, 1910. Կ. Պոլիս, 2. Ուրարտու եւ Հայերը, 1911, Կ. Պոլիս: 3. Հայ լեզուի կազմութիւնը եւ պատմութիւնը (Հայրենի Տարեցոյց, Ս. Մեսրոպ, 1912) և 4. զանազան յօդուածներ՝ թերթերու մէջ:

13. Հ. ԳՐԻԳՈՐԻՍ ԳԱԼԷՄՔԷՐԵԱՆ.— Պատմութիւն Հայ Լրագրութեան, Հատոր Ա. 1893, Վիէննա:

14. ԴԱՒԻԹ ԽԱՉԿՈՆՑ.— Պատկերազարդ Հայոց Պատմութիւն, Միջին ընթացք (2 հատոր), Կ. Պոլիս, 1910:

15. ԵՂԻՇԷ ԵՊ. ԴՈՒՐԵԱՆ.— 1. Պատմութիւն Հայ Մատենագրութեան, 1885, Կ. Պոլիս, 2. Պատմութիւն Հայ Մատենագրութեան, (ընդարձակ, անտիպ):

16. ԻՍԱՀԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.— Հայոց գիրը, Թիֆլիզ, 1892:

17. ԼԷՕ.— 1. Ս. Մեսրոպ, 1904, Թիֆլիզ. 2. Հայկական Տպագրութիւն. Առաջին հատոր, Թիֆլիզ, 1904 3. Հայ գրքի տօնը, Թիֆլիզ, 1912:

18. ԼԵՒՈՆ ՄԱՆՈՒԷԼԵԱՆ.— Ռուսահայ Գրականութեան Պատմութիւն, Ա. հատոր (1909), Բ. (1910), Գ. (1911). Դ. (1911):

19. ԽՈՐԷՆ Ծ. Վ. ՍՏԵՓԱՆԷ.— Աշխարհաբար Մովսէս Խորենացիի պատմութիւն, 1889, Ս. Պետերբուրգ:

20. ԿԱՐԱՊԵՏ ԲԱՍՄԱՃԵԱՆ.— 1. Իսկական Պատմութիւն Հայոց, 1912, Ա. պրակ, 2. Բազմաթիւ բանասիրական յօդուածներ՝ Բանասէրի և այլեւայլ պարբերականներու մէջ:

21. ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ.— Մեր նախնի մատենագիրներու գործերուն գլխաւորները և անոնց շուրջ կազմուած հայ կամ օտար գրականութեան մեզի մատչելի գործերը:

22. ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ.— 1. Հայոց ծագումը եւ նախապատմական շրջանը (Վտակ, ժողովածու, 1901, Թիֆլիս). 2. Պատմութիւն Հայոց Նոր Գրականութեան, Ա. պրակ. Վաղարշապատ, 1906, Բ. պրակ, Նոր-Նախիջեւան, 1910. 3. Բազմաթիւ բանասիրական-լեզուաբա-

նական յօդուածներ՝ այլուայլ ժողովածուններու և պարբերականներու մէջ։

23. ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ.— 1. Կ. Պոլսոյ հայերը եւ իրենց պատրիարքները (Ընդարձակ Օրացոյց Ազգ. Հիւանդանոցի, Բ. տարի, 1901, Կ. Պոլիս), 2. Աշխարհաբարը ԺԹ. դարէն առաջ (Թէոդիկի Ամենուն Տարեցոյցը, Բ. տարի, 1908, Կ. Պոլիս) և 3. Հայ Գրագիտութիւն (Թանգարան բարձրագոյն, 1911, Կ. Պոլիս)։

24. Հ. Ղ. ԱԼԻՇԱՆ.— 1. Հայապատում (4 հատոր), 2. Հին Հաւատք Հայոց, Վենետիկ, և 3. Հայ-Վենետ, Վենետիկ։

25. Հ. ՂԵՒՈՆԴ ՅՈՎՆԱՆԵԱՆ.— Հետազօտութիւնք Նախնեաց Ոտանաւորների վրայ, Մասն Առաջին, տետր Ա. և Բ., Վիեննա, 1897։

26. Հ. ՂՈՒԿԱՍ ԻՆՃԻՃԵԱՆ.— Հնախօսութիւն Հայաստանեայց (3 հատոր), Վենետիկ։

27. Հ. Մ. ՊՕՏՈՒՐԵԱՆ.— Կոստանդին Երզնկացի, Վենետիկ, 1905։

28. Հ. ՄԻՔԱՅԷԼ ՉԱՄՉԵԱՆ.— Պատմութիւն Հայոց, (3 հատոր) Վենետիկ։

29. Հ. Ն. ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ.— Ուրուագիծ Հայ Մատենագրութեան (Բազմավէպ, թիւ 7-10, 1911)։

30. ՄԱՂԱՔԻԱ ԵՊ. ՕՐՄԱՆԵԱՆ.— Հայոց Եկեղեցին, 1911, Կ. Պոլիս։

31. ՄԵԼԻՔ Ս. ԴԱՒԻԹ.— Բաղդատական Քերականութիւն, Բարիզ, 1902։

32. ՄԻՀՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ.— Քննական Պատմութիւն ԺԹ. դարու Հայ դպրութեան, Բարիզ 1901։

33. ՑԱՐՈՑ.— Հայոց մամուլը Ռուսաստանում եւ Կովկասի մէջ, Թիֆլիզ, 1878։

34. Ց. Գ. ՄՐՄՐԵԱՆ.— 1. Պատմութիւն Հայ Գրականութեան, Մասն Ա. 1910, Կ. Պոլիս, 2. Թրքահայ Լրագրութիւնը, (Արեւել. Մամուլ, նոյեմբեր, 1912)։

35. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱԶԱՆՃԵԱՆ.— 1. Նոր Քերականութիւն արդի հայերէն լեզուի, Բարձր. ընթացք, 1910,

Կ. Պոլիս. 2. Զանազան լեզուաբանական յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ հայ պարբերականներու մէջ։

36. ՏՕԳԹ. ՆԱԶԱՐԷԹ ՏԱՂԱՒԱՐԵԱՆ, — Ծագումն Հայ տառից, Վիեննա, 1894։

37. Հ. ՊՕՂՈՍ ՅՈՎՆԱՆԵԱՆ. — Մարդկային լեզուն, Վիեննա։

38. ՌԷԹԷՈՍ ՊԷՐՊԷՐԵԱՆ. — Պատմութիւն հայ մատենագրութեան (ձեռագիր)։

39. Ռ. ԱՐԱՐԱՏԵԱՆ. — Լեզուաբանական-բանասիրական յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ. (Արարատ, թիւ 4-12, 1912)։

40. Հ. ՍԵՐՈՎԲԷ ՏԷՐՎԻՇԵԱՆ. — Հնդեւրոպական Նախալեզու, Կ. Պոլիս, 1887։

41. ՏՕՔԹ. Ս. ԳԱԲՐԻԷԼԵԱՆ. — 1. Արուեստ ատենախօսութեան, 1900, Պոստոն, 2. Բանասիրական յօդուածներ զանազան հայ պարբերականներու մէջ։

42. ՍՏ. ՄԱԼԽԱՍԵԱՆՑ. — Գրաբարի համաձայնութիւնը, Թիֆլիս, 1900։

43. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԲԱԼԱՍԱՆԵԱՆ. — Պատմութիւն Հայոց, 1903 Թիֆլիս։

44. ԲՐՈՖ. Վ. Ց. ՑԱԿՈԲԵԱՆ. — Լեզուաբանական-բանասիրական յօդուածներ՝ Նոր Այգի եւ ուրիշ հայ պարբերականներու մէջ։

45. ՎՐԹԱՆԷՍ ՓԱՓԱԶԵԱՆ. — 1. Պատմութիւն Հայոց Գրականութեան. Թիֆլիզ, 1910. 2. Հայ գրողներ Ա. եւ Բ. մաս Թիֆլիս. 1909-1910 (Այս գործին աշխատակցած են նաեւ Ա. Ահարոնեան, Ղ. Աղայեանց եւ Յ. Թումանեան)։

46. Woodberry. — Appreciation of literature. London, 1899.

47. Encyclopedia Britannica. New edition, 1911։

48. English Literature. — William J. Long.

49. A History of English literature. — Frederick A. Laing, London, New edition.

50. Հայ լեզուով հրատարակուած գիրքերու եւ պարբերականներու մէջ գիրքիս մէջ բովանդակուած նիւթերը շօշափող բազմաթիւ յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ, որոնց միասմի թուումն անկարելի է։


---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՀԱՅ ԼԵԶՈՒԻ
# ԵՒ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԵԱՆ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ
### (ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ)

**ԼԵԶՈՒ.**— *Լեզուն այն միջոցը կամ գործիքն է, որով մարդիկ իրենց խորհուրդները, գաղափարներն ու զգացումները կ'արտայայտեն իրարու և որով կը յարաբերին իրենց նմաններուն հետ։ Ուրեմն անիկա միջոց մ'է և ոչ թէ նպատակ։ Կենդանիներն ալ կ'արտայայտեն իրենց յոյզերը. իրենց ձայներով, ճիչերով ու շարժումներով կը բացատրեն իրենց տրամադրութիւնը. բայց անոնց արտայայտութիւնը կատարելապէս թերի է, և անբաղդատելի՝ մարդկային լեզուի կատարելութեան։ Բնութեան ամենամեծ շնորհն է լեզուն՝ մարդ էակին համար, «մարդկային էութեան գերագոյն յատկանիշը և անոր հոգիին առանձնայատուկ գործը»։ Լեզուին պաշտօնն ու դերն է յարաբերութեան մէջ դնել մարդիկը, ինչ որ մարդկային ընկերութեան առաջդիմութիւնը կը պայմանաւորէ, վասն-*

գի առանց յարաբերականութեան՝ առաջդիմութիւն չկայ։

Զանազան ազգեր, ցեղեր ու ժողովուրդներ ունին իրենց լեզուները։ Անոնք սակայն իրենց նախնական վիճակին մէջ այնպէս զարգացած չէին, ինչպէս ներկայիս մէջ կը ներկայանան. այլ՝ ժամանակի ընթացքին մէջ աստիճանաբար զարգացած և կատարելագործուած են։ Լեզուները իրենց կեանքին մէջ կրած են ահագին փոփոխութիւններ։ Բարեշրջութեան օրէնքը սաստկապէս ազդած է անոնց վրայ։ Մարդ էակին առաջին ճիչը, արտայայտիչ շարժողութիւնն ու կենդանական հնչիւնաւոր արտաբերումը՝ տեղի տուած են սակաւ միավանկ և պարզ բառերու, բնութենէն փոխ առնուած ձայներու, ապա քիչ մը աւելի բարդ կազմութիւն ունեցող բառերու, ոճերու և քերականական երանգաւորումներու։ Քանի՛ մարդկութիւնը քաղաքակրթուած է, լեզուներն ալ աստիճանաբար զարգացած և ճոխացած են։ Նորանոր գիւտեր, արհեստներ, գեղարուեստներ, տնտեսական, ընկերային ու քաղաքական պայմաններ՝ նորանոր տարրեր ներմուծած են լեզուներուն մէջ։ Բնական միջավայրը մեծապէս ազդած է լեզուներու կեանքին վրայ, և ո՛չ միայն ծնունդ տուած է զանազան գաւառաբարբառներու, այլև՝ ազգերու լեզուներուն տուած է աչքառու յատկանիշեր և ընդհանուր բնաւորութիւններ։ Ախորժալուր հելլենէրէնը, վճիտ լատիներէնը, հնչուն իտալերէնը, սառնատուն և զուարթագին ֆրանսերէնը, գոռ գերմաներէնը, մեծաշուռաչ ռուսերէնը, ուժգին և առնացի անգլիերէնն ու գեղեցիկ հայերէնը հարազատ արտայայտութիւններն են իրենց բնական միջավայրին։ Գաւառաբարբառներն ալ իրենց միջավայրերու դրոշմը կը կրեն խորապէս։ Լեռնային ու դաշտային գաւառներու բարբառները շատ կը տարբերին իրարմէ՝ ամեն ազգերու և լեզուներու մէջ։ Միջավայրերն են որ կուտան լեզուներուն՝ շեշտ, դաշնակութիւն, առոգանութիւն և եղանակ,— մէկ խօսքով լեզուին բաղկացուցիչ տարրերը, նուազայնութիւնը։

Այսպէս ահաւասիկ ժամանակի հոլովումով լեզունե-
րը հետզհետէ կը ճիւղաւորուին, գաւառաբարբառներ ծը-
նունդ կ'առնեն և լեզուական մեծամեծ փոփոխութիւն-
ներ տեղի կ'ունենան։ Կան լեզուներ, որոնք միմիայն կը
խօսուին անքաղաքակիրթ կամ կիսավայրենի ցեղերու մէջ։
Ասոնք կը կոչուին բանաւոր լեզուներ, որոնք աւելի շատ
ենթակայ և ընդունակ են փոփոխութեան։ Կան նաև լե-
զուներ, որոնք գիր և գրականութիւն ունենալով միան-
գամայն, գրաւոր լեզուներ են։ Այս վերջիններուն մէջ փո-
փոխութիւնը համեմատաբար դանդաղ կ'ըլլայ․ Քանի որ
մարդիկ, ազգեր ու ժողովուրդներ տնտեսապէս, ընկե-
րայնօրէն և քաղաքականապէս յարաբերական են միշտ,
անոնց փոխ-յարաբերութիւնները բնականօրէն առաջ պի-
տի բերէին փոխադարձ ազդեցութիւններ և խնամութիւն-
ներ՝ զորս հետամուտ է ճշդելու Լեզուաբանութիւնը։ Աշ-
խարհիս վրայ շատ մը լեզուներ կեանք ունեցած են, բայց
անոնցմէ ոմանք հարկ եղած կենսունակութիւնն ու յար-
մարութիւնը չունենալով՝ մահուան դատապարտուած են։
Այսպէսով է որ ահաւասիկ կան մեռեալ ու կենդանի լե-
զուներ, որոնց առաջինները մինչ գործածութենէ դադ-
րած են, երկրորդները կ'ապրին ներկայիս մէջ․ կը խօ-
սուին, կը գրուին և կը գործածուին։ Այս ընդհանուր
պայմաններու հետևանքով է որ լեզուներն ալ կը հին-
նան կամ կը վերածնուին։ Նոր ազգեր իրենց մայրենի
լեզուն պահպանելու և ծաղկեցնելու համար մեծ ջանքեր
ի գործ կը դնեն, վասնզի լեզուն ազգերու կեանքը երաշ-
խաւորող գլխաւորագոյն ազդակներէն մէկն է։

**ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ** (1)․— Մարդկային միտքը՝ բը-
ստեղծագործող յատկութիւններով օժտուած՝ ընդունակ է
ո՛չ միայն կեանք տալու, այլ և արտայայտելու գաղա-
փարներ, դատողութիւններ, խորհուրդներ ու յոյզեր։

(1) Բանահիւսութիւն բառին տեղ առհասարակ կը գործածուի Գրականութիւն (Literature) բառը, որ միևնոյն իմաստը ունի ամէն լեզուներու մէջ ալ։ Բայց մենք նախընտրեցինք այս բառը։

*Զինք շրջապատող բնական, տնտեսական, քաղաքական ու ընկերային միջավայրը կուգայ հանգամանօրէն նորանոր ազդեցութիւններու ներքեւ դնել զինքը և զանազան ներշնչումներով նորանոր մտայնութիւններ ստեղծել իր մէջ։ Եւ որովհետեւ ընկերային է մարդ էակը, ուստի մարդկային մտայնութիւնը բնականօրէն պէտք է ընկերականանայ, հասարակականանայ։ Այս անխուսափելին կը կատարուի Բանահիւսութեան միջոցաւ։ Ասիկա ուրիշ բան չէ, բայց եթէ մարդկային մտքին արտադրականութեան հասարակականացումը՝ բանաւոր լեզուի կամ գրականութեան միջոցաւ։ Բանահիւսութիւնը երկու տեսակներ ունի, բանաւոր կամ ժողովրդական և գրաւոր։ Այս վերջինը ուղղակի Գրականութիւն կը կոչուի։ Բանաւոր բանահիւսութիւնը կը կատարուի բերանացի և բերնէ բերան կ'աւանդուի յաջորդող սերունդներու, իսկ գրաւոր բանահիւսութիւնը գրի և գրականութեան միջոցաւ կ'արտայայտուի, կը տարածուի ու կը պահպանուի։*

*Բանահիւսական ձեւերը, թէ՛ բանաւոր և թէ՛ գրաւոր բանահիւսութիւններուն մէջ, երկուք են, արձակ և ոտանաւոր։*

**ԲԱՆԱՒՈՐ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ.**— *Բանաւոր կամ ժողովրդական Բանահիւսութիւնը ժողովուրդի մը մտայնութեան արտադրութիւնն է՝ բերնուց, որ յաջորդող սերունդներու ժառանգութիւնը կը դառնայ՝ մասնաւոր երգիչներու, ժողովրդային տաղասացներու, աշուղներու և նոյն իսկ ժողովուրդի՛ն միջոցաւ։ Բանաւոր բանահիւսութեան հեղինակը նոյն ինքն ժողովուրդը և անոր ընդհանուր կեանքն է։ Ժողովրդային բանահիւսութեան ծագումը շատ հին է և մշուշներու մէջ ծածկուած։ Ամեն ազգեր ալ ունին իրենց անգիր բանահիւսութիւնը։ Իրական կեա՛նքն է ստեղծիչը բանաւոր բանահիւսութեան։ Բնական մեծ և նշանակելի երեւոյթներ, սոսկալի աղէտներ, մեծ դէպքեր, պատերազմներ, հերոսներ և այն ներշնչողները կը դառնան ժողովրդական քնարին և ժողովրդա-*

յին ստեղծագործութեան․ որովհետեւ ժողովրդական բանահիւսութեան մէջ անոր արտայայտիչները նախ ընդհանուր կարկառուն գիծեր միայն ուշադրութեան կրնային առնել։

Հայկական Բանաւոր Բանահիւսութիւնը շատ հին ժամանակներէ սկսած է, ինչպէս ցոյց կուտան՝ մեզի հասած նշխարները։ Հայկական պատմութեան կարգ մը աւանդները, հին դիւցազներգութիւնները, վիպասանութիւնները, զրոյցները, տաղերն ու երգերը Հայ անգիր բանահիւսութեան թանկագին բեկորներն են։ Հայ․ ժողովրդական բանահիւսութեան մէջ ժողովուրդի զգացումներուն արտայայտիչները երգիչներ՛ն եղած են։ Գողթան երգիչներն ու անոնց հեղինակած երգերը հայկական ոգիին արտայայտութիւններն են։ Միջին դարու աշուղները, տաղասացները և ժամանակակից երգիչներն ու ժողովրդային բանահիւսները գողթան երգիչներու գործին շարունակողներն են։ Հայ ժողովուրդը՝ իր երգերով, զրոյցներով, հեքեաթներով, առակներով, առածներով, հանելուկներով, օրհնութիւններով ու անէծքներով Հայ բանաւոր բանահիւսութեան ուսումնասիրութեան համար կուտայ շատ հարուստ և ընդարձակ կալուած։ Այս տեսակէտով կան համբաւաւոր գաւառներ, ինչպէս հին դարերու մէջ՝ Գողթնը, և նորերու մէջ Ակնը, Տարօնը, Վասպուրականը և այլն,

**ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ**․— Գրաւոր բանահիւսութիւնը կամ Գրականութիւնը երկիրներու, ազգերու, ժողովուրդներու և շրջաններու իմացական կարողութիւններուն, գեղարուեստական ըմբռնումներուն, գիտական ընդհանուր գործունէութեան, խորհուրդներուն, գաղափարներուն ու յոյզերուն գրաւոր արտայայտութիւնն է։ Գրականութեան պաշտօնն է անհատներն ու ժողովուրդները իրարու հետ յարաբերութեան դնել գիրին միջոցաւ։ Մեծ է գրականութեան կարեւորութիւնն ու դերը՝ ազգերու կեանքին մէջ։ Ազգի մը քաղաքակրթութիւնը իրեն աստիճանաչափ ունի գրականութիւնը։ Անիկա այ-

որ քաղաքակիրթ ազգերուն կը ներկայանայ անհրաժեշ-
տօրէն կենսական հանգամանքով մը, որ կենսապարգեւ ե-
րակներու նման կուգայ կենդանութիւն և առուգութիւն
ներշնչելու ցեղերուն և ժողովուրդներուն ։ Այսօր բովան-
դակ քաղաքակիրթ աշխարհին մէջ՝ մամուլներ անդուլ,
անդադար կը ճռնչեն՝ գրականութեան անձայն բայց բար-
ձրաբարբառ մասունքները, — գիրքերն ու թերթերը, —
հասցնելու համար աշխարհէ աշխարհ և հեռաւոր երկիր-
ներ, պահպանելու համար մտաւոր և գաղափարական ա՛յն
հաղորդակցութիւնը, որով իրարու կապուած են գրողներ
և ընթերցողներ, խորհողներ և գործողներ ։ Մամուլը լո՛յ-
սըն է ճշմարտութեան, շառաւիղը լուսաւորութեան և ճա-
ռագայթը՝ քաղաքակրթութեան հսկայ արեւին, որ իր ջեր-
մին ու լուսաւոր ազդեցութիւնը կը ղրկէ մտաւոր, ի-
մացական և բարոյական խաւարին մէջ նիրհող մարդուն ։

Ամէն ժողովուրդներու մէջ գրականութիւնը միե-
նոյն ատեն ստեղծուած չէ, այլ՝ զանազան ժամանակնե-
րու մէջ, համապատասխան անոնց քաղաքակրթական, ըն-
կերային, քաղաքական և տնտեսական պայմաններուն ու
պահանջներուն ։ Գրականութեան ստեղծումը աւելի նոր
է քան բանաւոր բանահիւսութեան սկզբնաւորութիւնը ։
Մարդկային մտաւորական կեանքը տակաւ թռիչ առած
է գրականութեան միջոցաւ, այնպէս որ այսօր գրակա-
նութիւնը ստացած է հսկայական ծաւալ և գրական ար-
տադրութիւններ ողողած են ամէն կողմ ։ Ներկայիս գը-
րականութիւնը առած է երեք գլխաւոր հոսանքներ․ 1)
Մատենագրական, 2․) Պարբերական և 3․) Օրագրական կամ
Լրագրական ։ Ասոնց իւրաքանչիւրը կը մշակուի ըն-
դարձակ սահմանի մէջ՝ բոլոր մեծ ու փոքր գրականու-
թիւններու մէջ ։ Գրական կեանքի վերլուծումը դիւրացը-
նելու համար, ինչպէս գիտական կամ ուսումնական բո-
լոր ճիւղերու մէջ, գրականութեան մէջ ալ դասակար-
գութիւններու բաժնուած են զանազան գրութիւններ,
որոնք բնականաբար կարելի չէ սահմանուած նկատել ընդ-

համար միօրինակութեան մը մէջ, որովհետեւ գրական գործունէութեան մէջ բազմատեսակ և այլազան նիւթեր կուգան բազմիլ քով քովի: Այս դասակարգերը գրականութեան մէջ Գրական Սեռեր կը կոչուին: Գրական գլխաւոր սեռերն են, Բանաստեղծական, Վիպական, Թատերական, Գիտական, Կրօնական, Իմաստասիրական, Կենսագրական, Պատմական, Ճարտասանական, Նամակագրական, Նկարագրական, Ուղեգրական, Գրախօսական, Տնտեսական, Իրաւաբանական, Երգիծաբանական, Քրոնիկ և այլն:

Գրականութիւններ ալ լեզուներու պէս իրենց ելեւէջները ունին: Անոնցմէ ոմանք իրենց հսկայական ծաւալով տիրապետող են, ուրիշներ ժամանակ մը փայլելէ վերջ անկումի շրջանին մէջ մտած են: Հին լատինական և յունական հոյակապ գրականութիւնները մեռած են, կարելի է ըսել: Հիմա կան մեծ գրականութիւններ, որոնք աղբիւրն են ժամանակակից գրական շարժման: Ֆրանսական, անգլիական ու գերմանական գրականութիւնները իրենց ամենէն շողշողուն վիճակին մէջն են այսօր: Մեծ գրականութիւններ արտադրած են հրաշակերտներ, որոնք շատ մը լեզուներու թարգմանուելով տարածուած ու ամեն գրագէտ ժողովուրդներու մէջ մուտ գտած են: Մանուկ գրականութիւններ ստիպուած են թարգմանութիւններու միջոցաւ պատուաստումներ կատարել: Հին Հայ գրականութեան ոսկեդարը, ինչպէս նաեւ ԺԹ. դարու աշխարհիկ գրականութիւնը պատուաստումի շրջաններ են պարզապէս՝ առաջինը ասորական և յունական և երկրորդը՝ գրաբար ու Ֆրանսական գրականութիւններու միջոցաւ:

Ամեն առենէ աւելի հիմա մասնագիտական դրութիւն մտած է գրականութիւններու մէջ, և գրական բոլոր մշակներ ալ հետամուտ են գրական որոշ սեռերու օգտագործումին:

**ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ՝ ԻԲՐԵՒ ԳԻՏՈՒԹԻՒՆ.**— Դրութիւններու վերածուած ծանօթութիւնները գիտութիւն կը կոչուին:

Բնութեան մէջ կայունութիւն չկայ։ Կեանքը փոփոխական է և հոլովոյթի օրէնքը կը տիրէ ամենուրեք։ Մարդկային կեանքը այս շրջափոխական ընդհանուր երեւոյթէն բացառութիւն չպիտի կազմէր անշուշտ։ Մարդկային ընկերութեան կեանքին զանազան երեսներուն մէջ, դէմքեր, դէպքեր, երևոյթներ ու հոսանքներ անխուսափելի յաջորդականութիւն մը ունին։ Ամեն արդիւնքներ պատճառներու և պատճառներ՝ նախապատճառներու հետևանքներ՛ը միայն կրնան ըլլալ։ Անոնց փոխ-յարաբերութիւններու ուսումնասիրութիւնն ու ճշգումը վերջին ծայր հրահանգիչ է։ «Ներկան անցածով միայն կարելի է լուսաբանել»։ Պատմութեան թատերաբեմին վրայ ցուցադրուող ամեն բան պատմական ընդհանուր շղթային մասունքը կը կազմէ։ Այդ պատմական շղթային վերլուծումը պատմութեան մէջ իմաստասիրութի՛ւնն իսկ է։ Պատմութիւնը, որ ինքնին գիտութիւն մըն է, իր որոշ օրէնքներով, անցեալը կը լուսաբանէ, ներկան անցեալին հետ կապող հանգոյցը կը քակէ և դարերը իրարու հաղորդակից կ'ընէ։ Միևնոյն գիտութիւնն էր որ պիտի գար հարկաւ գրականութիւնն ալ իր օրէնքներուն ենթարկելու։

**ԼԵԶՈՒԻ ԵՒ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ.—** Մարդկային զարգացումը յանկարծական չէ եղած։ Լեզու և բանահիւսութիւն ալ, աստիճանաբար բարեշրջուած են, ըլլալով մարդկային զարգացման ամենաէական միջոցները և քաղաքակրթութեան անմիջական ազդակներն ու մշակները։ Լեզու և գրականութիւն թարգման են մարդկային կեանքի բարեշրջութիւններուն, անոր պատմական զարգացման, թարգմանն ու հարազատ ներկայացուցիչը՝ մարդկային կեանքի, գործի, մտածումներու և մտայնութեան աստիճանական կատարելագործութեան։ Այս պատճառով իսկ անոնց պատմական զարգացման ուսումնասիրութիւնը կը դառնայ վերին աստիճանի անհրաժեշտ և շահեկան, ու ամեն ազգերու մէջ լեզու և գրականութիւն պատմական ուսումնասիրութեան նիւթ

կը դառնան, իբրեւ պատմական հետազօտութեան առարկաներ

**ՀԱՅ ԼԵԶՈՒ ԵՒ ՀԱՅ ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ.**— Եթէ ամէն ապրող բան իր պատմութիւնն ունի, ուրեմն դիւրին է ըմբռնել թէ Հայ լեզուն ու Հայ բանասիրութիւնը եւս, իրենց հնաւուրց կեանքին և դարաւոր գործունէութեան մէջ, իրաւունք ունին պատմական ուսումնասիրութեան կոչուածին մէջ մտնելու։ Ուստի և կազմակերպուած է Հայ լեզուի և Հայ Բանասիրութեան պատմութիւնը, թէեւ հարկ է խոստովանիլ՝ թէ Հայ Գրականութիւնը բաւական ուսումնասիրուած ըլլալով հանդերձ՝ Հայ լեզուի պատմութիւնը հում նիւթ կը մնայ տակաւին։ Հայ լեզուին պատմական զարգացման շուրջ ուսումնասիրութիւնը պիտի գար բացատրել անոր ծագումը, կրած փոփոխութիւնները, ազդեցութիւնները, դրոշմը, ուրիշ լեզուներու հետ ունեցած յարաբերութեան աստիճանը, խնամութիւնը և պիտի ճշդէր ու պիտի տար Հայ լեզուի պատմութիւնը։ Իսկ Հայ գրականութեան ուսումնասիրութեան ալ նշանակելի գործը պիտի ըլլար ճանչցնել հայուն մտաւորական պատմութիւնը, ներկայացնելով կեանքերն ու գործերը անոր յայտնի մտաւորականներուն ու գրչի մշակներուն, վերլուծելով խղճմտօրէն ընկերային, քաղաքական, տնտեսական ու քաղաքակրթական այն պայմանները, որոնք չրջապատած են Հայ կեանքը՝ տիրապետելով անոր մտայնութեան ու մտաւորական արտադրութիւններուն վրայ, մատնանշելով այն ազդեցութիւնները, որոնք ներգործած են Հայ գրականութեան վրայ, և այն միջավայրը, որուն մէջ զարգացած է անիկա, լաւ կամ յոռի փոփոխութիւնները, ելեւէջը, զարգացումն ու բարեչրջութիւնը։ Հայ լեզուի և Հայ բանասիրութեան պատմութիւնը ուրեմն հայկական քաղաքակրթութեան պատմութեան գլխաւոր մէկ մասն է, ամէն կերպով արժանի հետազօտութեան։

**ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՈՒՍՈՒՄԸ.**— Հայ Գրա-

կանութեան ուսումը կրկնապէս շահեկան և պարտաւորիչ կը դառնայ հայ պատանիին ու պարմանուհիին համար։ Նախ իբրեւ հայ՝ անոնք կը ծանօթանան իրենց անցեալ մտաւորականներուն կեանքերուն ու գործերուն հետ, կը սիրեն անոնց անցեալ գործունէութիւնները և կ՚ըմբռնեն Հայ Մտքին արտադրութիւնները։ Ապա գրականութեան սէրը մշակելով՝ անոնք կ՚արթնցնեն իրենց մէջ արուեստին ճաշակը և վայելքին պահանջը, կը մշակեն երեւակայութիւնը, կը սորվին իւրացնել ճոխ կեանքի պայմաններն ու բարձրագոյն խոյաններ։ «Գրականութիւնը կեանքի արտայայտութիւնն է ճշմարտութեան և գեղեցկութեան բառերով»։ Եթէ Հայոց ազգային պատմութիւնը իբրեւ հայ անհրաժեշտ է մեզ համար, ապա կարելի՞ է ժխտել Հայ Մտքին արտադրութեան պատմութիւնը, որ խտացած է Հայ Գրականութեան պատմութեան մէջ։

**ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ**.—Որեւէ լեզուի կամ բանահիւսութեան ուսումնասիրութեան միջոցին զանցառութիւն է նկատի չառնել այն միջավայրը, որուն մէջ բարգաւաճած են անոնք և իրենց կեանքը վարած։ Միջավայրը ամենէն մեծ բաժինն ունի ո՛չ միայն լեզուներու կազմութեան, այլեւ անոնց բարեշրջութեան գործին մէջ։ Լեզուներ իրենց կեանքի տեւողութեան միջոցին մեծ ազդեցութիւններ կը կրեն իրենց միջավայրէն և անոր խոր դրոշմն ունին իրենց վրայ։

Մենք հոս կ՚անդրադառնանք բնական միջավայրին միայն, որովհետեւ եթէ բուն միջավայրը ներկայացնել փորձենք, հոս փոխադրել պէտք էր ամբողջ Հայ պատմութիւնը՝ իր ընդհանուր ուղղութիւններով, հոսանքներով, ձգտումներով և քաղաքական, ընկերային, տնտեսական ու քաղաքակրթական պայմաններով։ Ճիշդ է որ ինչպէս բոլոր լեզուներուն, նոյնպէս ալ Հայ լեզուին սկզբնական միջավայրը որոշ չէ, Հայ ժողովուրդը Նախահայաստան եկած ատեն ամենայն հաւանականութեամբ իր հետ բերաւ զայն, բայց քանի որ անիկա ամբողջ քանիլեց դա-

րերու կեանք ունեցաւ հայկական նոր միջավայրին կամ աշխարհին մէջ, ուստի այդ ժամանակամիջոցին ուսումնասիրութեանը տեսակէտով իսկ հայոց այլեւս պատմական դարձած այս երկրորդ բայց սեփականացած հայրենիքին և հայկական միջավայրին համառօտակի ծանօթացումը աւելորդ չէ:

Դժուար է տալ Հայաստանի հաստատուն սահմանը, վասնզի փոփոխութիւններու ենթարկուած է միշտ: Միմիայն Մեծն Տիգրանի ատեն և անկից վերջն է որ սահմաններ ճշդելու կարելիութիւններ կան: Հայաստանի սահմանները կը համարուին հիւսիսէն՝ Սեւ Ծով, Խաղտիք, Կողքիս և Վրաց ու Աղուանից աշխարհները, հարաւէն՝ Տօրոս լեռները, Միջագետք, Ասորեստան, Պարսկաստան, արեւմուտքէն՝ Պոնտոսի լեռները, Փոքր Հայք և Եփրատ, իսկ արեւելքէն՝ Կասպից ծով ու Ատրպատական: Հայաստան, ընդհանրապէս բարձրադիր ու լեռնոտ, զետեղուած է Փոքր Ասիայի սրտին վրայ և կը կազմէ հոյակապ լեռնադաշտ մը, որուն բարձունքները կը հասնին 3-8000 ոտնաչափի և որոնց փէշերը կը սփռուին դէպի Եփրատ, Կուր և Հայաստանի շրջակայ դաշտավայրերը: Շարք շարք լեռներ, դաշտավայրեր, ձորեր, գետեր ու հովիտներ կը ձեւացնեն բնական այնպիսի գրաւիչ տեսարաններ, որոնք «Փոքր Ասիոյ Զուիցերիան» անուանել տուած են Հայաստանը: Հոսուն ջրեր, սիրուն լճակներ ու ծովակներ, բարձրաբերձ և ձիւնապատակ լեռներ, ամպածրար գագաթներ, հսկայ բարձրաւանդակներ և գեղատեսիլ հովիտներ՝ կուտան բնական միջավայրին հիասքանչ զանազանութիւն մը: Հոն են Եփրատն ու Տիգրիս, Երասխն ու Ճորոխ, հոն են Վանայ Ծովն ու Սեւանի լիճը, Մասիսն ու Արագած, Գրգուռն ու Նպատ, պատմական ու պատուական: Մեծ ու փոքր ջուրեր կ'ողողեն ամբողջ երկիրը և առուակներու ու գետակներու ցանց մը կը յօրինեն ամբողջ Հայաստան աշխարհի մէջ: Հայաստանի կլիման շա՛տ զանազանեալ է, թէեւ ընդհանրապէս ցուրտ: Ունի

տաք և տօթակէզ, միևնոյն ատեն ալ զով և ցուրտ տեղեր։ Ո՛չ մէկ ծով կայ իր սահմաններուն վրայ. ցամաքային երկիր մը՝ ամփոփուած իր սահմաններուն մէջ։ Միջավայրի այս զանազանութիւնը անշուշտ իր որոշ տուեալներով այլեւայլ նկարագիրներ պիտի ստեղծէր զանազան գաւառներու մէջ, գաւառաբարբառներու կազմութեան և զարգացման պիտի նպաստէր, հաղորդակցութեան դժուարութեան և բնական ու անտեսական պայմաններու բերումով ցեղական և աւատապետական կեանքի զարգացման մեծագոյն ազդակը պիտի դառնար, հայոց քաղաքական ու պետական կեանքին մէջ միակերպութիւն ստեղծելու արգելք պիտի հանդիսանար և մէկ խօսքով հայկական պատմական բաղդին, լեզուին ու բանահիւսութեան վրայ հզօրապէս պիտի ներգործէր։ Եւ ասոնք ամենն ալ արդէն կը ցոլանան միասին՝ հայոց պատմութեան մէջ։

Հայաստանի քաղաքական բաժանումները կը ներկայացուին այսպէս. Պատմական Հայաստան ունէր չորս գլխաւոր մասեր. 1. ՄԵԾ ՀԱՅՔ, 2. ՓՈՔՐ ՀԱՅՔ, 3. ԿԻԼԻԿԻԱ և 4. ՄԻՋԱԳԵՏՔ կամ ՈՒՌՀԱՅԱՍՏԱՆ։ Մեծ Հայք ունէր 15 նահանգներ ու գաւառներ, որոնք են 1. Բարձր Հայք, 2. Չորրորդ Հայք, 3. Աղձնիք, 4. Տուրուբերան, 5. Մոկք, 6. Կորճայք, 7. Պարսկահայք, 8. Վասպուրական. 9. Սիւնիք, 10. Արցախ, 11. Փայտակարան, 12. Ուտի, 13. Գուգարք, 14. Տայք, 15. Այրարատ։ Փոքր Հայք ընդարձակ լեռնադաշտ մ՛էր՝ երեք նահանգներով, 1. Առաջին Հայք, 2. Երկրորդ Հայք, 3. Երրորդ Հայք։ Միջագետք քաղաքական բաժանումներ գրեթէ չունէր, իսկ Կիլիկիա՝ իր դիրքին հետեւանքով բաժնուած էր երկու մասի, 1. Լեռնային Կիլիկիա, եւ 2. Դաշտային Կիլիկիա։

Հայաստան հարուստ է անտառներով, հանքերով, բուսականութեամբ ու կենդանիներով։ Ասիկա ինքնին Հայը պիտի մղէր խաշնարածութեան, արհեստներու, արդիւնագործութեան և վաճառականութեան և պիտի շնորհէր իր բնակչութեան՝ հանգստաւէտ կեանք, իսկ շրջակայ մեծ ու փոքր բնակալներու, թշնամիներու և թափառական ու բազմախնդիր ցեղերու և անտեսապէս խեղճ ժողովուրդներու ալ անյագ ախորժակ՝ սիրելու այս գեղեցիկ երկրին ու տիրանալու անոր անսպառ հարստութիւններուն։

# ՀԱՅ ԼԵԶՈՒ

## ԼԵԶՈՒԱԲԱՆԱԿԱՆ ՆՕԹԵՐ

*Արդի Լեզուաբանութիւնը.— Լեզուներու ծագումը.— Լեզուներու դասակարգութիւնը.— Հնդեւրոպական լեզուներ.— Հնդեւրոպական նախալեզու եւ Սանսկրիտ.— Բաղդատական Քերականութիւն։*

### ԱՐԴԻ ԼԵԶՈՒԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ.—

*Լեզուաբանութիւնը ա՛յն գիտութիւնն է, որ կը ըզբաղի լեզուներու ծագումով, անոնց բարեշրջութիւնով, իրարու հետ ունեցած առնչութիւններով, կը ճշդէ անոնց դիրքը և կ'ուսումնասիրէ ա՛յն գիտական օրէնքները, որոնք գոյութիւն ունին լեզուներու կեանքին մէջ։ Ինչպէս ամէն բան, լեզուի խնդիրն ալ անծանօթ մնացած էր մարդկութեան համար, երկար ատեն։ Լեզուաբանութիւնն էր որ եկաւ պատռել խաւարին վարագոյրը և զարմանալի ճշմարտութիւններ հրապարակ բերել։ Ո՞վ կրնար խորհիլ որ Ասիոյ և Եւրոպայի այլեւայլ մասերուն մէջ բնակող ժողովուրդներ՝ միեւնոյն ցեղին կը պատկանին, միեւնոյն մայր-լեզուէն առած են իրենց լեզուական սնունդը և խընամիներ են։ Հարիւրաւոր տարիներ առաջ խենթութիւն էր պարզապէս մտածելը նոյն իսկ թէ կարգ մը լեզուներ իրարու հետ նմանութիւններ ունին. բայց շնորհիւ Լեզուաբանութեան այսօր պարզուած են կարգ մը գաղտնիքներ և լեզուաբանին պրպտող միտքին առջեւ տեղի կուտան ամէն տեսակ պատուարներ։*

*Լեզուաբանութիւնը նախապէս անկարգ, չոր ու ցամաք և գործնական որեւէ արժանիքէ զուրկ գիտութիւն մը կը համարուէր։ Նոյն իսկ սկիզբէն, երկար ատեն, հիմնուած բազմապիսի բացատրութիւններու վրայ, որոնք լեզ-*

ուաբանական ընդհանուր օրէնքներէն կը շեղէին, անոր գիտութիւն անունը տալու գլացան։ Եւ արդարեւ լեզուն՝ օրէնքներու դէմ զարտուղութիւններ ալ ունի, բայց ո՞ր գիտութիւնը կնճռոտութենէ զերծ է։ Ի վերջոյ նորանոր ուսումնասիրութիւններ ա՛յնքան նորանոր և անժխտելի ճշմարտութիւններ երեւան բերին որ Լեզուաբանութիւնը գիտութիւն նկատուեցաւ և նշանակելի ու մեծ ծառայութիւններ մատոյց։

Երբ Լեզուաբանութիւնը մանուկ էր տակաւին, Բանասիրութիւն (Philology) կոչեցին զայն, ինչպէս որ նոյն իսկ հիմակ ալ այդ բառին հասարակ նշանակութիւնը՝ լեզուի մը ուսումնասիրութիւնն է։ Գերմանիոյ մէջ Լեզուաբանութիւնը Բանասիրութեան մէկ մասն էր միայն։ Անգլիոյ մէջ Համեմատական Բանասիրութիւն ըսուեցաւ։ Այլ և այլ տեղեր կոչուած է նաեւ Բաղդատական կամ Համեմատական Քերականութիւն (Comparative Grammar)։ Մեր մէջ առհասարակ Լեզուաբանութիւն կոչուած է։ Բրոֆ. Մաքս Միւլլեր և Բրոֆ. Հուիդնի՝ կ'ընդունին Լեզուներու Գիտութիւն։

Լայբնից, գերմանացի նշանաւոր փիլիսոփան, երբ համաշխարհային լեզու մը (Վօլապիւք) երեւան բերելու կը միտէր (1666), լեզուներն իրարու հետ համեմատելու և աշխարհի լեզուներուն բառական ու լեզուական գանձը խառնաշփոթ վիճակէն հանելով գիտական սկզբունքներու վերածելու գաղափարն յղացաւ։ Արդէն Փիլիպպոս Սասէտտի իտալացի գիտնականը 1588ին սքանչացում յայտնած էր սանսկրիտի և իտալերէնի կարգ մը նմանութիւններուն վրայ, և աւելի հին ժամանակներու մէջ ալ գաղտնիք մը չէր թէ սեմական, արիական, գերմանական և այլ լեզուներուն մէջ խնամութիւն կար։ Ցիսուսեան գործիչ մը, Կէօրդիւ, լատիներէնի, յունարէնի ու սանսկրիտի խնամութիւնը հաստատեց և 1767ին այս լեզուներուն ո՛չ միայն բառերը, այլեւ քերականական կազմութիւնն ալ մէջ բերող յիշատակագիր մը մատոյց Ֆրանսական Ակադեմիին։ Ասոնք անհետեւանք պիտի մնային սակայն, եթէ ուրիշ նպաստաւոր առիթ մը սանսկրիտ լեզուին և յունարէնի ու լատիներէնի միջեւ գլու-

Նուազ սերտ խնամութիւնը չհաստատէր։ 1772ին անգլիական խորհրդարանը որոշում տուած էր մահմետական և հնդիկ իրաւագէտներու թոյլ տալ դատական գործերու մասնակցութեան, որպէսզի տրուած վճիռները տեղական հին ու նուիրական օրէնքներու համապատասխան բանաձեւեր ունենան։ Այս կարգադրութեան հետեւանքով սանսկրիտ լեզուն գիտցող հնդիկ խորհրդականներ միայն արտայայտիչն էին հին օրէնքին, և իրենց յայտարարութեանց ճշմարտութիւնը իրենց խղճմտութենէն կախում ունէր։ Ասոր համար սանսկրիտի ուսումը հնդիկ հին օրէնսդիտութեան ուսումնասիրութեան տեսակէտով դարձաւ վերջին ծայր ստիպողական։ Սըր Ուիլեըմ Ճօնս, որ 1783ին Հնդկաստան ժամանած էր գերագոյն դատաւորի պաշտօնով, և հոն կազմած էր Ասիական ընկերութիւնը, որուն առաջին գահերէցն էր, եռանդով փարեցաւ սանսկրիտի ուսման և նկատեց որ անոր ու յոյն, գերման և լատին լեզուներուն մէջ աղերս կայ (1786)։ Ահաւասիկ այս գիւտն էր որ Լեզուաբանութեան ծնունդ տուաւ և ահագին հետաքրքրութիւն արթնցուց ամէն կողմ, այնպէս որ նոյն իսկ թագաւորներ անով զբաղեցան, և Կատարինէ Բ. 200 լեզուով 285 բառ հրատարակել տուաւ։ Ապա իրարու յաջորդեցին լեզուաբանական ուրիշ հեղինակութիւններ, որոնց մէջ նշանաւոր էր Ֆրէտրիխ Շլէգըլ բանաստեղծին երկասիրութիւնը՝ Հնդիկներուն լեզուն եւ իմաստասիրութիւնը։

Լեզուաբանութեան հիմնադիրի փառքը վիճակած էր սակայն գերմանացի Ֆրանկ Բոպի (Bopp), որ անձնուիրաբար սանսկրիտի քերականական յօրինուածքին քննութեան կը պարապէր, և վերջապէս ի վիճակի դարձած էր Բաղդատական Քերականութեան գիտութիւնն հիմնելու և 1816ին հրատարակութեան տալու իր երկարատեւ տքնութիւններու արդիւնքը (Լծորդական դրութիւն Սանսկրիտի՝ յոյն, լատին, պարսիկ եւ տեւտոնեան լեզուներու հետ համեմատուած)։ Բոպի այս գիտական յայտարարու-

թիւններուն հետեւեցան ուրիշ բազմաթիւ հմտալից քըննական երկասիրութիւններ, որոնք կ'ուսումնասիրէին լեզուաբանական և քերականական զանազան օրէնքներ՝ ի նպաստ նորածին գիտութեան զարգացման: Յակոբ Գրիմ (Jacob Grimm. 1785-1862) Գերմաներէնի Քերականութիւն անուն իր հոյակապ գիրքին մէջ գերմանիկ և դասական լեզուներու կանոնաւոր հնչափոխութեան օրէնքները բացայայտօրէն պարզեց և Լեզուաբանական Բանասիրութիւնը գիտութեան վերածեց՝ ենթադրութիւններու վերջ տալով: Այդ պատճառաւ Գրիմի օրէնք կոչուեցան այդ օրէնքները:

## ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ԾԱԳՈՒՄԸ.—

Լեզուաբանական հետազօտութիւններ բնականաբար ծնունդ տուին երկու կարեւոր և միանգամայն հետաքրքրական հարցերու. 1.) Ամէն լեզուներ մէկ աղբիւր եւ սկի՞զբ ունեցած են. 2.) Ի՞նչպէս ծագած է լեզուն եւ ի՞նչ էր մարդկային լեզուին սկզբնական վիճակը:

Լեզուաբաններու պահպանողական դասակարգը աստուածաշնչական աւանդութեան վրայ յենլով աշխարհիս բոլոր լեզուները առաջ եկած կը համարի սկզբնական լեզուէ մը, որ ապա աղաւաղուելով ու ճիւղաւորուելով բազմակերպ լեզուներու ծնունդ տուած է: Լեզուաբան գիտուններու ուրիշ ազատական խումբ մը,— որուն մէջ առաջնորդող դէմքեր են Պոտտ, Աւգուստ Շըլայխէր, Բրոֆ. Ֆրէտրիխ Միւլլէր եւայլն,— հիմնուած բնաշրջական տեսութեան վրայ, անհնարին կը գտնեն լեզուներու ծագման նոյնութեան գաղափարը և փաստելով թէ կեանքը երկրիս զանազան կէտերուն վրայ ծագում առած է, կ'եզրակացնեն լեզուներու սկզբնաւորութեան ալ զանազանութիւնը:

Երկրորդ հարցն ալ տեղի տուած է զանազան կարծիքներու և տեսութիւններու: Լեզուի ծագման մասին կան չորս գլխաւոր տեսութիւններ, որոնք են. 1.) Աստուածային ծագման կամ Հրաշքի տեսութիւն, 2.) Գիւտի,

3 .) Դիպուածի և 4 .) Լեզուի աստիճանական զարգացման տեսութիւն ։ Առաջին տեսութիւնը, որ Աստուծոյ կողմէն մարդուն տրուած հրաշալի նուէր մը կը նկատէ մարդկային լեզուն, կ'ընդունի թէ անիկա կատարելագործուած էր ինքնին՝ իր ստեղծագործութեան ու տրուած ատեն իսկ ։ Սա՝ եկեղեցականներու պաշտպանած թէզն է ։ Երկրորդ և երրորդ տեսութիւնները ,— գիւտ և դիպուած ,— լեզուն կը համարին մարդկային ստեղծագործութիւն, սա՛ տարբերութեամբ միայն որ մէկը կ'ընդունի լեզուն մարդկային իմացականութեան և բնութեան պահանջը, ըստ որում մարդը անպատճառ պիտի գտնէր ինքզինքն արտայայտելու միջոց մը, ինչպէս որ կենդանիները կ'ընեն իրենց ձայներով կամ ճիչերով. իսկ միւսը լեզուի ծագումը կը սեպէ դիպուածական յայտնութեան մը արդիւնք՝ նմանողութեան վրայ հիմնուած ։ Չորրորդ տեսութիւնը լեզուն մարդուս գործարանական և իմացական բնութեան երկը և հոգիի անհրաժեշտ և ազատ գործունէութեան հետեւանքը համարելով՝ կ'ընդունի լեզուի աստիճանական զարգացման և կատարելագործման տեսութիւնը, որ գիտուններու բացարձակ մեծամասնութեան կողմէ ընդունելութեան արժանացած է այսօր ։

Բայց թէ ի՞նչ էր մարդկային լեզուի սկզբնական վիճակը ։ Այս մասին որչափ որ զանազան լեզուաբաններու և գիտուններու կարծիքը կէտ առ կէտ իրարու չեն համաձայնիր, այսուհանդերձ զիրար կը լրացնեն, հաստատելով թէ լեզուները մէկ ծագում ունեցան կամ ոչ, ի՞նչ բանի ալ արդիւնք որ ըլլան, վերջապէս շատ նախնական շրջանէ մը անցնելով՝ աստիճանական զարգացումով միայն կրցած են հասնիլ ներկայ վիճակին ։ Բնականաբար նախամարդուն լեզուն նախ ճիչ և նշանացի շարժում էր, որ ապա փոխուեցաւ հետզհետէ ձայնարկութիւններու, բացագանչութիւններու, այնուհետեւ բնութեան և ձայներու նմանողութեամբ շինուած միավանկ բառերու, հասարակ բառերու, նախադասութիւններու, ոճերու և այլն.

*Լեզուներու զարգացման հզօր տարրն է միջավայրը։ Առանց անոր զանազանութեան՝ ո՛չ լեզուներ և ո՛չ ալ ոճեր պիտի կրնային այլազանութիւն ստանալ։ Միջավայրի պահանջները և օրըստօրէական պէտքերը ի յայտ կը բերեն նոր գաղափարներ, նոր խորհուրդներ և հետեւաբար ալ արտայայտութեան զանազան միջոցներ։ Մանուկի՜ մը լեզուական արտայայտութեան երեւոյթները մարդկութիւն կոչուած մանուկին լեզուական բարեշրջութեան պատկերին կրնան նմանցուիլ։*

## ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹԻՒՆԸ.—

*Լեզուաբանական գիտութեան կազմութենէն վերջ, այլեւս բացուեցաւ ուսումնասիրութեան լայն դաշտ մը, որուն մէջ կատարուեցան բազմաթիւ լեզուաբանական քննութիւններ։ Գիտուններու այս հետազօտութիւնները բաւական առաջացած ըլլալով՝ լեզուաբաններ մինչեւ հիմա ճանչցուած լեզուներուն մէջ նշմարած են զարգացման և կատարելագործման տարբեր տարբեր աստիճաններ և երեք գլխաւոր երեւոյթներ։ Երբ մարդիկ նախնական վիճակի մէջ էին, իրենց ստեղծած բառերն ալ սահմանափակ միավանկ բառեր պիտի ըլլային բնականաբար։ Յետոյ քաղաքակրթութեան հետ մարդոց զարգացումը փոխուեցաւ և վանկեր ու մասնիկներ աւելցնելով չինեցին միավանկ բառերէ աւելի բարդ կցողական բառեր։ Վերջապէս քաղաքակրթութեան աւելի՛ առաջացման ընթացքին մէջ բառերական աւելի՛ եւս փոփոխութիւններ կրել և լեզուն ստացաւ աւելի՛ բարդ ձեւ մը։*

*Այս հիմունքներուն վրայ լեզուաբաններ աշխարհիս բոլոր լեզուները բաժնած են երեք մեծ և ընդհանուր դասակարգերու.*

1. *Անջատողական կամ միավանկ լեզուներ.*
2. *Կցողական կամ չարամերձ լեզուներ.*
3. *Հոլովական կամ թեքական լեզուներ.*

**ԱՆՋԱՏՈՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ.—** *Անջատողական կամ միավանկ են այն լեզուները, որոնք միավանկ բառերէ կազմուած են և անոնցմով կը ներկայացնեն գաղափար, ինչպէս չիներէն, պիրմաներէն և այլն։ Ասոնք ալ իրենց երեք տոհմերուն կարելի է վերածել.* 1. *Զուտ միավանկ լեզուներ (չիներէն, աննամերէն, սիամերէն).* 2 *Կցողական նշաններ ունեցող միավանկ լեզուներ (պիրմաներէն, տիբեթերէն, պեգուերէն) և* 3. *Կէս-միավանկ եւ կէս կցողական լեզուներ (Հնդկաչինի մէկ մասին խազեա լեզուն)։*

**ԿՑՈՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ.—** *Կցողական կամ շարամերձ կը կոչուին այն լեզուները, որոնք անջատողականներէն աւելի ճոխ և հոլովականներէն աւելի պարզ են, ինչպէս հոտենտոտերէն, ճափոներէն, վրացերէն, լազերէն, ուրարտերէն և այլն։ Կցողական լեզուներն ալ ունին երկու գլխաւոր տոհմ.* 1. *Զուտ կցողական լեզուներ (հոտենտոտերէն, բուշմաներէն, ճափոներէն և այլն),* 2. *Հոլովման նշաններ ունեցող կցողական լեզուներ (վրացերէն, լազերէն, ուրարտերէն, քետերէն և այլն)։*

**ՀՈԼՈՎԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ.—** *Հոլովական կամ թեքական կը կոչուին այն լեզուները, որոնք ունին բաղադրեալ կազմութիւն և քերականական ու լեզուական աւելի բարդ հանգամանքներ կը ներկայացնեն, ինչպէս ասորերէն, եբրայերէն, արաբերէն, անգլիերէն, հայերէն և այլն։ Հոլովական լեզուներն ունին երեք տոհմեր.* 1. *Սեմական լեզուներ (ասորերէն, եբրայերէն, արաբերէն, փիւնիկերէն և այլն)։* 2. *Քամեան կամ Թուրանական լեզուներ (պերպերերէն, եգիպտացերէն, թուրքերէն և այլն),* 3. *Հնդեւրոպական, Հնդիկ-Գերմանիկ կամ Յաբեթական լեզուներ (սանսկրիտ, պարսկերէն, հայերէն, յունարէն, գերմաներէն եւ այլն)։*

*Այս բոլոր լեզուներն ալ միշտ միեւնոյն վիճակն ունեցած և միեւնոյն աստիճանին վրայ գտնուած չեն։ Ներկայիս հոլովական նկատուող լեզուներ ժամանակաւ անջատողական և ապա կցողական եղած են, ինչպէս նաեւ կցողականներ՝ միավանկ լեզուներ եղած են։ Ժամանակի ընթացքին մէջ անոնք շրջափոխուած են, ոմանք մինչեւ երրորդ աստիճանին բարձրանալով, ոմանք երկրորդ աստիճանին հազիւ հասնելով և ուրիշներ ալ առաջին աստիճանին վրայ մնալով։*

## ՀՆԴԵՒՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ.—

*Լեզուաբաններ աւելի հետաքրքրուած են հնդեւրոպական լեզուներով, որոնք վերջին դար չահագրգռա-*

կան են անշուշտ Հնդեւրոպական ցեղին պատկանող բոլոր ժողովուրդներուն և ազգերուն համար ալ։ Հնդեւրոպական կը կոչուին Հնդկաստանէն մինչեւ Եւրոպայի զանազան կողմերը տարածուած ժողովուրդներու քոյր և խնամի լեզուները, որոնք Հնդիկ-գերմանական և երբեմն ալ Արիական կոչուած են։ Այս վերջինը սխալ մ՚է, վասնզի Հնդեւրոպական լեզուներու միայն երկու խումբե՛րն են որ (սանսկրիտն ու պարսկական բարբառները) Հընդիկ-իրանեան լեզուներու մէջ արիական անունն առած են։

Հնդեւրոպական լեզուները բաժնուած են ըստ ոմանց եօթը, ըստ ոմանց ալ ութը կամ աւելի լեզուախումբերու, որոնք են.

Ա. ԱՐԻԱԿԱՆ ԿԱՄ ՀՆԴԻԿ-ԻՐԱՆԵԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ.— Ասոր մէջ կան հնդկական և պարսկական բարբառները։ Հնդկական բաժնին մէջ կայ Սանսկրիտը, որով կատարուած կանխագոյն գրականութիւնը կը գտնենք պատմական արձանագրութիւններու և հնդիկներու կրօնական մատեաններուն,— Վէտաներուն,— մէջ (Ք. Ա. 1500)։ Քրիստոսէ առաջ սանսկրիտը մեռած էր արդէն և անոր յաջորդած էին Պրակրիտ և Պալի գաւառաբարբառները, որոնք եւս իրենց կարգին դադրած են ապրելէ և իրենց յաջորդ ունին Սինդհի և ուրիշ բարբառներ։ Իսկ իրանեան (պարսկական) խումբին մէջ կան զենտերէնը կամ բակտերէնը, որով գրուած է Զրուանի վարդապետութեանց հաւաքածոն,— Զէնտավէստան,— (600-1100 Ք.Ա.), հին պարսկերէնը, պահլաւերէնը և այլն։

Բ. ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԲԱՌ, որ կը բովանդակէ հայկական բարբառները։

Գ. ՅՈՒՆԱԿԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ, որուն մէջ կը մտնեն հին ու նոր յունարէնը՝ իրենց բոլոր բարբառներով, ինչպէս յունական-ատտիկեան, դորէական, արկադեան, կիպրական և այլն։

Դ. ԱԼԲԱՆԱԿԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ, որ զուրկ է գրականութենէ և միայն վերջերս մուտ գտած է հնդեւրոպական լեզուախումբերուն մէջ։

Ե. ԼԱՏԻՆ ԵՒ ՏՈՀՄԱԿԻՑ ԻՏԱԼԱԿԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ, որուն բաժնին կը վերաբերին՝ լատիներէնը իր բարբառներով և օմբրերէնն ու օսկերէնը։

Զ. ԿԵՂՏԱԿԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ, որուն մէջ են՝ գաղղիերէնը, բրիտաներէնը, իրլանտերէնը և այլն։

Է. ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿԱՄ ՏԵՒՏՈՆԵԱՆ ԼԵԶՈՒԱԽՈՒՄԲ — Ասոր մէջ

*կը մտնեն՝ գոթերէնը, իսլանտերէնը, շուէտերէնը, հին անգլիերէնը, սաքսոներէնը, գերմաներէնը և այլն։*

Ը· ԲԱԼԹԻԿԵԱՆ ԵՒ ՍԼԱՒԵԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ·— *Առաջին բաժինին մէջ կան լիթուաներէնն ու լետտերէնը, իսկ երկրորդին մէջ՝ պուլկար, սերպ, խրուատ, սլաւոն, լեհ, պալոնական լեզուները և այլն։*

## ՀՆԴԵՒՐՈՊԱԿԱՆ ՆԱԽԱԼԵԶՈՒ ԵՒ ՍԱՆՍԿՐԻՏ·—

*Լեզուաբանութիւնը տակաւին որոշապէս և վճռականօրէն չկրնար ըսել թէ հոլովական երեք մեծ լեզուախումբերուն վերաբերող լեզուներուն մէջ ո՞րն է եղած այն՝ որ, իբր նախալեզու, ծնունդ տուած է նոյն լեզուախումբին վերաբերող և իրարու նմանող այդ լեզուներուն։ Կարծիքներ միայն կը յայտնէ, ենթադրութիւններուն վրայ հիմնուած։*

*Միեւնոյնն է նաև հնդևրոպական լեզուախումբին համար։ Վճռապէս կարելի չէ՛ ըսել թէ՝ հնդևրոպական լեզուախումբին վերաբերող լեզուներէն ո՛րն է այն, որ մայրն եղած է այդ լեզուներուն։ Լեզուախումբի մը նախալեզուն ուրեմն տարրալուծուած մըն է, և ենթադրութիւն մը՝ որ իրականութիւն ունեցած է ապահովաբար, բայց իր իսկական տարրը չկայ այսօր, որովհետև միեւնոյն մօր բոլոր լեզուները առաւել կամ նուազ հեռացած են իրենց նախալեզուէն։ Ոմանք հնդիկներու սանսկրիտ լեզուն կը շփոթեն հնդևրոպական նախալեզուին հետ։ Ասիկա բացարձակ սխալ մըն է։ Լեզուաբանութիւնը իրաւ է թէ հնդևրոպական լեզուներուն բաղդատաբար ամենէն հինն ու փոփոխութեան նուազ ենթական սանսկրիտը կը համարի և հաւանական կը նկատէ որ սանսկրիտը նոյն իսկ նախալեզուն եղած ըլլայ, բայց ասիկա ըսել չէ թէ սանսկրիտ և նախալեզու միեւնոյն բաներն են։*

*Ուրեմն Հնդեւրոպական Նախալեզու ըսելով պէտք է հասկնալ ենթադրական նախալեզու մը, որ մայրը պէտք է ըլլայ բոլոր հնդևրոպական լեզուներուն։ Ձենք գիտեր թէ հնդևրոպական լեզուները ո՛ր աստիճան հեռացած են նախալեզուէն և թէ՝ անոնցմէ ո՛րն է որ իր քոյր-լեզուներուն մէջ աւելի քիչ փոփոխութիւն կրած է։ Հընդ-*

եւ բազմաթիւ բոլոր լեզուներն ալ առաւել կամ նուազ հին տարրեր ունին, բայց լեզուաբաններուն ընդհանուր կարծիքն ա՛յն է թէ անոնց մէջէն Սանսկրիտը բաղդատաբար պակաս փոփոխութիւններ կրած է, և հետեւաբար ալ, եթէ իրեն նախալեզու ըլլալը հաստատուած չէ, գոնէ անոր ներկայացուցիչն ըլլալու փառքը՝ ամենէն աւելի իրեն կը վայելէ։

Սանսկրիտի գիւտը բաղդատութեան եզր մը ու ճըշդաչափ գործիք մը տուաւ բանասէրներուն, որովհետեւ հիմա երբ բառ մը կամ քերակ. ձեւ մը (Հնդեւրոպ. լեզուներուն մէջ) Սանսկրիտի համապատասխան բառին կամ ձեւին քով կը դրուի, անմիջապէս Սանսկրիտ լեզուն փորձաքարի դերը կը կատարէ։ Այս տեսակէտով բանասիրական-լեզուաբանական աշխարհին մէջ մեծ նպաստ բերաւ Սանսկրիտ լեզուն, առանց որուն՝ Բաղդատական Լեզուաբանութիւնը զանազան լեզուներու բառերուն առուգաբանութիւնը երեւան հանելու համար վստահելի կէտ մը չպիտի ունենար։ Սանսկրիտը հաւատի եզր մը և մանրադիտակ մ'է, որ անմիջապէս կը վերլուծէ բառերու էութիւնը։

## ԲԱՂԴԱՏԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ.—

Առանձնական Քերականութիւններ իրենց կանոնները պատգամներու պէս պարտադիր կ'ընեն։ Բաղդատական Քերականութիւնը սակայն կու գայ փաստացի կերպով մեզի ներկայացնել և համոզել թէ ի՛նչ են քերականական օրէնքները։ Ա՛ն է որ թոյլ կու տայ մեզ աւելի՛ գնահատելու լեզուներուն քերականական կազմութիւնը, որովհետեւ ա՛ն միայն ցոյց կու տայ թէ ի՛նչ ճարտարութիւն մտցուած է լեզուներուն մէջ՝ Հնդեւրոպականէն զատուելէ վերջ։

Բաղդատական Քերականութիւնը մեզի կը սորվեցնէ թէ,

1. Ցանգերը կամ մասնիկները նախապէս անհատական գոյութիւն ունեցող արմատներ էին:

2. Թէ ի՛նչպէս անոնք եկած ու միացած են ուրիշ արմատներու հետ։

3. *Ցանգերու այն երկար ցանկը, զոր դպրոցներուն մէջ կը սորվինք, հոլովումի կամ խոնարհումի անունին տակ, յիշողութիւնը վարժեցնող գրահաշուական անիմանալի հաշիւներ չեն։*

4. *Հոլովումը կը բաղկանայ շատ մը դերանուններէ և նախդիրներէ, որոնք անուանական արմատի մը վրայ կուգան կ'աւելնան։*

5. *Խոնարհումը կը կայանայ անձնական դերանունի մը բայական արմատի մը վրայ յաւելման մէջ, թէ բայական արմատը երբեմըն առանձին և մերկ վիճակի մէջ կը գտնուի և երբեմն ալ բայական օժանդակ արմատէ մը զօրացած, կրկնուած կամ աճած։*

*Բաղդատական Քերականութիւնը ընդհանուր պատմութեան վերաբերող անակնկալութիւններ տուած է, երկրիս ազգաբանական քարտէսը նորոգած է և ցեղերու ազգակցութիւնները գտած։ Բառարաններու այս խնամութիւնը շատ նորութիւններ նորէն պիտի բերէ տակաւին, ինչպէս բերաւ մինչև հիմա։*

---

# ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

*Հայ լեզուի պատմութեան վերաբերեալ հարցեր.— Հայ Լեզուին ծագումը.— Հայ Լեզուին հնութիւնը.— Գրաբար, Նախնեաց Ռամկօրէն, Արդի Աշխարհաբար եւ Հայ գաւառաբարբառներ.— Պատմական Հայ լեզուի արշալոյսը.— Ակնարկ մինչեւ մեր օրերը։*

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՀԱՐՑԵՐ.—

*Հայ լեզուի պատմութիւնը իրեն նպատակ ունենալու է պարզաբանել ծնունդը, կեանքը, բարեշրջութիւնը և ուրիշ լեզուներու հետ ունեցած փոխ-յարաբերութիւնը այն լեզուին, որ Հայ ազգին անունով հրապարակին վրայ էր հին դարերու մէջ իսկ և այսօր ալ կայ։ Որչափ ալ որ ինչ ինչ խնդիրներու լուծման համար հարկ եղած ատաղձը չկայ՝ լեզուական պատմութիւն մը յօրինելու համար.*

եւ բաղդատական բոլոր լեզուներն ալ առատ կամ նուազ հ
տարրեր ունին, բայց լեզուաբաններու ընդհանուր կա
ծիքն ա՛յն է թէ անոնց մէջէն սանսկրիտը բաղդատաբ
պակաս փոփոխութիւններ կրած է, եւ հետեւաբար ա
ւթէ իրեն նախալեզու ըլլալը հաստատուած չէ, գո՛
անոր ներկայացուցիչն ըլլալու փառքը՝ ամենէն աւելի
րեն կը վայելէ։

Սանսկրիտի գիւտը բաղդատութեան եզր մը ու ճ
դաշտի գործիք մը տուաւ բանասէրներուն, որովհետ
հիմա երբ բառ մը կամ քերակ. ձեւ մը (հնդեւրոպ.
զուներուն մէջ) սանսկրիտի համապատասխան բառ
կամ ձեւին քով կը դրուի, անմիջապէս սանսկրիտ լեզ
փորձաքարի դերը կը կատարէ։ Այս տեսակէտով բան
սիրական-լեզուաբանական աշխարհին մէջ մեծ նպա
տառաջ բերաւ սանսկրիտ լեզուն, առանց որուն՝ Բաղդա
տական Լեզուաբանութիւնը զանազան լեզուներու բա
ներուն ստուգաբանութիւնը երեւան հանելու համա
վստահելի կէտ մը չպիտի ունենար։ Սանսկրիտը հաւա
տի եզր մը եւ մանրադիտակ մըն է, որ անմիջապէս կը վեր
լուծէ բառերու էութիւնը։

## ԲԱՂԴԱՏԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ.—

Առանձնական Քերականութիւնները իրենց կանոնները պատգամներու պէս պարտադիր կ'ընեն։ Բաղդատական Քերականութիւնը սակայն կու գայ փաստացի կերպով մեզի ներկայացնել եւ համոզել թէ ինչ են քերականական օրէնքները։ Ա՛ն է որ թոյլ կու տայ մեզ աւելի՛ գնահատելու լեզուներուն քերականական կազմութիւնը, որովհետեւ ա՛ն միայն ցոյց կու տայ թէ ինչ ճարտարութիւն մնացած է լեզուներուն մէջ՝ Հնդեւրոպականէն զատուելէ վերջ։

Բաղդատականքերականութիւնը մեզի կը սորվեցնէ թէ,

1. Ցանգերը կամ մասնիկները նախապէս անհատական գոյութիւն ունեցող արմատներ էին:
2. Թէ ինչպէս անոնք եկած ու միացած են ուրիշ արմատներուհետ։

սակայն եւ այնպէս դիւրին պիտի ըլլար կառուցանել Հայ լեզուի կենսագրութիւնը, եթէ հայ լեզուի միութիւն ըլլար սկիզբէն մինչեւ վերջ։ Սա արդէն բոլոր հին լեզուներու և գրականութիւններու համար սեփական և անխուսափելի երեւոյթ մ'է։ Մարդկային մտքին աստիճանական զարգացումը լեզուներու կեանքին մէջ առաջ կը բերէ մեծամեծ փոփոխութիւններ, այնպէս որ կարելի չէ գտնել լեզուի մը առաջին օղակը։ Լեզուն ինքնաբոյս չէ։ Նոր լեզուներ միշտ հիներու խնամքը վայելած են և հիներ ալ նորերուն առջեւ տեղի տուած են։ Շատ մը լեզուներու զաւակներն ու քոյրերը կան բայց իրենք չկան. Ժողովուրդը, որ լեզուներու ստեղծագործիչն է, ջանադիր կ'ըլլայ զանոնք պարզելու, բացայայտելու, իր ձեռքը գտնուած միջոցներով։ Ան կը խորշի ամեն տեսակ ձեւերէ, կը սղէ, կ'ամփոփէ, կը կրճատէ եւայլն և ահա դարեր վերջը կը տեսնես նոյն լեզուն բոլորովին կերպարանափոխուած։ Մանաւանդ բանաւոր լեզուին մէջ՝ ա՛լ աւելի կը չեշտուին այս ճշմարտութիւնները։ «Խօսքը կը թռչի և գիրը կը մնայ»։ Ուստի գիրը մարդկային լեզուներու պատմութեան մէջ դարագլուխ կը բանայ։ Շնորհիւ անոր, հետզհետէ մթերուած գրութիւններու ամբողջութիւնը տակաւ կը դառնայ օրէնք, զոր կը յարգեն յաջորդները և որուն կը հետեւին։

Մասնաւորելով՝ հայ լեզուին պատմութեանը մէջ եւս, նոյն ճշմարտութիւնը կը տեսնենք, թերեւս աստիճան մը աւելի չեշտուած։ Հին գոյութիւն ունին զանազան բարբառներ, որոնք հետզհետէ իրարու յաջորդեր և ժողովուրդին խօսակցութեան լեզու դարձեր են և կամ յետոյ գրականացեր։ Մանրազննին ուսումնասիրութեան և խղճամիտ աշխատութեան պէտք կայ իր մանրամասնութեանը մէջ վերլուծելու համար հայերէն լեզուի պատմութիւնը։

Մեզ հոս կը ներկայանան կարգ մը հարցեր, որոնք Հայ լեզուի պատմութեան ուրուագիծը կը կազմեն և ո-

րոնց լուսաբանութեանը պիտի հետամտինք՝ համառօտակի անշուշտ։

1. Հայ լեզուի ծագմանը կամ էութեանը մասին գիտական ի՞նչ երաշխաւորութիւններ ունինք։

2. Ի՞նչ է Հայ լեզուի գիրքը՝ լեզուաբանօրէն։

3. Հայ լեզուին հնութիւնը մինչեւ ո՞ւր կը հասնի, գիտական փաստերով։

4. Նախամեսրոպեան հայերէնի վիճակն ի՞նչ էր։

5. Գրաբարի հարազատութիւնը, ուժի եւ կենդանութիւնը մինչեւ ո՞ր դար կը հասնի։

6. Նախնեաց Ռամկօրէն և Արդի Աշխարհաբար ո՞ւրկէ կը սկսին։

7. Ի՞նչ բարբառներ կան Հայ լեզուին մէջ։

8. Ասոնք բոլորը միեւնոյն ընտանիքին վերաբերո՞ղ լեզուներ են թէ տարբեր տարբեր ճիւղեր։

9. Ի՞նչ է եղած Ռամկօրէնի կամ Աշխարհաբարի աստիճանական զարգացումը։

Այս շարքը կրնայ տակաւին երկարիլ։ Մենք կ'անցնինք անոնց պարզաբանութեան՝ բնականօրէն իր կարգին ուշադրութիւն ընծայելով ամեն տեսակ աչքառու երեւոյթներու վրայ։

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԾԱԳՈՒՄԸ.—

Լեզուաբանութիւնը Հայ լեզուին գիրքը ճշդեց, զայն դնելով հնդեւրոպական լեզուներու շարքին մէջ, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ հատուածով, սակայն որոշ բան մը չըսաւ անոր ծագման մասին։ Հայ լեզուի ծագման խնդիրը սերտ առնչութիւն ունի հայ ցեղին ծագման խնդրոյն հետ, այնպէս որ անո՛վ միայն կրնայ լուսաբանուիլ, եւ մէկը պարզելով միւսն ալ բացատրուած կ'ըլլայ։

Մեր ազգային պատմիչներն ու մատենագիրները Հայ լեզուին ծագումը շատ հին ժամանակներու կը տանէին եւ կը սիրէին հայերէնը համարել դրախտային լեզու։ Ասիկա այն շրջանին էր, երբ Հայոց Պատմութիւնն ալ իր աւանդական օրօրները կը կարդար եւ հայրենի առասպելներուն մէջ իսկական ու վաւերական պատմութիւն մը տեսնել կը կարծէր։ Միեւնոյն երեւոյթը հայ արդէն ա-

մեն ազգերու ծագման պատմութեան մէջ ալ։ Պատմական մշուշներուն մէջէն տեսապէններ, երեւակայական դէմքեր և դիցաբանական իրողութիւններ ծնունդ առած են։ Թէ՛ յոյն պատմիչները և թէ հռոմայեցիները այսպիսի առասպելական ծագումներ կը յայտնեն՝ իրենց ցեղերու մասին։ Արեւելեան ժողովուրդներու մէջ եւս աւանդական նոյն պարագաները բացորոշապէս կը տեսնըւին։ Պատմահայր Խորենացիէն սկսեալ մինչեւ մեծ պատմագիրը Չամչեան և անկէ ալ մինչեւ ԺԹ. դարու կէսերը հայերէնն աստուածապարգեւ լեզու մըն էր, իսկ հայերն ալ Նոյի թոռները։ Անողոք գիտութիւնն ու արդիական քննադատութիւնը սակայն քանդեցին ամեն բան և գծեցին պատմական նոր ուղի մը, որ նոր և դժուարին ուսումնասիրութիւններու դուռ կը բանար։ Հետզհետէ երեւան ելլող ու գտնուող հին արձանագրութիւններ հայերուն հայրենիքը, — Հայաստանը, — դաշթավայրի մը վերածեցին և եկան ըսելու թէ կար Նախահայաստան մը, որ ունէր իր բնիկները և իր քաղաքակրթութիւնը։

Հայաստանը Հայաստան և հայոց բնակավայր ըլլալէ առաջ Ուրարտու կը կոչուէր։ Անիկա ունէր իր բընակչութիւնը, լեզուն, կրօնքը, պետական կազմակերպութիւնը, սեփական քաղաքակրթութիւնը և նոյն իսկ գրականութիւնը։ Հոն կ'ապրէին շատ մը ազգութիւններ։ Այդ կը հաստատեն այժմեայ բեւեռագիր արձանագրութիւններ, որոնք կարդացուած են հնագէտ գիտուններու կողմէ։ Այս արձանագրութիւնները սակայն մինչեւ Է. դարու սկիզբը (Ք. Ա.) հայոց նկատմամբ ո՛չ մէկ բան կ'ըսեն։ Միջագետքի ասորեստանեան արձանագրութիւնները ցոյց կուտան շատ մը արշաւանքներ, զորս Ասորեստանի զանազան թագաւորներն ըրած են դէպի Նախահայաստան։ Սարսափելի անգթութիւններ ու բարբարոսային հրէշութիւններ գործած են ասորեստանցիները այս արշաւանքներու առեն, և քանի՛ քանի անգամներ Նախա-

Հայաստանը սուրի ու հուրի մատնուած է : Ասորեստանի յարքերն ու քաղաքակրթութիւնը շատ խոր դրոշմ տուած են Նախահայերուն : Այդ ժողովուրդներու,– Նախահայերու,– զանազան ցեղերը ճանչցուած են , ինչպէս՝ Ուրարտացիներ , Նաիրիցիներ , Մաննացիներ և այլն . բայց ասոնց մէջ ամենէն տիրապետողը՝ Ուրարտացիներն եղած են : Ասորեստանցիներէն վերջ Թառկարեմ կուգան մարերն ու պարսիկները, որոնք եւս իրենց կարգին արշաւանքներ կը կատարեն դէպի Նախահայաստան և քանիցս ապստամբութիւններ նուաճելու համար պատերազմներ կ՚ունենան: Ահա այս վերջին արշաւանքներու առթիւ է որ Արմենիա բառը կը յիշուի Դարեհ Վշտասպեանի արձանագրութիւններուն մէջ (Ք . Ա . Զ . դար) :

՚Ուրեմն հայերը Ք . Ա . 606 թիւին միայն Հայաստանի մէջ են արդէն : Բայց անկէց առաջ ո՞ւր էր Հայ ցեղը , և կամ ո՞ւրկէց եկած էր Ուրարտու և հոն տեղաւորուած : Այս մասին զանազան կարծիքներ ու ենթադրութիւններ կան , թէև բոլոր գիտունները ալ կը համաձայնին սա՛ կէտին վրայ թէ հայերը եկուորներ էին Նախահայաստանի մէջ և ո՛չ թէ բնիկներ : Այսպէս՝ հայերը կը նկատուին .

1. Հիթիթներու գաղթականներ.
2. Սկիւթացիներու արշաւախումբեր.
3. Խալդեր.
4. Հնդեւրոպական գաղթականներ կամ Կէմմէրներ.

Հայոց գաղթը ճշդելու համար կարեւոր է ուշադրութիւն դարձնել Հնէաբանութեան և Նախապատմական Հնախօսութեան , որոնք կը հաւաստեն թէ մարդկային սերունդը իր օրրանէն հեռացած է երկու գլխաւոր գաղթականութիւններով, որոնցմէ վերջինը կը կոչուի Հնդեւրոպական գաղթականութիւն: Սա Սեւ ծովի հիւսիսային եզերքէն Եւրոպա մտնելով քանի մը ճիւղերու բաժնուած և ապա Հելլեսպոնտոսէն տակաւ Փոքր Ասիա անցած է : Պալքանեան թերակղզին երբեմն կայանը դարձած է այս գաղթականութեան : Կը կարծուի թէ հայերը իբրեւ այս գաղ-

*թագաւորութեան մէկ մասը սկիզբէն Թեսալիա բնակած էին ու յետոյ Բրիտանէ եօթը կամ ութը դար առաջ Փոքր Ասիա մտած։ Նոյն իսկ Լարիսա և Ցիրա քաղաքները մինչև Արմեն անունով քաղաք մը կը յիշուի։*

*Եթէ ուզենք Հայ լեզուն ուսումնասիրել, մի՛այն ոսկեդարի հայերէնը կը գտնենք, որ ալ Աստուածաշունչի լե՛զուն միայն, որովհետև միւս թարգմանիչներն ու մատենագիրները իրենց փոփոխութիւններով հեռացած են անկէ, նոյն իսկ մերձաւոր ժամանակի մէջ։ Հայկական ամեն տեսակ հին յիշատակարաններ ջնջուեցան Քրիստոնէութեան մուտքին ատեն և կրօնական նախանձախնդրութիւնը որչափ կարելի է փճացուց ամեն բան, որ հին հեթանոսական կրօնքը կրնար յիշեցնել։ Ոսկեդարի լեզուն ապացոյց է թէ զինք գործածող ժողովուրդը քաղաքակրթուած ցեղ մ՚է։ Լեզուին այդ զարգացումը դարերու գործ էր անշուշտ. բայց այդ ընդարձակ ժամանակամիջոցին մէջ Հայ լեզուն ի՛նչ աստիճանաւորումներէ կամ երևոյթներէ անցած է, անկարելի է ճշդել, վաւընզի ապացոյցներ և օժանդակներ կը պակսին։*

*Գիտութիւնը շատ լուսաբանութիւններ պիտի տայ տակաւին այս մասին։ Բայց անուրանալի ճշմարտութիւն մըն է որ հայերն իրենց նոր հայրենիքին տուին իրենց լեզուն (ուրարտական լեզուն երբեք չնմանիր հայերէնին) և անոր բնիկներէն ալ առին անոնց քաղաքակրթութիւնը, աւանդութիւնը, բազմաթիւ տեղերու, անձերու, լեռներու և գետերու անուններ և օրինակեցին ուրարտական ինքնատիպ բարքեր։ Հայ լեզուն հնդեւրոպական գաղթականութեան հետ եկած էր Ուրարտու։ Գիտութեան կը մնայ այս հարցին լուծումը՝ նոր լուսաբանութիւններով ու եզրակացութիւններով։*

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ԴԻՐՔԸ.—

*Հայերէն լեզուին ուրիշ լեզուներու հետ ունեցած առնչութիւնն ու խնամութիւնը հաստատուելէ վերջ անոր*

*գիրքը ճշդելը բաւական դժուարին գործ մ'էր լեզուաբաններուն համար, վասնզի ամէն տեսակ տարրեր կային անոր մէջ, ծագումն անյայտ էր և գրաւոր յիշատակարաններ չկային՝ Ե. դարէն առաջուան վիճակը քննելու համար: Հայ լեզուն կը նմանէր պեղումներով երեւան հանուած քաղաքի մը, որուն այլեւայլ մասերը մեզի ենթադրել կուտան զանազան ժողովուրդներու ճարտարապետութիւններն ու արուեստի զանազանութիւնները: Իրաւ ալ Հայերէնի մէջ կան ասորական, սեմական, իրանական և այլ տարրեր, և առաջին երեւոյթով դըժուար է զանազանել լեզուին էութիւնը:*

*Ազգային բանասէրներ մասնաւոր հաճոյք մը կը զգային հաստատելու թէ դրախտի մեր նախահայրերու լեզուն է Հայերէնը, և այդ կարծիքին վրայ պնդելու համար՝ ո՛չ միայն Խորենացիի ցեղաբանական ժամանակագրութիւնը հիմ կը բռնէին, այլև կարգ մը ծիծաղելի ստուգաբանութիւններ, որոնք լեզուաբանա-գիտական ո՛չ մէկ օրէնքի կ'ենթարկուէին դժբաղդաբար* (1):

*Հայ լեզուի գիրքը ճշդելու համար հարկ է ուշ դնել օտար բանասէրներու յայտնած կարծիքներուն, որոնք թէ՛*

---

(1) *Հ. Ղուկաս Ինճիճեան բազմաշխատ Մխիթարեան հեղինակը* (1758-1833) *իր* Հնախօսութիւն Հայաստանեայցի *մէջ կը բացատրէ թէ զուտ հայերէն բառերը հայկական ծագում ունին, դրախտին մէջ շինուիլ սկսած են և առնուած են՝ կա՛մ բնութենէն և կամ կենդանիներու ձայներէն։ Հեղինակը կուտայ բաւական երկար ցանկ մը. բայց մենք կը բաւականանանք քանի մը զուարճալի օրինակներով, ինչպէս* արծիւ, առիւծ *(առնող և ծուող, յափշտակող, գիշատիչ),* աղուէս *(աղու ես),* կարիճ *(իրեն կպող),* աքաղաղ *(այգուն աղաղակող),* ճպուռն, ճնճղուկ, ճանճ, ճճի *և այլն (ատոնց ձայներուն մէջ տիրող ճը հնչումէն),* կռունկն, ագռաւ *(կըռ ձայնէն),* թռչուն *(թիւ ձայնէն),* բզէզ *(զը ձայնէն) և այլն: Այս բառերուն մեծ մասը ստուգաբանուած և գիտականօրէն բոլորովին տարբեր աղբիւր ցոյց տուած են: Հայր Ինճիճեան միակը չէ այս տեսակէտը պաշտպանող, վասնզի կան ուրիշներ ալ դարձեալ, որոնք քմածին ստուգաբանութիւններով գիտակցութիւններ կը մթնցնեն. զոր օրինակ.* աղջիկ *(ահ-չիք),* եկեղեցի *(եկ-եղիցի),* կանթեղ *(կայ-անդ-եղ),* Կիրակոս *(կրակը-հոս) և այլն:*

ուելի գիտական հիմունքներ ունին և թէ կշռաւոր են։ Առաջին օտար դէմքը, որ Հայ լեզուով զբաղեցաւ, Յօհ. Շրէօտէր անուն գերմանացի գիտնականն է, որ 1711ին հիմը դրաւ Հայ Լեզուաբանութեան։ Անոր սկսած գործը շարունակեցին հետզհետէ օտար և հայ բազմաթիւ լեզուաբաններ, ինչպէս Բեդերման, Վինտիշման, Գոյէ. Բօլ տը Լակարտ, Ֆրէտրիխ Միւլլէր, Բոպպ, Քիրովբէ Պատկանեան, Հ. Սեր. Վ. Տէրվիշեան, Հայնրիխ Հիւպշման, Բարթոլոմէ, Սոֆուս Բուգգէ, Ա. Մէյէ, Բրուկման, Բիւլերըն, Լեոնն և այլն։ Մինչեւ հիմա Հայ լեզուաբանութեան ծառայող գիտունները շատ են, բայց պանց կ'ընենք անոնց յիշատակութիւնը։

Հայ լեզուի դիրքին ճշդման խնդիրը զանազան կարծիքներու տեղի տուաւ.

1. Շատեր կարծեցին թէ Հայերէնը սեմական լեզու մըն է, խաբուելով անշուշտ իր մէջ գտնուող սեմական շատ մը տարրերէն, որոնք մտած էին լեզուին մէջ հրէական և ասորական ազդեցութիւններէ։

2. Կարգ մը գիտուններ ալ յունարէնին մերձեցուցին և կամ անոր մէկ ճիւղը համարեցին։ Յունական տարրերը շատ են Հայերէնի մէջ։ Քրիստոնէութենէն վերջ հելլենական մեծ ազդեցութիւն ստեղծուած էր Հայ լեզուին և ապա գրականութեան շուրջը։

3. Ուրիշներ Հայերէնի մէջ տեսնուած շատ մը իրանական,— պարսիկ, զենտ և պահլաւ,— բառերէ հետեւցնելով ինքնուրոյնութիւն չտուին և իրանեան լեզուներու մէկ ճիւղը համարեցին։ Հայ լեզուի իրանական տարրը կը բացատրուի պարսկական տիրապետութեան երկար շրջանով, որ կը հասնի մինչեւ Արշակունեաց թագաւորութեան անկումը և անիշխանութիւն։

4. Գերման գիտնական մը, Բրօֆ Ենսէն, որ հայերուն հիթիթներու կամ քետացիներու ժառանգորդներն եղած ըլլալու թէզը կը պաշտպանէր, Հայ լեզուն քետերէն համարեց և քանի մը քմածին ստուգաբանութիւններ ալ ըրաւ։ Բայց այս տեսութիւնն իր պաշտպանները չունեցաւ։

5. Արմէններու Փռիւգիայէն գաղթած ըլլալու աւանդութեան իբր հետեւանք, ոմանք ալ, առանց տեղեկութիւն ունենալու փռիւգական լեզուի մասին, Հայ լեզուն փռիւգական համարեցին։

6. Վերջերս ոմանք ալ Հայերէնը կեղտական, կովկասեան և ուրարտական կը համարէին։

Այս կարծիքները շրջան ըրին երկար ժամանակ։ Ա-

առաջին անգամ հայագէտ-լեզուաբան Հիւբշմանն էր որ ապացուցեց Հայ լեզուի Հնդեւրոպական լեզուաճիւղին պատկանիլը: Ուրիշներ եկան իր կարծիքը հաստատել: Անիկա բաւական չէր սակայն, վասնզի ասով Հայ լեզուի դիրքը չէր ճշդուեր: Խարխափումներ ունեցան լեզուաբաններ, բայց վերջապէս Հիւպշման 1875ին ջախջախիչ փաստերով քննեց, հաստատեց եւ յայտարարեց թէ Հայերէնը Հնդեւրոպական լեզուներուն մէջ այս կամ այն ճիւղին մէկ բարբառը չէ, այլ՝ ինքնուրոյն ճիւղ մը եւ լեզու մը, որ անկախ է բոլորովին յունարէնէն կամ պարսկերէնէն: Հիւպշմանէն վերջ այս միտքը իւրացուցին լեզուաբաններ, անշուշտ նորանոր ապացոյցներով հաստատելով յայտնուած հեղինակաւոր կարծիքին մէջ: Եւ այժմ Լեզուաբանութիւնը լեզուներու դասակարգութեան ցուցակին մէջ Հայերէնը դրած է յունական և իրանեան լեզուախումբերու ճիշդ մէջտեղը:

Գիտական այս կարծիքները, որոնք յայտնուած են Հայ լեզուին մասին, կրնանք ամփոփել հետեւեալ կերպով.

1. Հայերէնը հնդեւրոպական լեզու մ'է։ Իր մէջ գտնուող զանազան տարրեր՝ փոխառութիւններ և խնամութիւններ են, որոնք դարերու ընթացքին մէջ տեղի ունեցած են քաղաքական, ընկերային, տնտեսական ու քաղաքակրթական յայտնի կամ ուսումնասիրելի պայմաններու մէջ։ Այսպիսի երեւոյթներ, առաւել կամ նուազ համեմատութիւնով, սովորական են շատ մը լեզուներու համար ալ։

2. Հայերէնը, իբրեւ լեզու և բարբառ, պէտք զետեղուի յունարէնի և պարսկերէնի մէջ, ոչ թէ իբրեւ ստորադաս գաւառաբարբառ մը, այլ՝ ինքնուրոյն անկախ լեզու մը։

3. Հայերէնը իր կազմութեամբ, բառագիտութեամբ և քերականութեամբ արեւմտեան լեզուներու շարքին մէջ է, բայց իր առոգանութեամբ ու արտասանութեամբ արեւելեան է՝ ազդուած իր միջավայրէն։

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ՀՆՈՒԹԻՒՆԸ.—

Եթէ հաւատ ընծայենք Մարաբասեան աւանդութեան, որ Մովսէս Խորենացիի հռչակաւոր Պատմութեան միջոցաւ մեզ հասած է, պէտք գտնենք որ Հայ ազգը, ինչպէս

նաեւ իր լեզուն ունի՛ն անբաղդատելի հնութիւն մը։ Սակայն այն օրէն ի վեր, երբ քննական պատմութիւնը իր կռուածները փաստերու վրայ հիմնեց, մենք պարտէինք այլեւս ազգային կարգ մը հին խնդիրներու արդիական և քննական ուղղութեամբ մօտենալ։

Այս տեսակէտով Հայ լեզուն իր հնութիւնը հաստատող գիտական հանգամանքներ կը ներկայացնէ՞։

Ցաւակնաբար Հայ լեզուին համար ճշմարիտ դժբաղդութիւն մըն է որ վաւերական որեւէ միջոց կը պակսի՝ գրի գիւտէն և Հայ Մատենագրութենէն առաջ գոյութիւն ունեցող Հայերէն լեզուին վիճակը գիտնալու և ճշդելու համար։ Բանասիրական աշխարհը անկարող կը գտնուի ուսումնասիրելու Հայ լեզուն, որովհետեւ գրաւոր մնացորդներ կամ յիշատակարաններ չկան։ Հայ Գրականութիւնը, սկսած ըլլալով Ե. դարուն, կը պատկերացնէ մի՛միայն նոյն ատենուան Հայ լեզուն՝ բնականաբար յղկուած և իր ագնուագոյն վիճակին մէջ։ Հայաստանի սեպաձեւ արձանագրութիւնները մասամբ գուցէ լուծում տային այս հարցին, եթէ կարելի ըլլար զանոնք կարդալ Հայ լեզուով։ Նոյն իսկ հիմնուելով Ե. դարու մատենագրութեան վրայ, կրկին հնարաւորութիւն չունինք ունենալ Հայ լեզուին վիճակը ճշդելու, վասնզի կարելի չէ լեզուական բացարձակ միութիւն ենթադրել հայոց մէջ, երբ այլեւայլ պայմաններ անշուշտ պիտի գային փոփոխութիւններ դնել և գաւառաբարբառներ առաջացնել, և ոսկեդարի ոստանիկ լեզուով՝ Հայ լեզուն հանգամանօրէն ուսումնասիրած ըլլալու հաճոյքը չպիտի կրնայինք ունենալ։ Հայ լեզուի պատմութեան ընթացքին մէջ Հայերէնը կը նմանի մանուկի մը, որ աշխարհ կու գայ՝ մեծցած, զարգացած և կատարելագործուած։ Ե. դարէ առաջուան երեւոյթներու մասին ենթադրութիւններէ զատ ո՛չ մէկ բան կրնայ ըսուիլ։

Հայկական այդ հին շրջանի ու բանահիւսութենէն մեզի ժառանգ մնացած են քանի մը ազգային երգեր ու

դիւցազներգութիւններ, որոնք Գողթն գաւառի բանաստեղծական քնարին արդիւնքն են։ Եթէ անոնց ամբողջութիւնը գրի առնուած ըլլար, ինչ սխրալի և հոյակապ նախնի գրականութիւն մը պիտի ունենայինք այսօր. բայց տարաբաղդաբար Գողթան երգերը դարեր վերջը միայն գրի առնուած են մատենագիրներու կողմէ, որոնցմէ գլխաւորագոյնն է Խորենացի։ Այս փշրանքները Հայ լեզուի ուսումնասիրութեան տեսակէտով ինքնին զօրաւոր կըռուան մը չեն կրնար ըլլալ, իրենց հնանալի լեզուով իսկ, որովհետեւ կրնայ առարկուիլ թէ Խորենացի զանոնք յղկած և ապա զետեղած է իր պատմութեան մէջ։ Գողթան երգերէն զատ իրաւամբ մեր լեզուին ու՛ տոհմային մատենագրութեան գանձը պիտի կազմէին մեր մեհենական պատմութիւններն ու Նախաքրիստոնէական (հեթանոսական) գրուածքները, որոնց կորուստին պատճառ կը համարուի հին դարերու մոլեռանդութիւնը։ Տակաւին կարելի է անդրադառնալ Դ. դարուն մէջ ապրող քանի մը մատենագիրներու գործերուն (Լուսաւորչի Յաճախապատումը, Ագաթանգեղոսը, Բիւզանդ Փաւստոսի Պատմութիւն Հայոցը և այլն) վրայ, որոնց լեզուին հայերէն կամ յունարէն ըլլալը խնդրական ըլլալով հանդերձ չենք վարանիր ըսել թէ Հայ լեզուի պատմութեան տեսակէտով ո՛չ մէկ բաւարար լուծում կու տան խնդրոյն, քանի որ ո՛չ հին բնագիրներ ունինք մեր ձեռքը և ո՛չ ալ որոշ ապացոյցներ՝ հայերէն ըլլալուն, իսկ առանց հայերէն գըրուած ըլլալու արդէն անոնք ալ ո՛չ մէկ լուսաբանութիւն կրնային տալ։

Այն զօրաւոր ենթադրութիւնը, որ կ'ունենանք ոսկեդարի լեզուին կատարելութենէն և ճոխութենէն, միայն կրնայ առաջնորդ մը ըլլալ ընդունելու թէ Հայ լեզուն զարգացման ընդարձակ շրջանէ մը անցած էր։ Այդ զարգացման մէջ հարկաւ դեր ունէին նաեւ Դ. դարու հայ քարոզիչներու քրիստոնէական եկեղեցին քարոզութիւնները, որոնցմով անոնք ալ մէկ դարու մէջ լեզուն բառ

բառական մշակոյթին, բայց այնուամենայնիւ Հայ լեզուին հնութիւնը երբեք տարակոյսի տակ չմնար այս կերպով:

Կը տեսնենք ուրեմն թէ գրաւոր համոզիչ ապացոյցներ չունինք ի ձեռին՝ ճշդելու համար Հայ լեզուին նախամեսրոպեան վիճակը, բայց քանի մը բեկորներէ և ենթադրութիւններէ: Լեզուաբանութիւնը սակայն պիտի կրնար այս մասին ծառայութիւն մը ընել՝ իր փորձաքարով գտնելով ոսկեդարեան քերականութեան ու բառերու գիտական արժէքը: Այն ատեն ահաւասիկ երբ ճշմարտութեան սիրոյն ժխտենք ազգային ունայնութիւններու պատմականութիւնը ու մեր ցեղային հպարտութիւնը փայփայող կարծիքները, որպիսին են Հայ լեզուին դրախտայնութիւնը, Հայկազանց շրջանի անուններու (Հայկ, Արմենակ, Գեղամ և այլն) քմահաճ ստուգաբանութիւնը և այլն, գոնէ կրնանք գիտութեան խղճամիտ ու ճշգրիտ նպատակներն ընդունիլ: Լեզուաբանութիւնը, գիտենք թէ, ունի իր որոշ օրէնքները, որոնք կրնան բառի մը կամ քերականական օրէնքի մը իսկութիւնը ճշդել: Հոս խուսափելով մանրագիտական բացատրութիւններէ, համառօտակի ըսենք որ Հիւպշման ունի գիտական ապացոյցներ, որոնք կը հաստատեն թէ Հայ լեզուն գոյութիւն ունեցած է երկար դարերէ ի վեր, նոյն իսկ պարթեւներէ շա՛տ առաջ: Ասիկա կը հաստատուի կարգ մը փոխառութիւններէ, որոնք քրիստոնէութենէ շատ առաջ եկած են պահլաւերէնէ, և որոնք մեր մէջ պարսկերէնէ փոխառութիւն ճանչցուած են:

Մենք փաստերը բաւարար կը համարենք Հայ լեզուի հնութիւնն ընդունելու համար:

## ԳՐԱԲԱՐ, ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆ, ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԵՒ ՀԱՅ ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌՆԵՐ.—

*ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ԲՆԱԿԱՆ ԸՆԹԱՑՔԸ.—* Փոփոխութիւնը և իրարու յաջորդութիւնը լեզուներուն բնական

ընթացքն են։ Լեզուն կ'ունենայ ծնունդ, մանկութիւն. երիտասարդութիւն, չափահասութիւն, ծերութիւն և մահ, ճիշդ մարդկային կեանքին պէս։ Մանուկ լեզուներ երբեմըն կը զարնան տակաւ հսկայ տիրապետողներ, առոյգ ու կենսալից, և երբեմն ալ չափահասութեան շրջանին մէջ գտնուող լեզուներ կը մեռնին յանկարծ՝ տեղի տալով անոր, որ աւե՛լի եւս կը յարմարի ժամանակին պահանջումներուն։ Սա ընդհանուր օրէնք է, և կարելի է ըսել թէ Հայ լեզուն չէ՛ր կրնար բացառութիւն կազմել երբ մանաւանդ յարաժամ փոփոխականութեան և զանազանակերպ ճակատագրականութեանց ենթակայ ժողովուրդի մը լեզո՛ւն էր անիկա։ Արդարև Հայաստանի բնական միջավայրը, անոր ընդհանուր նկարագիրը, քաղաքական տիրապետութիւնները պատմութեան ընթացքին մէջ, գիրար բացառող քաղաքակրթական հոսանքները, տնտեսական կեանքին զարգացումը, ընկերային կեանքի այլ և այլ երևոյթները, դասակարգային դրութիւնը, աւատապետական կազմակերպութիւնը, կրօնային հաստատութիւններն ու իրարու յաջորդող ազդեցութիւնները տարբեր հանգրուաններու չէ՛ որ կրնային հասցնել Հայ լեզուն։ Ու ինչ որ կ'երևայ այսօր լեզուի պատմութեան ձևով ու երևոյթներով՝ բնական ու տրամաբանական արդիւնքն է հայ կեանքը շրջապատող պայմաններուն։

ԳՐԱԲԱՐ ԵՒ ԳԱՒԱՌԱԲԱՆՆԵՐ. — Աւելորդ է ըսել թէ Հայերէնը գրականութենէ՛ն առաջ բանաւոր լեզու մըն էր արդէն։ Իր հնութեան մասին շատ որոշ և վճռական սահման մը ցոյց տալու անկարելիութիւնը պատճառ մը չէ սակայն ժխտելու իր պատկառելի հնութիւնը, ինչ որ գիտական փաստերով իսկ կ'ապացուցուի։ Հայերէնը կրնայ փոխուած ըլլալ, կրնայ զանազան բարբառներու ծնունդ տալ, բայց չմեռնիր, վասնզի հայ ժողովուրդը չէ մեռած։ Քրիստոնէութեան Հայաստան մտնելէն վերջն է որ ասորական և յունական ազդեցութիւնները սպառնալից և ձուլիչ հանգամանք մը կ'առնեն. Հայ

Գրի պէտքը կը տեսնուի և գրաբար լեզուն կը դառնայ գրական լեզու։ Բայց գրաբարը ամբողջ հայերէն լեզուն ըսել չէր. վանքի անիկա գաւառի մը, նահանգի մը և կամ, ըստ ոմանց, դասակարգի մը լեզուն էր միայն, խակ ամբողջ Հայաստանը իր աշխարհագրական դիրքով ու ընկերային, տնտեսական ու քաղաքական պայմաններուն բերումով անկարելի էր որ գաւառաբարբառներ չունենար։ Նոյն իսկ ուրարտական հին թագաւորութիւններ, որոնք անկարելի է որ լեզուի նոյնութիւն ունենային, պիտի ազդէին անշուշտ եկուոր հայերուն վրայ և անոնց լեզուն ճիւղաւորէին, եթէ նոյն իսկ մէկ էր։ Եւ յետոյ Ե. դարու գրական մեծ յեղաշրջումը բնականաբար կարելի չէր որ անմիջական ազդեցութիւն գործէր ժողովուրդին բոլոր դասակարգերուն վրայ ալ։ Ընտանեկան կամ ռամկօրէն բարբառը, իր զանազան տարբերութիւններուն մէջ կրկին կը շարունակուէր ամբոխին մէջ։ Տրամաբանական այս եզրակացութիւնը բաւական էր արդէն հայ գաւառաբարբառներու գոյութեան համար, եթէ նոյն իսկ Հայ Մատենագրութիւնը շօշափելի փաստեր չտար։ Պահ մը մէկ կողմ թողելով այն՝ որ գիտական հետազօտութիւններ և կամ ազգ. բանասէրներ կը հաստատեն թէ նոյն իսկ Ոսկեդարի հայերէնին մէջ կան գրաբարին հետ միաժամանակ Հայաստանի մէջ կեանք ունեցող ռամկական լեզուներու կամ լեզուի մը տարրեր, մենք հոս մատենագիրներէն կրնանք վկայութիւններ ձեռք բերել։ Աւելի՛ պիտի ըլլային անշուշտ մեր փաստերը՝ եթէ հայ գիրը Քրիստոնէութեան պարտական չըլլալով հին արձանագրութիւններ կամ յիշատակարաններ ունենայինք։ Դիւրին պիտի ըլլար դարձեալ, եթէ ոսկեդարեան մատենագիրներ տարբեր տարբեր դպրոցներու պատկանէին և իրենց լեզուներուն մէջ ժամանակի բարբառներուն զանազանութիւնը ցոլանար։ Կորիւն (Ե. դար) Մարաց կողմերը բնակողներուն համար կ'ըսէ թէ կրթութեան և ուսման դժուարընտել էին իրենց «խեցբեկագոյն և

խոշորագոյն» լեզուին համար (1)։ Խորենացի «հայկական լեզուաց» բացատրութիւնը կը գործածէ (Պատմ. Գ. ԾԲ.)։ Նոյն դարու պատմագիր Ղազար Փարպեցիի պատմութիւնին ու Թուղթ առ Վահան Մամիկոնեանին լեզուները իրարմէ տարբեր են բոլորովին, որովհետեւ վերջինին մէջ ռամկանալու ամփոփուած է՝ Վահանին աւելի՛ եւս հաճելի ըլլալու համար։ Այս խնդրոյն շուրջ ամենէն լուրջ և վճռական վկայութիւնը Յովհան Երզնկացիինն (ԺԴ. դար) է (2)։

ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆ. — Հայկական այս գաւառաբարբառներէն մին է անուանի Նախնեաց Ռամկօրէնը, որ իբրեւ ժողովրդական և դիւրահասկնալի լեզու՝ Գրաբարին տեղը բռնեց խօսքի և գրականութեան մէջ և քաղաքացիացաւ վերջապէս ԺԲ. դարուն, հակառակ այն համոզումին թէ ռամկօրէնով խօսիլ բայց գրաբարով գրել պէտք է։ Առաջին ռամկօրէն գիրքը այդ դարուն մէջ գրուեցաւ, բայց ասկէ չ'հետեւիր թէ ռամկօրէնն ալ այդ դարուն մէջ ստեղծուեցաւ։ Ռամիկը հետու կ'ըլլայ

(1) Ահաւասիկ պատմագրին խօսքերը նոյնութեամբ. «Հրաման առեալ ի Թագաւորէն՝ սկիզբն առնելոյ զխուժադուժ կողմանն Մարաց, որք վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին դժուարաւ ատոյցք էին. առեալ պարզախօս, հռետորաբանս կրթեալս... կացուցանէր... մինչեւ բնաւ արտաքոյ իւրեանց բնակութեանն զերծանել։ Եւ ի ձեռն առեալ այնուհետեւ... գաւառաբանական արուեստն ի թարգմանել, ի գրել և յուսուցանել» (Կորիւն, էջ 12)։ Այս վկայութիւնը թէեւ Ե. դարուն համար է, բայց կը տարածուի հին դարերու վրայ ալ, որովհետեւ մէկ կամ երկու դարու մէջ բարբառ մը չվայրենանար կամ չկերպարանափոխուիր։

(2) Այս գիտնական վարդապետը յոյն քերական Դիոնեսիոս Թրակացիին Քերականութեան Մեկնութեան մէջ, զոր յօրինած է, յունական լեզուի գաւառաբարբառները (դորացի, եօլացի, յոնիացի) բաղդատութիւնն ընելով անոնց սահմանակից եղող (եզերակից) կոր ճալեզուները յիշած ատեն օրինակ կը բերէ հայոց սահմանագլուխ գաւառներու անունները և կարգ մը լեզուներ կը յիշատակէ ըսելով. զԿորճայն, զՏայեցին, զԽութայեցին, զՉորրորդ Հայեցին, զՍպերացին զՍիւնիս, զԱրցախայինս և այլն։ Գարագաշեան կը մերժէ այս վկայութիւնը։

գրական նրբութիւններէ։ Ան կ՚ուզէ լեզուն պարզել· ուստի հին ու նոր ձեւեր, բառեր, ոճեր եւ այլն գործածութեան կը մտնեն։ Ռամիկին համար աւելորդ բաներ են քերականական ոլորճութիւնները։ Կը խորշի ձեւաշատութիւններէ ու կը գործածէ պարզ ու միակերպ ձեւեր՝ պարզուած հոլովներով, լծորդութիւններով, բայի ժամանակներով, սղուած, ամփոփուած կամ կրճատուած բառերով եւ այլն։ Նոյն երեւոյթը կայ նաեւ ռամկան լեզուները, նոր յունարէնին, նոր գերմաներէնին, նոր արաբերէնին եւ նոր հնդկերէնին մէջ։ Երբ անգամ մը ձեւերու ու ճոխութիւններու յաճախութիւնը վերնայ, այլեւս իրարու յաջորդող սերունդներ հետզհետէ իրենց նախնիքներու լեզուէն կը հեռանան եւ շատ դժուար կը գտնեն այդ հին լեզուները ուսումը, վասնզի ուրիշ լեզու մը, նոր քերականութիւն մը՝ աւելի կանուխ եւ աւելի մօտէն իրենց ընտանեցած կ՚ըլլայ։ Միջնադարեան Հայերէն կամ Նախնեաց Ռամկօրէն կոչուած ժողովրդական բարբառը սակայն Կիլիկեան բարբառն է, որ պաշտօնականութիւն ստացաւ Ռուբինեանց իշխանութեան օրով։ Մինչեւ հիմա ռամկօրէնով գրուած հրովարտակներու պատճէններ, առեւտրական դաշնագրեր, մուրհակներ եւ այլն կը գտնուին։ Սա աւելի գրաբարի մօտ էր, բայց գրաբարին աղաւաղումը չէր։ Միջնադարեան ռամկօրէնը ապա ԺԴ.— ԺԶ. դարերու մէջ մշակուեցաւ աշուղներու կամ երգիչներու կողմէ, որոնք աքանչելի նպաստաւորութիւն բերին հայ լեզուին՝ ռամկօրէնը կամ աշխարհաբարը թէ տարածելով, հասարակականացնելով եւ թէ գործածութեամբ հետզհետէ զարգացնելով։

ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀԱԲԱՐԸ.— Դարեր անցան։ Հայկական կեանքի փոթորիկներուն հետեւանքով հայութեան մեծ հատուածներ գաղթեցին Հայաստանէն, հայութեան կեդրոնէն, իրենց հետ տանելով իրենց գաւառի բարբառը, սփռուեցան ամեն կողմ։ Լեզուն փոխուեցաւ հետզհետէ եւ ահա ԺԸ. դարուն մէջ մշակուեցաւ Արդի Աշխարհա-

քարը, որ Կ. Պոլսոյ և փոքր Ասիոյ Արեւմտեան գաւառներուն ու Փոքր Հայքի գաւառաբարբառներուն մէկ երանգաւորումն է պարզապէս և ո՛չ թէ գրաբարի աղաւաղումը, ինչպէս ազնուաբար ենթադրեցին ոմանք։ Ո՛չ Նախնեաց Ռամկօրէնը և ո՛չ ալ Սրգի Աշխարհաբարը այլայլուն մէկ ձեւն են գրաբարին, այլ առանձինն և անկախաբար գոյութիւն ունեցող բարբառներ։ Զանազան գաւառներու բարբառները գրի առնուած ժամանակ անտեսուեցան թէ անոնց մէջ ինչ նորը երանգաւորումներ և յատկանշական բառեր, քերականական ձեւեր, ոճեր և այն կան, զորս կ'արժէ գրաւոր լեզուին մէջ մտցնել։ Հայ գաւառաբարբառները և մանաւանդ Աշխարհաբարի ուսումնասիրութեան գործին մէջ մեծ հեղինակութիւն ունեցող Հ. Ա. Այտընեան իր Քննական Քերականութիւն անուն հոյակապ գործին մէջ գաւառաբարբառներու դասակարգութեան փորձ մը ըրած էր արդէն՝ չորս գլխաւոր բաժանումներու ենթարկելով զանոնք։

1. Առաջին միջին գաւառական (Վան, Միջագետք ևայլն։
2 Երկրորդ » » (Կ. Պոլիս, Փոքր Ասիա).
3. Արեւմտեան » (Լեհաստան Արդեալ).
4. Արեւելեան » (Ռուսաստանէն Հնդկաստան).

Ամփոփ կերպով տանք անոնց յատկութիւնները(1)։

1. Ա. ՄԻՋԻՆ ԳԱՒԱՌԱԿԱՆ — Ասոր յատկութիւնն է առատութիւն սեփական ընտիր բառերու և ոճերու, որոնք մեծ մասամբ ազգային հնութիւններ են, թէպէտև լեզուն իր աղոյց հնչումը կորսնցուցած է՝ գռեհիկ արտասանութիւններով։

2. Բ. ՄԻՋԻՆ ԳԱՒԱՌԱԿԱՆը կրնայ ամէնէն կանոնաւորն համարուիլ, թէեւ բազմամասամբ միւսներուն՝ հարուստ չէ բառերու և բացատրութիւններու կողմանէ։ Ասիկա ի վերջոյ Կ. Պոլսոյ գրական-մատենագրական լեզուն դարձաւ։

3. Գ. ԳԱՒԱՌԱԿԱՆը բացատրութիւնով աղքատ, քերականութիւնով թերակատար և հնչումով աղաւաղ է, և այսօր մոռացութեան դատապարտուած է բոլորովին։

4. Դ. ԳԱՒԱՌԱԿԱՆը, որ կը կոչուի մանաւանդ Ռուսահայերէն, գրեթէ միւսներէն անկախ ինքնութիւնով օժտուած՝ Կ. Պոլսոյ Աշխարհա-

(1) Մանրամասնութիւններ ու նմոյշներ գտնել Հ. Ա. Այտընեանի «Քննական քերականութեան» մէջ (էջ 161-236)։

բարին առաւելութիւնն ունի։

Այս գաւառականներէն չորսն ալ օտար լեզուներու և մասնաւորապէս Թուրքերէնի ազդեցութեան խոր դրոշմը կը կրեն։

Հայկական բարբառները գլխաւոր երկու մեծ խումբ ունին այժմ։

1. ԱՐԵՒՄՏԵԱՆ= Տաճկաստան և Եւրոպա.

2. ԱՐԵՒԵԼԵԱՆ= Ռուսաստան — Հնդկաստան.

1. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԲԱՐԲԱՌ.— Այս խումբին կը պատկանին արեւմտեան գրական լեզուն և Կ. Պոլսոյ, Արսլանպէկի, Եւդոկիոյ, Էրզրումի, Երզնկայի, Մոկսի, Խարբերդի, Տիգրանակերտի, Ալաշկերտի, Պէյլանի, Ախլցխայի, Նոր Նախիջեւանի, Խրիմի, Լեհաստանի, Սեբաստիոյ, Շ. Գարահիսարի, Ամասիոյ ու Մարզուանի եւայլն բարբառները։

2. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԲԱՐԲԱՌ.— Այս երկրորդ խումբէն են՝ Կովկասի գրական լեզուն և Աժտէրխանի, Թիֆլիսի, Երեւանի, Ղարաբաղի, Ագուլիսի, Մուշի, Վանի ու Հնդկաստանի բարբառները.

Արդի աշխարհիկ գրաւոր լեզուները կենսունակութիւն ունին և ընդունակ են ամեն տեսակ առաջդիմութեան։ Իրենց շարադրութիւնն ալ աւելի պարզ է քան գրաբարինը, ուստի և իրենց ուսուցումն ալ աւելի դիւրին է։

ԱՆՈՆՑ ԴԻՐՔԸ.— Միջնադարեան Ռամկօրէնի և Արդի Աշխարհաբարի դիրքը Լեզուաբանութեան մէջ ճշդելու համար բաւական տարակարծութիւններ առեղծուած են թէեւ, առաւելապէս անոնց արտաքին Թուրանական երեւոյթին հետեւանքով, սակայն այսօր այլեւս վերջացած խնդիր մըն է թէ, ինչպէս Գրաբար Հայերէնը նոյնպէս ալ Ռամկօրէնն ու Արդի Աշխարհաբարը Հնդեւրոպական լեզուներ են։ Թուրք-Թաթարական ցեղերու դարաւոր տիրապետութիւնը, Հայաստանի վրայ, խորապէս ազդած է անոնց և նոյն իսկ կազմը յեղաշրջած, այնպէս որ այսօր իսկապէս Աշխարհաբարի շարադրութեան ձեւը տարբեր է բոլորովին Գրաբարէն, ինչպէս,.

Ես տեսի զթռչունն, որ երգէր ի վերայ ծառոյն.

J'ai vu l'oiseau qui chantait sur l'arbre.

I saw the bird who was singing on the tree.

آغاجك اوستونده اوتن قوشی كوردم

Ծառին վրայ երգող թռչունը անոյշ.

Սակայն այս երեւոյթը մեզ պէտք չէ խաբէ: Հայ լեզուն ո՛չ միայն Թուրք-թաթարական դրոշմ ունի, այլեւ՝ բազմատեսակ ազդեցութիւններու ենթարկուած է եւ կը պարունակէ բազմազան տարրեր՝ շատ սերտ փոխ-յարաբերութիւններ ունենալով այն ժողովուրդներուն կամ պետութիւններուն հետ, որոնք իրենց լեզուէն փոխառութիւններ ըրած են Հայերէնին եւ փոխադարձաբար: Առանձինն պիտի տանք արդէն այն տարրերը, որոնք գոյութիւն ունին հայերէն լեզուին մէջ իբրեւ ազդեցութիւններ. անցողակի յիշատակենք միայն ուրարտականը, ասորականը, պարսկականը, հռոմէականը, հրէականը, յունականը, արաբականը, լատինականը, տաճկականը, ֆրանսականը, անգլիականը եւ այլն:

ԳՐԱԲԱՐԻ ՈՒՍՈՒՄԸ .— Այժմ Գրաբարը դադրած է ապրելէ եւ երկու աշխարհիկ լեզուները (արեւմտեան եւ արեւելեան հայերէնները) են տիրապետողները, բայց եւ այնպէս Գրաբարի ուսումն ալ զուրկ չէ շահեկանութենէ՝ 1. Իբրեւ եկեղեցական լեզու, 2. Իբրեւ յանձնարարելի միջոց հին հայ մատենագրութեան գանձերն ըմբոշխնելու վայելքին, 3. Իբրեւ տոհմային պատմութեան թանկագին յիշատակարաններու բարբառ, եւ 4. Իբրեւ բանասիրական կարեւորութիւն ունեցող լեզու:

ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՈՒՍՈՒՄԸ .— Գրաբարի եւ Թամկօրէնի ու Աշխարհաբարի պայքարը դարեր տեւած է: Դիւրութեամբ տեղի տուած չէ Գրաբարը, որ մինչեւ ԺԹ. դարու կէսերը դպրոցներու մէջ միակ լեզուական ուսումն էր: Հակառակ Աշխարհաբարի ծաւալման եւ նուաճումներուն՝ գիտունները զայն կ'արհամարհէին՝ իբրեւ քերականութեան եւ բարձր համակրութեան անարժան լեզու մը: ԺԹ. դա՛րը միայն տուաւ Աշխարհաբար Քերականութիւններ: Առաջին անգամ Ստեփան Ոսկան Աշխարհաբարը Իզմիրի մէջ հայ դպրոցներէն ներս մտցուց 1860ին: Հիմա մեծ տեղ կը տրուի աշխարհիկ լեզուի ուսման եւ

ամբողջ գրական շարժում մը այն լեզուներով կ՚ըլլայ՝ սահմաններն երկու կողմն ալ։

## ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԱՐՇԱԼՈՅՍԸ.—

Հայ լեզուի պատմական շրջանի արշալոյսը պէտք է փնտռել Դ. դարուն մէջ։ Իրաւ է թէ հին ժամանակներու մէջ եւս այս ու այն ուղղութեամբ աշխատութիւններ կատարած էին, սակայն այս դարուն վերապահուած էր կարծես ամենադարի փառաւոր ճամբուն յառաջդիմութիւնը։ Աւանդութիւնը կ՚ըսէ թէ Վաղարշակ՝ Արշակունեաց առաջին թագաւորը, Հայաստանի մէջ շատ մը փնտռտուքներ կատարեց՝ հայոց պատմութեան վերաբերեալ դրութիւններ գտնելու համար։ Արտաշէս հրաման հանած էր որ իր պետութեան սահմաններուն մէջ ապրող բոլոր ժողովուրդները հայերէն խօսին։ Նոյնը կ՚ըսուի նաեւ Մեծն Տիգրանի մասին։ Գողթան երգերը ոչ նուազ զօրաւոր միջոցներ էին անշուշտ՝ հայերէնը տարածելու համար։ Եւ սակայն ատոնց ո՛չ մէկը տեւական եւ մնայուն նպաստ մը բերաւ հայերէն լեզուին։

Աննախանձելի էր հայոց քաղաքական կեանքը Դ. դարուն մէջ եւ սակայն բոլորովին նոր հոսանք մ՚էր որ կ՚ողողէր Հայաստանը։ Դարուն սկիզբը (301) Քրիստոնէութիւնը մտաւ հայոց մէջ, արքունիքին միջոցաւ եւ պաշտօնական կրօնք հռչակուեցաւ։ Արդէն ամեն կողմ քրիստոնէական ոյժին յաղթանակը կը տեսնուէր։ Քրիստոնէական կեդրոններ դարձած են՝ Աղեքսանդրիա, Անտիոք, Եդեսիա, Հռոմ եւայլն։ Արեւմուտքի մէջ ամեն կողմ մեծ ազդեցութիւն կայ եւ արեւելեան ժողովներու հետաքրքրական շրջանը բացուած է։ Հայաստան անկէ առաջ ալ քարոզիչներ ունեցաւ, բայց անոնք զինուորական ոյժ չունէին։ Լուսաւորիչ Տրդատին ու բանակին կռթնած էր այս անգամ։ Կային սակայն ընդդիմադիր տարրեր, որոնք հեթանոսութեան կուսակից էին։ Սակայն բնական էր, վաղեմի մտաւոր եղբայրակցութիւն կար հայերու եւ պարսիկ-

ներու մէջ և պարթեւական գերիշխանութեան տակն աւելի՛ եւս սերտացած էին յարաբերութիւնները։ Բանի ուժը կուգար ուրեմն ճզմել այդ դասակարգը։ Եւ յիրաւի, եթէ դիմենք մեր պատմիչներէն մասնաւորաբար Ագաթանգեղոսի, կը տեսնենք թէ Քրիստոնէութեան տարածման վրայ խօսած ժամանակ տարօրինակ եռանդով մը կը պատմէ թէ «Ս. Գրիգոր եւ իր երանելի յաջորդները Հայաստանի ամեն մէկ անկիւնը պտտելով՝ մեհեանները կը կործանէին, քուրմերը կը հալածէին, մեհենական զարդերը կ՚ոչնչացնէին, հեթանոսական սպասները, քանդակներն ու գրուածները կ՚անհետացնէին»։ Ի հարկէ այրուած կամ քանդուած մեհեաններուն հետ անհետացան նաեւ հեթանոսական և մեհենական բոլոր գիրքերն ու յիշատակարանները, քանի որ ամեն ատեն սրբազան վայրերու մէջ կը պահուէին անոնք։ Սոսկալի էր ազդուութիւնը և նոր կրօնքին անունով ցոյց տրուած այս մոլեռանդութիւնը։ Հեթանոսական բոլոր տօները խառնուեցան քրիստոնէականներու հետ՝ որպէսզի չնջուէր ամեն յիշատակ։ Լուսաւորիչ անմիջապէս շատ մը դպրոցներ բացաւ և հիմնեց վանքեր ու մենաստաններ, որպէսզի նոր կրօնքին համար առաքեալներ պատրաստէ։ Օտար լեզու և օտար ուսմունք հեղեղեցին ամեն կողմ և վերջապէս յունական–ասորական դպրոցը տիրապետեց։

Պէտք է խոստովանիլ սակայն, թէ առանց ասորիներուն՝ Քրիստոնէութեան ճամբան հարթուած չպիտի ըլլար։ Ասորական ազդեցութիւնը, որ եկեղեցական—գրական է միայն, կը սկսի Բ. դարէն հաւանաբար միջագետացի գաղթականներուն միջոցաւ։ Արդէն հայոց ու ասորիներուն միջեւ խնամութիւն շատ կար։ Հայերը շատ բան հիւրընկալած էին ասորիներու պատմութենէն. կ՚ըսուէր նոյն իսկ թէ հայոց ու ասորիներու Նախահայրը Ադամ է։ Այս պատճառաւ ասորիներ հինէն իսկ հայոց պատմութեան մասին գրեցին, ինչպէս Ղերուբնա, Բարդածան, Զենոբ Գլակ, Մարիբաս Կատինա եայլն։ Խորե-

նացին շատ մը եդեսական յիշատակարաններէ օգտուած է։ Ասորական կեդրոններ էին Քրիստոնէութեան ատեն՝ Եդեսիա և Մծբին։ Ասորիներ Աստուածաշունչը թարգմանած էին դեռ Բ. դարուն (200ին)։ Քրիստոնէական և այլ ուսուցումներէն հայոց մէջ ամենէն առաջ ասորականը կը զօրանայ և կուտայ առաջին գործերը (Աւետարան և Աբգարու Զրոյցը) և Ս. Գիրքի միւս մասերը՝ ասորական թարգմանութեամբ։ Նոյն լեզուով կը գտնուի նաև Հայաստանի պատմութիւն մը, որ, ըստ Բիւզանդի՝ կը սկսէր Թադէոս առաքեալի գործունէութենէն և կը հասնէր Տրդատի մահն ու Սանատրուկին գործերը, և որ ամբողջապէս կորսուած է, բացի Ագաթանգեղոսի և Բիւզանդի մէջ գրուած հատակտորներէն և Սանդուխտի վըկայաբանութիւնէն։ Կասկած չկայ թէ շատ թանկագին էր այս գործը, որուն հեղինակը օգտուած էր հայոց մեհենական դիւցազներէն և գողթան երգերէն։ Շատ մը քըրիստոնեայ ասորի գործիչներ կան, ինչպէս Յակոբ Մըծբընացի, Դանիէլ Ասորի և այլն, որոնք եռանդուն կերպով կը գործէին Հայաստանի մէջ։ Ամենէն առաջ ասորի հայրերն ու գրուածները թարգմանուած էին հայերէնի, ինչպէս Ս. Եփրեմ, Եւսեբիոս, Զգօն, Ղերուբնա, Պօղոսի Գ. Թուղթ Առաքելոց և այլն։ Ասորի դպրոցները և դէմքերը շատ մեծ ազդեցութիւն գործեցին հայ մտքին, լեզուին ու գրականութեան վրայ։ Անոնց կատարած գործին մասին շատ քիչ բան գրուած է, որովհետև ընդհանրապէս մատենագիրներ ու պատմիչներ յունական ոգիով տոգորուած էին, և մանաւանդ ասորիները առանց սուրի գործած ըլլալով՝ առաջնութիւնը յունաց մնացած էր։

Ամբողջ Դ. դարուն մէջ Քրիստոնէութեան ու Հեթանոսութեան մրցումը կը շարունակուի առաւել կամ նուազ ակնյայտ։ Գրիգոր Լուսաւորիչ և իր տոհմը՝ յունական առաքելութեան զինուորներ են, իսկ Աղբիանոսի տունը՝ ասորական առաքելութեան, և աւելի համա-

կիր պարսկական քաղաքականութեան, որչափ ատեն որ այս վերջիններս Քրիստոնէութեան դէմ յետին միտքեր չունեցանէին: Բիւզանդական արքունիքին և յունաց գերագոյն նպատակն էր Ասիոյ մէջ յոյն եկեղեցիին միահեծան տիրապետութիւնը, Հայ Եկեղեցիին և Հայ ազգութեան՝ յունական մեծ զանգուածին մէջ ձուլումը և յոյն լեզուին ու քաղաքակրթութեան ամբողջ Ասիոյ մէջ տիրական դարձնելու ցանկութիւնը: Եւ ամէ՛ն բան ըրած էին այդ նպատակաւ: Յոյն եկեղեցին ու Բիւզանդիոն չէին բաւականանար հայոցմէ պահանջելով յունաց տիեզերական պատրիարքին գերիշխանութիւնն ընդունիլ և դաւանաբանական հարցերու մէջ կէտ առ կէտ յունաց հետեւիլ, այլեւ կը պահանջէին ազգային ծէս, արարողութիւն, աւանդութիւն և նոյնիսկ լեզուն լքել ու յունականներն ընդգրկել: Հայ կղերը յունականութեան առաքեալ էր, և յունաց այս վտանգաւոր դերը իր լուրջ հակառակորդները պիտի ունենար բնականաբար: Հայ կղերին դիրքը սակայն շատ ամուր էր, շնորհիւ հայոց կրօնասիրութեան և իրենց անտեսապէս անկախ վիճակին: Հայ արքունիքը, պարսկականութեան ջատագով, շատ անգամներ բաղխումներ կ՚ունենար կղերականութեան հետ: Լուսաւորչի տոհմին ժառանգորդներուն վերջ գտնելէն ետքը խոշոր յեղաշրջում մը կը սպասուէր, երբ Մեծն Ներսէս կաթողիկոսական գահը բարձրացաւ: Ներսէսի ջանքը ահագին էր, բարեգործութիւններով լեցնելու համար Հայաստան աշխարհը: Նա վերջին ծայր ժողովրդական հայրապետ մ՚էր, որ իր եկեղեցական մականին առջեւ խոնարհեցնել փորձեց նոյն իսկ Արշակն ու Պապը, պարսկականութեան կուսակից երկու թագաւորներն ալ, իրենց հետեւորդներու լէգէոններով:

Մեծն Ներսէսի ուժգին գործունէութեան անմիջական հետեւանքն էր այն մասնաւոր շարժումը, որ դարուն կէսէն վերջ կեանք առաւ: Նշանակելի թուով աշակերտութիւն մը՝ դարուն կրօնական և ուսումնական կեդ-

*բանները (Աթէնք, Բիւզանդիոն, Կեսարիա) դրկուած էր՝ ուսանելու համար։ Բնականաբար անոնք իրենց հետ պիտի բերէին նոյն ուսումնավայրերու ընդհանրացած գիտական լեզուն, յունարէնը կամ ասորերէնը։ Հայ եկեղեցւոյ եռանդուն քարոզիչներ ստիպուած էին Աստուածաշունչը կարդալ արեւմ. և հիւս. նահանգներուն մէջ յունարէն, և արեւել. ու հարաւ. նահանգներու մէջ ալ ասորերէն։ Այսպէս ահաւասիկ նոյն դարուն մէջ յաճախեցաւ յունական ու ասորական լեզուներու գործածութիւնը հայոց մէջ և հայ լեզուն մեծապէս ներգործուեցաւ այս երկու դրացի հիւրերէն, որոնք Աւետարանի քարոզչութիւն կ'ընէին իրեն՝ կամաց կամաց իր ազգային զգացումը խլելով և հոգեւոր կեանքի մը իր անձնուէր նուիրաբերութեան ու անձնատուութեան չարաչար գործածութեամբ ուծացնելով զինքը հայկական տոհմիկ կեանքէն։ Յունական և ասորական լեզուներու ազդեցութիւններէն առաջ արդէն բացայայտ էր ուրարտականը, հրէականն ու պարսկականը՝ հայերէնին մէջ։ Այս շրջանին ալ յունականն ու ասորականը կը չնչանէր։*

*Այս ընդհանուր ձուլման վտանգին առջեւ, որուն մէջ յոյներու քաղաքական նպատակները կը գործէին, հայ լեզուի ընդհանրացման և ազգային միութեան գաղափարին զարթնումը պիտի գար տրամաբանօրէն։ Ի՞նչ բան կրնար նպաստել հայ իրականութեան մէջ ազգային ինքնուրոյնութեան, բայց եթէ հայկական այբուբենը, որ ունենալով ազգային-քաղաքական, կրօնական և ուսումնական երեսակ և հսկայ նշանակութիւն, այնուհետեւ կը դառնար ամենազօր զէնք մը ու պաշտպան մը՝ ամեն տեսակ օտարոտի ձգտումներու դէմ։*

## ՈՍԿԵԴԱՐ.—

***ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԱՐԹՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԳՐԻ ԳԻՒՏԸ.—*** *Հին հայ լեզուի և Մատենագրութեան համար ամենէն փառաւոր շրջանը Ե. դարն է, որ կը կոչուի Ոսկեդար։ Ոսկե-*

դարը լեզուի մը համար այն շրջանն է, երբ անցեալէն ու ներկայէն գերազանց կատարելութեան մը կը հասնի լեզուն։ Այս դարուն մէջ արքունեաց դահլիճները, ազնուականներու սրահները, ընտանիքն ու վանքերը ասպարէզներ են հայ լեզուի կրթութեան և տարածման համար։ Սա անմիջական արդիւնքն էր Դ. դարու շարժման և քաղաքական համեմատաբար նպաստաւոր պայմաններու։ Վռամշապուհ ուսումնասէր թագաւորը յաջողած էր խաղաղ կեանք մը ստեղծել։ Ահա այդ շրջանին էր որ տեղի ունեցաւ գրի գիւտը՝ Մեսրոպի ձեռքով և Սահակ Հայրապետի գործակցութեամբ։ Տառերու գիւտը փրկեց ո՛չ միայն հայ լեզուն, այլև հայ կեանքը, վասնզի հայ քաղաքակրթութեան չիջման միջոցին է որ հայ գրականութիւնն ու ոսկեդարը ծաղկեցան։ Անիկա ընծայեց հայ լեզուին այն ամրակուռ հիմը, որուն վրայ կարելի էր կանգնել ոսկեդարի սքանչելի հայերէնին պերճաշուք կոթողը։ Ապա բացուեցան կրթական հաստատութիւններ, որոնք գիրերու գիւտէն վերջ մինչև Արշակունեաց գահին կործանումն ու Պարսկաստանի ազդեցիկ միջամտութիւնը հայկական գործերուն մէջ՝ (25 տարիի չափ) շատ աշակերտներ պատրաստեցին՝ ազգ. մտաւոր շարժման գործիչներ դառնալու համար։ Թէև յոյն գործակալները Յունաստանի մէջ արգելք կ'ըլլային մտաւոր այս շարժման, իրենց քաղաքականութեան համար աննպաստ համարելով զայն, սակայն կը տարածուէր անիկա և լայն խաւերու մէջ ոգևորութիւն կը ստեղծէր։

**ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐ**.— Այս հսկայական մեծ գործը կարելի չէր ինքնօգնութեամբ ի գլուխ հանել, ուստի Սահակ ու Մեսրոպ, որոնք ոսկեդարի բեղմնաւոր գործունէութեան երկու բեւեռներն էին, բազմաթիւ աշակերտներ ղրկեցին գիտութեան և ուսման ժամանակակից կեդրոնները՝ Աթէնք, Բիւզանդիոն, Հռոմ, Եդեսիա, Աղեքսանդրիա ևայլն։ Ուսումնական այս արշաւանքը մեծ արդիւնք տուաւ բերաւ, ո՛չ միայն դաստիարակչական,

այլև՝ գիտական տեսակէտով: Թարգմանիչներ կոչուե-
ցան այս պատկառելի պատկանողները, վասնզի անոնք
Ս. Գրքի ամբողջին թարգմանութեան մասնակցեցան և
ուրիշներ ալ թարգմանութիւններով կամ քաղուածներով
դարուն հայ գրականութիւնը ճոխացուցին: Թարգմա-
նիչներուն այն մասը, որ հայ գիրերու գիւտին համար Մես-
րոպի կատարած զանազան ուղեւորութեանց միջոցին կըր-
թական հաստատութիւններ դրուած ըլլալով՝ արդէն ի-
րենց ուսմունքն աւարտած և Սահակի ու Մեսրոպի գոր-
ծակցելու միճակին մէջ էին՝ կոչուեցան աւագ կամ երէց
թարգմանիչներ. իսկ անոնք որ ի վերջոյ հասան ընդմիա-
ւոր գործունէութեան շրջանին՝ կրտսեր թարգմանիչներ ա-
նունն առին: Երէց թարգմանիչներ կը համարուին Եղնիկ
Կողբացի, Կորիւն, Յովսէփ կաթուղիկոս, Յովհան Խոստո-
վանող, Ղեւոնդ Երէց, Մուշէ Տարօնեցի, Տիրայր Խոր-
ձենացի, Յովսէփ Պաղնացի, Յովհան Եկեղեցացի, Աղան
Արծրունի և այլն. իսկ կրտսեր՝ Դաւիթ Անյաղթ, Գիւտ
կաթուղիկոս, Յովհան Մանդակունի, Եղիշէ, Խորենացի,
Ղազար Փարպեցի, Մամբրէ Վերծանող և այլն: Աստուա-
ծաշունչի «թագուհի թարգմանութեանց»ը գրեթէ նախա-
դուռն եղաւ այս դարու մտաւորական բարձր շինուած-
քին: Օտար լեզուներու ազդեցութիւնը կը սպառնար բըռ-
նաբարել հայ ոգին, ուստի առաջին թարգմանիչները մեծ
նախանձախնդրութիւն ցոյց տուին լաւ գործեր ընտիր հա-
յերէնի վերածելու և հայ լեզուն ու գրականութիւնը պաշ-
տպանելու և սնուցանելու համար: Ոսկեդարի հեղինակ-
ներուն մէ՛ջ միայն կայ գերազանցօրէն՝ բառերու ընտր-
րութիւն, նշանակութիւններու ճշդութիւն, բացատրու-
թիւններու զօրութիւն ու փափկութիւն և լեզուական մը-
թերք ու գանձարան: Ոսկեդարի հեղինակներ շատ ան-
գամ իրենց թարգմանութիւնները կատարելու ատեն՝ թը-
ռիչ կ'առնեն և կարծես կը հեղինակեն: Թարգմանիչնե-
րու անխոնջ աշխատասիրութեան կը պարտինք կարգ մը
կարևոր թարգմանութիւններ Եւսեբիոսէն, Փիլոն Եբրա-

յեցիէն, Ոսկեբերանէն, Կիւրղ Երուսաղէմացիէն, Իգնատիոս Հայրապետէն, Եփրեմէն, Գրիգոր Նիւսացիէն, Գրիգոր Նազիանզացիէն, Բարսեղ Հայրապետէն, Աթանաս Աղեքսանդրացիէն, Եպիփանէն, Ս. Նեղոսէն ևայլն: Շատ բնական է որ հոս հարց մը գայ հրապարակ թէ ինչո՞ւ հայերէնի հզօր չեղաւ լատիներէնին պէս և հրաշակերտներ չտարածեր, դիմելով համդէպ միևնոյն յունական աղբիւրին, որ լատիներէնն օժտեց գլուխ գործոցներով: Ասոր պատճառներն երկուք են.— 1. Երբ հայ թարգմանիչներ յունարէնին դիմած էին, անիկա արդէն մերկացած էր իր հին փայլէն և կրօնական զգեստ առած, մինչդեռ լատիներէնի դիմած ատեն յոյն մատենագրութիւնն իր փառաց գագաթնակէտին հասած էր, և 2. Հայ գրագէտներ կրօնականներ ըլլալով մի միայն կրօնական գըրականութիւն մշակեցին:

ՈՍԿԵԴԱՐԻ ԼԵԶՈՒՆ.— Գրաբարն իր բոլոր վայելչութեամբ այս դարու թարգմանիչներուն գրչին տակ է որ կը ստանայ յանկարծ, առաջին անգամ, ուստի բնական է որ իր էութեան մասին զանազան ենթադրութիւններ գոյութիւն ունենան:

1. Գրաբարը խօսակցութեան լեզու եղած չէ և Սահակ, Մեսրոպ ու իրենց գործակիցները բոլորովին նոր լեզու մը շինեցին. եթէ գրաբարը խօսուած լեզու մը ըլլար, պէտք էր որ ոսկեդարի բոլոր մատենագիրներու լեզուն միօրինակ ըլլար:

2. Հայաստանի եկեղեցական լեզուն էր:

3. Արքունիքին և կամ ազնուական դասակարգին լեզուն էր:

4. Արարատեան նահանգին ռամիկ լեզուն էր:

1. Առաջին կարծիքը գիտական հիմունք չունի, վասնզի թարգմանիչներ չէին կրնար յանկարծ արուեստական լեզու մը շինել՝ մանաւանդ այդչափ գեղեցիկ, ճկուն և նուազայնոտ: Կամաւոր արուեստը չէ լեզուներն ըստեղծագործողը: Ճիշդ է որ Վօլապիւքն ու էսպէրանթօն փորձուեցան, բայց նախ որ յաջողութիւն չունեցան, և յետոյ՝ անոնք ստեղծողները իրր պարզ յարաբերութեան միջո՞ց միայն շինեցին զանոնք՝ և ո՛չ թէ գրականութեան ար-

ուսումին համար. և տակա՝ ո՛ւր գրաբարի հոյակապ կառուցուածքը և ո՛ւր արուեստական այս լեզուներուն չոր ու ցամաք յօրինուածքը. բաղդատութեան եզրեր գտնելըն անկարելի է: Շատ հիմնաւոր չէ նաև այն տարակուսութիւնը, որ կ՚ըլլայ թարգմանիչներու լեզուին գանազանութեանը մասին, որովհետև պարզ է որ միջավայրը, արտաքին պայմանները և հեղինակներու սեփական խառնուածքն ու ոճը իրենց ուրոյն կնիքը կը դրոշմեն անոնց գրութիւններուն վրայ, որով կարելի չէ միօրինակութիւն գտնել, ո՛չ թէ միայն ա՛յն դարուն՝ երբ քերականութեան ուսում և բառարան չկար, լեզուին բառերուն և օրէնքներուն իբրև հաւաքածոյ, այլ նոյն իսկ այսօր՝ երբ ունինք լեզուի գոյութիւն ունին և բաւական զարգացած գրականութիւն ալ կայ:

2. Հայերէն լեզուն, ինքնին արդէն կատարելագործեալ թէև, անուրանալի է որ թարգմանչական աշխատութեանց միջոցին թարգմանիչներու գրչին տակ աւելի՛ ևս նրբացաւ, գեղեցկացաւ ու կատարելագործուեցաւ: Գրաբար լեզուին իբրև նախընթաց ծառայեց անշուշտ նախագրական հայ լեզուն, որ երգիչներով և քրիստոնեայ քարոզիչներով արդէն բաւական գեղեցկացած էր: Մեսրոպեան դպրոցն է սակայն որ զայն մատենագրական լեզուի վերածեց: Այսու հանդերձ կարելի չէ ըսել թէ զուտ եկեղեցական լեզու մ'էր գրաբարը: Եթէ կարգ մը գէթ գլխաւոր գաւառներու հասկնալի չէր, ինչո՞ւ համար ուրեմն քարոզիչներ զայն գործածէին: Այս իսկ բաւական է փաստելու թէ գրաբարը Դ. և Ե. դարերուն մէջ խօսուած և հասկցուած լեզու մ'էր ժողովուրդին մէկ մասին կողմէ և ո՛չ թէ զուտ եկեղեցական լեզու մը:

3. Արքունեաց լեզուն բնական է որ միշտ ամենէն ընտիրն ու ազնիւը կ'ըլլայ: Ամեն ազգերու մէջ ալ այնպէս է: Սակայն և այնպէս ան ալ սեփականացած, ինքնուրոյն և անկախ լեզու մը չկրնար ըլլալ, այլ՝ միևնոյն լեզուի՝ զանգուածին ազնուացած մէկ բաժինը: Հետևա-

բար դասակարգային լեզուի համկցողութիւնն ալ ճիշդ չէ ։

4. Չորրորդ կարծիքը ամենէն տրամաբանականն ու ուղիղն է ։ Արարատեան Նահանգին ռամկին լեզուն էր գրաբարը, նոյն ինքն արքունիքին լեզուն, որ նո՛յնն է գողթնի երգերուն հետ. վասնզի անոնք ալ եթէ արքայազուններ չէին, գէթ՝ արքունիքին հետ յարաբերողներ էին ։ Թէ՛ ուրարտական շրջանին և թէ՛ վերջը մինչև Ե. դար քաղաքակրթութեան կեդրոնն էր Այրարատ, և բնակավայրը՝ ազգին բարձր դասուն ։ Ռամկին կը նշանակէ մայրաքաղաքի լեզու ։ Մայրաքաղաքը թագաւորինն էր, և ազնուական դասակարգը կը բնակէր արքունի կալուածներուն մէջ ։ Հայ լեզուի լաւ պահպանութիւն ընել կարելի էր ուրեմն ։ Անոր կատարելութեան աստիճանը չենք գիտեր, բայց կրնանք ենթադրել թէ բոլոր հայ բարբառներուն մէջ՝ ամենէն կատարեալն էր և անտարակոյս հանճարի շատ մը զաւակներու ։ Արդ, գրաբարը Մեծ Հայաստանի ընդարձակագոյն և կեդրոնական նահանգի լեզուն, որ ամենէ՛ն շատ խօսողներ ունէր, ընդհանրացած էր և տիրող իշխանութեան լեզուն միանգամայն՝ կոկուած, մշակուած ու հարուստ ։ Երբ արարատեան բարբառ գրոց լեզու դարձաւ, էր նաև եկեղեցական լեզու, ուստի աստիճան մը ևս ընդհանրացաւ և հարստացաւ՝ բառերով, դարձուածներով, համաձայնական ձևերով. աւելի փափկացաւ և բարձրացաւ՝ մինչդեռ միւսները մնացին անմշակ ։ Մեր գրականութեան հիմնադիրները, Սահակ ու Մեսրոպ, այդ նահանգն ապրած էին, ուստի բնական է որ նոյն նահանգի լեզուն գործածէին ։ Դիտուած է որ Արարատեան Նահանգի բնիկ մատենագիրներու լեզուն աւելի բնական է, քան միւսներունը ։ Ղազար Փարպեցիի լեզուէն աւելի բնական ու ազատ, իսկ Եզնիկէ աւելի մաքուր լեզու չկայ ։ Եւ ասոնք երկուքն ալ Արարատէն էին ։

Կ'եզրակացնենք ուրեմն որ Ոսկեդարի գրաբարը ամեն հաւանականութեամբ Արարատեան նահանգի ռամկին եւ

կենդանի լեզուն էր, որ գրականացաւ անմահ թարգմանիչներու ձեռքով։

ՀԵԼԼԵՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ.— Հելլենաբանութիւնը մեր լեզուին մէջ այն երեւոյթն է, որով հայ բառարանն ու քերականութիւնը՝ պահելով հայկական ձայներն ու հնչումը՝ յունարէնի ոգին կ'առնեն և անոր կաղապարին մէջ կը ձուլուին։ Սա՝ Ե. դարուն մէջ չերեւցաւ. բայց իր ծագումը աւելի հին օրերու մէջ պէտք է փնտռել։ Մեծն Աղեքսանդրի տիրապետութեան հետեւանքով յոյներն Ասիա մտնելով իրենց հետ բերին նաեւ իրենց լեզուն։ Երբ Մեծն Տիգրան աշխարհակալը իր տիրապետութեան շրջանին ծանօթացաւ յունաց բարքերուն, անոնց մեհեանները, արձանները, քուրմերը, դերասաններն ու շատ մը գործաւորներ փոխադրեց Հայաստան՝ տալով անոնց բնակութեան համար զանազան տեղեր։ Սա հելլենական ազդեցութիւնն էր որ կը սկսէր ներգործել հայ կեանքին վրայ։ Արշակունիներուն մէջ կարգ մը յունասէր թագաւորներ կային։ Արտաւազդ այնչափ սիրած էր հելլեններէնը որ իր պալատին մէջ յունարէն թատերգութիւններ ներկայացնել կու տար։ Քրիստոնէութենէն վերջ Հայաստանի արեւմտեան կողմերը Սուրբ Գիրքը կը կարդային յունարէն և կը թարգմանէին։ Դ. և Ե. դարերուն մէջ յունական կեդրոնները գնացող ուսանողներ թէեւ օգտուեցան զարգացական տեսակէտով, բայց իրենց լեզուները շատ ազդուեցան անոնցմէ։ Հելլենաբանութիւնը կամայ ակամայ պիտի մտնէր՝ քանի որ մատենագիրներ յունարէնը լաւ կ'ուսանէին։ Հելլենաբանութիւնը աւելի Ե. դարու կէսէն վերջ չերեւցաւ ու տեւեց մինչեւ Է. դար։ Կրտսեր թարգմանիչներ հետեւելով իրենց վարպետներէն, սկսան օտար լեզուներէ ածանցումներ կամ բարդումներ ընել։ Յունարէնի ուսումը հիներուն լեզուի ազնիւ ճաշակը եղծած էր, և հայերէնը՝ իր ինքնատիպ դրոշմը կորսնցուցած՝ յունական տիրապետութեան ենթարկուած էր։ Յունամոլներ այնչափ առաջ գնացին որ ո՛չ միայն հնա-

ըսցին նորանոր մասնիկներ, բառեր, ձեւեր ու հոլովումներ, այլեւ՝ նոյն իսկ մեր լեզուին հակառակ տարրեր, ինչպէս օրական, իգական եւ չէզոք սեռի տարբերութիւններ: Մատենագիրներ նորութեանց հետամուտ էին: Անոնց փիլիսոփայական պարապմունքն ալ բազմաթիւ իմաստասիրական բառեր տուաւ հայերէնին: Հելլենականութիւնը արդիւնքն է մանաւանդ այն գիտական ոգիին, որով լեցուած էին մեր մատենագիրներէն ոմանք՝ Աղեքսանդրիոյ մէջ: Գիտական նիւթի մը շուրջն հայերէնով արտայայտուելու կը տկարանային յաճախ, պակաս մը կը զգային կարծես եւ օտար լեզուի կը դիմէին: Անոնց համար հայերէնը գիտական ճշդութենէ զուրկ՝ զգացումի՛ լեզու մըն էր: Հելլենաբանները՝ քերականութեան հետ ալ քմահաճօրէն վարուած էին՝ յունարէնէն հայ լեզուին մէջ փոխադրելով դերանուններու իգական սեռ, հոլովներուն եւ բայերուն երկականը, անորոշ դերբայներու առանց հոլովման եւ առանց նախադրութեան գործածութիւն, էական բային հայց. խնդիր տալ, բաղդատականը սեռականով կազմել, բացառականը առանց նախդիրի դնել եւայլն: Հելլենաբան դպրոցի մեծագոյն ներկայացուցիչներն են Խորենացի, Դաւիթ Անյաղթ եւ Եղիշէ (գիտական նիւթերու մէջ միայն): Անոնց գործը շարունակեց ապա Սիւնեաց դպրոցը, որուն մէջ նշանաւոր եղան Մովսէս Սիւնեցի (Է.) եւ Ստեփաննոս Սիւնեցի (Ը.): Յունաբանութեան քանի մը օրինակներ տանք: Ածանցումներ՝ արտաբերել, հակառութիւն, մակերեւոյթ, տրամաբան եւայլն: Զուտ յունարէն բառեր՝ փիլոնիկօ (յաղթահարել, վիճել), սինկրինօ (բաղդատել), պերիեխօ (պարունակել), դիալեկօ (տրամաբանել) եւայլն:

Հելլենաբանութեան երեք աստիճաններ կան. 1. Կատարեալ յունաբանութիւն, որ ապա մերժուեցաւ, 2. Բառերու թարգմանութիւն, որ մեր լեզուին պարզութեանը վնասած է, եւ 3. Անհարազատ հայերէն յունարէն ոճով:

**ՈՍԿԵԴԱՐԻ ՇԻՋՈՒՄԸ.**— Սահակէ եւ Մեսրոպէ վերջ ոսկեդարի մէջ լեզուի անկում կը նշմարուի: Դրական գոր-

ծունէութիւնը կարելի չեղաւ շարունակել երկար ատեն, որովհետև քաղաքական փոթորիկներ և փոփոխութիւններ ամէն բան տակնուվրայ ըրին։ Քրիստոնէութեան զարգացումն ու ծաւալումը խուլ ապստամբութիւն մ'էր պարսից դահուն։ Հայ կղերն ու եկեղեցին դէպի արևմուտք կը նայէին։ Յազկերտ Բ. մտադրած էր ջնջել Քրիստոնէութիւնը, որպէսզի հայերը պարսկական քաղաքականութեան հետ կապուին։ Ու սկսաւ հալածանքը, սաստիկ ու արհաւրալից։ Հայերը գերագոյն արիութիւնը կ'ունենային մերժելու Յազկերտի կրօնափոխութեան առաջարկը և Մամիկոնեաններու առաջնորդութեամբ սուր ի ձեռին պաշտպանելու նոր կրօնը, արևմուտքի քաղաքակրթութիւնը։ Այսպէս ամբողջ Հայաստանը քրիստոնեայ է և ոտքի ելած՝ տէր կանգնելու իր խիղճի ազատութեան իրաւունքին։ 451ի Յունիս ամսուան մէջ տեղի կ'ունենայ Շաւարշանի բուռն ճակատամարտը, որ հայկական հոյակապ խաչակրութեան մեծ նահատակութիւնն իսկ է։ Վերջապէս արևմտականութեան ու ասիականութեան տատանումները վերջ կը գտնեն։ Բիւզանդիոն կը դաւէ հայոց և այս ժողովուրդը միայնակ դէմ կուտայ պարսից զէնքին, մինչ անդին արևմուտքը կրօնական վէճերով կը զբաղի։ Քաղաքական այս անցքերը, որոնք մինչև դարուն վերջերը կը տևեն, գրեթէ, հայկական կեանքին մէջ մտաւոր գործունէութիւնը հնարաւորութենէ կը զրկեն և կը կասեցնեն Ոսկեդարի շարժումը։ Դժգոհութիւնը կը պոռթկայ արևմ. եկեղեցիին դէմ ու Քաղկեդոնի ժողովին առթիւ հայ և յոյն ժողովուրդները կը ձգտին, — ինչ որ բնականաբար հայերը կը հեռացնէ յոյն լեզուէն ու գրականութենէն ալ միանգամայն,

ՈՍԿԵԴԱՐԻ ԼԵԶՈՒԻՆ ՄԷՋ ՌԱՄԿՕՐԷՆԻ ՀԵՏՔԵՐ. — Ե. դարու կէսէն վերջ այլևս ամէն բան խառնուած է և լեզուն կը կորսնցնէ իր փայլը, որովհետև գրչի կեանքը կը սպաննուի գրեթէ։ Բանասէր գիտնականներու կատարած ուսումնասիրութիւնները կը հաստա-

ունի թէ նոյն իսկ ոսկեդարեան հայ լեզուին ու մատենագրութեան մէջ կան ռամկօրէնի հետքեր: Անշուշտ զանազան դասակարգեր, վայրեր ու բարբառներ կային հայոց մէջ. բայց մեր մատենագիրները ո՛չ մէկ բան կ՚ըսեն ժողովուրդին բերքին, վարքին, սովորութիւններուն, կեանքին ու լեզուին մասին. մինչդեռ, օտար մատենագիրներ (յոյն և լատին) այդ ազգութեանց սովորութիւններ գրած են: Մենք միմիայն Ե. դարու ատենի լեզուէն ու գրականութենէն տեղեկութիւն ունինք: Իսկ լեզուին համար՝ ասարձաններէն, ռամիկին բարբառէն գրագէտներ խուսափած են միշտ: Ե. Դարու անքերական համարուած ոճերը, սխալ սեպուած երբեմնի խոնարհումներ, նորանշան ասութիւններ և այլն ռամկօրէնը կը մատնեն՝ լեզուական—դասական ընդհանուր գեղեցկութեան մէջ՝ բառերով, ածանցումներով, բարդութիւններով ևայլն: Ոսկեդարի ոճերուն մէ՛ջ ալ զանազանութիւն կայ: Ոմանք շատ խակ ոճով և անկանոն քերականութիւնով շատ բարձր գիրք մ՚ունած կերեւան. ուրիշներ կան, որոնք Ե. դարու կէտէն վերջ հրապարակ կուգան՝ դասական հայերէնով մը, որուն մէջ թէ՛ ռամկաբանութիւններ և թէ ռամկօրէնի յատուկ բառեր կան (Դաւիթ Անյաղթ): Ռամիկ և ընտանեկան լեզուէն փոփոխութիւններ շատ բնական են: Հին յունարէնի մէջ ատտիկեան բարբառ՛ն էր գրական լեզուն բայց բանաստեղծներ, նոյն իսկ Վիրգիլիոս, փոխառութիւններ ըրած են: Մերիններուն ալ մատենագրական լեզուն ու ռամկօրէնը տեղ տեղ համաձայնեցուցած են: «Ղազար Փարպեցի ճանչցուած է աշխարհիկ լեզուէն ազդուած մատենագիր մը, որուն գրիչը գրական օրէնքներէ կը հեռանայ: Նա՛ լեզուովը խորին հայկաբան է, քերականական տրամադրութիւնովը՝ ճշդիւ ռամիկ և ոճովը՝ արեւելեան: Շատ տեղ մաքուր ու կոկիկ աշխարհաբար մը կը բանեցնէ, մանաւանդ խօսակցութիւններու մէջ, ուր գրաբարը արկար զօրա կուգայ: Բիւզանդ և Փարպեցի կը միարա-

*նին՝ մեզ ճաշակ մը տալու համար իրենց լեզուէն»։ Խորենացի իր Պատմութիւնին մէջ կը խոստանայ անոր Գ. գիրքը «համառօտակաց բանիւք» գրել. սակայն այդ գիրքին ալ լեզուով միւսներէն չտարբերիր։ Ուրեմն կա՛մ պատմահայրը իր առաջադրութիւնը չի գործադրեց, և կամ «համառօտ բանիւք» ըսելով պարզ խօսութիւններ ըսել կ'ուզէր, առանց պերճաբանելու։*

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՐ.—

*ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ.— Պարսկական արքունիքը Վարդանանց պատերազմէն ետքը դադար մը տալէ վերջ կը վերսկսէր Հայաստանի մէջ կրօնական հալածանքը, երբ անդին յոյներն ու արեւմ. ազգերը կրօնական վէճերով զբաղած էին։ Կրկին Մամիկոնեան տունէն՝ Վահանն էր որ այս անգամ կը ծառանար Մազդեզականութեան առաքեալներուն դէմ, մինչև որ պարսից գահակալը՝ Պերոզ՝ ճարահատ կրօնական ազատութիւն կը յայտարարէր և վերջ կուտար հայկօ-պարսկական արիւնալի ընդհարումներուն։ Պարսիկ արքունիքը սիրաշահութեան քաղաքականութիւնն ընդգրկած էր այլեւս հայոց վերաբերմամբ պետութեան ներքին սպառնական երկպառակութեանց պատճառաւ։*

*ՎԷՃԸ ՑՈՒՆԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ ՄԷՋ.— Հազիւ հազ Հայաստան ազատ շունչ մը առաւ և ահա Վաղարշապատի ժողովը, մասնակցութեամբ հայ, վրացի և աղուան կրօնաւորներու, քննութեան ենթարկելով Քաղկեդոնի ժողովին (1) որոշումները, որոնց պարտաւորիչ չդարձնել*

(1) *ՔԱՂԿԵԴՈՆԻ ԺՈՂՈՎԸ.— Մինչդեռ Քրիստոնէութիւնը տակաւ կը զօրանար ամէն կողմ, կղերականութեան մէջ երեւան կուգային ազատական հոսանքներ, որոնց արտայայտիչները իբրեւ ազատ մտածողներ՝ «գայթակղութիւն կը ստեղծէին իրենց շուրջը»։ Քրիստոնեայ կղերականութիւնը վրդովուած՝ իր բոլոր զէնքերը (անէծք, նզովք, բանադրանք և այլն) կը գործածէր այսպիսի հերետիկոսներուն դէմ։ Եւ որպէսզի այդ պատիժները աւելի ազդեցիկ ըլլան, «տիեզերական ժողով»ներու գաղափարն յղացաւ։ Ա. տիեզերական ժողովը*

զանոնք իրենց շրջաններուն համար։ Արդէն հայերը դաւանութեամբ լիցուած էին Արեւմուտքի դէմ, քանի որ յոյները զիրենք մինակ ձգած էին պարսից հետ մղուած այնպիսի վճռական պատերազմի մը ատեն, որ կրօնքի անունով տեղի կ'ունենար, եւ ուրիշ վասն, անուղղակի կերպով քաջալերած էին Յազկերտը՝ իր հալածական քայլերն առնելու։ Վաղարշապատի մէջ արուած այս որոշումները արձագանգն էին։ Ուստի հայոց եւ յունաց մէջ ցրտութիւն ծագեցաւ եւ առաջիններն սկսան խորշիլ յունական լեզուի ու գրականութեան ուսումէն։ Հայերը Սասանեան պարսից հետ ճիշդ է որ սերտ կապակցութիւն ունէին, բայց որովհետեւ անոնք գրականութիւն, գիտութիւն եւ գեղարուեստ չունէին, ուստի լեզուի ու գրականութեան տեսակէտով վնասակար եղաւ կամաւորապէս դադարեցումը՝ հայոց արեւմուտքի հետ ունեցած յարաբերութեան։

տեղի ունեցաւ Նիկիոյ մէջ (325) դատապարտելու համար Արիոսը, որ կ'ըսէր. «Քրիստոս Աստուած չէ, այլ հասարակ արարած, եւ թէ Հայր Աստուած անկէ աւելի մեծ է»։ Հազիւ 60 տարի վերջը կրկին պէտք տեսաւ գումարել Բ. ժողովը՝ Կ. Պոլիս (386), հերետիկոս Մակեդոնի համար, որ Արիոսէն ալ աւելի առաջ երթալով՝ ոչ միայն Քրիստոսի աստուածութիւնը չէր ընդունէր, այլեւ Ս. Հոգին ալ կը մերժէր։ Եւ որովհետեւ աղանդաւորները հետզհետէ կը շատնային եւ Քրիստ. կրօնին սահմանագծուած ըմբռնողութիւնները քննադատութեամբ կը խանգարուէին, ուստի Եփեսոսի ժողովը (431) կուգար դատապարտել Նեստորը, որ հաստատելով առջիններուն ըսածները, կ'աւելցնէր թէ «Մարիամը չէ՛ր կրնար Աստուածածին կոչուիլ, այլ մարդածին, վասնզի Քրիստոս մարդ էր եւ ո՛չ թէ Աստուած»։ Հայ եկեղեցին այս երեք տիեզերական ժողովներուն մասնաւոր ներկայացուցիչներով մասնակցած է եւ անոնց որոշումներն ալ ընդունած։ 451ին Քաղկեդոնի մէջ գումարուեցաւ Դ. տիեզերական ժողովը։ Այս անգամ աւելի աղմկալի հարց կար։ Եւտիքէս կ'ըսէր թէ «Քրիստոս երկու բնութիւն,— աստուածային եւ մարդկային,— չունէր, այլ մէկ, եւ ան ալ մի՛այն աստուածային», հակառակ եկեղեցիներու ընդունած երկու բնութեան վարդապետութեան։ Այս Դ. ժողովին էր ահաւասիկ որ հայերը մասնակցելու հնարաւորութիւն չունեցան, ազգին հայ-պարսկական ընդհարումներով զբաղած, քաղաքական բարդութիւններով պաշարուած ու պարսիկներու դէմ օրհասական կռիւ մղելու ստիպուած ըլլալով։

ԴԱՐՈՒՆ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ.— Զ. դարուն սկիզբը հայոց և պարսից վերաբերումը կրկին փոխուեցաւ Կաւատի օրով, որ ուզեց ժխտել կնքուած դաշինքը. բայց հազիւ չարժած՝ արդէն յոյներուն հետ պատերազմ յայտարարելու ստիպուած էր։ Յոյներ ու պարսիկներ կը կռուէին և Հայաստան ոտից կոխան ու թատերավայր դարձած էր, խղճալի վիճակի մէջ. արքունական աթոռը տապալած, նախարարութիւններն իրենց ազդեցութիւնը կորսնցուցած և ազնուականութիւնը ցիր ու ցան եղած էր։ Այս ալեկոծ վիճակին մէջ մտաւոր ինչ շարժում կրնար սպասուիլ։ Թարգմանիչներու շրջանէն վերջ ազգ. դպրութիւնն ու լեզուն դադար առած էին։ Հարիւր տարուան ժամանակամիջոցի մը մէջ քանի մը աննշան մատենագիրներու անկարեւոր գործերը միայն կ'երեւան, որոնք երբեք չեն կրնար ոսկեդարեան գրիչներու արժանաւոր յաջորդները սեպուիլ։ Հայ մտաւորական կեանքն աւելի՛ եւս ցաւագին կը դառնար, երբ վրացիներն ալ իրենց Կիւրիոն եպիսկոպոսին առաջնորդութեամբ հայոց հետ իրենց բարոյական կապը կը խզէին և շատ մը հայերէն գիրքեր վրացերէնի թարգմանելով՝ ազատ վրացական եկեղեցին կը ձեւացնէին։ Ասոր փոխարէն թէեւ ասորիները կրօնապէս հայոց կ'ենթարկուէին. բայց վրացիներուն կորուստը արհամարհելի չէր։

ՀԱՅ ԼԵԶՈՒՆ.— Այս լճացումը և Զ. դարու պայքարներն ու փոթորիկները մատենագրական ամլութիւն և լեզուի յոռեշրջում առաջ բերին։ Ոսկեդարի սքանչելի լեզուն չիջած էր այլեւս։ Լեզուի և մատենագրութեան այս խեղճութիւնը աղէտալի պիտի դառնար, եթէ Է. դարը չհանէր՝ բաղդատաբար բեղուն և յուսալից, ուր հայ լեզուն անդրադարձ մը ունեցաւ կարծես դէպի ոսկեդարը։ Այս և յաջորդ դարերու ազնուութեան և հարազատութեան փորձաքարը ոսկեդարեան լեզուն է։ Իբրեւ ուսումնավայր՝ Սիւնեաց վարդապետարանը կը ծաղկի քիչ ու շատ։ «Զ. դարը՝ ռամկօրէնին մասին գոհացու-

ցիչ վկայութիւն մը չտար, բայց իրերու բնութիւնն ու նախընթացը և յաջորդ դարերու համեմատութիւնը կը յայտնեն յայտնապէս թէ լեզուն իր փոխակերպութիւնն հանգարտիկ կը շարունակէ։ Իսկ սակաւաւոր գրուածներու մէջ գիտուած մանր խտտորմունքները բաւական չեն նախընթացներուն վրայ նոր քայլ մը առնուած ցուցնելու»։ Իբրեւ յիշատակելի դէմքեր Սիւնեաց Պետրոս Եպիսկոպոսն ու Աբրահամ Եպ. Մամիկոնէից կ'երեւան։

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐ.—

*ՊԱՏՄԱԿԱՆ. — Մինչ Հայաստան ճգնաժամային և արիւնոտ օրեր կ'անցընէր. քայքայուած բոլորովին տնտեսապէս ու քաղաքականօրէն, և պարսից պետութիւնն ալ կազմալուծուելու վրայ էր՝ ահա է. դարուն կէսերը նոր տէր մը կուգայ Հայաստանը գրաւել՝ Պարսկաստանէն վերջը (644)։ Մուհամմէտ Արաբիոյ մէջ հիմնած էր իսլամական կրօնը, և իր յաջորդները ահագին ուժ մը կազմած՝ կրօնի անունով կ'արշաւէին ամէն կողմ և կը տիրապետէին։ Միմիայն արաբներու ուժը չէ՛ր որ կը սասանեցնէր ամբողջ աշխարհը, այլ՝ այն արագ առաջխաղացութիւնը, զոր ստացած էր այս գործնական կրօնը՝ տարածուելով Միջին Ասիոյ խորերը բնակող բազմազան ցեղերուն ու ժողովուրդներուն մէջ և պատրաստելով մահմետական հսկայ բանակ մը։ Համիսլամական կրօնաքաղաքական ծրագրին շուրջ բոլորուած էին կարծես ամենքն ալ՝ մտադիր՝ արշաւելու և տիրելու։ Հայերը փորձած էին դիմադրել, և սակայն ի զո՛ւր, որովհետեւ ցրըուած ուժեր և մասնակի ապստամբութիւններ անբաւական էին կասեցնելու այս մեծ հոսանքը։ Արաբական արշաւանքին ականատես պատմիչն է Սեբէոս, որ գեղեցկօրէն կը նկարագրէ զայն։ Հայերը վերջապէս անձնատուր եղան արաբներուն, բայց յոյներն ալ կը պահանջէին իրենց հպատակիլ, և որովհետեւ յոյներն ալ Հայաստանի արեւմ. մասին կը տիրէին, ուստի արաբացի-*

ներ անոնց հետ ալ գործ ունեցան։ Տուժողը բնականաբար հայերն եղան, քանի որ փափուկ դիրքի մը մէջ էին։ Արաբական վերջնական յաղթանակը հայերուն ազատ շունչ քաշել տուաւ։ Դէպի արաբականութիւն հոսանքն ուժեղացաւ՝ յունական ազդեցութեան դէմ պաշտպանուելու համար։

ԱՐԱԲԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ.— Սա Հայ ազգին, լեզուին ու գրականութեան պատմութեան կարեւոր մէկ էջը կը կազմէ։ Արաբները հարիւրաւոր տարիներ Հայաստանի տիրելով՝ իրենց ազդեցութիւնը յայտնի աստիճան դրոշմեցին հայկական կեանքին վրայ։ Արաբ լեզուն ու քաղաքակրթութիւնը հայ բարքերուն միջամտեցին՝ թէեւ յամրաբար։ Արաբական տիրապետութեամբ հայոց քաղաքական կեանքը տարբեր շրջանի մը մէջ դրուեցաւ անշուշտ. սակայն որովհետեւ կրօնքի և քաղաքակրթութեան տարբերութիւն կար, ուստի սահմանափակուեցաւ արաբական ազդեցութիւնը։ Արաբ մատենագրութիւնը ասիական բոլոր գրականութեանց մէջ իրեն յատուկ ոճ մը ունի՝ ճոռոմ և ուռուցիկ, այլաբանութիւններու յաճախութեամբ, նկարագրական անսովոր ճոխութեամբ և բացատրութիւններու երկայնաբանութեամբ։ Հայ լեզուն, պէտք է ըսել, արաբերէնէն աւելի ոճով ազդուեցաւ, քան բառարանով ու քերականութեամբ։ Հայ կղերը ջանաց միշտ արաբական գրականութեան ազդեցութենէն հեռու պահել հայ ժողովուրդը, կրօնական նկատումով։ Ա՛յս է պատճառը որ հայերը չօգտուեցան արաբական գիտական գրականութենէն, որ այնչափ զարգացած էր։ Հայ կղերը կը վախնար որ հայ իշխաններ կրնային հրապուրուիլ արաբ իշխաններու կրօնական լուռ հրաւէրներէն։ Արաբական գեղարուեստը սակայն կը տարածուէր, վասնզի անոր մէջ վտանգ չէին տեսներ։ Արաբական ազդեցութիւնը յանկարծակի և արագ չէ՛ եղած, և աւելի յաջորդ Ը., Թ. կամ Ժ. դարերուն մէջ է որ զգալի եղած է, որովհետեւ հայերը արաբներէն խորշած

են, և յետոյ՝ 1. Կար կրօնքի տարբերութիւնը, որ հայ մատենագիրները հեռու կը պահէր, 2. Արաբացիք չունէին փայլուն գրականութիւն, 3. Արաբերէն լեզուն ափեզերական գործած չէր յունարէնին կամ լատիներէնին նման և կրօնական լեզու չէր, 4. Արաբները բոլորովին տարբեր ցեղի կը պատկանէին և 5. Արաբներ անհոգ էին իրենց քաղաքակրթութեան և լեզուի տարածման համար։

ՀԱՅ ԼԵԶՈՒ ԵՒ ԱՐԾԱԹԻ ԴԱՐ. — Հայ լեզուի պատմութեան տեսակէտով մեծ կարևորութիւն ունի Է. դարը, որուն արծաթի դար մակդիրը տուած են, և որ շատ յաճախ սահմանագլուխը կը նկատուի գրաբարին ու նախնեաց ռամկօրէնին, այնչափ կը շեշտուին լեզուին մէջ աշխարհիկ լեզուի նուաճումները։ Իրաւ է թէ մատենագիրներու կողմէ ջանքեր կ'ըլլան գրաբարը ռամկօրէնի հեղեղումէն ազատ պահելու, բայց անօգուտ, քանի որ կեանքն ինքնին եկած էր գրաբարը հրապարակէն հեռացնելու։ Այս ճիգը, ոսկեդարուն նմանելու համար, չկրնար արմատական դառնալ, վասնզի ոսկեդարէն բաւական անջրպետով մը հեռի, գրաբարի ուսումը կորսնցուցած էր իր բնականութիւնը։ Զ. դարու աղքատութի՛ւնն ունի գրաբարը՝ քիչ տարբերութեամբ։ Այս դարու հայ լեզուն մատենագիրներու գրչին տակ պարզ է և ռամկացած։ Սեբէոս եպիսկոպոս է որ ուղղի ոսկեդարի գեղեցկութիւնը պահելու հետամուտ գտնուած է։ Նո՛յնն է նաև Մովսէս Կաղանկատուացի, իր յստակ ու հարուստ լեզուով։ Անանիա Շիրակացի միակ բացառութիւնն է, որուն լեզուին մէջ ուսումնական նոր բառեր և գիտական բացատրութիւններ մուտ կը գործեն, տեղ տեղ մթութիւն և խրթնութիւն պատճառելու աստիճան։ Այդ՝ վերագրելի է անշուշտ Շիրակացիի առած կրթութեան և այն գրականութեան, որուն դիմած է։ Յովհան Մամիկոնեանի Տարօնոյ Պատմութիւնին մէջ հայ լեզուն կը պատկերանայ գրաբարին խնկածութիւնովը ու այլափո-

խուժինովը և ռամկօրէնին նուաճումներովը։

ՌԱՄԿՕՐԷՆԻ ՆՈՒԱՃՈՒՄՆԵՐԸ. — Գերազանցօրէն չահեկան է ուսումնասիրութիւնն այս դարու ռամկօրէնին, որ իր կենդանութեան ու խայտանքի օրերուն մէջ կ'ապացուցանէ իր անժխտելի զօրացումն ու կերպարանումը։ Ե. ու Զ. դարերու մէջ ռամկօրէն բառեր ու ձեւեր կարծես գաղտագողի կը սպրդէին գրաբարի սահմաններէն ներս, մինչդեռ այս դարուն մէջ անոնք արձակ համարձակ տեղաւորուած են։ Յովհան Մամիկոնեան իր ոճով ռամկօրէնին մասին բաւական լաւ գաղափար կուտայ։ Անոր լեզուին մէջ մուտ գտած են շատ մը ռամկօրէն բառեր, ասութիւններ ու նշանակութիւններ, նոր ոճեր ու մինչեւ այդ ատեն չլսուած բացատրութիւններ, որոնք բոլորը ուրիշ բան չեն մասներ, բայց եթէ ռամկօրէնի յաղթանակը (1)։ Ժողովուրդը կը խօսէր ռամկօրէնը և գրագէտներ անխուսափելիօրէն պէտք է ազդուէին անոր հոսանքէն։ Կրնա՞յ ըսուիլ թէ այս դարուն մէջ Յ. Մամիկոնեան մինակն էր ռամկօրէնէն ազդուող՝ կամայ թէ ակամայ։ Ապահովաբար այս դարուն և կամ ուրիշ դարերու մէջ ալ կային ռամկօրէնէ ազդուողներ կամ անոր հետամուտ եղողներ, սակայն ամենայն հաւանականութեամբ մոլեռանդ գրաբարեաններ ոչնչացուցին այն գործերը, որոնք գեղջուկ բարբառով յօրինուած էին։ Այլապէս թերեւս ռամկօրէն մատենագրութիւն մը հասնէր մեզ մինչեւ հիմա՝ հին դարերէն սկսեալ։

---

(1) Յովհ. Մամիկոնեանի գիրքը կը ցուցնէ գիտելու յատուկ նորութիւններ, որոնք այսպէս կրնան ամփոփուիլ. 1. Նորագոյն բառեր, 2. Յետնագոյն ռամկօրէնի յատուկ նշանակութիւններու սովորականութիւն, 3. Սղումներու և ամփոփումներու յաճախութիւն, 4. Ռամկական հոլովումներ անուններու և դերանուններու, 5. Բայերու նոր ձեւեր, փոխանակութիւններ, տարբեր կամ պարզուած խոնարհումներ, 6. Նախդիրներու և ուրիշ անփոփոխ մասունք բաներու կիրառութիւն, ձեւի ու նշանակութեան այլայլութիւններ, 7. Գրաբարի դէմ քերականական մեղանչումներ, 8. Գրաբարի օրէնքներէն համաձայնական խոտորումներ ևայլն։

## ՈՒԹԵՐՈՐԴ ԴԱՐ.—

*ԱԶԳԱՅԻՆ ԿԵԱՆՔ.— Մահմետական տիրապետութիւնը կը շարունակուի։ Կարգ մը արաբ ոստիկաններ և քանի մը հայ պատրիկներ իրարու կը յաջորդեն։ Միեւնոյն քաղաքական աննախանձելի կեանքը կայ։ Նախարարներ իրարու դէմ կը գործեն՝ ազդեցութիւն տարածելու և դիրքի հանելու ցանկութեամբ։ Արաբացիներու տիրապետութեան առեն Բագրատունեաց տոհմն էր որ զօրացած՝ տիրական կը դառնար հետզհետէ։*

*ՀԱՅ ԼԵԶՈՒ.— Արաբական ազդեցութիւնը աստիճանաբար կը ծաւալի հայ լեզուին ու գրականութեան վրայ։ Այս աբբասեան շրջանն էր Արաբիոյ համար, ուր դպրութիւնը թռիչ առած էր։ Արաբ գրականութեան ճոռոմ, ուռուցիկ ու երկայնաբան ոճը մուտ գտաւ հայոց մէջ և իմաստն սկսաւ խեղդուիլ խօսքի ձեւերուն մէջ։ Կորսուեցաւ վերջապէս գրաբարի ազնուութիւնը։ Մատենագիրներ օրինակած են զայն, ոմանք ընտրելագոյն եղանակով (Յովհան Իմաստասէր), ոմանք ալ անուշադիր և առանց ընտրողութեան (Յովհաննէս պատմաբան և Թովմա Արծրունի, Թ. դար)։ Իմաստներու յորդութիւնը կը փոխուի բառերու յորդութեան։ Ասոր վրայ աւելցնելով նաեւ գրաբարի թերակատար ուսումը և ռամկօրէնի խօսուած ու ժողովրդականացած լեզու մը ըլլալը, դիւրին է այլեւս հետեւցնել լեզուին վիճակը։ Ղեւոնդ Երէցի հասարակ, պարզ ու հետեւակ ոճը կը մատնէ լեզուին ընդհանուր կացութիւնը։ Այս դարուն մէջ Ստեփաննոս Սիւնեցի իր թարգմանութիւններովը ճոխացնել ուզեց լեզուն հելլենաբանութեամբ, սակայն անօգուտ, որովհետեւ ա՛լ ապագան ռամկօրէնինն էր։ Ը. դարու գրաբարը արուեստական ու բանագրօս կերպարանք մը կ'առնէ՝ արաբական ազդեցութեամբ և ռամկօրէնի յարձակումներով, որոնք կը սաստկանան մանաւանդ յաջորդող դարերու մէջ։*

ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒՀԻՆԵՐ.— Այս դարու գեղեցիկ երեւոյթն է Հայ Բանաստեղծութեան մէջ իգական սեռին մասնակցութիւնը։ Յիշատակուած այդ դէմքերն են Սահակդուխտ, Ստ. Սիւնեցիի քոյրը, քերթողուհի ու երաժիշտ, և Խոսրովիդուխտ. Վահան Գողթնացիին քոյրը։

ՌԱՄԿՕՐԷՆ.— Յայտնի է որ ռամկական մատենագրութիւն չկայ և քերթողական ու կրօնական աղնիւ լեզուն կ'արհամարհէ ռամկօրէնը։ Այս դարը ռամկօրէնի համար առանձին կարեւորութիւն մը չունի, որովհետեւ բացի քանի մը վիմաքանդակ արձանագրութիւններէ և մատենագրական գործերու մէջ ինքզինքնին մատնող ռամկօրէնի յատուկ ոճերէ ու ձեւերէ, ուրիշ գրաւոր ապացոյց չկայ։ Միայն թէ ԺԲ. դարուն երեւան եկած որոշ, հաստատուն ու կերպարանեալ լեզուն ու ընդհանուր դարձած ձեւերը բաւական ստոյգ վկայութիւն են թէ գոնէ Ը. և Թ. դարերուն, գուցէ և Է. դարուն մէջ ալ՝ գրեթէ նոյնն էր լեզուն, քիչ տարբերութեամբ. վասնզի այդ փոփոխութիւնը դանդաղութեամբ կ'ըլլայ բնականաբար։

## ԻՆՆԵՐՈՐԴ ԴԱՐ.—

ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑՔԵՐ.— Արաբական կալուածներու մէջ խլրտումները ծայր տուած էին այս դարուն մէջ, արաբները շատ մեղմ քաղաքականութիւն մը ունէին և բաղկացուցիչ ազգութիւններ կը փութային առիթէն օգտուիլ, երբ Բագրատունեաց հարստութիւնը կը հիմնուէր 859 ին Աշոտ Բագրատունիի անձով և «իշխանաց իշխան» տիտղոսով, ու 885 ին ալ թագաւորութեան կը վերածուէր։ Դժբաղդաբար Հայաստանի մէջ խաղաղութիւնը տեւական չեղաւ և պարսիկները սկսան բաղխումներ ունենալ, վրդովելով հայ կեանքը, որ անշուշտ այս կերպով անկարող էր գրական ու լեզուական առաջդիմութիւն ունենալու։

ՀԱՅ ԼԵԶՈՒ.—Աչքի զարնող որեւիցէ հանգամանք ցոյց չտար հայ լեզուն այս դարուն մէջ, ի բաց առեալ արաբական աստիճանաբար զօրացող ազդեցութենէն եւ ռամկօրէնի անդուլ յարձակումներէն։ Տակաւ խրթնութիւնները կը յաճախին եւ գրաբար լեզուն կը բռնազբօսնուի։ Արաբերէնը փայլ մը միայն տուած էր հայերէնին. բայց գրաբարի թերի ուսումը եւ ռամկօրէն խորհելու, խօսելու եւ գրաբար գրելու սովորականութիւնը կ'աղաւաղեն լեզուն։ Յովհան Կաթողիկոս եւ Թովմա Արծրունի երկուքն ալ կ'ապացուցանեն հայ լեզուին խեղճութիւնը։ Մատենագիրներ արդէն սակաւաթիւ էին։ Ուստի հարկաւ այս պայմաններուն մէջ ռամկօրէնը իր ռանձգութիւնները պիտի չատցնէր։ Լեզուի հիմնական օրէնքներուն անտեղեակութիւն, ժամանակակից ռամկօրէնին հակում, դարձուածքներու անճարակութիւն, բանի զարդարանք, մտացածին ոճ, անիմանալի խրթնութիւններ։ Ահա Թ. դարու հայերէն լեզուին նկարագիրը։ Աւելցուր տակաւին ասոր վրայ բառերու նոր ձեւեր, նորամուտ բառեր, սխալ առումներ, անյաջող փոխաբերութիւններ, անմտադիր աղաւաղումներ եւ այլն։ Ռամկօրէնը տարածուած էր ամէն կողմ (1)։ Ժողովուրդին հասկնալի լեզու մը պէտք էր, եւ գրաբարը այդ ընդունակութիւնը չունէր. ուստի բնականօրէն պայքար պիտի ստեղծուէր ռամկօրէնին ու գրաբարին միջեւ եւ մատենագիրներ ջանադիր ըլլային մեծամասնութեան հասկընալի դառնալ։ Միեւնոյն երեւոյթը գրեթէ միեւնոյն դարուն մէջ յունարէնին ու լատիներէնին մէջն ալ կայ։

(1) Այս դարու կէսէն առաջ լեզուին վրայ մեծ կերպարանափոխութիւն կը տեսնուի յայտնապէս, ինչպէս, 1. Նորանոր բառեր եւ նոր նշանակութիւններ (Համիմազ=դատախազ, Նեպակ=հրամանագիր, Հայրենիք=կալուած, Ձեռնաւոր=արհեստաւոր եւ այլն), 2. Բառերու նոր ձեւեր (Ջաղաց=ջրաղաց, էգի=այգի, Կառնուեշ=կամուրջ, եւ այլն), 3. Քերականական նորութիւններ, 4. Նախդիրներու գեղչում, 5. Բայերու խոնարհմունքին կամ ժամանակներու ռամկօրէն գործածութիւնը, 6. Համաձայնութեան եւ խնդրառութեան նոր կերպեր, 7. Նորամուտ աղաւաղի բառեր (Հարամ=վաստակ, Կուղպակ=կղպանք, Հաշալ եւ այլն)։

ՌԱՄԿՕՐԷՆ ԳԻՐՔ ՄԸ ՓՃԱՑԱԾ. — Այդ դարերուն մէջ լեզուի աղճատականութիւնը կը կայանար խրթնաբանութեան մէջ, որ կարգ մը ճոռոմաբան մատենագիրներու մենաշնորհն էր կարծես ։ Կ'արհամարհէին ռամկական լեզուն և անոր պարզութիւնն ու իմանալիութիւնը ։ Այս արհամարհանքը մոլեռանդութեան հասած էր ։ Յովհաննէս Կաթողիկոս իր պատմագրութեան մէջ կը յիշատակէ Աշոտ Անթիպատրկի տղուն Շապուհ Բագրատունիի գրած և «գեղջուկ բանիւ և ոչ ըստ քերթողական հրահանգի» յօրինուած ժամանակակից պատմութիւնը, որմէ լիովին օգտուած է ինք՝ իր գործին պատրաստութեան առեն ։ Այդ երկասիրութիւնը, որ չատերու կողմէ ամբողջովին և զուտ ռամկօրէն կը կարծուի, և որ մինչեւ հիմա երեւան ելած չէ, անշուշտ ժողովուրդին հասկնալի ըլլալու առաւելութիւնն ունէր և իր տեսակին մէջ միակ աղբիւր մը կրնար ըլլալ նոյն առենի աշխարհիկ հայերէնը մեզ ներկայացնող ։ Ազնուապետական մատենագրութիւնը չէր կրնար հանդուրժել այդպիսի գիրքի մը գոյութեան, և ուստի ամենայն հաւանականութեամբ դիտմամբ փճացուցած էին ։

ՎԻՄԱՔԱՆԴԱԿ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ. — Մինչեւ Թ. դար կը հասնի հնութիւնը այն վիմաքանդակ արձանագրութիւններուն, որոնք Հայաստանի պարիսպներուն և տաճարներուն վրայ կարդացուած են ու կը կարդացուին ։ Ը. էն Ժ. դար մատենագրութեան լռութիւնը կ'ընդհատեն այս յիշատակարանները, իբրեւ ռամկօրէնի յաղթանակին արձանագրութիւնը ։ Ասոնք հետեւեալ հանգամանքներն ունին ։

1. Հիներն աւելի քիչ են և սպառած ։ Հեազհետէ չատցած են ։

2. Ամենուն լեզուն ալ միեւնոյնն է, ռամկօրէն, գրաբարով և օտարութեամբ խառն, կոշտ և անմշակ ։

3. Վերջիններէն ոմանց մէջ գաւառաբարբառներու զանազանութիւնը կրնայ նշմարուիլ ։

4. Արձանագրութեանց մէջ խօսողներն են ազատնե-

րը, իշխանազուններն ու եկեղեցականները։

Այս ժամանակամիջոցը կրնայ համարուիլ գրաբարի եւ ռամկօրէնի փոխանցման շրջանը։

ՀԱՅ ԿՐՕՆԱՒՈՐՈՒՀԻՆԵՐ.— Ինչպէս նախընթաց դարերու ճգնաւորուհիներէն տեսանք, հայոց մէջ միանձնական կեանքը ընդհանուր սովորութիւն էր երկու սեռին համար ալ։ Միանձնուհիներ հաւատարար գրականութեամբ ալ կը զբաղէին. Ասոնցմէ է Մարիամ, որ, ըստ պատմութեան, քաշուեցաւ Սեւանայ վանքը եւ թարգմանեց տուաւ Յովհաննու Աւետարանին մեկնութիւնը։

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐ.—

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ.— Հայկական կեանքի մէջ Բագրատունիներու բարգաւաճման շրջանը պիտի ըլլար այս դարը, եթէ երկարատեւ խաղաղութիւն մը ըլլար։ Տարաբաղդօրէն բաղձացուած այդ հանդարտ վիճակը հազիւ գոյութիւն ունեցաւ։ Բագրատունի չորս թագաւորներ իրարու յաջորդեցին եւ զանազան պատերազմներ չկասեցուցին հայոց գործունէութիւնը։ Այս դարուն մէջ արաբական պետութիւնը, որմէ աշխարհ կը սոսկար, սկսաւ խարխլիլ եւ կազմալուծուիլ։ Արծրունեաց, Ռշտունեաց, Անձեւացեաց, Կիւրիկեան եւ Սիւնեաց թագաւորութիւնները կազմակերպուեցան։ Հակառակ աննպաստ պայմաններու, Անին ծաղկեցաւ եւ ստեղծուեցաւ հայկական ինքնուրոյն քաղաքակրթութիւնը, որ հիմա կ'ուսումնասիրուի եւ հիացում կ'առթէ գիտնականներու։ Եթէ մշակոյթի այս շրջանը քիչ մ'աւելի երկար տեւէր, ապահովաբար Հայաստանի քաղաքակրթութիւնը բարձրագոյն գիծերու պիտի հասնէր։

ՀԱՅ ԼԵԶՈՒ.— Մեծ բան մը չպիտի սպասուէր անշուշտ այս պայմաններուն ներքեւ, ուստի եւ լեզու ու գրականութիւն ալ յայտնի բարգաւաճում մը չունին։ Ը. եւ Թ. դարու հետքերը կը ցուցնէ լեզուն, աւելի խոր տպաւորութիւններ կրած։ Գրաբարը ոչինչ ունի այլեւս գի-

թիչ և ոսկեդարեան։ Այլափոխուած է բոլորովին և հրապարակէն գրեթէ քաշուած։ Մատենագիրներ վարանումի մէջ են և կը տատանին գրաբարի ու ռամկօրէնի մէջ։ Արաբական ազդեցութիւնը այս դարու հայ լեզուին մէջ իր յայտնի աստիճանին հասած է։ Արաբ գրութեան ազդեցութիւնը ներկայացնող գերազանցօրէն տաղանդաւոր միտքն է Գրիգոր Նարեկացին, որ Նարեկին մէջ հայերէն բառերով արաբերէն կը գրէ կարծես, ո՜րքան պերճախօս և այնքան ալ ինքնատիպ։

ՌԱՄԿՕՐԷՆ. — Միեւնոյն հետեւողականութիւնը կայ այս դարու ռամկօրէն լեզուին մէջ ալ, իր սահմանները ընդարձակած ըլլալով սակայն։ Հեղինակներ «գռեհիկ բան» կ'ըսեն ու կը թշնամանեն ժողովուրդին լեզուն, առանց ինքզինքնին ազատելու անոր տիրապետութենէն։ Գրաբարեաններու այս արհամարհանքը գրաբարի պահպանման տեսակէտով իր օգուտները ունեցած է միեւնոյն ատեն։ Ոչ ոք կը համարձակէր ռամկօրէնը գրի առնել, բայց անիկա իր ուժը կը գործէր՝ մեծ համեմատութիւններով. ժողովուրդին լեզուն էր և անոր կողմէ կը գործածուէր։ Նոյն իսկ Նարեկացի հարկադրուեր էր տեղ տեղ ռամկանալ՝ իր տաղերու և մեղեդիներուն մէջ։ Վիմաքանդակ արձանագրութիւններ կենդանի վկան են արդէն ռամկօրէնի տարածման։ Վենետիկի վանքը գտնուած գրչագիր ռամկօրէն Բժշկարանը ոմանք Ժ. դարու վերջերը կամ շատ շատ ԺԱ. դարու սկիզբները արաբերէնէ թարգմանուած կը նկատեն։ Այս ենթադրութիւնը՝ միացած ուրիշ տըւեալներու հետ՝ մեզ կ'աւետեն ռամկօրէն մատենագրութեան արշալոյսը։

## ԺԱ. ԴԱՐ.—

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿԸ. — Այս դարուն սկիզբը Հայաստան զանազան իշխանապետութեանց բաժնուած էր։ Բագրատունեաց թագաւորութեան վերջին շրջանին երբ ներքին ընտանեկան վէճեր կը մղուէին Հայաստանի մէջ,

Սելճուքներու Տուղրիլ պէկը մեծ ոյժով մտաւ Հայաստան։ Արծրունեաց Սենեքերիմ թագաւորն իր աթոռը փոխադրեց Սեբաստիա, իսկ յոյները քալեցին դէպի արեւելք։ Գագիկ Բ. գահ բարձրացած ժամանակ (1040) արդէն երկիրը տագնապի մը մէջ կը գտնուէր. ան՝ իմաստութեամբ տագնապը հեռացուց, յապաղեցուց, բայց անկարող եղաւ արգիլել, քանի որ դաւաճաններ անամօթաբար Անին եւ Հայաստանը ծախեցին յոյներուն։ Արքականութիւնն ինկած է այլեւս, բայց յոյներն ու սելճուքները բաւական էին հայոց արիւնը ծծելու համար։ Գագիկ Բ. ի աքսորանքով եւ Անիի գրաւումով վերջ կը գտնէ (1045) Բագրատունեաց թագաւորութիւնը, որուն կը յաջորդէ երկրին ամէն կողմը սոսկալի աւերածութիւն մը։ Սելճուքներ կ'այրեն Անին ու կ'աւրշակեն, եւ ամբողջ Հայաստանն իրենց գազանութեանց կ'ենթարկեն։ Բաղդագուրկ հայ ժողովուրդը սովէն եւ այս անհանդուրժելի կեանքէն սարսափահար՝ կը սկսի երկրէն դուրս գաղթել։ Ահա այս գաղթականութեան առնն է որ կարեւոր ժողովրդային զանգուած մ'ալ կարգ մը առաջնորդներու հետ կը քաշուի Տօրոսի բարձունքները, ուր արդէն քիչ ու շատ հայեր կային բնակութիւն հաստատած։ Ռուբէն իշխանը 1080 ին կը հիմնէ Ռուբինեանց իշխանութիւնը եւ Կիլիկիոյ մէջ հաւաքուած հայութիւնը կը համախմբէ իր շուրջը։

ԿԻԼԻԿԵԱՆ ՇՐՋԱՆ. — Մեծ Հայաստանի այս տխուր կացութեան մէջ, թէ՛ Մայր Հայրենիքէն եւ թէ գաղութներուն աչքերը կը յառին այս նորակազմ իշխանութեան, որ հետզհետէ կ'ընդարձակէ իր սահմանները եւ կը դառնայ կեդրոնական ոյժ մը։ Սելճուքները տակաւին Կիլիկիայէն դուրս կը գործեն։ Հայոց քաղաքական կեանքի վերածնութեան պիտի հետեւէր անշուշտ իմացական վերածնունդն ալ։ Այդ փթթումը ԺԲ. դարու մէ՛ջ միայն կրնար ըլլալ, թէեւ սաղմը այս դարուն մէջ պէտք էր փնտռել։ Սա կիլիկեան հայ իմացական շրջանի սկիզբն է։

հայութիւնը տակաւ խմբուեցաւ Կիլիկիոյ մէջ, որ երկրորդ մեծ կեդրոն մը դարձաւ այնուհետեւ՝ հայ լեզուի և գրական գործունէութեան։

ՀԱՅ ԼԵԶՈՒ.— Գրաբարի ու ռամկօրէնի միջեւ անջրպետը բացած էին արդէն դարերը. մին՝ կ'առաջանայ և միւսը՝ կը տկարանայ։ Գրաբարը եկեղեցիին ու եկեղեցականներուն յատուկ սրբազան լեզուն է, մինչ ժողովուրդը կը խօսի ռամկօրէնը և իր առօրեայ բոլոր պէտքերուն համար զայն կը գործածէ։ Դիւանին ու բժիշկին խօսքերը ռամկօրէնով կ'ուղղուին ժողովուրդին։ Ճառեր, շարականներ ու սրբազան գրութիւններ կրօնական լեզուով կը գրուին, իսկ ժողովրդային տաղեր, արձանագրութիւններ, յիշատակարաններ և բժշկական նիւթեր, անտարակոյս նաեւ նամակներ՝ ռամկօրէնով։ Մինչեւ հիմա հայ մատենագրութիւնը առաւելապէս կրօնական ու պատմական երկե՛ր միայն արտադրած էր, թէեւ հազուադէպօրէն երեւցան իմաստասիրական, հռետորական, քերականական, աշխարհագրական կամ բանասիրական և նոյնիսկ գիտական նիւթեր։ Այս դարուն մէջ մշակուեցաւ նոր սեռ մը, յանգաւոր բանաստեղծութիւնը, որուն նախաձեռնարկն էր Գր. Մագիստրոս։ Բանաստեղծութիւնը հայ տաղանդին մեծագոյն պարգեւն է։ Դ. դարէն մինչեւ ԺԱ. դար կրօնական քերթութիւնը մշակուած էր արդէն, բայց լոկ ամանակի չափով և անյանգ։ Դիւրին չէր ի հարկէ այս աշխատութիւնն ալ, բայց վերջապէս յանգ գտնելու և անով կաշկանդուելու դժուարութենէն զերծ էր գոնէ։ Արաբ դպրութեանց ազդեցութիւնո՛վ էր որ Գ. Մագիստրոս ձայնական յանգ մտցուց Հայ Բանաստեղծութեան մէջ։ Ասիկա լեզուին համար վընասակար կրնար ըլլալ, վասնզի յանգ գտնելու հարկադրութիւնը՝ բանաստեղծութիւններուն մէջ պակսեցուց լեզուին ուշադիր հոգածութիւնը և որոշ լեզուական թոյլտուութիւններ ընել տուաւ քերթողներուն։ Ու, մէկ կողմէ արաբական յանգաւոր քերթողութեան մուտքը լեզուա-

կան սկզբունքներու զոհողութիւն պատճառելով, միւս կողմէ ալ ռամկօրէնն իր սահմանը տարածելով՝ գրաբարը կ'երթար դէպի անխուսափելի անկում։

ԱՆԴՐԱՆԻԿ ԱՇԽԱՐՀԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐԸ.— Այս դարուն մէջ գրեթէ առաջին անգամն է որ կը հանդիպինք աշխարհական մատենագրի մը (Գ. Մագիստրոս)։ Ասկէ առաջ գրականութիւնը կղերներու մենաշնորհն էր. կոր-ծեա և անպատճառ հարկ էր կրօնաւորական սքեմ ունե-նալ ու վանքերու մէջ բնակիլ՝ մատենագրութեան պա-րապելու համար։ Այս կերպով հայ միտքն ընդհանուր ար-տայայտութեամբ մը չէ՛ր փայլեր և գոյութիւն ունեցող գրականութիւնն ալ կղերական մտայնութեան սեփական արտայայտութիւնն էր միայն, ինչ որ միակողմանի կը դարձնէր զայն և համեմատականութեան կը վերածէր ա-նոր արժէքը։ Մագիստրոս քննեց այն պատուարը, որ աշ-խարհականը կը բաժնէր իրե՛ն ալ ժառանգութիւնն ե-ղող հայրենի լեզուէն ու գրականութենէն։ Սա նոր յաղ-թանակ մէ հայ գրականութեան մէջ։

ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ՀԱՅԵՐԷՆ կամ ՌԱՄԿՕՐԷՆ.— Կիլիկեան շրջանին ռամկօրէնը նոր թափ առած է և ան-դառնալի կերպով կ'ուզէ զատուիլ գրաբարէն։ Երկու-քոյր լեզուներ իրարու վրայ կ'ազդեն փոխադարձաբար. բայց յաղթանակը ռամկօրէնին կողմն է անշուշտ։ Արե-ւելեան այլազգի և նոյն իսկ լատին ու ֆրանկ բառեր ան-խտիր կը գործածուին։ Ռամկօրէնը, որ այս շրջանին Միջնադարեան Հայերէն կ'ըսուի, իրերու բնական հետե-ւանքով թէեւ բաւական կազմակերպուած՝ պղտո՛ր է ինքնին սակայն։ Կարգ մը վիմաքանդակ արձանագրութիւններու լեզուէն զատ եթէ ուրիշ ապացոյց ալ չըլլար, եթէ Վենետիկի Բժշկարանն ալ հաշիւի չառնուէր, կրկին չպիտի վարա-նէինք ըսելու թէ ռամկօրէնն արդէն յաղթանակած է։ Հաստատապէս պնդողներ կան թէ այս դարուն մէջ ա՛ն-պատճառ ռամկօրէն մատենագրութիւն գոյութիւն ունե-ցած է։ Ամեն պարագայի մէջ ԺԱ. դարը հայկական ռամկօ-

րէն մատենագրութեան և գրաբար լեզուի արշալոյսն է, ճիշդ ինչպէս որ Նոր յունարէնն ու Նոր լատիներէնն ալ միեւնոյն դարերուն մէջ կեանք առած են։

## ԺԲ. ԴԱՐ.—

ԿԵԱՆՔԸ ԿԻԼԻԿԻՈՅ ՄԷՋ.— ԺԲ. դարուն սկիզբը հայերը Կիլիկիոյ մէջ հաստատուած են արդէն և հետզհետէ կ'ընդարձակեն իրենց ազդեցութեան շրջանակը։ Ռուբինեանց իշխանութիւնը տակաւ կը զօրանայ և իրարու յաջորդող իշխաններ նորանոր տեղեր կը գրաւեն։ Բիւզանդիոն համակրութեամբ կը դիտէ բոլորը, խորապէս համոզուած՝ թէ սելճուգ-թաթարական հոսանքին դէմ կիլիկեան հայերը միայն կրնային պատուար ըլլալ։ Այս նկատումէն դուրս, երբ Ռուբինեանց իշխանութիւնը Բիւզանդական կայսրութեան սպառնական ըլլալու աստիճան զօրանար, իր քաղաքականութիւնը կրնար փոխուիլ սակայն, ինչպէս ալ եղաւ արդէն։ Առաջին խաչակրութիւնը նախընթաց դարուն վերջին օրերուն մէջ տեղի ունեցած էր Ռուբէնի յաջորդին, Կոստանդինի օրով (1096) և մեծ օժանդակութիւն գտած Կիլիկիոյ հայոց կողմէն։ Լեւոն Բ.ի օրով տեղի ունեցաւ Բ. խաչակրութիւնը, որուն ըրած մեծ աջակցութեանը համար Լեւոն յունաց կայսրէն նոյնիսկ թագ ստացաւ։ Կիլիկեան անդրանիկ այս թագաւորին օրով Կիլիկիա իր ծաղկումի շրջանին մէջ էր։ Լեւոն Բ. կրթուած, քաղաքագէտ, ռազմիկ և եւրոպական կեանքին մօտէն ծանօթ վեհապետ մ'էր, որուն յատկութիւնները անհրաժեշտ էին Կիլիկիան այդ շրջանին մէջ ղեկավարողին համար։ Ան օրէնքներ հաստատեց, զարկ տուաւ երկրագործութեան, նաւարկութեան և զանազան արհեստներու, բարեկարգեց բանակը, եւրոպացի պաշտօնատարներ կարգեց, դիւրացուց հաղորդակցութիւնը, և բացաւ կրթական ու բարեգործական հիմնարկութիւններ։ Այս շրջանին մէջ Եւրոպայի մէջ տարածուած էր Մէրկան-տիլիզմի վարդապետութիւնը, որ հարստութեան աղբիւ-

որ կը նկատէր դրամը։ Այս գաղափարը մղում տուած էր վաճառականութեան։ Լեւոնի շրջանը և կիլիկեան կեանքը Մերկանտիլիզմի հետեւողութիւնն է հայ կեանքին մէջ։ Այս դարուն մէջ ծաղկեցաւ Կիլիկիոյ մայրաքաղաքը, Սիսը, և Լեւոնի օրով հայ արքունիքը եւրոպականացաւ։ Եւրոպացիներու բնակութիւնը թոյլատրուեցաւ Կիլիկիոյ մէջ, որով և հայերը սկսան մօտէն շփուիլ անոնց հետ։ Դրացի Կիպրոսը արդէն եւրոպացիներու բնակավայր էր։ Դարը ուրեմն փայլուն էր և Կիլիկիոյ համար վերին աստիճանի շահեկան։ Մեծ Հայաստանը արիւնի մէջ էր կրկին, մինչ Կիլիկիան կը բարգաւաճէր։ Սելճուգեան իշխանակալներու Տուղրիլի և Ալփասլանի մահասփիւռ արշաւանքներէն յետոյ վրացիներն ու պարսիկները կռիւ կը մղէին իրարու հետ՝ Հայաստանը դարձնելով «գժտութեան խնձոր»։

ԼԱՏԻՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՄԷՋ.— Կիլիկեան շրջանի բարւոք յարաբերութիւնը Եւրոպայի հետ և եւրոպացիներու տուած արտօնութիւնները Լատին միսիօնարութեան ուշադրութիւնը հրաւիրեցին։ Կաթոլիկ քարոզիչներ սկսան Կիլիկիա մտնել և լատինականութիւն քարոզել։ Իրենց գործը կը դիւրացնէին Կիլիկիոյ լատին թագուհիներն ու լատինական խնամութիւնը։ Այսպէս լատին կրօնաւորներ՝ ունիթորներու և խաչակիրներու հետ ազդեցին հայերէն լեզուին վրայ և աղճատեցին զայն, ինչպէս ի վերջոյ ալ պիտի տեսնենք։ Շատ մը լատինական բառեր և ոճեր կան մտած լեզուին մէջ։

ԳՐԱԿԱՆ ՆՈՐ ՇԱՐԺՈՒՄ ԵՒ ԱՐԾԱԹԻ ԴԱՐ.— Կիլիկիոյ այս նպաստաւոր պայմաններուն բերումով գրական նոր շարժում մը կը ստեղծուի այս դարուն մէջ։ Մատենագիրներ դէպի հինը դարձ մը կ'ընեն, կ'ուզեն ակին մօտենալ և պարզ ու վճիտ հին հայերէնն է որ կ'ոգեկոչեն. բայց անօգուտ։ Հոսանքն ա՛յնքան ուժգին է որ արուեստական ջանքերն անկարող կը դառնան կենդանութիւն ներմուծելու գրաբարի երակներուն մէջ։ Արծաթի դարն է ահաւասիկ։ Յունական լեզուն անծանօթ էր այլ-

եւս այս սերունդին, և իրենց ընթերցումները հայերէն կամ շատ շատ լատիներէն էին։ Ասիկա անկախ և հայեցի գրականութեան մը ու լեզուի ծնունդ պիտի տար։ Բայց բանաւոր լեզո՞ւն։— Ասիկա այլեւս չէր կրնար վերադարձ մը ընել՝ դէպի հինը, ոսկեդարը, հակառակ մատենագիրներու բուռն ճիգերուն։

ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՈՍԿԵԴԱՐԸ.— Հայկական գրականութեան ու լեզուի շրջաններուն մէջ երբեք բանաստեղծութիւնը հասած չէր բարձրագոյն ոլորտի մը, որչափ այս դարուն մէջ՝ ուր Ներսէս Շնորհալիի տաղանդին շնորհիւ ան կ'ունենայ անհամեմատ թռիչ և հրաշալի յօրինուածութիւն։ Շնորհալիի գրաբար բանաստեղծութիւնները գոհարներն են հայ լեզուին։

ՌԱՄԿՕՐԷՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ.— Այս դարը բեղմնաւոր է աշխարհիկ լեզուի տեսակէտով։ Վերջապէս ժամանակն եկած էր որ մատենագիրներու յոժարութիւնները տեղի տային և ժողովրդական լեզուն տէրը դառնար իր իրաւունքներուն, իբրեւ կազմակերպուած լեզու մը, որ բաւական նոր մթերքներ ալ ունի հաւաքած։ Ո՛չ միայն պարզ մատենագիրներ, այլեւ նուիրապետական աթոռներու վրայ գահուողներ կը խոնարհին աշխարհիկ լեզուին առջեւ և ռամկօրէնին իրաւունք կուտան կատարելապէս քաղաքացիանալու, քանի որ ժողովուրդը գրաբար երբեք չէր հասկնար և անհագին համեմատութիւն առացած էր ռամկօրէնի ծաւալը։ Ժողովուրդին հասկնալի ըլլալու համար պէտք էր իր լեզուով գրել։ Մէկ կողմ թողլով պահ մը զուտ ռամկօրէն գիրքերը, որոնց վրայ քիչ յետոյ պիտի խօսինք, կը տեսնենք նոյնիսկ մաքրասէր գրաբարեաններուն գործերը՝ աշխարհիկ լեզուի ողողումներուն ենթակայ։ Եկեղեցական քրոնիկագիր Մատթէոս Ուռհայեցի գրաբար գրած է թէեւ, բայց ունի շատ մը ռամկական էջեր։ Շնորհալիի լեզուն, հանելուկներուն մէջ գրաբախառն ըլլալով հանդերձ՝ ռամկօրէն է։ Վարդան պատմիչ և Կիրակոս Գանձակեցի ռամ-

կարանութիւններ շատ ունին։ Ներսէս Լամբրոնացի Լեւոնի ուղղած թուղթին մէջ շատ տեղեր գրեթէ աշխարհաբար է, այնքան պարզ գրուած, որպէսզի իր հակառակորդէն հասկցուի։ Ինչպէս որ ասկէ առաջ գրաբարը ռամկօրէնով կը խառնուէր, այնպէս ալ այսուհետեւ ռամկօրէնն է որ գրաբարի ձեւերով խառնուած է (1)։

ԱՌԱՋԻՆ ՌԱՄԿՕՐԷՆ ԳԻՐՔԸ.— Միջնադարեան հայերէնի վաւերական հնագոյն երկասիրութիւնն է Մխիթար Հերացի բժշկապետին Ջերմանց Բժշկութիւն անուն գիրքը, որ 1184ին գրուած է։ Մինչեւ հիմա ծանօթ ռամկագիրներու մէջ ամէնէն հին ռամկօրէն արձակ գրողն է Հերացի։ Մխիթար Հերացի իբրեւ բժիշկ՝ կը գործածէ պարզ եւ ժողովրդական լեզու մը։ Ռամկօրէնի արտայայտիչ ու պարզ ոճը անշուշտ շատ գնահատուեցաւ ժողովուրդէն, որ անկարող էր հասկնալ գրաբարը։ Ուստի ո՛վ որ ժողովուրդին մարսելի բան մը գրել կ'ուզէր՝ պէտք է ռամկօրէնին դիմէր։ Այս է պատճառը որ ամենահին ռամկօրէն գիրքերը ժողովրդական-գիտական ձեռնարկներ են։ Այս դարուն մէջ արաբերէնէ հայերէնի կը վերածուի Գոնիոս Անատոլիոս (Անաթոլ Գերիթացի) անուն պէյրութցի յոյնի մը Գիրք Վաստակոց անուն գիրքէն կարեւոր մասեր՝ երկրագործութեան եւ մանաւանդ այգեգործութեան վերաբերեալ։ Այս գործերը կարեւոր են աշխարհաբարի պատմութեան տեսակէտով։ ԺԲ. դարէն կը սկսի ուրեմն ռամկօրէն լեզուով կատարուած հայ մատենագրութիւնը։

---

(1) Համեմատելով ԺԲ. դարու ռամկօրէնը գրաբարին հետ, կը տեսնենք որ առաջինին ինքնուրոյն դրոշմ տուողն եղած են 1. Կու, կը եւ եա, եկ մասնիկներու գործածութիւնը, 2. Սղմանց եւ ամփոփմանց յաճախութեամբ բառերու ձեւերուն որոշողութիւնը, 3. Նախդիրներու զեղչում կամ յատուկ գործածութիւն, 4. Քանի մը հոլովներու եւ ժամանակներու նոր կազմութիւն, 5. Բացասական բայերու նոր շէնք, 6. Նորելուկ բառեր, 7. Նորելուկ նշանակութիւններ, 8. Նորելուկ խնդրառութիւններ, եւ 9. Օտար բառեր՝ ընիկ ածանցումներով հայացած։ Ուրեմն կերպարանուած է լեզուն, միայն թէ շատ մը գրաբար ձեւեր, նախդիրներ եւայլն դեռ կենդանի էին եւ ռամկականներուն հետ քովէ քով կը գործածուէին։

## ԺԳ. ԴԱՐ.—

ՀԱՅ ԿՆԱՆՔԸ.— Եթէ Լեւոն Բ. ի սկսած գործը շարունակուէր իր յաջորդներուն ձեռքով, միաբան գործակցութեամբ, բնականաբար թէ՛ Կիլիկիոյ բաղդը տարբեր կ՚ըլլար և թէ մշակութական մեծ առաջդիմութիւն տեղի կ՚ունենար: Ներքին այս վէճերը փճացուցին հայ թագաւորներու բարեկամեցողութիւններն ու գործունէութեան ջանքերը: Քիչ յետոյ Մամլուքներու և արեւմտեան սուլթաններու արշաւանքները երկիրը աւերի մատնեցին: Անոնք բաւական չէին կարծես և ահա Եգիպտոսի Սուլթանն էր, որ հարուէն կուգար սպառնալ Կիլիկիոյ: Բայց ներքին երկպառակութիւնը արդէն կ՚արագացնէր Ռուբինեանց իշխանութեան կործանումը: Այս դարի սկիզբներուն թաթարներուն անգթութիւններն Մեծ Հայաստանի մէջ սկսան՝ Զարմազանի և Բաչուի առաջնորդութեամբ: Պատմութեան կը թողունք մանրամասնութիւնը այս արհաւրոտ օրերուն, որոնց մէջ Մեծ Հայաստան արիւնի և արցունքի մէջ էր,

ԳՐԱԲԱՐ ԵՒ ՊՂԻՆՁԻ ԴԱՐ.— Եթէ ամբողջ հայ մատենագրութիւնը ուզենք ուշադրութեան առարկայ դարձնել, այս սոսկալի պայմաններուն մէջ ո՛չ լեզու և ո՛չ ալ գրականութիւն պէտք է փնտռենք Մեծ Հայաստանի մէջ, Կիլիկիայէն զատ, ուր ռամկօրէնը կը ծաղկէր: Նախնեաց ընտիր ու վայելչաբան լեզուն՝ տխուր վիճակի մը մէջ կը ներկայանայ: Գրաբարի ուսումը չատոնց դադրած է և հայ լեզուն իր պղնձի շրջանին մէջ կը գտնուի: Իր չփոթ վիճակով գրաբարը այլեւս անկարող էր լեզուական միութիւն մը ներկայացնելու, վասնզի իր կրած բազմաթիւ ազդեցութիւնները կերպարանափոխած էին զայն: Դիտելի է մանաւանդ լատինական ազդեցութիւնը:

ԿԻԼԻԿԵԱՆ ՌԱՄԿՕՐԷՆԸ.— Ռամկօրէնի առաջխաղացման մէջ կը յայտնուի կիլիկեան բարբառը իր բոլոր գոյներով ու կրած ազդեցութիւններով: Ծողովրդային

կեանքի մէջ փնտռուած ու գործածուած լեզուն ռամկօրէնն է, որ գրաւոր լեզու դարձած է։ Հետզհետէ կը յաճախեն ռամկօրէն գիրքեր, որոնք կիլիկեան բարբառով գրուած են։ Լատինական տարրը ռամկօրէնի մէջ ալ յաճախական է։ Բանասիրական, ինչպէս նաև պատմական տեսակէտով մեծ արժէք ունին այս և յաջորդ դարուն վերաբերող կարգ մը դիւանական արձանագրութիւններ և արքունի դաշնագրեր, որոնք ռամկօրէն գրուած են, թէև լատին և ֆրանկ բառերով խճողուած ու լի, և որոնք այժմ կը գտնուին եւրոպական դիւանական արխիւներուն մէջ։ Կիլիկիոյ եւրոպականացման շրջանին շատ մը պաշտօնական բառեր ալ մուտ գտած են լեզուին մէջ։ Դարուն ընտրելագոյն պատմիչն է Վարդան, որուն ռամկօրէնը գրաբար ոճերով խառն է։ Ռամկօրէնի պահանջն այնչափ մեծ է որ Սմբատ պատմիչ Գունդստապլ գրաբարը ձեռ և անիմանալի, իսկ ռամկօրէնը հեշտալուր և սովորական անուանելով՝ ռամկօրէնի կը վերածէ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը ու Մատթէոս Ուռհայեցիի (ԺԲ. դար) Պատմութիւնը գրաբարէն և Անսիզք Անտիոքայ օրինագիրքը հին ֆրանսերէնէն։ Վերջինին լեզուն առաջինին չափ պարզ չէ, բայց գաղափար մը կուտայ ֆրանկաց լեզուի ազդեցութեան ենթարկուած կիլիկեան հայերէնին մասին։ Սմբատ պատմիչի լեզուն ընդհանրապէս բնական է։

Գրական նոր սեռ մը այս դարուն մէջ ռամկօրէնով մշակումը ուշագրաւ է։ Կ'ըսուի թէ Վարդան Այգեկցի առակախօսը, որ նոր ճանչցուած դէմք մ'է, հեղինակն է Աղուեսագիրքին և Ոսկեփորիկներու մէջ գտնըուած կարգ մը ռամկօրէն առակներու։

## ԺԳ. ԴԱՐ—

**ԿԻԼԻԿԻՈՅ ՓԱՌՔԻՆ ՇԻՋՈՒՄԸ**.— Հայ ժողովուրդը, որ ինքնուրոյն կեանք մը յաջողած էր ստեղծել Կիլիկիոյ մէջ, այս դարուն սրտի խորունկ կսկիծով միայն կրնար տեսնել թէ աւերակ դարձած դաշտային Հայաս-

տանին քովն ի վեր Տօրոսի շղթային մէջ թառած հայկական գահն ալ կը խարխլայ և քաղաքական փոթորիկներ կը սպառնան զայն տապալել: Ներքին վէճեր, փութացուցած էին Կիլիկիոյ փառքին շիջումը: Հոս ևս կրօնական վէճեր ու ատելութիւններ տիրապետած ու եղբայր եղբօր դէմ հանած էին: Վերջապէս Լեւոն Զ. (ըստ ոմանց Լեւոն Ե.) Եգիպտոսի Սուլթանին ձեռքով Գահիրէ տարուեցաւ ու այդպէսով վերջ գտաւ նաև թագաւորութիւնը՝ գրեթէ 300 տարուան կեանքէ մը ետքը:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ.— Հանգամանքները աւելի ևս տարափելի էին Մեծ Հայաստանի մէջ, ուր հանգստութիւն երբեք չկար: Թաթարները, որոնք ԺԳ. դարէն ըսկսած էին արշաւել Հայաստան ու աւերել զայն, այս դարուն մէջ կարելին ի գործ դրին կարծես՝ ժամ առաջ կործանելու համար երկիրը և քար քարի վրայ չթողելով՝ կենդանութեան ամեն նշոյլ մեռցնելու համար: Մինչեւ հիմակուան աւերումներուն պակասը լրացնելու համար Լէնկթիմուր անգութ բռնապետը տիրեց Հայաստանի՝ սուրի և հուրի մատնելով ամեն ինչ: Իր յաջորդները միեւնոյն կերպով վարուեցան՝ հազարաւորներու անմեղ արիւնները թափելով: Ու քանի մը արիւնկզակ իշխաններ, ինչպէս Գարա Եուսուֆ, Շահրուհ, Ճիհանկիր, Իսկէնտէր, Ուզուն Հասան և այլն Հայաստանի սրտին վրայ սկսան իրարու դէմ կռուիլ, ամեն տեսակ բարբարոսութիւններու ենթարկելով հայ ժողովուրդը: Մնացող ժողովուրդին համար ուրիշ բան չէր մնար այլեւս՝ բայց եթէ թողուլ Հայաստանը և գաղթել, ճիչդը ըսելու համար՝ փախչիլ, հեռո՜ւ, և օտար երկիրներ՝ ուր դանակը իր կոկորդին չէր սպառնար ամեն րոպէ և գէշ աղէկ կրնար իր գոյութիւնը քաշկռտել: Ու սկսան գաղթականութիւնները՝ չարա՜ն չարա՜ն, աղէկտուր ու սրտայոյզ: Հարուածը որչափ խիստ էր, այնքան ալ հեռու կը վազէին այս դժբաղդ փախստականները՝ Մոլտովիա, Վալաքիա, Իտալիա, Լեհաստան և Հնդկաստան, որոնց հետ

առեւտրական յարաբերութիւններ ունէին արդէն։ Հայերը այս գաղթականութեան միջոցին իրենց հետ տարին իրենց բարբառները։ Դարեր վերջ գաւառաբարբառներու զգալի փոփոխութիւն կայ գաղթականներու մէջ։

ՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ՎԻՃԱԿԸ.— Ռուբինեանց հարստութեան անկումը, թաթարներու արշաւանքները և գաղթը մեծ հարուած կուտան հայ կեանքին, բարքերուն, լեզուին և գրականութեան։ Ամբողջ տասը դար իր սեփական միջավայրին մէջ ապրող գրաւոր լեզուն ստիպուած էր թողուլ իր կեդրոնը։ Օտար տարրեր ազատ ասպարէզ գտած կը սպառնան հայ լեզուի սահմաններէն ներս։ Դարուն սկիզբը աննախանձելի կացութիւն մը ունէր լեզուն։ Հայոց դիրքն ու վաճառականական ձեռնարկները օգնած էին լեզուին անկման և օտար ազդեցութիւններու ենթարկման։ Արեւմտեան ազդեցութիւնը, որ կը սկսի Ռուբինեանց շրջանէն, կը չեշտուի հիմա։ Ունիթորները եկան նոր կից մը եւս տալու հայ լեզուի մաքրութեան, որ խաթարուած էր արդէն՝ առանց անոր ալ։ Թուրք և Պարսիկ լեզուներու ներգործութիւնն ալ բացայայտ կ'երեւի։ Դասական մատենագրութիւնը կ'իյնայ հայ մատենագրութեան հոգեվարքով։

ՈՒՆԻԹՈՐՆԵՐ ԵՒ ԼԱՏԻՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ.— Կիլիկիոյ մէջ ստեղծուած գրական համեմատաբար հայեցի դպրութիւնն ու լեզուն երկու երեք դարեր միայն տեւելով՝ ա՛լ չդիմացան։ Ծիշդ այս անկման սկզբնաւորութեան ատեն էր որ Ունիթոր կոչուած լատին քարոզիչներ արշաւեցին Հայաստան, քարոզեցին, գրեցին, նոյնիսկ գիրքեր յօրինեցին կամ թարգմանեցին և լատինացուցին հայ լեզուն՝ զայն անճաշակ և լեզուին ոգիին անհամապատասխան նորութիւններով աղճատելով։

Արեւմուտքի՝ հայոց հետ մշակած սերտ յարաբերութիւններու տակ թագնուած կային կրօնական նկատումներ։ Վատիկանի ձգտումն էր յարաբերիլ, բանակցիլ, յարմարագոյն րոպէին գործել և լատինացնել հայերը

Արդէն ամէն անգամ որ հայեր օժանդակութիւն խնդրած են եւրոպական քրիստոնեայ պետութիւններէն, միջին դարերու մէջ, միշտ կրօնական զոհողութիւններու ենթարկուած են։ Հայաստանի կացութիւնը շատ նպաստաւոր առիթ մը կը ներկայացնէր կրօնական պրոպականտայի համար։ Ուստի Հռոմի Յովհաննէս ԻԲ. Պապը 1316ին արեւելք ղրկեց Տոմինիկեան կազմակերպութեան պատկանող Բարդուղիմէոս եպիսկոպոսը, արեւելեան ազգերու կրօնական եւ քաղաքական վիճակը քննելու համար իբր թէ։ Սա յետոյ Մեծ Հայոց գաւառին արքեպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Լատին պաշտօնական միսիոնարութեան սկիզբն էր աս։ Հայ ժողովուրդին ընկճուած վիճակը մէկ կողմէն, լատինամիտ թագաւորներու լայն քաջալերութիւնը միւս կողմէն ընդարձակ ասպարէզ տուին լատիններուն՝ գործելու համար։ Բարդուղիմէոս՝ ուշիմ մարդ էր եւ իրեն վստահուած գործը կարգադրելու կարող։ Ան բացաւ դպրոցներ, եւ ուսում ու գիտութիւն տարածելու պատրուակաւ սկսաւ Հայ Եկեղեցին հարուածել եւ լատինացնել շատ մը աշակերտներ։ Բարդուղիմէոս իր աշակերտներուն օգնութեամբ լատինական շատ մը գրքեր հայերէնի թարգմանեց եւ ցրուեց հայ ժողովուրդին մէջ։ Ասոնք կը կոչուին Ունիթորներ (միաբանասէր), որովհետեւ իրենց առաքելութիւնն էր Հայ Եկեղեցին միացնել Հռովմէական Եկեղեցիին հետ։ Հայ լեզուին ապականութիւնը եւ վնասը շատ մեծ էր լատիններուն պատճառաւ։ Հայերէնը այլայլած, խանգարուած եւ լատինացած էր պարզապէս։ Հայ լեզուի ու գրականութեան մէջ լատինաբանութեան շրջան էր ասիկա, որ շատ կը նմանի Ոսկեդարի հելլենաբանութեան, աս տարբերութեամբ որ անիկա գիտութեան անունով եղաւ, մինչ ասիկա կրօնքի։ Բարդուղիմէոս 1353ին մեռաւ, իրեն յաջորդ ունենալով Յովհաննէս Քռնեցին, որ՝ քաջալերուած իրենց գտած յաջողութիւններէն, ծայրայեղութիւններու մղուեցաւ՝ բանադրելով սոսկալի հակահոսանք մը։ Այս տգեղ մարդոր-

ութիւնը և մղուած ազատ պայքարը չէր կրնար բնականաբար մերժելի ըլլալ հայ եկեղեցականներու, որոնք իրենց լեզուն ու գրիչը սրեցին՝ մաքառելու համար լատինականութեան սպառնիչ հեղեղին դէմ։ Այս պայքարողներու գլխաւորներն են Եսայի Նչեցի, Մխիթար Սասունցի, Յովհաննէս Որոտնեցի, Գրիգոր Տաթևացի և այլն։ Պէտք է ըսել որ Տաթևացիի գործածած լեզուն բաղդատմամբ իր հակառակորդներուն, աւելի մաքուր է և հարազատ։ Լատիններու գործունէութիւնը եւրոպ. քրիստոնեայ պետութիւններու հովանաւորութեամբ շարունակուեցաւ մինչև ԺԷ. դար և ապա մինչև վերջ, տեղի տալով կրօնական այն վէճերուն, որոնք ամբողջ ԺԷ. և ԺԸ. դարերը գրաւեցին, մեծ համեմատութիւններ առած և անհեթեթ ծայրայեղութիւններու մղուած։ Հռովմէական այս պրօպագանտը մղեց հայ կղերն ու մտաւորականները՝ ունենալու տպարաններ և կրթական հաստատութիւններ։ Բարենախանձ մրցակցութիւն մըն էր այս, որ իր մեծ օգուտներն ունեցաւ։ Հռովմի պապերուն հայոց ընծայած ուշը պատճառ եղաւ որ հայն ուսումնասիրուի՝ իր կրօնքով, իր լեզուով, գրականութիւնով ու պատմութիւնով, և ծանօթացուի Եւրոպայի։

ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԵՐԳԻՉՆԵՐՈՒ ՇՐՋԱՆԸ.— Եթէ հայ մատենագրութիւնն ու գրաբարը մահուան կը մօտենային հետզհետէ, և կիլիկեան ռամկօրէնը արևմուտքի ազդեցութեան ներքև էր բոլորովին, թէև ժողովրդականացած, ասդին գրական ու լեզուական ուրիշ կեանք մ'է որ կը սկսէր, ուրիշ սեռ մը կը մշակուէր։ Հայկական միջնադարեան բանաստեղծութեան առաւօտը ծագած էր։ Եւ ահա դարերէ ի վեր լքուած ու արհամարհուած լեզուի մը այս բարձր ճիւղը կը սկսէր գնահատուիլ։ Ռամկօրէն գրող ծանօթ արձակագիրներ չկան այս դարուն մէջ, բայց դարը իր չահեկանութիւնը չկորսնցներ ռամկօրէնի տեսակէտով ալ՝ շնորհիւ հայ երգիչներու։ Միջնադարեան աշուղները, որոնց հնագոյնները այս դա-

րուն կ'ընծայուին ․ հայ կեանքին երգիչներն էին ։ Գողթան երգիչները ազգ․ պատմութիւնը երգեցին և ուրիշներ շարականներով օրհներգեցին, մինչդեռ միջնադարեան երգիչները իրենց սէրն ու զգացումները քնարերգեցին ։ Անկարելի է որ աշուղները զբաղած չըլլան նաև հայկական կեանքի թշուառութիւններով, երբ զիրենք շրջապատած էր համատարած զուլումը․ սակայն հաւանական է որ իրենց ժամանակի քաղաքական բռնութիւնները փճացուցած են ազգայնական զգացումներ տարածող երգերը, և կամ երգիչներ ու ժողովուրդը ծայրայեղ զգուշաւորութեամբ տակաւ կորսնցուցած են զանոնք ։ ԺԴ․ դարու երգիչներն են Կոստանդին Երզնկացի, Յովհաննէս Երզընկացի, Խաչատուր Կեչառեցի և հաւանաբար Ֆրիկ, որ նոյն Կեչառեցին կը համարուի ։ Կ․ Երզնկացի իր ոտանաւորները կը գրէ իր ժամանակին նախնական աշխարհաբարովը, որ մօտ է գրաբարին․ կը գործածէ գրաբարին մէջ պակսող բոլորովին նոր բացատրութիւններ ու ոճեր ։ Հետզհետէ երգիչներու լեզուն կը բիւրեղանայ ։ Երգիչներու ամենէն ծաղկած շրջանները են ԺԵ․ և ԺԶ․ դարերը ։

## ԺԵ․ ԴԱՐ —

*ՈՏՆԱԿՈԽՈՒԱԾ ՀԱՅ ԱՇԽԱՐՀԸ ԵՒ ՀԱՅ ԿԵԱՆՔԻՆ ՋՆՋՈՒՄԸ․*— Այս դարը կը բացուի Լէնկթիմուրի և թաթարական արշաւանքներու վերջին օրերուն մօտ, ուր կը շարունակուին դեռ աւերները ։ Ոտնակոխուած է ամբողջ երկիրը, և, հին հայ կեանքը, նախարարական կամ ազատական, ջնջուած բոլորովին ։ Ինչպէս մեզի, նոյնպէս ալ ամբողջ արևելքի համար՝ անկումի դար մ'է ։ Բիւզանդական կայսրութիւնը կը տատանէր ։ Արևմտեան Փոքր Ասիոյ մէջ, Էրթողրուլի որդին Օսմանը կազմած էր արդէն Օսմ․ պետութիւնը, բաւական ժամանակէ ի վեր տեղաւորուած էր և կ'ընդարձակէր իր սահմանները՝ դըրացի մանր մունր իշխանութիւնները իրեն հնազանդեցնելով ։ Վերջապէս 1453 Մայիսին Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ․

Կ. Պոլիսը կը գրաւէր՝ արեւելեան այս նոր ոյժը փոխադրելով եւրոպական անցքին վրայ, և զայն մայրաքաղաք կը հռչակէր՝ հաստատելով հայոց և յունաց պատրիարքութիւնները։ Օսմանցիներու ձգտումը պիտի ըլլար անշուշտ դէպի արեւելք արշաւել և տէրը դառնալ ամբողջ Փոքր Ասիոյ։ Ժամանակ մը Թիւրքմէնները և ապա պարսիկները կը սկսին ընդդիմադիր դառնալ՝ Թուրքերու գրաւման ու տարածման։ Եւ սակայն այս բոլորը հայկական հողին վրայ, հայոց բնակավայրերուն մէջ, ուր իրարու կը յաջորդեն աւեր, մոխիր, հուր, մահ և այլն։ Հայը կը մնայ քաղաքական ամէն տեսակ երազ և կեանք ու կը մտածէ իր կեանքին պահպանման վրա՛յ միայն։

ՕՍՄԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ.— Կ. Պոլսոյ գըրաւումէն վերջ այլեւս օսմանեան ազդեցութիւնը կը տարածուի Հայաստանի արեւմտեան մեծագոյն մասին վըրայ։ Ֆաթիհի ազնիւ վերաբերումը շատ մը հայեր իրեն կը գրաւէ։ Օսմանցիներու նոր մայրաքաղաքին բարեկարգութեանը համար շինարար տարրի մը պէտք կար. եւ այդ կրնար ըլլալ հայ ժողովուրդը։ Այսպէս տակաւ Կ. Պոլիսը դարձաւ հայկական կարեւոր կեդրոն մը։ Հայեր շուտով վարժուեցան այս նոր աշխարհակալութեան և մէկ կողմ թողուցած սուգ ու շիւանը, կ'ուզէին օգտուիլ Սուլթաններու լաւ վերաբերումէն, և արհեստներու, արուեստներու և վաճառականութեան մէջ առաջանալ, բնական է որ զիրենք չմորթոտէին այլեւս։

ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹ.— Մեծ Հայաստանի մէջ ո՛չ հանդարտ կեանք կրնար գոյութիւն ունենալ և ո՛չ ալ որեւէ գործունէութիւն, մինչ իր կեանքն ապահովելու, ընտանիքին ապրուստն հայթայթելու և քիչ ու շատ նիւթական բարեկեցիկ վիճակ մը ստեղծելու բուռն ջանադրութիւնն ունէր հայը։ Ա՛լ իրեն համար Հայաստան ոչինչ ունէր գրաւիչ։ Անիկա դարձած էր խորթ մայր մը միայն, որ չսնուցանէր իր զաւակները։ Գաղթը, որ նոր չպիտի սկսէր անշուշտ, շարունակուեցաւ և հայերը անգամ

մըն ալ ցրուեցան աշխարհի չորս հովերուն։ Երկիրը այժմ իր ամենավատթար վիճակին մէջ է և կեանքը կանգ առած բոլորովին։ Բայց հայկական գաղութները, որոնք ի հարկէ հայկական ամբողջականութեան յայտնի չափով վնասեցին, հնարաւորութիւն ունեցան օգտուելու ժամանակակից Եւրոպայի բարիքներէն։ Հայ գաղթականութիւնը իր ամբողջ պատմութեան մէջ ունի փառաւոր էջեր։ Անդրանիկ հայ տպագրութիւնը, անդրանիկ հայ լրագիրը, անդրանիկ կարեւոր վարժարաններ ու ձեռնարկներ հայ գաղութներուն կը պարտինք։

**ԵՒՐՈՊԱՅԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ ԵՒ ՀԱՅԵՐԸ.**— Մինչ արեւելքի մէջ կեանքը այս աննախանձելի պայմանները կը ներկայացնէր, արդէն եւրոպական ազգեր վերածնութիւնը կ'ողջունէին։ Հռովմէական կայսրութեան անկումէն ետք միջին դարու հազարամեայ թմրութեան ու խաւարէն վերջ, ահա իմացական վերածնունդն էր որ կը յայտնուէր եւրոպական միտքին առած նոր թռիչովը։ Ուսում, գիտութիւն և գեղարուեստ կ'ունենային հսկայ զարթօնք մը։ Յունական և հռովմէական հսկայ քաղաքակրթութիւնն էր որ յարութիւն կ'առնէր ահա՛ աւելի՛ ուժեղ և աւելի՛ կենսալից։ Այս դարուն մէջ էր որ Կիւթէմպերկ իր հոյակապ գիւտը, Տպագրութիւնը, կը նուիրէր մարդկութեան՝ 1456ին։ Առաջին անգամ Աստուածաշունչը լատին լեզուով կը տպագրուէր 1462ին, և տպագրութեան գիւտէն գրեթէ քսան տարի վերջ, 1472ին, Փարիզի հրատարակուած Բազմալեզու Քերականութիւն անուն գործի մը մէջ քանի մը երես հայատառ գրուածք կ'երեւար։ Հայը ի՞նչպէս պիտի կրնար օգտուիլ սակայն այս բարիքներէն, երբ ինքն իր կաշիին և օրուան հացին հոգն ունէր, ու հայաստանի մէջ ապրող որևէ մէկուն համար անկարելի էր մտածել իմացական և մտաւորական խնդիրներու մասին։

**ՀԱՅ ԼԵԶՈՒՆ.**— Այսպէս ուրեմն անտէր մնացած երկրի մը և ժողովուրդի մը լեզուն ի՞նչ վիճակ կրնայ

ունենալ՝ այսպիսի յուզեալ և տագնապալից շրջանի մը մէջ։ Ամէն բան ճակատագրին թողուած էր։ ԺԳ. դարու քաղաքական անհաստատ կեանքին չարունակութիւնն է՝ իմացական և ուսումնական տեսակէտով։ Բացի անկումէ և այլասերումէ, ուրիշ ո՛չ մէկ նշանակելի երեւոյթ կը կը ներկայացնէ ԺԵ. դարու գրաբարը, գրեթէ վերջ գըտած և հրապարակէն բոլորովին հեռու։ Այդ մասին Բընաշխարհը ո՛չ մէկ քայլ կրնար առնել, իսկ գաղթավայրերուն մէջ ալ ժողովրդական աշխարհիկ լեզուն էր տիրողը, գրաբարը մի միայն եկեղեցիներու մէջ լսելի ըլլալու պայմանաւ։ Հետեւաբար Հայաստանի մէջ ԺԵ. դարու լեզուի ու գրականութեան պատմութեան վերաբերող կարեւոր նպաստ չկայ, բացի երգիչներու փթթումէն։ Հայաստանի լեզուն ի հարկէ տարբեր է հայոց կեդրոնէն, որպէս բաժնուող և ուրիշ երկիրներ ապրող հայուն լեզուէն։ Մեծ կերպարանափոխութիւն մը կը սպասէր հայ բարբառներուն, երբ հայ ժողովուրդը աշխարհի չորս կողմը ցիրուցան եղաւ և Հայ Գաղթականութիւնը խուժեց Հայաստանէն դուրս։ Այս գաղթը հին գաղթերուն էր, որ կը կրկնէր։ Գաղթականութեան մէջ աշխարհագրական միջավայրի փոփոխութիւնը աւելի շատ կ'ազդէ, երբ մանաւանդ ընկերային, տնտեսական ու քաղաքակրթական պայմանները փոխուին։ Հոս հոն բնակող հայեր իրենց բարբառը գործածել սկսան և իրենց յիշատակարանները անոնցմով գրեցին։ Հայ լեզուի պատմութիւնը այս տեսակէտով աւելի գաղթավայրերու բարբառները տուին՝ քան թշուառ Հայաստանի լեզուն։ Գաղթավայրերու բարբառները, դիւրին է հետեւցնել թէ, կրեցին խոր դրոշմը իրենց միջավայրին օտար ազդեցութիւններուն։ Հայաստանի լեզուն թուրքերէնէն ազդուած է մեծապէս՝ այս և յաջորդ դարերուն մէջ։

ԱՇԽԱՐՀԻԿ ԼԵԶՈՒՆ ԵՒ ԵՐԳԻՉՆԵՐ.— Մայր Հայաստանի մէջ մեռնող գրաբարին քովիկը, հայ ժողովուրդի այս եղերական շրջանին մէջ աշխարհիկ լեզուին

ոսկեդարն է կարծես որ սկսած է։ Ամէն տեսակ գաղափարներ ու խորհուրդներ կրնան արտայայտուիլ։ Այս դարուն մէջ ռամկագիր արձակագիրները շատ նուազ են, հակառակ աշուղներու առատութեան։ Ուշադրութեան արժանի են Օգուտ Բժշկութեան, Անգիտաց Անպէտ և այլն կարգ մը բժշկական գիրքեր, ռամկօրէն գրուած, որոնց հեղինակն է Ֆաթիհի անձնական բժիշկը Ամասիացի Ամիրտովլաթ։ Բայց առաւելապէս աշուղներու լեզուն է հետաքրքրականը։ Ասոնք ունէին ճկուն և սահուն լեզու, ու ո՛չ միայն կը հեղինակէին ռամկօրէն, այլ և պարսիկ գրականութեան գոհարները կը փոխադրէին մեր մէջ՝ նոյն լեզուով։ Այս դարուն մէջ ծաղկած են նշանաւոր երգիչներ, ինչպէս Մկրտիչ Նաղաշ, Նահապետ Քուչակ, Յովհ. Թլկուրանցի և այլն։ Ասոնց մէջ ոմանք եկեղեցական նուիրապետութեան բարձրագոյն աստիճաններուն իսկ հասած են, ինչպէս՝ առաջնորդ (Մ. Նաղաշ) կաթողիկոս (Յ. Թլկուրանցի, Գ. Աղթամարցի) և այլն։ Ն. Քուչակի գերեզմանը մինչև այսօր ուխտատեղի է։ Տակաւին ուրիշ անծանօթներ ալ կան անշուշտ, որոնք բոլորն ալ ռամկօրէն գրած և լեզուն գեղեցկացուցած են։ Աշուղներ՝ հասկնալի էին հայ ժողովուրդէն, անոր աշխարհիկ լեզուովը կ'երգէին և կ'ազդէին անոր վրայ, մեծ յորդ վայելելով։ Ժողովուրդը բերնէ բերան կը սորվէր անոնց երգերը և կը տարածէր, ինչ որ նշան է թէ ռամկօրէնը սի՛րուած էր ժողովուրդէն և շատ կը փնտռուէր։ Հայ աշխարհիկ լեզուն շատ բան կը պարտի աշուղներուն։

## ԺԶ. ԴԱՐ.—

ԿԵԱՆՔԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ.— Նախորդ դարուն մէջ սկսուած թրքօ-պարսկական բաղխումը սուր կերպարանք ստացաւ այս դարուն մէջ։ Ամբողջ դարուն հայ պատմութիւնը կարելի է ըսել շաղախուած է այս կործանիչ ընդհարումներու հետեւող հայկական թշուառու-

թեան պատմութիւնով։ Երկու մահմետական տէրութիւններ,— մին ուղղափառ և միւսը աղանդաւոր,— չէին կրնար համերաշխիլ և կողք կողքի ապրիլ։ Հայաստանի մէջ կեանք ու կենսունակութիւն մնացած չէր արդէն։ Ո՞վ կրնայ պատկերացնել տիրող ահաւոր կացութիւնը։ Ամէն կողմ մեռելութիւն։ Ցրուած է հայութիւնը աշխարհի ամէն կողմերը, իսկ Հայաստանի մէջ մնացող մասն ալ ենթակայ է սոսկալի անստուգութեան։ Մանաւանդ պարսից տիրապետութեան ներքև գտնուող քրիստոնեաներու դրութիւնը այլևս անհանդուրժելի էր։ Այս սոսկումի օրերուն մէջ, որոնց յիշատակն իսկ քստմնեցուցիչ է, ո՛րչափ բաղձալի էր որ գէթ հայ կղերը ներքին երկպառակումներ չունենար։ Նա տարուած էր աթոռի յաջորդական խնդիրներով։ Հայաստանի մէջ լո՛ռ է բոլորովին հայ միտքը։ Ի՞նչ սոսկալի ճգնաժամ մը կ'անցընէ ազգը, մինչդեռ արևմուտքի մէջ վերածնութիւնը նոր կեանք կուտայ ժողովուրդներուն։

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Հայաստանի մէջ բնակող հայ ժողովուրդի ճգնաժամային կացութիւնը ո՛չ մէկ հնարաւորութիւն կուտար իրեն բնականաբար՝ օգտուելու տպագրութեան բարիքներէն, որոնք Եւրոպայի մէջ կը տարածուէին տակաւ։ Այսուհանդերձ հայ միտքը, իբրև արևելքի մէջ ապրող արևմտականութեան ընդունակ իմացականութիւն, պէտք է որ այս կամ այն կերպով վերջապէս տիրանար այս հրաշագործ և լուսափիւռ արուեստին։ Վենետիկի կը պատկանի առաջնութեան փառքը իբրև հայ տպագրութեան օրրան։ Վենետիկ միջին դարուն շատ ծաղկած առևտրական և արուեստական կեդրոն մ'էր՝ որ ապա դարձաւ նաև մասնաւորապէս տպագրութեան արուեստի կեդրոն ալ, շնորհիւ իր աշխարհագրական դիրքին, պապական ազդեցութենէն ազատ ըլլալուն և հարուստ վիճակին։ Ամէն կողմէ վաճառականներ հոն կը հաստատուէին։ Հայերը հինէն ի վեր, մասնաւորաբար Ռուբինեանց շրջանէն աւելի

*յարաբերութիւն ունէին Վենետիկի հետ, և նոյնիսկ պըզտիկ գաղութ մը կար, այնպէս որ երբէք զարմանալի չէ որ տպարաններու այդ քաղաքին մէջ հայերն ալ փորձէին հայերէն գիրքեր տպել, եթէ ոչ արուեստին, գէթ՝ շահախնդրութեան սիրոյն։ Երկար ատեն կը կարծուէր թէ Եւդոկիացի Աբգար դպիրն է առաջին հայ տպագրիչը, որ անդրանիկ հայ գիրքը (Սաղմոսարանը) տպած է 1565ին՝ Վենետիկ, և ապա առաջին հայ տպարանը հաստատած Պոլիս, 1567ին։ Սակայն նորագոյն հետազօտութիւններ և ի վերջոյ ձեռք բերուած տպագրական հին գործեր ցոյց տուին թէ առաջին հայ տպագրիչը Աբգար դպիրը չէ և ոչ ալ անդրանիկ հայ տպագրութեան ներկայացուցիչը անոր Սաղմոսարանը, այլ՝ Յակոբ անուն անձ մըն է հայ տպագրութեան հայրը ու հայերէն տպագրուած անդրանիկ գիրքն ալ է Պարզատումարը, որ հրատարակուած է Վենետիկ, 1512 ին։ Ո՞վ է սակայն Յակոբ, ո՞ւր տեղացի էր, ինչո՞ւ Վենետիկ կը մնար։—Ասոնց պատասխան տալ անկարելի է, վասնզի բացի իր անուան մասին գործածուած «Մեղապարտ Յակոբ» բացատրութենէն և տպարանին համար գործածուած D. I. Z. A. սկզբնատառերէն, ուրիշ ո՛չ մէկ լուսաբանութիւն կայ իր մասին։ Մէկ տարի վերջ 1513ին այս միեւնոյն Յակոբին ձեռքով տպագրուած են նաեւ չորս գիրքեր 1. Պատարագատետր. 2. Ուրբաթագիրք—Կիպրիանոս, 3. Տաղարան և 4. Աղթարք։ Հայկական տպագրութիւնը հալածանքի ենթակայ ըլլալէ դադրած չէ՝ պապական եկեղեցիին կողմէ։ Կ'ըսուի թէ Կիլիկիոյ Ազարիա կաթողիկոսը ստիպուած Հռոմ մարդ ղրկեց և առանձին նամակով պապէն խնդրեց որ հայերէն Աստուածաշունչ մը տպել տայ։ Եւրոպայի մէջ հայեր ու՛ր որ տպագրական գործեր ընել ուզեցին՝ մեծամեծ դժուարութիւններու հանդիպեցան։ Հայ տպագրողներ և հրատարակիչներ անձնազոհ ոգի ցոյց տուին սակայն։*

*Հայ ժողովուրդը այս և յաջորդ դարուն մէջ տպագրութեան արուեստէն ըստ արժանւոյն չօգտուեցաւ, որով-*

հետեւ անիկա աւելի գաղութներուն մէջ պէտք է զարգանար, տրուած ըլլալով Հայաստանի աղետալի դրութիւնը, որ ո՛չ մէկ իմացական գործունէութեան կրնար մղել այս ու այն. իսկ այդ գաղութները իմացական տենդոտ գործունէութիւն մը առնելու վիճակին մէջ չէին։

ՀԱՅ ԼԵԶՈՒՆ.— ԺԵ. և ԺԶ. դարերու մէջ գրաբար լեզուի նպաստող կարեւոր մատենագրական ո՛չ մէկ գործ կայ դժբաղդաբար։ Իսկ ռամկօրէն լեզուն, որ ԺԵ. դարէն վերջ աշխարհաբար կոչել սովորութիւն է, իր սահմանները ընդարձակած և կենսունակութիւն ստացած է մանաւանդ երգիչներու գրչին տակ կամ բերնին մէջ։ Նոյնիսկ առաջին անգամ տպագրուած հայերէն գիրքերէն մին, Աղթարք, ռամկօրէն գիրք մ'է, որ թէեւ գիտական արժէքէ զուրկ՝ ուշագրաւ է սակայն լեզուի տեսակէտով։ Դարուն ազգային-քաղաքական պայմանները աննպաստ էին բացարձակապէս՝ որեւէ գրական կամ լեզուական շարժում առնելու համար։ Միայն երգիչներն են որ անպաճոյճ, պարզ, անսեթեւեթ և սակայն գողարիկ լեզուով մը ժողովուրդին կեանքին մէջ մտաւորական հիւթ կը դնեն։ Շատ գնահատելի է անշուշտ այն ուշագրաւ պարագան, որ ասկէ դարե՛ր առաջ իսկ աշուղներ այնչափ աղուոր հայերէն լեզու մը գործածած են իրենց տաղերուն մէջ։ Այս դարու լեզուն ալ, նախորդ և յաջորդ դարերուն պէս, տաճկերէնի ու թաթարերէնի խոր ազդեցութիւնը կը կրէ։

## ԺԷ. ԴԱՐ—

ՊԱՏՄԱԿԱՆ ՆՈԹԵՐ.— Նախընթաց դարու մէջ ըսկըսուած ու շարունակուած Թրքօ-Պարսկական ընդհարումները վերջապէս յանգեցան աւերի մը, որ հազիւ թէ աշխարհի պատմութեան մէջ արձանագրուած ըլլայ։ Պարսից վեհապետը՝ Շահ Աբբաս, որ Օսմանցիներուն վրայ քալած էր (605), լսելով անոնց բանակին գալուստը հոն դարձաւ՝ ամբողջ երկիրը այրելով, որպէսզի թշնամին երբ

համի, ուտեստ և ապաստան չգտնէ, և հազարաւոր հայեր ալ բռնի պարսկաստան քշելով։ Առաքել Դաւրիժեցի պատմիչը, որ այս եղեռնական արշաւանքին պատմութիւնը կը գրէ, սրտաճմլիկ մանրամասնութիւններ կու տայ Երասխի ափը գործուած սոսկալի ու վայրագ նախճիրին մասին, որ արձանագրուած է հայոց պատմութեան մէջ ու մենք զանց կ՚ընենք մանրամասնել։ Շահ Աբասով չըվերջացաւ ամեն ինչ։ Անոր Պարսկաստան քաշուելէն վերջ իրարու ետեւէ Հայաստանի վրայ լեցուեցան բազմաթիւ թալանող ցեղեր, որոնք երկիրը չորցուցին, ամայացուցին։ Զորս տարի տեւեց այն ահաւոր սովը, որ հետեւեցաւ այս բոլորին։ Ժողովուրդը անգա՛մ մըն ալ խուժեց դուրս, Խրիմ, Լեհաստան եւայլն՝ ազատելու համար իր գոյութի՛ւնը միայն։ Երկու թշնամի և դրացի պետութիւնները պատերազմելէ յոգնած՝ ժամանակ մը դադար առին։ Այս միջոցին հայ ժողովուրդը կրկին սկսաւ իր մեղուաջան գործունէութեան՝ Հայաստանի մէջ՝ դարմանելու համար դարերու աղէտը, որ ոչնչացուցած էր հայուն կենսունակութիւնը։

**ՀԱՅԵՐԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՄԷՋ.**— Հայերը բռնի Պարսկաստան քշելէ վերջ Շահ Աբբաս շատ մը արտօնութիւններ և դիւրութիւններ տուաւ անոնց, որպէսզի օգտուի անոնց շինարար ձեռքերէն և ընդունակութիւններէն։ Հայերը հոն հիմնեցին Նոր Ջուղա քաղաքը, որ շուտով ծաղկեցաւ։ Հայ վաճառականութիւնը շատ առաջ գնաց Պարսկաստանի հայերուն մէջ, որոնք ահագին գործառնութիւններ ունէին եւրոպական զանազան երկիրներու և Արեւելքի հետ, այնպէս որ քիչ ատենէն բարեկեցիկ վիճակ մը երաշխաւորուեցաւ այնտեղի հայ գաղութին համար։ Արհեստներն ալ ունեցան մեծ յաջողութիւն։

**ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐԸ.**— Ո՛չ միայն Պարսկաստանի, այլ և աշխարհի ամեն կողմը գտնուած հայ գաղութներ ժամանակաւոր ընդարմացումէ մը ետքը, որ պատճառ-

ուած էր անհուր աղէտէն ու խուճապէն, ինքնամփոփ-ուած՝ սկսած էին մտածել իրենց նիւթական բարեկեցիկ վիճակին և առօրեայ կեանքին մէջ՝ որու եռանդներու, հայ լեզուի ու գրականութեան վրայ ալ։ Քիչ վերջ պիտի տես-նուի որ այս դարուն մէջ Նոր Ջուղայի հայերը կ'ունենան մամուլ, Լեհաստանի մէջ շարժում մը կը սկսի գրաբար գրականութիւնը կենդանացնելու համար և ուսումնական կեդրոններ կը հաստատուին ամեն կողմ։ Ինչպէս յիշե-ցինք արդէն՝ գաղութներ կեանք տուին Հայոց աշխար-հին, երբ ան տառապանքներէն քիչ մը թեթեւցած ու աչ-քերը բացած, օժանդակութիւն մը կը փնտռէր։

ՀԱՅ ԿՂԵՐԸ ԵՒ ՀԱՅ ՎԱՆՔԵՐԸ.— Հայ կղերը սակայն անարժան էր իր կոչումին։ Մինչ Հայաստան ճըգ-նաժամ կ'անցնէր, ան անդին իր արծաթսիրութեան ու անձնական սին փառամոլութեան յագուրդ տալու հա-մար յայտնապէս իր ուխտին կը դրժէր և վանքերը կը դարձնէր ապականութիւններու բոյն։ Ինկած էին Հայ վանքերը. չէր մնացած այլեւս այն բարձր նշանակութիւ-նը, որ ունէին սրբավայրերը հայոց մէջ։ Ամբողջ վանքերը թալլուեցան եկեղեցականներուն կողմէ և ազգային հա-րստութիւնը փճացաւ։ Այս շահատակութեանց գլուխը կը գտնուէր Մելքիսեթ շնորհունակ կաթողիկոսը։ Տասն մը տարիներու մէջ փակուած էին վանքերու դռները, նախ՝ տիրող կացութեան և ապա հայ կղերին դատապարտելի անտարբերութեան պատճառաւ։

ԺԷ. դարու կէսէն վերջն էր սակայն որ նոր շար-ժում մը սկսաւ Հայաստանի մէջ։ Վանական կեանքը բար-ւոքուեցաւ մասամբ և ուսման սէր ու եռանդ արծարծը-ւեցաւ։ Տպագրութիւնը ամեն կողմ հայոց մէջ հետա-քրքրութիւն արթնցուցած էր։ Եւ ահա զօրացաւ Սիւն-եաց դպրոցը։ Քիչ յետոյ Բաղէշի Ամրտոլու վանքը եկաւ Սիւնեաց Անապատի գործունէութիւնը լրացնելու։ Ասոնց միաբանութիւնները հայ մտաւորական կեանքի վերանորո-գութեան գործիչներ կը դառնան։ Լեզուի և գրականու-

*թեան վերածնութեան տարտամ խմորումն սկսաւ առաջանալ հայոց մէջ։ Հետզհետէ վանքերու մէջ դպրոցներ բացուելով՝ ուսում և կրթութիւն բաւական կը տարածուին։ Բուն Հայաստանի վանքերուն կամ Էջմիածնի մէջ, Կ. Պոլիս՝ պատրիարքներու հսկողութեամբ և կամ օտար երկիրներու մէջ՝ դաստիարակուող երիտասարդները կը շատնան։ Էջմիածինն ու Նոր Ջուղան կը մրցին իրարու հետ։ Վերջինը մինչև իսկ տպարան կ'ունենայ՝ Կեսարացի Խաչատուր Վ. ի ջանքով։ Բեղմնաւոր կը դառնայ վերջապէս ԺԷ. դարը, կէսէն վերջ։*

*ԼԱՏԻՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԿՐՕՆԱԿԱՆ ՎԷՃԵՐ.— Հայաստանի քաղաքական կեանքը բաւական խաղաղ կը թուէր, բայց ներքին երկպառակութիւնները զայն ուժաթափ ընել կը սպառնային։ ԺԲ. և մանաւանդ ԺԴ. դարէն ի վեր արդէն ունիթորները մտած էին Հայաստան և լատինական կարևոր հոսանք մը կար։ Լատին կրօնաւորներ միշտ կը թունաւորէին ժողովուրդը և վառ կը պահէին հակառակութեան կրակը։ Լատինականութիւն և Վատիկան այս դարուն մէջ աւելի՛ ևս ուշադրութիւն դարձուցին Հայաստանի վրայ և կրօնական վէճերը կրկին բորբոքուեցան։ Հայը հայուն դէմ ելաւ. և այս բաւական էր ամեն տեսակ ապականութիւն ստեղծելու համար։ Յիսուեաններ 1650ին Պարսից Շահին թոյլտուութեամբ մտան Ջուղա, Շիրազ ևայլն և սկսան համարձակօրէն գործել՝ հովանաւորութեամբ ֆրանսական կառավարութեան։ Ֆըրանսայի ազդեցութենէն քաջալերուած լատին կրօնաւորներ Հայաստան ալ մտան և սկսան որսալ ամեն տեսակ միջոցներով։ Նոյն իսկ հայ եկեղեցիներու մէջ Հայ Եկեղեցիին վրայ յարձակեցան բուռն կերպով։ Սա բնականաբար զայրոյթ պիտի առաջացնէր. ուստի սկսաւ մոլեգին կռիւ։ Լատինացումը ամեն ազգային զգացում չարաչար կըպաննէր, ինչպէս կիլիկեան շրջանին։ Լատինացած հայեր չէին ուզեր հայերէն խօսիլ և նոյն իսկ հայ կոչուիլ, այլ՝ Լաթին կամ Ֆրէնկ։ Ամբողջ դարը, պէտք է ըսել, այս կը-*

*րօնական վէճերուն մէջ ընկղմած է և ամէն կողմ տխուր դէպքեր ու խայտառակութիւններ պակաս չեն ։ Առանձին այս կռիւը կրնայ ենթադրուիլ թէ ո՛րչափ վնասակար էր վերածնութեան գործին ։*

*ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ.— ԺԷ. դարու կէսէն վերջ հայոց իմացական կեանքը սթափում կը կրէ ։ Սիւնեաց և Բաղէշի դպրոցներէն վերջ Նոր Ջուղան ալ կեդրոն դարձած էր ուսման ։ Հետզհետէ հասնող եկեղեցական աշակերտներ ինքզինքնին կը նուիրէին ուսման և հայ գըրականութեան զանազան երկերը փոշիներուն տակէն կը հանէին ։ Կարծես ոսկեդարի կեանքը կը վերսկսէր՝ արգիտութեան չարիքները դարմանելու համար ։ Մինչև ԺԷ. դարու կէսը ինչ ինչ տպագրութիւններ եղած էին Լեհաստանի, Հռոմի, Միլանի և Բարիզի մէջ. բայց ատիկա ահագին պէտքին բաւարարութիւն երբեք չէր կրնար տալ ։ Արդէն դարուն սկիզբները Էջմիածնի Սրապիոն կաթողիկոսին փորձն ալ անյաջող եղած էր՝ գիրքեր տպագրելու համար Եւրոպա մարդ ղրկելու մասին ։ Բայց տպարանի պէտքը աղաղակող էր ։ Մանաւորաբար Նոր Ջուղան ձեռներէց հանդիսացաւ և Ամենափրկիչ վանքին մէջ հաստատուեցան գրադարան և տպարան ։ Հոն տպագրուեցաւ Հարանց Վարք անուն գիրքը՝ (1640) անկանոն, կոշտ և անարուեստ կերպով ։ Խաչատուր Կեսարացի ստիպուած մանաւոր մարդիկ ղրկեց Վենետիկ՝ արուեստին տեղեկանալու համար ։ Արդիւնաւոր է վերջապէս այս դարուն մնացորդ շրջանին զարգացական գործունէութիւնը, որուն մէջ մեծ դեր կատարած են տպագրիչներ, հաստատելով տպարաններ և բազմապատկելով գրքի օրինակներ ։ Անոնցմէ երկուքը յիշատակելի են ։ Մին է Ոսկան Վ. Երեւանցի († 1674ին), որ հոս հոն շրջելով տպարաններ կը հաստատէ՝ Նոր Ջուղայի, Ամստերտամի, Վենետիկի, Մարսիլիոյ մէջ և հազարաւոր օրինակ գիրքեր կը տպէ ։ Միւսն է Երեմիա Չէլէպի († 1695), որ Կ. Պոլսոյ մէջ նախակարապետ կը հանդիսանայ պոլսահայ գրականութեան ։*

ՀԱՅ ԼԵԶՈՒ.— Այս դարու բացատրուած զանազան երեւոյթներէն դիւրին է մակաբերել անշուշտ հայ լեզուի և գրականութեան վիճակը, որոնց առաջինը լատիներէնի և տաճկերէնի ազդեցութիւնը կրած է, իսկ երկրորդը տափակցած է: Օտարութիւններ առատացած են լեզուին մէջ: Լատիներէն, թուրքերէն և այն հայերէնը այլափոխած են բոլորովին։ Լեհաստանի և Նոր Ջուղայի մէջ գրաբարը եւրոպական մասնագրութեանց ազդեցութեան տակ լատինական կաղապարի մէջ ձուլուելու նշաններ ցոյց կուտար: Հայ լեզուի խանգարման սկզբնապատճառները արդէն ունիթորներն էին, որոնք այս դարու մէջ ալ՝ շարունակելով իրենց գործը՝ նոյն իսկ հայերէն քերականութիւններ հեղինակեցին ու տպագրեցին: Կղեմէս Կալանոս իտալացի քահանան 1645 ին, և Փրանկիսկոս Ռիվոլա մեդիոլանցի 1624ին Քերականութիւններ հրատարակած էին արդէն, երբ Յովհաննէս Վ. Հոլով 1674 ին Հռոմի մէջ տպագրեց իր Հայերէն Քերականութիւնը: Հեղինակուած են նաև զանազան լատինահայ Բառագիրքեր. և սակայն լեզուին ի՞նչ նպաստ կրնային բերել այս խառնածին քերականութիւններն ու բառարանները, որոնք լատինահայ լեզուի մը օրէնքները միայն կրնային սահմանել: Միեւնոյն ատեն այս դարուն մէջ հայերու կողմէ ալ ճիգ մը կար գրաբարը պահպանելու քերականութիւններով և բառարաններով, սակայն անօգուտ, վասնզի գրաբարը կենդանութիւն ցոյց չտար: Աւելի պատմական երկասիրութիւններն առատ են: Ռամկօրէնը մշակողներ չեն պակսիր սակայն: Քանի մը բժիշկներ ու եկեղեցականներ կը մշակեն ռամկօրէն արձակը, իսկ ուրիշներ ալ ոտանաւորը: Երգիչներու փայլուն շրջանը թէեւ նուաղած, բայց և այնպէս չեն պակսիր դարձեալ շատ մը ժողովրդական բանաստեղծներ և նուագողներ, որոնք աշխարհաբար լեզուն մշակած են:

Հայ լեզուի շուրջ կատարուած այս գործունէութիւնը, թէեւ կարելի է մասնաւոր ձգտումներու վերագրել

լիքութիւնները գրեթէ կիսանկախ դրութիւն մը ունէին, թէեւ անուանապէս պարսից ենթարկուած էին։ Անոնց մէջ մնացած չէր հայկական ազատ կեանքի աւիւնը։ Թառած լեռնային բարձրաւանդակներու վրայ, հպարտ էին տակաւին եւ ի վիճակի էին հայկական հարցին մէջ ռազմական կարեւոր դեր մը կատարելու։ Գործին դիւանագիտական բանակցութիւնը վարեց Իսրայէլ Օրի, որ իբրեւ Ֆրանսայի մէջ կրթուած, արքունական շրջանակներու ծանօթ մարդ՝ շուտով կրցաւ համաձայնութեան մը գալ պետութեանց եւ մելիքներու հետ։ Եւ որովհետեւ միջամտութիւնն ու օժանդակութիւնը եւրոպ. պետութեանց մէջ Ռուսիոյ կ'իյնար, իր դրացնութեան եւ կռուելու դիւրութեանց համար, ուստի Պետրոս Մեծի յանձնուեցաւ գործը։ Քիչ յետոյ Օրի մեռաւ Աստրախանի մէջ (1711)։ Իր գործը շարունակեց Մինաս վարդապետ։ Մեծն Պետրոս ռուս բանակը շարժեց, բայց յանկարծ նահանջեց՝ հայերը յանձնելով պարսից վրէժխնդրութեան։ Կազմակերպուեցաւ բուռն դիմադրութիւն՝ Դաւիթ Պէկի եւ ապա Մխիթարի առաջնորդութեամբ, բայց անօգուտ։ Ժամանակի ընթացքին մէջ հայերն իրենց յարաբերութիւնը պահպանեցին Ռուսիոյ արքունիքին հետ։ Յովսէփ Արհի կաթողիկոս Արղութեանց երկրորդ անգամ ըլլալով ձեռք առաւ հայկական խնդիրը, եւ Եկատերինէ Բ. կայսրուհիին հաւանութիւնն առաւ (1795) ռուսաց հովանաւորութեամբ հայկական ինքնավարութիւն մը ստեղծելու համար, մասնաւոր պայմաններով։ Դժբաղդաբար բանակցութիւնները չվերջացած՝ թագուհին մեռաւ եւ հայերն ստիպուեցան իրենց յարաբերութիւնները առժամապէս դադրեցնել։

**ԱԶԳԱՅԻՆ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔ.—** Արեւելեան Հայաստանի մէջ երբ պատմական գործեր տեղի կ'ունենային, Կ. Պոլսոյ եւ արեւմուտքի մէջ կրօնական վէճերն աւելի սուր կերպարանք եւ ծայրագոյն վիճակ առած էին եւ խռովութիւնները շատցած, մանաւանդ պատրիարքական

բաղդ հայ ժողովուրդին իմացական լոյս տալու և անոր խաւար կեանքին մէջ լուսափիւռ ջահ մը վառելու: ԺԸ. դարու սկիզբը Մխիթարեան Միաբանութիւնը նախ Պոլիս, ապա Մորա և հուսկ յետոյ Վենետիկի մէջ կը հիմնուէր(1701): Մխիթար իր գործունէութեամբ առանձնած էր պաշտելի առաքելութիւն մը: Իր հիմնարկութիւններուն,— դպրոց, գրատուն, վանք, տպարան և այլն,— միջոցա՛ւ է որ պիտի գար՝ հայ՝ ժողովուրդին տառապանքներուն բալասանով մօտենալ և վերականգնել անոր բարոյական կեանքը: Երկարամեայ և յաջորդական աղէտներ, մանաւանդ զանազան տիրապետական հզօր ազդեցութիւններ և բարբարոսական բռնապետութիւններ այլասերած էին հայ ժողովուրդը, և քիչ քիչ կը խլէին անոր ձեռքէն իր լեզուն, գրականութիւնը, աւանդութիւններն ու ազգային յատկանիշները: Զարթուցիչ մը պէտք էր՝ հայ ազգին մատնանշելու քաղաքակրթութեան լուսաւոր ուղին, առաջնորդելու համար զայն՝ դէպի վերածնութիւն, մաքրագործելու համար անոր աղճատուած լեզուն և վերականգնումը պատրաստելու համար: Եւ Մխիթարեան Միաբանութիւնը կատարեց այս փրկարար առաքելութիւնը: Կրօնական այդ սուր վէճերուն և հայկական ատենին կեանքի երկպառակութիւններուն մէջ կրօնքի և ազգութեան տարբերութեան խորապէս ըմբռնումը ճշմարիտ մեծհոգիութիւն ու խորունկ հասունութիւն մ՚էր, որ հնարաւորութիւն տուաւ Մխիթարի՝ իրականացնելու իր իտէալը: Հայ ազգը երախտագիտութիւն պէտք է մատուցանէ այս թանկագին բարերարին, անոր գործակիցներուն և յաջորդներուն համար:

ԻՄԱՑԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴ.— Նախորդ դարու մէջ նշուող վերածնութեան շողերը ճառագայթել սկսան: Մխիթարեան Միաբանութիւնը անմիջապէս ձեռք առաւ հայ լեզուի վերանորոգութեան գործը և սկսաւ զայն բիւրեղացնել: Դասական լեզուն հրապարակ եկաւ անհա:

*Հայ ժողովուրդն ալ իր կարգին անտարբեր չմնաց սակայն։ Մխիթարի օրինակը ազդեց ամենուն, պատճառեց բարի նախանձ մը և առաջ մղեց զանգուածը։ Իբրեւ արձագանգ՝ Կ. Պոլսոյ մէջ ընձիւղիլ սկսաւ իմացական գործունէութիւն մը։ Յովհ. Կոլոտ, որ այդ ատեն պատրիարքական աթոռին վրայ կը գտնուէր, և իր յաջորդը Յակոբ Նալեան՝ թրքահայ մտաւորականութեան պատրաստութեանը ձեռնարկեցին։ Բացին տպարան, դպրոցներ, տպեցին զանազան գիրքեր, տարածեցին ուսումը և ամեն ճիգ թափեցին ազգային գրականութեան նոր կեանք մը տալու համար։ Հաղորդակցական դիւրութիւնները Արեւմուտքի հետ կապեցին հայ մտաւորականները և ահան Վարդան, Կոլոտ և Նալեան՝ Արեւելքի մէջ, Մխիթար և Խաչատուր՝ Արեւմուտքի մէջ վերածնութեան գործիչներ դարձան։ Ամեն կողմ շատցան տպարանները և դպրոցները և վենետիկցիներու մենաշնորհ դարձած գրական, հրատարակչական ու կրթական գործը տարածուեցաւ հայաբնակ ամեն վայրերու մէջ, ուր նորանոր տաղանդներ յայտնուեցան, ինչպէս Գէորգ Դպիր, Յովհան Միրզա Վանանդեցի, Յարութիւն Վ. Ալամդարեանց, Մեսրոպ Թաղիադեանց, Սրապիոն Հէքիմեան և այլն։*

*Հայկական վերածնունդն ու լեզուի վերանորոգումը արագ քայլեր կ՚առնէին։*

*ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ.— Այս ընդհանուր շարժման մէջ բնականաբար հայկական տպագրութիւնը պիտի զարգանար, քանի որ հետզհետէ ուսում, գիտութիւն ու գրականութիւն տարածուելով նոր հեղինակներ կուգային ասպարէզ և գիրքի պէտքը կը շեշտուէր։ Հետզհետէ տպագրական կեդրոններ հաստատուեցան Իտալիոյ, Աւստրիոյ, Թուրքիոյ, Հնդկաստանի, Պարսկաստանի, Հայաստանի և Ռուսաստանի այլ և այլ քաղաքներուն մէջ, ինչպէս Վենետիկ, Վիէննա, Կ. Պոլիս, Իզմիր, Մադրաս, Մոսկուա, Թիֆլիս և այլն, ուր տպագրուեցան բազմաթիւ գիրքեր։*

**ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԻՒՆԸ**. — Այս դարուն մէջ, մանաւորաբար Մխիթարեաններու միջոցաւ տեղի ունեցաւ հայ լեզուի վերանորոգութիւնը։ Երբ Մխիթար գործի սկսաւ՝ ռամկալի կերպով աղաւաղուած և այլանդակուած էր հայ լեզուն, օտարութիւններով խճողուած և աղճատուած բոլորովին։ Իր նպատակն էր մաքրագործել, բիւրեղացնել և ազատել զայն։ Գլխաւորաբար լատինաբանութիւնն էր լեզուին մէջ աճած տատասկը։ Բայց ի՞նչպէս կրնար մէկէն ի մէկ դէմ ելլել այդ գաթոլիկաբոյր և լատինացած հայերէնին։ Աստիճանաբա՛ր միայն կարելի էր բան մը ընել։ Խնդիր է նաև թէ ո՞ր լեզուին պէտք էր նախապատուութիւն տալ, գրաբարի՞ն թէ ռամկօրէնին։ Մխիթար համոզուած էր թէ աշխարհիկ լեզուն պիտի կենդանանար, ուստի պէտք էր զայն փրկել կազմալուծումէ, որուն ենթարկուած էր դժբաղդաբար՝ իր կրած շատ մը ազդեցութիւններուն հետևանքով։ Ատոնց մէջ տաճկերէնին ներգործութիւնը ակնյայտնի էր։ Վերանորոգութիւնը պիտի սկսէր ուրեմն նախ օտար բառերու վերացումով և եկամուտ այլազգի բառերուն տեղ համապատասխան հայերէն բառեր դնելով, դիմելով նոյնինքն գրաբարին։ Ասիկա անտարակոյս դէպի գրաբարացում պիտի տանէր լեզուն։ Եւ այդպէս ալ եղաւ։ Մխիթարեաններ որդեգրեցին գրաբար դասական ոճին և լեզուն, և զայն շարունակեցին մինչև ԺԹ. դարու կէսերը։ Ասիկա գրաբարի մաքրութեան վերջին փորձ մը եղաւ. որովհետև շնորհիւ Մխիթարեաններու՝ կեանք առաւ և վերստեղծուեցաւ, թէև, պէտք է ըսել արուեստականացաւ ալ։ Ա՛յս իսկ պատճառաւ է որ ամենավերջին լեզուական պայքարը տեղի ունեցաւ ԺԹ. դարու կէսէն վերջ և անխուսափելին կատարուեցաւ՝ գրաբարին վերջնական յաղթահարութեամբը։

**ԱՇԽԱՐՀԱԲԱՐԸ**. — Կարելի չէ ըսել որ Մխիթար կամ իր յաջորդները անգիտակ էին այն ճշմարտութեան թէ անկարելի էր այլևս կենդանացնել գրաբարը, երբ զայն խօ-

սող ժողովուրդ չկար, և թէ պէտք էր անպայման աշխարհաբարին կարևորութիւն տալ։ Մխիթարի համոզումն էր թէ գրականութիւնը միմիայն ժողովրդական լեզուո՛վ է որ կրնայ մատչելի ըլլալ նոյն ինքն ժողովուրդին։ Բայց ժամանակին փափկութիւնը տարբեր եզրակացութեան չէր կրնար առաջնորդել զինք, երբ ներքին ու արտաքին շատ մը թշնամիներով պաշարուած էին Մխիթարեանները։ Նախ կային Վատիկանն ու Գոլէժեանները, ապա և յարանուանական խտրականութիւնը։ Մխիթար ստիպուած էր այնպիսի ճամբէ մը երթալ, որ միջին ըլլար. ա՛յդ կը պահանջէր իր բարձր նպատակն ու վսեմ առաքելութեան շահը։ Այլապէս առաջին աշխարհաբար քերականութեան հեղինակութեան (1726) պատիւը Մխիթար Աբբայի՛ն է, հոգ չէ թէ միևնոյն նըկատումներով տպագրուած չըլլայ։ Յունաց մէջ սովորի վէճեր կային այս ատեն հին ու նոր յունարէնին շուրջը. Մխիթար չէ՛ր ուզեր լեզուական վէճ փոխադրել հայերուն մէջ ալ, երբ կրօնական վէճը բաւական էր արդէն ատելութիւն սերմանելու։ Քանի մը տասնեակ տարիներ վերջը սակայն՝ Մխիթարեաններ ալ սկսան ռամկօրէնը մշակել, զարգացնել և ժողովրդական գիրքեր տալ ուրիշներու պէս։ Տակաւ հրատարակուեցան աշխարհաբար քերականութիւններ, քրիստոնէականներ, թուաբանութիւն, ինքնակենսագրութիւններ և այլն՝ Մխիթարի, Յ. Նալեան պատրիարքի և զանազան եկեղեցական և աշխարհական ռամկագիր անձնաւորութեանց կողմէ։ Մշակուեցաւ հետզհետէ աշխարհաբարը, գրաբարին օժանդակութեամբ, վասնզի ԺԸ. և ԺԹ. դարուն մէջ հայոց հին ճոխ լեզուն շատ տարբեր տուաւ անոր։ Ամեն կողմ աշխարհաբար գրող հեղինակներն աճեցան։ Այս դարուն մէջ հրատարակուեցան նաև կարգ մը ժողովրդական երգեր՝ Սայեաթ-Նովայի և ուրիշներու կողմէ։ Վերջապէս եթէ ԺԹ. դարը աշխարհաբարի ոսկեդարն է, ԺԸ. դարն ալ անոր կազմակերպիչը, առաւօ՛տն է։

ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԲԱՌԱՐԱՆՆԵՐ.— Մինչեւ ԺԸ. դար քերականութեան եւ բառարանի պէտքը այնչափ զգալի չէր եղած։ Խորենացի, Դաւիթ Անյաղթ, Ստեփաննոս Սիւնեցի, Գր. Մագիստրոս եւ Յովհան Երզնկացի քերականական տեղեկութիւններ կուտային, սակայն նորեր լեզուն կ'ուսումնասիրէին եւ կանոններ կը սորվէին երկարատեւ եւ ուշադիր ընթերցումո՛վ միայն։ Ինչպէս բառարանի, այնպէս ալ քերականութեան նախաձեռնարկները ունիթորներն եղած են։ Մխիթար եւ իր միաբանութիւնը այս տեսակէտով շատ օգտակար դարձաւ, վասնզի այս դարուն մէջ հրատարակեց քերականութիւններ եւ Հայկազնեան հսկայ բառարանը, որոնք հայ լեզուին աննշան նպաստ մը չէ որ կը մատուցանէին։ Նմանօրինակ փորձեր հայկական զանազան շրջանակներու մէջ ալ եղան։

ՀԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ.— Մինչեւ ԺԸ. դարու կէսերը, հայերը շնորհքով դպրոցներ չունենալով խալիֆաներու եւ տիրացուներու խանութներուն մէջ աղաք ընթերցանութիւն կը կը սորվէին՝ դասագիրք ըլլալէ զատ ամէն բանի յարմար խրթին գրքերու վրայ։ Այս դարուն մէջ Պատուէլի տիտղոսով շատ մը ուսուցիչներ ասպարէզ կուգան։ Իրարու ետեւէ Կ. Պոլսոյ, Աստրախանի, Մոսկուայի, Կալկաթայի եւ Թիֆլիսի մէջ կը բացուին վարժարաններ, մէկ կողմէն կրթութիւն տարածելու եւ միւս կողմէ ալ գաթոլիկութեան դէմ պայքարելու համար։

ԱՌԱՋԻՆ ՀԱՅ ԼՐԱԳԻՐԸ.— Այս դարու հայկական կեանքին վերածնութիւնը, որ ընդհանրապէս գաղթավայրերու մէջ կը գործէր, տուաւ առաջին հայ լրագիրը, Հնդկաստանի Մատրաս քաղաքին մէջ։ Հնդկահայ գաղութը թէ՛ նիւթապէս եւ թէ՛ մտաւորապէս շատ բարգաւաճ վիճակի մէջ կը գտնուէր. ուստի զարմանալի չէր որ Շիրազեցի քահանայ մը Տ. Յարութիւն Շմաւոնեան, անգլիացիներէն օրինակ առնելով հրատարակեց Ազդարարը. 1794 Հոկտ. 16 ին, գրաբար։ Ասով կը սկսի հայ լրագրութիւնը։

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԻՉՆԵՐ.— Միջին դարու մէջ ծաղկած հայ երգիչներն իրենց յաջորդներն ունեցան նաև այս դարուն մէջ, ո՛չ նոյն առատութեամբ սակայն։ Նշանաւոր դէմքն է Սայեաթ-Նովա։

ՀԱՅ ԿԻՆԸ՝ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ.— Հայ կնոջ մէջ շատ սակաւաթիւ են անոնք, որ գիր գրել գիտցած են։ Այդ կը հաստատեն հայ ձեռագիրները, որոնց մէջ շատ ու շատ քիչ են կին ընդօրինակողները։ Վիէննայի Մխիթարեան վանքին 600է աւելի ձեռագիրներուն մէջ հազիւ երկու ձեռագիր կայ՝ օրինակուած կնոջ մը կողմէ։ Այդ օրինակողն է Կ. Պոլսեցի Բրաբիոն Նօտար, որ ունի քանի մը ուրիշ օրինակութիւններ ալ Արմաշու վանքին և Գալաթու եկեղեցին ձեռագիրներուն մէջ։

## ԺԹ. ԴԱՐ—

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՑՄԱՆՆԵՐ.— ԺԹ. դարը ճգնաժամային անհաւոր շրջան մէր ո՛չ միայն հայուն, այլ և ամբողջ քաղաքակիրթ աշխարհին համար։ Դարը կը բացուի ճիշդ այն երեւոյթով, որով փակած էինք ԺԸ. դարը։ Արեւելեան Հայաստանի մէջ կաթողիկոսական վէճերէ վերջը հայկական հարցը շարունակել սկսած է Ներսէս Աշտարակեցի, որ ռուսօ-պարս. պատերազմէն խրախուսուած նոյն իսկ հայկական բանակ կազմեց և փայլուն յաղթանակներով նպաստեց ռուսաց։ Սակայն կրկին անկարելի եղաւ Հայկական Ինքնավարութիւն կազմել պարսկաստանէն գրաւուած երկիրներուն մէջ, և հազիւ հազ իբրև շնորհ Պաշոժենիէն տրուեցաւ, իբրև ազգ. ներքին գործունէութեան ուղեցիծ։ Այլեւս մոռցուեցաւ հայկական հարցը. մանաւանդ որ ռուս կայսրութեան ծրագրին ալ միշտ նոյնը չմնաց հայոց վերաբերմամբ։ Դարուն վերջերը հայոց դպրոցները փակուեցան (1884) և մշակուեցաւ հայոց եկեղ. և դպրոցապատկան կալուածներու կառավարութեան կողմէ գրաւման ծրագիր, որ վերջապէս ի գործ դրուեցաւ 1903-904 ին, մէկ տարի միայն։

Ասդին սակայն Թուրքիա, ուր բնակող մեծազանգուած հայութիւն մը կար, փոթորկումի մէջ էր միշտ։ Կազմալուծման և քայքայման շրջանի մէջ մտած էր այլեւս աշխարհին սարսափ ազդող Օսմ. Պետութիւնը, որ երբեմն մինչեւ Վիէննա հասած էր։ Բաղկացուցիչ ազգութիւններու շարժումներն ու եւրոպական պետութեանց մղած պատերազմները տկարացուցած էին զայն բոլորովին։ Եւ որովհետեւ տակաւ փճանալու իրողութիւնը կար, ուստի եւրոպացիներու պահանջումներով և «Երիտասարդ Թուրքեր»ու թելադրութեամբ բարենորոգչական ձեռնարկներ փորձուեցան՝ հրովարտակներով, որոնք չգործադրուեցան սակայն։ Ֆրանս. Մեծ Յեղափոխութիւնը ցնցած էր աշխարհը և ճնշուած ազգութիւններ ազատագրութեան մղուած էին։ Յունաստանը արդէն իսկ անկախ իշխանութիւն դարձած էր և պալքանեան մանր մունր ազգութիւններու դիրքն ալ վերջին ծայր սպառնական։ Եւրոպան իր բոլոր ազդեցութիւնով բարենորոգում կը պահանջէր, իսկ Թուրքը եւրոպականացման գաղափարին հետ չէր կրնար հաշտուիլ։ Թուրք ժողովուրդը կ'ատէր Եւրոպայի գիտութիւնը, գրականութիւնը, գեղարուեստը, ճարտարուեստն ու անոնց արտադրութիւնները կը նկատէր պիղծ։ Ասոր համար է որ սժգանքով նայած է Եւրոպայի վերաբերեալ որեւէ բանի և երկար վարանումներ ունեցած՝ եւրոպական որեւէ բան ընդգրկելու համար։ Այս տեսութիւնը շատ սուղի նստած է բնականաբար իր քրիստոնեայ հպատակներուն։ 1876 ին վերջապէս պայթեցաւ պալքանեան հրաբուխը, պալատական յեղաշրջումներ տեսակ մը անիշխանութիւն ստեղծեցին կարելի է ըսել, կոտորածներ տեղի ունեցան պալքաններուն մէջ և ահա կազմուեցաւ Կ. Պոլսոյ գոնֆէրանսը, որուն հետեւեցաւ և Արեւելեան Պատերազմը։ Հայոց հարցը դրուեցաւ միջազգ. դիւանագիտութեան սեղանին վրայ, և սակայն Հայաստանի ալ երեք մասերու սահմանները ճշդուեցան արդէն։ Ռուսիոյ և Թուրքիոյ հայերը կը կազմէին հայութեան ստուարա-

գոյն մասը, Պարսկաստանի հայոց հետ, որ պատկառելի թիւ մը չունէր, վասնզի շատեր Ռուսիա գաղթած էին։

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ.— Տաճկահայոց կացութիւնը աւելի քան անտանելի էր։ Բ. Դուռը խոստմնազանց ըլլալով՝ ոչ մէկ բարենորոգում ի գործ դրած էր, քրիստոնեաներու կեանքը բարելաւելու նպատակաւ։ Եւրոպայէն եկած ազատական գաղափարները յեղաշրջած էին հայութիւնը։ Ազգ. Սահմանադրութիւնը տուած էր նոր կեանք։ Հայաստանի մէջ հարստահարութիւններ առած էին մեծ համեմատութիւն և ազգային գրականութիւն մը ազատագրութեան տենչը կ'արծարծէր. ուստի դրուեցաւ հարցը սեղանի վրայ։ Արեւելեան պատերազմին ատեն երբ Սան-Սթէֆանոյի մէջ ռուս և թուրք հաշտութիւնը կը կնքուէր՝ Ներսէս Վարժապետեան պատրիարքին աշխատութեամբ դաշնագրին մէջ դրուեցաւ 16րդ յօդուածը, որ Հայաստանի բարենորոգումներ կը խոստանար։ Պերլինի վեհաժողովին ատեն ալ դաշնագրին 61րդ յօդուածը կը վերաբերէր հայոց։ Հայերը խանդավառուած էին, սակայն ատոնց ոչ մին կ'իրականանար։ Հայ Յեղափոխութիւնը կը խմորուէր հետզհետէ։ Հայկական աշխարհին մէջ գահավիժող դէպքերը փութացուցած էին զայն։ Իրարու ետեւէ կազմակերպուեցան Հնչակեան և Դրօշակեան կուսակցութիւնները, որոնք ցոյցերով ու ապստամբութիւններով ուզեցին ապահովել կեանքի, ինչքի ու պատիւի ապահովութիւն։ Սուլթանը հայոց արդարացի պահանջներուն կոտորածով պատասխանեց։ 1895-96ին հարիւր հազարաւոր հայեր սպաննուեցան Կ. Պոլսոյ և Թուրքիոյ զանազան քաղաքներուն մէջ։ Հայ լեզուն, հայ գրականութիւնը և հայ մամուլը, որ թափ առած էին, գրաքննութեան ճիրաններուն տակ ինկան։ Արեւմտեան հայերէնն սկսաւ ենթարկուիլ ոճաբանութեան։

ԱԶԳ. ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ.— Ֆաթիհի գրաւումէն և հայոց հանդէպ ունեցած լաւ վերաբերումէն՝ Պոլիս կազմուած էր մեծ գաղութ մը, որ ստուարացաւ հետզ-

հետէ։ Կազմակերպուած էին ամիրաներու, չէլէպիներու, մուլթէզէլլիներու, էֆէնտիներու, էսնաֆներու և ուսմիկներու դասակարգեր։ Ֆրանսա ուսած նոր սերունդը, որ ուսմկավարական ձգտումներով տոգորուած էր՝ պայքարեցաւ ամիրայական և մեծ-աղայական դասակարգերուն դէմ և վերջապէս յաջողեցաւ 1863 ին Օսմ. կառավարութեան կողմէ վաւերացնել Ազգ. Սահմանադրութիւնը, որ հիմնալի միջոց մ՚է Ազգ. ներքին ինքնավարութեան։ Գր. Օտեան, Նահապետ Ռուսինեան, Նիկողայոս Պալեան, Աղաթօն Մկրտիչ, Կ. Իւթիւճեան, Սէրվիչէն եայն հիմնադիրներն են Ազգ. Սահմանադրութեան։ Ազգ. Սահմանադրութիւնն իր բազմակողմանի օգուտներն ունեցաւ հայկական մշակոյթին մէջ և մեծագոյն սատարը դարձաւ աշխարհաբարի զարգացման ու յաղթանակին։

ՀԱՅ ԲՈՂՈՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ. — Լատիններու հետ ըսկըսուած կրօնական վէճերուն վրայ, որոնք դարեր տեւեցին, եկաւ աւելնալ նաեւ ուրիշ կրօնական պատալտում մը։ Պորտի միսիոնարները գործել սկսան Կ. Պոլսոյ մէջ։ Բերա և Պէպէք ձեռք բերին մեծ կալուածներ, որոնց մէջ բացին գիշերօթիկ և ցերեկեայ շատ մը վարժարաններ՝ աշակերտները ձրի ընդունելու պայմանաւ։ Հայերը, որ քիչ շատ արթնցած, կարօտը կը քաշէին կրթական հաստատութիւններու, սիրով ղրկեցին իրենց տղաքները։ Ասպա հաստատեցին կիրակնօրեայ դասեր և սկսան ուղղակի բողոքականութիւն քարոզել։ Հայոց և Յունաց պատրիարքները այս հոսանքին դէմ կռուեցան. նոյն իսկ 1839 ին պատրիարքական հրամանաւ կարգ մը քարոզիչներ ու վարժապետներ Փոքր Ասիա աքսորուեցան։ Յուզումը մեծ էր և կըրօնական վէճերը սովորականէն կերպով արծարծած էին։ Անգլիոյ դեսպանին սատանձնած էր բողոքականներուն պաշտպանութիւնը։ Վերջապէս 1850 ին անկախ ճանչցուեցան։

Երբ հայ լեզուի մաքրագործման հոգը կար, միսիոնարութիւնն ու հայ բողոքականութիւնը մեծ օժանդակութիւն բերին։ Առաջին անգամ լեզուի մաքրութեան

վրայ ուշ դարձնող Թերթն է Ամերիկեան միսիոնարներու Իզմիրի մէջ հրատարակած Շտեմարանը (1839)։ Ս. Գիրքի աշխարհաբար քարոզութեան անհրաժեշտութեան պատճառաւ անոնք զայն թարգմանեցին աշխարհաբար հայերէնի, և քարոզեցին նոյն լեզուով՝ կոկելով ու մաքրելով աշխարհիկ լեզուն։ Երկրին ամեն կողմը հաստատուած ամերիկեան դպրոցներն ու բողոքական-կրթական հաստատութիւնները հետզհետէ տուին զարգացած երիտասարդներ, որոնք օգտակար դարձան համայնքին և մշակեցին հայ լեզուն։

ԿՐՕՆԱԿԱՆ ՎԷՃԵՐ. — Թէ՛ գաթոլիկութեան և թէ՛ բողոքականութեան մուտքն հայոց մէջ վէճերով սկսուեցաւ։ Մինչև ԺԹ. դարու կէսերը կրօնական վէճերը մղուեցան ամեն կողմ ծայրայեղութեամբ։ Սակայն էր հայոց կրօնական երկպառակութիւնը ԺԹ. դարուն մէջ։ Ժամանակը թէև շատ մեղմացուց զայն, բայց աշխատողներ ալ չպակսեցան։ Ազգ. Սահմանադրութիւնը, Հայկական Խնդիրն ու ազգային մեծ վիշտը տակաւ ակարացուցին և վերջապէս գրեթէ սպառեցին վէճերու այդ յոռի շրջանը։ Գաթոլիկութիւնը տուաւ լատինաբոյր հայերէն մը և լատինաբանութիւն, իսկ բողոքականութիւնը անգլիաբոյր հայերէն մը, որ՝ թէև անփայլ՝ բայց մաքուր էր գէթ։ Անոնք հայ գրականութեան մէ՛ջ ալ իրենց բաժինը բերին։ Առաջինները՝ Մխիթարեաններով և անոնց աշակերտներով, որոնց մէջ են Պետրոս Ադամեան, Մկրտիչ Պէշիկթաշլեան եայլն, իսկ վերջինները՝ իրենց պատրաստած բազմաթիւ զարգացած երիտասարդներով ու գրագէտներով, որոնք ազգ. առաջդիմութեան սատարեցին։

ՀԱՅ ԹԱՏՐՈՆԸ. — Ամենէն առաջ տաճկահայոց մէջ հիմնուած է Հայ Թատրոնը։ Սկզբնաւորութիւնը Մխիթարեաններն ըրած են թէև, սակայն յետոյ Ադամեան, Պէշիկթաշլեան, Թղլեան, Հէքիմեան, Դուրեան եայլն զարգացուցած են։ Անոնք աշխարհաբարին շատ օգնած են և ճոխացուցած են թատերական գրականութիւնը։ Հայ Թատրոնը մեծագոյն աջակիցն եղած է հայ մամուլին։ Ռու-

սահայեր տաճկահայերու միջոցաւ թատրոն հիմնած են, բայց մինչ բռնապետութիւնը մեռցուց Հայ Թատրոնը Թուրքիոյ մէջ, ռուսահայերը զարգացուցին զայն և հիմա Հայ Թատրոնը յարգելի դիրք ունի անոնց մէջ։

ՀԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐԸ .— Հայ լեզուի և գրականութեան տարածման մէջ դպրոցներու դերն անուրանալի է։ Ժթ. դարու ընթացքին շատ մը կարևոր վարժարաններ հիմնուեցան Ռուսահայոց և Տաճկահայոց մէջ, ինչպէս Ներսէսեանը (Թիֆլիս), Գէորգեանը (Էջմիածին), Սանասարեանը (Կարին), Դպրեվանքը (Արմաշ), Պէրպէրեանը, Կեդրոնականը, Նուպար-Շահնազարեանը, Մէզպուրեանը (Կ. Պոլիս), և ուրիշ շատ մը մեծ ու պզտիկ վարժարաններ՝ Պոլիս, Իզմիր և Թուրքիոյ ու Ռուսիոյ զանազան կողմերը։ Անիրաւութիւն է հոս զանց ընել Մխիթարեաններու զանազան հաստատութիւնները, միսիոնարական գոլէճները և աստուածաբանական ու բարձրագոյն վարժարանները։ Ասոնց վրայ հարկ է աւելցնել ամեն կողմ բացուած նախակրթարանները, մանաւանդ Միացեալին կողմէ։ Գաւառներու մէջ կրթական գործօնը մեծ եղաւ Ժթ. դարու մանաւանդ վերջին քառորդին։ Բռնակալութիւնը դպրոցներո՛ւն ալ մեծ հարուած տուաւ. այսու հանդերձ անոնք դարձեալ հիանալի դեր կատարեցին ընդհանրապէս հայկական մշակոյթի և մանաւանդ հայ լեզուի ու գրականութեան զարգացման մէջ։

ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ .— Ազգ. Սահմանադրութի՛ւնը մանաւանդ՝ հասարակական գործունէութեան մղեց հայ ժողովուրդը։ Ժթ. դարու վերջին կէսին մէջ բազմաթիւ ընկերակցութիւններ հաստատուեցան Թուրքիոյ և Ռուսիոյ մէջ՝ լսարանական, հրատարակչական, բարեգործական, կրթասիրական և այլ զարգացուցիչ նպատակներով։ Ասոնք ամեն կողմ մեծ զարթնում առաջ բերին հայոց մէջ։ Նշանակելի են Կովկասի Հայոց Հրատարակչականը, Կովկասի Հայոց Բարեգործականը, Միացեալ Ընկերութիւնը, Ազգանուէր Հայուհեացը, Դպրոցասէր Տիկնանցը ևայլն։

ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ.— Հայկական Յեղափոխութենէն առաջ արդէն իսկ հայ մամուլն ազգայնական ուղղութիւն առած էր, ժամանակակից հոսանքէն տարուելով։ Երբ յեղափոխական կուսակցութիւնները կազմակերպուեցան, անոնք ունեցան իրենց մամուլը, իրենց սկզբունքներուն տարածման և Հայկական Խնդիրին նպաստելու համար։ Յեղափոխական մամուլին շատ բան կը պարտին հայ լեզուն ու գրականութիւնը։ Ան էր որ ժամանակակից ընկերաբանական-քաղաքագիտական գաղափարները կը փոխադրէր մեր մէջ։ Տնտեսագիտական-ընկերվարական գրականութեան և ժամանակակից ընկերային գիտութիւններու մուտքը հայոց մէջ բացառապէս Հնչակեան կուսակցութեան կը պարտինք։ Արմենիան և ապա Հնչակեան ու Դաշնակցական պաշտօնական ու կիսապաշտօնական թերթեր առին յեղափոխական փայլուն գրականութիւն մը, որ կարգ մը յեղ. գրագէտներու գրչին տակ մնայուն՝ առաւ հսկայ թափ։ Յեղ. մամուլը մեծ դեր կատարեց նաեւ հայ ժողովուրդին մէջ ընթերցումը ծաւալելու և արեւելեան ու արեւմտեան հայութիւնը իրարու մերձեցնելու տեսակէտով։

ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐ.— Հայկական գաղութները կազմուած էին Հայաստանի եղերական անցքերու միջոցին մայր-երկրէն հոս հոն փախած հոսանքներով։ Մեծ գաղթերէն վերջ ԺԹ. դարու մէջ եւս կանգ չառաւ մասնակի գաղթականութիւնը։ Հայկական կոտորածներուն հետեւանքով, և ապա ճգնաժամին մէջ, բազմաթիւ հայեր փախան Տաճկաստանէն՝ և ապաստանեցան Եւրոպա, Ամերիկա, Եգիպտոս և այլն։ Կազմուեցան նորանոր հայկական կեդրոններ՝ քաղաքակրթեալ երկիրներու մէջ, որոնք ունեցան բեմ, մամուլ և գրականութիւն։ Հայ յեղափոխական կուսակցութիւններու դերը հայ գաղութներու զարգացման կեանքին մէջ՝ գնահատելի է։

ՀԱՅ ԿԻՆԸ.— Այս դարէն առաջ հազիւ կին դէմքեր կարելի է նշմարել հայ լեզուի ու գրականութեան

մշակներուն մէջ։ ԺԹ. դարուն մէջ ո՛չ միայն իգական սեռէ ուսուցչուհիներ չատցան, այլեւ իգական սեռի դաստիարակութիւնը տուաւ վիպագիրներ (Սրբուհի Տիւսաբ), բանաստեղծներ (Սիպիլ, Շուշանիկ Կուրղինեան), գրագէտներ (Օր. Եւփիմէ Օտեան, Տ. Մարի Սվաճեան, Տ. Զապէլ Եսայեան, Տ. Արշակուհի Թէոդիկ, Հերանոյշ Արշակեան, Օր. Նինի, Պերճուհի Եազըճեան), հրապարագիրներ (Տ. Հայկանոյշ Մարք, Տ. Գ. Զարուհի, Տ. Հ. Արապեան եւայլն), որոնք հայ լեզուի ու գրականութեան մշակման գործին մէջ ունեցան կարեւոր բաժին։

ՀԱՅ ԼԵԶՈՒ. — ԺԹ. դարու սկիզբէն գրաբարը արդէն զտուած, մաքրագործուած, ազնուացած եւ դասական լեզուի մը բոլոր վայելչութիւնն զգեցած է։ Սակայն մրւեստական էր գրաբարին փայլը, որովհետեւ հայ իրականութեան մէջ անիկա չէր կրնար հասկնալի լեզուն ըլլալ ժողովրդային հոկայ զանգուածին։ Պէտք էր որ ռամկօրէն բարբառները հասարակականային։ Կիլիկեան հայերէնը, որ ծանօթ էր, մեծ փոփոխութիւններ կրեց դարերու ընթացքին մէջ։ Զանազան բարբառներ առաջացան այդ կերպով։ Անոնց գլխաւորն էր Կ. Պոլսոյ բարբառը, որ թէեւ կիլիկեանին մաքրութիւնը չունենալով՝ չատ գըռեհիկ, աղաւաղուած եւ թրքացած էր, սակայն Նոր Աշխարհիկ լեզու ըլլալու հանգամանքները ունէր։ Եւ որովհետեւ Կ Պոլիսը կեդրոն դարձած էր եւ հոն մասւորական շարժում մը կար, ուստի բաղդն այնպէս բերաւ որ գրականանար անոր բարբառը, որ թէեւ սակայն կերպով անճանաչելի դարձած, այսու հանդերձ կը մնար մաքուր եւ կոկիկ՝ իր էութեանը մէջ։ Հայ լրագրութիւնը, գրականութիւնը, բեմն ու դպրոցները զայն տարածեցին ամենէն հեռաւոր անկիւններն իսկ, եւ ահա Պոլսոյ Հայեվարը դարձաւ արեւմտեան գրական լեզուն։ Հայ լեզուն սակայն ԺԹ. դարուն մէջ ունէր այնպիսի զօրեղ ազդակներ, որոնք անպայման պիտի ապահովէին իր զարգացումն ու բարգաւաճումը։ Հաղորդակցութեան միջոցնե-

րու դիւրութիւն, այլազան բառարաններու և քերականութիւններու յօրինում, մամուլի գործունէութիւն, գրական կեանք, հրատարակիչներ, տպագրութիւն, մեկենասներ, դպրոցներ, ընկերութիւններ և այլն անհագին մղում տուած էին հայ լեզուին: Դարուն ռամկավարական ձգտումը, որ արեւմուտքէն փոխադրուած էր հայոց մէջ, բնականօրէն աշխարհիկ լեզուին պիտի հակէր. ուստի աշխարհաբարի՛ն էր յաղթանակը: Թարգմանութիւններ ԺԹ. դարու փառքը կազմեցին: Պոլիս, Վենետիկ, Վիէննա և Իզմիր հայացուցին յունաց, հռովմէացիներու, իտալացիներու, ֆրանսացիներու, անգլիացիներու, գերմանացիներու և այլոց հրաչակերտները և այսպէս Հոմերոս, Վիրգիլիոս, Սոփոկլէս, Դեմոսթենես, Տակիտոս, Մարկոս Աւրելիոս, Ֆենելոն, Սեքսփիրոս, Ռասին, Պօսիւէ, Տանդէ, Միլտոն և այլն հայերէնի վերածուեցան: Դարուն կէսին գրեթէ՝ ռուսահայ և տաճկահայ գրական բարբառները շեշտուեցան, և այնուհետև առանձին կազմակերպութիւն ունեցան արեւելեան և արեւմտեան հայերէնները, տարբեր ուղղութիւններով, ձգտումներով և տարբեր ալ ազդեցութիւններով: Հիմա հայոց մէջ կան երկու գրաւոր բարբառներ.— Արեւելեան կամ Ռուսահայ և Արեւմտեան կամ Տաճկահայ:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅԵՐԷՆԸ.— Ժողովուրդին բուռն պահանջներուն գոհացում տալու համար ԺԹ. դարու սկիզբները Պոլիս, Զմիւռնիա և Վենետիկ սկսած էին ռամկօրէն գիրքեր տպել: Բայց արեւմտեան հայերէնին կամ տաճկահայ լեզուին կեդրոնը դարձաւ Կ. Պոլիս, վասնզի աշխարհագրական ու քաղաքական պայմաններ հայոց պատրիարքութիւնն ու կարեւոր ազգ. հիմնարկութիւնները, պետական ազդեցիկ անհատներ ու ստուարաթիւ հայ գաղութ մը հոն խմբած էին արդէն, ԺԸ. դարէն սկսեալ: Վենետիկէն վերջ առաջին տպագրական կեդրոնը դարձած էր միանգամայն, որովհետև Պոլսոյ պայմանները թոյլատու էին և, Թուրքիոյ մայրաքաղաքին կեանքը անհամեմատօրէն տանելի էր՝ քան Հայաստանի

հայութեանը։ Իրարու ետեւէ բացուած կարգ մը վարժարաններ, ազգային կամ օտար, հասցուցին նոր ուսանողութիւն մը, որ իր ուսումը կատարելագործելու համար դիմեց Բարիզ, Բատուա, Վենետիկ եւ կամ ուրիշ տեղեր։ Ասոնք զօրացան ֆրանսական ոգիով ու Ֆրանս. Յեղափոխութեան տարածած ռամկավարական սկզբունքներով տոգորուած եւրոպականացած հոյլը դարձան, ինչպէս Ն. Ռուսինեան, Յ. Սվաճեան, Խ. Միսաքեան, Օ. Խօճասարեան, Կ. Փանոսեան. Ն. Զօրայեան, Մ. Մամուրեան եւ այլն, որոնք Կ. Պոլսոյ մէջ հիմնեցին պայքարող մամուլ մը եւ սկսան տարածել Բարիզի մէջ իրենց ուսուցիչներէն Թիէռէն, Կիզօյէն, Լամարթինէն, Հիւկօյէն, Շաթոպրիանէն եւ այլն քաղուած ազատ մտածողութիւնը։ Մտաւորական բոլորովին նոր շարժում մը սկսած էր՝ գրաբարին դէմ կռուող եւ ամբրայական դրութիւնը տապալող։ Մէկ խօսքով հինի ու նորի կռիւն էր, որոնց առաջինին ախոյեանն էր Տէրոյենց Պատուելի։ Նախապէս Ռուսինեանի Ուղղախօսութիւնը (1853) թէեւ թերի եւ կամայական գործ մը, բայց առաջին ազդանշանն էր կռիւի։ Իրարու ետեւէ նոր աշխարհաբար քերականութիւններ կուգային հրապարակ։ Ասոնք անհրաժեշտութիւն էին, թէեւ լեզուն տակաւին նոր կը կաղապարուէր։ Հ. Ա. Այտընեանի Աշխարհաբար Քերականութիւնը (1865) եւ ապա դարուն հոյակապ գործերէն մին Քննական Քերականութիւնը (1866) հրապարակ ելան՝ Աշխարհաբարի դատը պաշտպանելու համար։ Աշխարհաբարը գրաբարով պատուաստելու գաղափարը գրաբարամոլ եւ գիտական ոգիէ զուրկ կարգ մը պատուելիներու եւ գրագէտներու կողմէ պարզ զիջում մ'էր՝ գոնէ գրաբարին մօտեցնելու համար զայն, վասնզի ահագին համեմատութիւններ կ'առնէր առաջխաղացութիւնը։ Այս հոսանքն առեղծեց կարգ մը քերականութիւններ, գրաբարի օրէնքներուն վրայ ձեւուած, որոնք ապրելու յարմարութիւններ չունենալով իրենց գոյութենէն դադրեցան։

Հայ կեանքին վերազարթնումին հետ զուգահեռական կ'երթար աշխարհիկ արեւմտեան լեզուին խոյանքը։ Անոր օժանդակողները բազմաթիւ էին։ Թուրքիոյ բարենորոգչական ձեռնարկները, հայ բողոքականութիւնն ու միսիոնարութիւնը, արեւմտահայ լրագրութիւնը և ուրիշ ազդակներ լաւկեայն ժողովրդապետական ոգիին արտայայտիչն ըլլալով՝ իրենց գործունէութիւնը ի նպաստ Աշխարհաբարին կը մղուէր բնականօրէն։ Գրաբարի և Աշխարհաբարի վէճը, որ երկար ատեն պոլսահայ մամուլին մէջ վէճի նիւթ դարձաւ և քանի մը անգամ արծարծուեցաւ, Իզմիրի ու Պոլսոյ գրական կեանքով, Մասիս օրաթերթով, սկսուած նոր գրականութեամբ և Ազգ. Սահմանադրութիւնով բազմացուց Աշխարհաբարի կողմնակիցները՝ գրաբարի վերջնական պարտութիւնովը վերջացաւ։ Արեւմտեան աշխարհիկ հայերէնի և միանգամայն գրականութեան կեանքը կարելի է բաժնել չորս շրջաններու (*)։

Ա. Այս շրջանը կը ներկայացնէ 1860-80 թուականները, երբ տաճկահայերը Ազգ. Սահմանադրութեան հաստատութեան և գրաբարի ու աշխարհաբարի վէճերուն առթիւ բուռն կեանքի մէջ են։ Այս շրջանի գրողներն են Ռուսինեան, Օտեան, Պէշիկթաշլեան, Դուրեան, Մամուրեան, Ծերենց, Խրիմեան Հայրիկ, Նար-պէյ եւլն։ Այս շրջանին մէջ ծաղկած են գլխաւորաբար՝ հրապարակախօսութիւնը, քնարերգութիւնը և պատմական ողբերգութիւնը։

Բ. Երկրորդ շրջանը կը ներկայացնէ 1880-1890 թուականի լեզուն ու գրականութիւնը, երբ Պոլսոյ մէջ հետամուտ են դպրոցներու ու առհասարակ կրթական գործի զարգացման։ Բայց այդ նպատակին դեռ չհասած՝ տակաւ առ տակաւ կը սկսին Թուրք գրաքննութեան ճնշումները։ Այս շրջանի հեղինակներն են՝ Պարոնեան, Տիկին Տիւսաբ, Սրուանձտեանց, Թովմաս Թէրզեան, Յովհ. Սեթեան, Ե. Տէմիրճիպաշեան, Մինաս Չերազ, Մ. Աճէմեան, Ռ. Պէրպէրեան։ Այս շրջանին մէջ կը զարգանան բանաստեղծութեան միւս ճիւղերը, վիպասանութիւնը, փիլիսոփայական գրուածքներ կ'երեւան, երգիծաբանութիւնը կը կատարելագործուի տակաւ։ Տիրող ուղղութիւնը բնապաշտ ու վիպական դպրոցն է։

(*) Այս և արեւելեան հայերէնի բաժանումն ու ծանօթութիւնները չնչին փոփոխութիւններով կ'առնենք Հ. Աճառեանի Պատմութիւն Հայոց Նոր Գրականութեան ընդհանուր տեսութենէն (էջ 42-44)։

Գ. Այս շրջանը կը պարունակէ 90ական թուականները։ Նախ կը հիմնուի Հայրենիք թերթը, որուն շուրջը կը հաւաքուին տաճկահայոց նորագոյն ոյժերը՝ Արփիար Արփիարեան, Գրիգոր Զոհրապ, Հրանդ Կիւրճեան, Հրանդ Ասատուր, Լեւոն Բաշալեան, Արշակ Չօպանեան, Երուանդ Օտեան, Զապէլ Տօնէլեան (Սիպիլ), Տիգրան Կամսարական, Տ. Արփիարեան, Շանթ, Ալփիար, և այլն։ Կը սկսուի իրապաշտ ուղղութիւնը։ Այս շրջանին մէջ զարգացած են գլխաւորապէս նորավէպերն ու ժողովրդական կեանքէն առնուած կարճ պատկերները։ Թուրքիոյ ներքին կացութիւնը կը փոխուի, Հայկական Յեղափոխութիւնը պայթած է, խստութիւնները շատցած են և 95-96ի ահեղ կոտորածները կուգան պահ մը կասեցնել ամէն տեսակ լեզուական, գրական ու կրթական շարժում։

Դ. Սա հայկական ճգնաժամի շրջանն է, որ կը ներկայացնէ կոտորածէն վերջ ինկած ու թշուառական հայութիւնը։ Ուժասպառ ժողովուրդին հետ հայոց մտաւորական լաւագոյն ոյժերը կը գաղթեն Պուլկարիա, Եգիպտոս, Եւրոպա և Ամերիկա։ Նիւթական սնանկութիւնը կը մեռցնէ գրականութիւնը, բայց մոխիրի տակէն կամաց կամաց կը ծլին ըմբոստ ոյժեր։ Կը հիմնուին թերթեր։ Գրականութիւնը կը տարածուի Պոլսէն դուրս գաղթավայրերուն մէջ ալ՝ յեղափոխական բնաւորութեամբ։ Պոլսոյ մէջ Հայ լեզուն կը կաշկանդուի բոլորովին ու լրագրութեան մէջ կենսունակութիւն չկայ. գիրքերու հրատարակութիւնը շատ հազուադէպ է, և ամէն բան հայ թերթերու մէջ սահմանափակուած։ Ազգ. պատմութիւնը, ազգայնական ոգի կրող գիրքերն ու գրութիւնները, Հայաստան բառը և հայկ. քաղաքներու հայերէն անունները, նոյն իսկ կարգ մը բառեր արգիլուած էին։ Հազիւ կ'ապրէր տաճկահայ գրականութիւնը, չմեռնելու չափ։ Գրաքննութեան պատճառաւ թարգմանութիւնները բազմացան և գրական արուեստը զարգացաւ։

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅԵՐԷՆԸ.— Երբ Հայաստանը բաժնուեցաւ Ռուսիոյ, Տաճկաստանի և Պարսկաստանի մէջ, ռուսական ազդեցութիւնը շատցաւ արեւելեան հայոց մէջ և ռուսական բարբառը գրականացաւ։ Կովկասի մէջ բակըտուեցաւ մշակոյթ և շուտով հիմնուեցաւ Մոսկուայի Լազարեան ճեմարանն (1818) ու Թիֆլիսի Ներսիսեան դպրոցը (1825), որոնք հրաշքներ գործեցին։ Կրթութիւնը տակաւ տարածուեցաւ և շատ մը երիտասարդներ Դորպատի, Մոսկուայի ու Բեդրպուրկի համալսարանները դիմեցին՝ իրենց ուսումը կատարելագործելու համար։ Երկար ատեն տաճկահայ գրականութիւնն էր Ռուսիոյ հա-

յոց սնունդը։ Արեւմտեան աշխարհիկ լեզուն սահմանէն անդին ժողովրդականացած ըլլալով ռուսահայոց մէջ եւս միեւնոյն լեզուի վէճն սկսաւ՝ բնականօրէն աշխարհիկ լեզուին յաղթանակովը վերջանալու պայմանաւ։ Խաչատուր Աբովեան եւ Ս. Նազարեան հիմը կը դնեն ռուսահայ աշխարհիկ գրականութեան եւ առաջնութիւն կուտան նախ Թիֆլիսի եւ ապա Երեւանի բարբառին։ Մոսկուան դարձաւ սակայն ռուսահայ մաքուր աշխարհաբարին օրրանը, երբ Դորպատի համալսարանականները խմբուեցան Ս. Նազարեանցի Հիւսիսափայլին շուրջը (1858)։ Նազարեանց ռահվիրան է աշխարհիկ ռուսահայերէնին, կողմնակից դառնալով արեւմտեան եւ արեւելեան գրականութիւններու բաժանման։ Իրենցմէ առաջ արդէն աշուղները ռուսահայ բարբառը գործածած էին։ Վերջապէս տարածուեցաւ ռուսահայերէնը եւ կազմուեցան զանազան կեդրոններ, ինչպէս Մոսկուա, Թիֆլիս, Էջմիածին, Բեդրսպուրկ, Երեւան, Ալեքսանդրապոլ եւայլն։ Ինչ ազդակներ որ օգնեցին տաճկահայերէնին, ասոնք մեծ չափով ազդեցին եւ արեւելեան հայերէնին մշակման, սա տարբերութեամբ որ՝ ռուսահայ լեզուն ու գրականութիւնը չենթարկուեցան այնպիսի գրաքննական խիստ պայմաններու, ինչպէս արեւմտեանը, եւ ուստի՝ ազատօրէն զարգացան։ Կովկասի մէջ մշակուեցաւ աւելի ազգայնական գրականութիւնը եւ տաճկահայեր անոնցմով սնանեցան իրենց հայրենապաշտ զգացումներուն յագուրդ տալու համար։ Շատ սիրուեցաւ արեւելեան գրականութիւնը։ Ռուսահայ գրականութենէն անբաժան պէտք է նկատել պարսկահայկականը։

Արեւելեան գրականութիւնը Լէօ կը բաժնէ երկու շրջանի.

Առաջին շրջանը կը տեւէ 60ական թուականներէն մինչեւ 1885, երբ գրականութեան միակ ձգտումը օգտակարն է, ժողովուրդի լուսաւորութիւնը, անոր առաջդիմութիւնը։ Այս շրջանի դէմքերն են Խ. Աբովեան, Ս. Նազարեան, Գ. եւ Ռ. Պատկանեան, Մ. Նալբանդեան, Սմբատ Շահազիզ, Ղ. Աղայեանց, Պերճ Պռօշեանց, Գ. Սունդուկեանց, Գր. Արծրունի, Րաֆֆի եւ Լէօ։ Այս շրջանի հիմնական ոգին հրապարակախօսութիւնն է։

Բ. շրջանը կը սկսի 1885էն։ Այս շրջանին մէջ հրապարակախօսական ձգտումին տեղ կը տրրէ զուտ գեղեցիկի ըմբռնումը և գրականութիւնը կը սկսի ծառայել միայն գեղարուեստին։ Այս շրջանի գրողներն են Յ. Յովհաննէսեան, Լեւոնց, Շիրվանզադէ, Մուրացան, Ա. Ծատուրեան, Լ. Մանուէլեան, Յովհ. Թումանեան, Յարութիւն Թումանեան, Արամ Զարըգ, Ատրպետ, Վ. Փափազեան, Ա. Իսահակեան, Ա. Ահարոնեան, Տիկին Խատիսեան և այլն։

ԼԵԶՈՒԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ.— Սա աչքառու երեւոյթ մ'է հայ լեզուի կեանքին ու պատմութեան մէջ, գրականութեան սկզբնաւորութենէն ի վեր։ Ռամկօրէնի ու գրաբարի պայքարը ամբողջ դարեր տեւած է։ Բայց վերջին պայքարն առաջացաւ հայ լեզուի նորոգութենէն, որ կատարուած ըլլալով գրաբարին ազդեցութեամբ, լեզուն գրաբարացուց և դէպի աջ տարաւ։ Առաջ ստեղծուեցան ձախակողմեանները, և գրաբարեաններ ու աշխարհաբարեաններ, կամ պահպանողականներ ու ազատականներ դէմ դէմի ելան։ Կ'արժէ խօսացնել Աշխարհաբարին դէմ եղած առարկութիւնները, հիմնուած լեզուի թերութիւններուն վրայ։

1. Աշխարհաբարը մեր լեզուն չէ.
2. Աշխարհաբարն աւելորդ է գրաբարին քով.
3. Աշխարհաբարը գրաբարին ոյժն ու վայելչութիւնը չունի.
4. Աշխարհաբար հայերէնն օտարութիւն է.
5. Աշխարհաբարն աղաւաղութիւն է.
6. Աշխարհաբարը մինակ չէ և շատ մը գաւառաբարբառներ ունի.
7. Աշխարհաբարին գոյութիւնը գրաբարին մշտնջենաւոր արգելք է. անոր կենդանութիւնն ասոր մահացու հարուած է։
8. Ազգասիրութիւնը կը պահանջէ գրաբարը կենդանացնել։

Աւելորդ է ըսել թէ դիւրին է տալ պատասխաններն այս առարկութիւններուն, որոնք լեզուին գիտական ուսումնասիրութեան պակասին արդիւնքն են։

ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ԼԵԶՈՒ.— Լեզուական պայքարը բնականօրէն ծայրայեղութիւններ ալ պիտի առաջացնէր։ Աշխարհաբարի ակնյայտնի բարեշրջումը դէպի կատարելութիւն, և առած որոշ և զգալի առաջդիմութեան քայլերը ստեղծեցին լեզուական և գրական ըմբռնում մը, որուն համեմատ հայ գրագէտներու մէջ քանի մը անձնաւորութիւններ ուզեցին չա՛ս կանխահասօրէն վերջնական գոյն

մը տալ Աշխարհաբարին, պարզելով բոլորովին անոր քերականութիւնը և սկիզբէն իվեր ընդունուած ընդհանուր օրէնքներն ու բացառութիւնները լուծել բոլորովին ընդհանուր և բացարձակ օրէնքներու մէջ: Ընտրողական լեզուի, որով նաև մասամբ շինծու լեզուական բարենորոգութեան մը ձեռնարկները փորձուեցան 80ական Թըուականներուն՝ Մինաս Չերազի կողմէ և վերջերս ալ, բայց խիստ բնականօրէն անյաջող մնացին, վասնզի արուեստական ջանքեր անկարող են լեզուն դնելու ուղղուած ուղղութեան մէջ: Արդէն բնականօրէն լեզուն ինքնին պիտի ընդգրկէ կատարելագործութիւնը՝ հետզհետէ ընդհանրացնելով իր օրէնքները և պարզելով իր քերականական կանոնները: Պէտք է խոստովանիլ որ հայերէն լեզուն վերջապէս մինչև՝ որոշ աստիճան մը ընտրողական կերպարանք պիտի առնէ բնականաբար, բայց ատիկա պիտի ըլլայ բնական աստիճանաւորութեամբ ու լեզուական հաստատաքայլ առաջխաղացութեամբ մը և ո՛չ թէ կանխահաս ու բռնազբօս ճիգերով:

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Թէև տպագրութիւնը ԺԶ. դարէն ի վեր մուտ գտած էր հայոց մէջ, բայց ԺԹ. դա՛րը միայն իր գոյութիւնն արժեցուց: Սա շատ բազմածախս արուեստ մը ըլլալով ամեն անձի համար մատչելի չէր: Վանքերէ դուրս գիրք տպելու իրաւունքը պատրիարքարանի առանձնաշնորհումներու մէկ մասը կը կազմէր: Ասոր համար հին գիրքերուն վրայ անպատճառ գըրուած կ'ըլլար կաթողիկոսին կամ պատրիարքին անունը: Սակայն ԺԹ. դարուն հայ կղերին այդ ազդեցութիւնը սահմանափակուեցաւ և տպագրութիւնը ժողովրդականացաւ: ԺԶ. Դարէն մինչև ԺԹ. դար ընդամենը հազիւ 500 գիրք տպուած է 300 տարուան մէջ, անոր ալ մեծ մասը ԺԸ. դարու կէսէն վերջը տպուած ըլլալու պայմանաւ: Մինչդեռ այսօր հայերէն տպագրուած գրքերու թիւը 8-10,000ի կը հասնի: Այս դարուն մէջ շատ մը տըպագրական կեդրոններ հաստատուեցան ամեն կողմ և տը-

պագրական արուեստը իբրեւ գեղարուեստ իր բարձրութեանը հասաւ երբեմն տեղեր՝ եւրոպական տպաւորութիւններու հաւասարելու սահմանին:

ՄՇԱԿՈՒԱԾ ՍԵՌԵՐ.— Բնականաբար լեզուի մը կամ գրականութեան մը զարգացումը համեմատական է մշակուած զանազան գրական սեռերուն, որոնք ո՛չ միայն լեզուի մը ընդունակութիւնները կը սրեն, այլ եւ ժամանակի ընթացքին մէջ անոր կուտան նորանոր յատկութիւններ, որպէսզի կարող ըլլայ ամէն տեսակ գաղափարներ արտայայտել: Հայ լեզուի հին շրջանին մէջ կարգ մը սեռեր մշակուած էին արդէն, որոնց մէջ հայերէնը յաջողութեամբ դուրս ելած էր: ԺԹ. դարը գերազանց փորձաքարը դարձաւ մանաւանդ Աշխարհաբարին համար, որ՝ տակաւ աւելի՛ եւս ճկուն ու բարգաւաճ, գրական շատ մը սեռերու մէջ ցոյց տուաւ մեծ ընդունակութիւն եւ յաջողութիւն: ԺԹ. դարու մէջ մշակուեցան գլխաւորաբար Բանաստեղծութիւն եւ Տաղաչափական (Հ. Ղ. Ալիշան, Գամառ-Քաթիպա, Նար Պէյ, Մ. Աճէմեան, Մ. Պէշիկթաշլեան, Թովմ. Թէրզեան, Պ. Դուրեան, Ս. Ֆէլէկեան, Ա. Փանոսեան, Մ. Յովհաննէսեան, Յ. Թ. Գայաեան, Յ. Սէթեան, Ա. Զօպանեան, Ա. Ծատուրեան, Ռ. Որբերեան, Պ. Ադամեան, Ա. Յարութիւնեան, Ա. Իսահակեան, Յ. Թումանեանց եւ այլն), Բարոյախօսութիւն (Խրիմեան Հայրիկ), Ողբերգութիւն (Մ. Պէշիկթաշլեան, Դուրեան, Թէրզեան, Թըլեան, Հէքիմեան, Սէտէֆճեան եւ այլն), Կատակերգութիւն (Գ. Ռշտունի, Յ. Պարոնեան, Տ. Փափազեան, Տէր Գրիգորեանց, Գ. Ջմշկեանց եւ այլն), Երգիծաբանութիւն (Խ. Միսաքեան, Յ. Պարոնեան), Իմաստասիրութիւն (Ֆիլիքս Պօղոս, Փէշտիմալճեան, Ս. Հայկունի, Գ. Կոստանդեան, եւ այլն), Նամակագրութիւն (Ասպետ Զաւէն, Միքիթեղեկ Եպ., Մ. Մամուրեան եւ այլն), Պատմութիւն (Գ. Այվազովսկի, Մ. Թաղիադեանց, Մ. Մամուրեան, Մ. Նուրիխան, Ալիշան), Պերճախօսութիւն (Ս. Փափազեան, Ճիշմանեան,

Յ. Ճէճիզեան և ուրիշ եկեղեցականներ), Վիպական (Ծերենց, Տիկին Տիւսաբ, Մ. Մամուրեան, Րաֆֆի եւն), Ուղեգրութիւն (Սրուանձտեանց, Միրախորեան եւն)։ Մըշակուած են նաեւ Հրապարակագրութիւն (Բ. Քէչեան, Մ. Չերազ եւն.), Բանասիրութիւն, Գիտական Նիւթեր, Ընկերային Գիտութիւններ եւ Տնտեսագիտութիւն (Ա. Նազարբէկ, Ռ. Խանազատ, եւայլն), գեղարուեստական էջեր, ընկերային նիւթեր, կենսագրութիւն, սրբազան գրականութիւն, նկարագրութիւն, քննադատութիւն և գրախօսութիւն, քրոնիկ, տրամախօսութիւն եւայլն։

ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻՆ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆԸ.— Այս բոլոր ազդակները, որոնց մասին խօսեցանք ընդհանուր կերպով, նպաստեցին աշխարհաբար լեզուին ու գրականութեան վերջնական կազմակերպութեան։ ԺԹ. դարու վերջին քառորդին Աշխարհաբարը արդէն իսկ կատարելագործուած, հարուստ ու ճոխացած լեզու մ՚է, որ կը յարմարի ամէն տեսակ սեռերու մշակման։ Այս վերջնական կազմակերպութիւնը ժողովրդականացաւ ամեն կերպով և գաւառաբարբառներու գանձերն ալ անոր մէջ ներմուծելու ջանքեր չպակսեցան։

ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Հնդկաստանի մէջ սկըսուած հայ լրագրութիւնը հոն չսահմանափակուեցաւ։ ԺԹ. դարուն մէջ մեծ զարգացում կրեց անիկա և ծաւալ գտաւ։ Քանի՛ ընթերցասիրութիւնը ծաւալեցաւ ժողովուրդին բոլոր խաւերուն մէջ և ընթերցումը պատուելիներու ու գիտնականներու միայն մենաշնորհը ըլլալէ դադրեցաւ, այնքան ալ աւելցան թերթերն ու անոնց տեսակները։ Հայ լեզուի ու գրականութեան զարգացման պատմութեան մէջ մեծ դեր կատարած են հայ թերթերը միշտ։ Երկար ատեն հայ գրականութիւնը լըրագրութեան մէջ միայն ամփոփուեցաւ, երբ գրաքննութիւնը շատ մը դժուարութիւններ յարոյց հրատարակիչներու առջեւ։ Հայ լեզուի մշակման գործին մէջ հայ լրագրութեան միշտ երախտապարտ պէտք է ըլլանք, առանց թեթեւօրէն ուրանալու անոր արժանիքը։

**ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆՆԵՐ՝ ԺԹ. ԴԱՐՈՒ ՄԷՋ.**— *Հին ազդեցութիւններն ու օտար տարրերը պատմութեան ընթացքին մէջ թուեցինք արդէն։ Արեւելեան եւ արեւմտեան աշխարհիկ լեզուներու կազմութենէն վերջ ալ չպակսեցան զանազան ներգործութիւններ։ Արեւելեան լեզուն աւելի հիւսիսային գրականութիւններու հետեւեցաւ եւ անոնցմէ ազդուեցաւ. մանաւանդ շատ մը օտարոտի բառեր մտան իր մէջ. իսկ արեւմտեանը՝ ֆրանսական ազդեցութիւնը շարունակելով հանդերձ, դարուն կէսէնվերջ, մանաւանդ վերջին քառորդին՝ անգլիերէնի ազդեցութիւնն ալ կրեց՝ երբ ամերիկեան գոլէճներ տարածեցին անգլիերէն լեզուն։*

## Ի. ԴԱՐ ԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ.—

*Երեք պետութեանց սահմաններուն մէջ բնակող հայութեան քաղաքական կեանքին համար նոր բան մը չէր բերած իր հետ քսաներորդ դարը, որ քաղաքակրթութեան ոսկեդարը պիտի ըլլար անշուշտ։ Հայ լեզուն ու գրականութիւնն ալ իր երկու մեծ հատուածներով միեւնոյն վիճակը կը պահպանէր՝ համեմատութեան եզրերը պահելով անշուշտ Ռուսաստանի, Պարսկաստանի ու Տաճկաստանի քաղաքական եւ ընկերային պայմաններուն մէջ։ Հայ լեզուին ու գրականութեան ծառայող ազդակները սակայն այնչափ բազմապատկուած էին որ,— գիրքեր, թերթեր, դպրոցներ, ընկերութիւններ, թատրոն, տպագրութիւն, գաղութային ջանքեր եւ այլն,— հակառակ տիրող աննպաստ պայմաններուն՝ իմացական արթնութիւնը մեռցնելու չթողուցին։ Ամենէն դժբաղդը պէտք է ըսել տաճկահայութիւնն էր, որ հազիւ կրնար շնչել։ Բռնակալութիւնն ու քաղաքական կաշկանդումը հոն հասած էին իրենց ծայրայեղ աստիճանին։ Հայ հրապարակագիրը, գրագէտը, բանաստեղծը հարկադրուած էին մի՛միայն անմեղ նիւթերու մօտենալ եւ իրենց ըսելիքն հասկցնելու համար դիմել ամենէն մանուածապատ ձեւերուն ու ոճերուն։ Ասիկա արեւմտեան հայերէնին*

տուաւ արուեստ և ճկուն ոճ։ Իրարու ետեւէ յաջորդ-ջուեցան սահմանակից երեք երկիրներու քաղաքական կեանքերը. որոնք իրենց հետ բերին խօսքի և մամուլի համեմատական ազատութիւն, որով նաեւ միտքերու բաւական ազատ արտայայտութիւն։ Հայկական եկեղեցական կալուածներու գրաւումէն և ռուսահայոց վիճակի ժամանակաւոր վատթարացումէն վերջ՝ 1905ին Ռուսական սահմանադրութիւնը կը հրատարակուէր։ 1907ին Պարսկաստանը կը դառնար սահմանադր. երկիր և հուսկ ուրեմն 1908ին Օսմ. Սահմանադրութեան հռչակումով տաճկահայոց երկարամեայ ճգնաժամային վիճակը փոփոխութիւն կը գտնէր յայտնի աստիճան։ Երեք դրացի երկիրներու հայ քաղաքացիները իրենց երկիրներու ազատագրութեամբ ի վիճակի կ՚ըլլային իմացական և քաղաքական մեծ քայլեր առնելու, և ուստի քաղաքակրթութեան բոլոր ազդակները, որոնց մէջ նաեւ լեզու և գըրականութիւն ալ, կ՚առնէին նոր քայլ ու նոր թափ։ Ազատական ոգին կը ցոլար ամեն կողմ։ Գրականութիւն և բեմ ողողուած էին ազատաշունչ յօդուածներով ու ճառերով։ Գլխաւոր երեւոյթը, որ նշմարուեցաւ այս ռու-թիւ տաճկահայերէնին մէջ, կարգ մը անտեսագիտական, քաղաքագիտական, ընկերաբանական ու ընկերվարական օտար բառերու անսանձ արշաւանքն էր լեզուի սահմաններէն ներս, քաղաքական կուսակցութեանց գործիչներուն միջոցաւ և թերթերու գերազանց առատութիւնը։ Ազատութեան առաջին տարիներու արբեցութենէն վերջ, լուրջ գործունէութեան ըմբռնումն սկսաւ տարածուիլ բնականօրէն։ Հետզհետէ սկսան հրատարակուիլ լուրջ և աշխատուած երկեր, և բանասիրական ու լեզուական բաւական խնդիրներու մասին ալ կարեւոր նկատողութիւններ եղան հայ մամուլին մէջ։ Արեւելեան և արեւմտեան հայ լեզուի միացման բաղձանքը արտայայտուեցաւ ամեն կողմերէ և ո՛չ մէկ եզրակացութեան կարելի եղաւ հասնիլ։ Բայց կ՚արժէ գիտել որ եղբայրակցական

կապը չատ սերտացաւ հայկական երկու մեծ զանգուածներուն մէջ, որոնք եռանդով զիրար ուսումնասիրել և իրարմով հետաքրքրուիլ սկսան։ Ի․ դարը ապահովաբար ոսկեղէն շրջանն է աշխարհիկ հայերէնին համար։ Մեր օրերու շրջանին վրայ երկար կանգ առնել աւելորդ կը համարենք։

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ՄԷՋ ՕՏԱՐ ՏԱՐՐԵՐ․—

*ՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ԿՐԱԾ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ․—* Մինչեւ հիմա մենք տեսանք թէ հայ լեզուն հնդեւրոպական լեզուաճիւղին պատկանելով հանդերձ, դարերու ընթացքին մէջ զինքը գործածող ցեղին այլ եւայլ ազգերու, տարրերու ու պետութիւններու հետ ունեցած քաղաքական, ազգակցական, դրացիական, կրօնական, առեւտրական, մշակութական, ընկերային և քաղաքակրթական յարաբերութեանց պատճառաւ ազդեցութիւններ ու փոփոխութիւններ կրած է և փոխադարձաբար։ Հայ ժողովուրդին կեանքը այնքան դիմայեղումներու ենթարկուած է որ զարմանալի և անմեկնելի չէն երբեք այն բազմաթիւ օտար տարրերը, որոնք այս ու այն ժամանակին մէջ կամ շրջանին մուտ գործած են հայ լեզուին մէջ։ Այս միեւնոյն երեւոյթը անխուսափելի է արդէն ամեն լեզուներու համար ալ, աւելի կամ նուազ համեմատութիւններով։

*ԶՈՒՏ ՀԱՅԵՑԻ ՏԱՐՐ․—* Հայ լեզուին մէջ կան հնդեւրոպական ծագում ունեցող և հայերէնի յատուկ ձայնական օրէնքներուն դրոշմը կրող բնիկ հայեցի բառեր։ Ասոնց կարգէն են հայր, մայր, քոյր, եղբայր, կին, տիւ, լոյս, մահ, կեանք, զենք, շուն, գող, գործ, կորն, տուն եւայլն։ Տակաւին կան կարգ մը բառեր ալ, որոնք ստուգաբանուած չեն և մինչեւ հիմա իրենց ծագումին մասին ոչինչ գիտենք։

*ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ՏԱՐՐ․—* Հայ ժողովուրդը Նախահայաստան գաղթած ժամանակ տիրեց երկրին ու ժողովուրդներուն, բայց միեւնոյն ատեն ալ ազդուեցաւ տեղական լեզուէն, կրօնքէն, քաղաքակրթութենէն ու ճանքէն։ Ուրարտական լեզուն, որ աւելի թուրանական

բնոյթ ունի, բաւական մեծ ներգործութիւն ըրած է։ Ուրարտական շատ մը բառեր մտած են հայ լեզուին մէջ։ Մասնաւոր ուշադրութեան արժանի են կարգ մը յատուկ անուններ՝ անձերու, տեղերու, գետերու եայլն, որոնք հաւանաբար ուրարտական ծագում ունին։

ԵԲՐԱՅԱԿԱՆ ՏԱՐՐ.— Հրէական ազդեցութիւնը Քրիստոնէութեան հետ եկած ըլլալով՝ մեծ է հայոց մէջ. թէեւ նոյն իսկ Մեծն Տիգրանի օրով գերի վարուած հրեայ գաղութներ կային Հայաստանի մէջ։ Հին Կտակարանին ապաւորութիւնը խոր դրոշմ տուած է հայկական պատմութիւններու, դիցաբանական նկարագիրներու եւ վկայաբանութեանց։ Հայ լեզուին մէջ կան եբրայեցերէն բառեր, ինչպէս. ալէլուիա, ռաբբի, սադայէլ, յոբելեան եայլն եւ շատ մը յատուկ անուններ։

ՊԱՀԼԱՒ — ՊԱՐՍԿԱԿԱՆ ՏԱՐՐ.— Հայերը Հայաստան հաստատուելէն վերջ Դարեհի ու Կիւրոսի օրերէն ի վեր սերտ յարաբերութիւն ունեցած են իրանեան ցեղերու հետ։ Զենտերէն, հին ու նոր պարսկերէն եւ մանաւանդ պահլաւերէն շատ մը բառեր փոխ առած է հայ լեզուն։ Արշակունեաց շրջանը ամենէն հարուստ շրջանն է պահլաւական փոխառութեան տեսակէտով։ Այս փոխառութիւնները խիստ շատ են։ Միայն պարզ բառերու թիւը կը հասնի քանի մը հարիւրի։ Քանի մը օրինակներ. ասպար, բաղդ, դիւան, հրաման, դեւ, հրեշտակ, գոհար, դրօշակ, վատ, թշնամի, վիճակ, դժուար, դահիճ եւայլն։

ԱՍՈՐԱԿԱՆ ՏԱՐՐ.— Ասորիները դրացնական եւ կրօնակցական կապերով կապուած են հայերու հետ։ Գլխաւորաբար Քրիստոնէութեան հետ եկած է ասորական ազդեցութիւնը հայ լեզուին մէջ՝ տօնի քարոզիչներու, առաքեալներու եւ սրբազան գրութիւններու միջոցաւ։ Ասորական լեզուն ու կրթութիւնը տարածուած էր՝ արեւելեան ու հարաւային Հայաստանի մէջ։ Ասորերէնէ փոխառեալ բառերու թիւը քիչ է եւ հազիւ 136 հատ ստուգաբանուած է։ Ասորերէն են՝ խանութ, ծոմ, սատանայ, շուշան, կաթուայ, քնար, շուկայ, կաքաւ, կացին, ուրբաթ, շաբաթ եւայլն։

ՀԵԼԼԵՆԱԿԱՆ ՏԱՐՐ.— Յունական ազդեցութիւնը կը սկսի Մեծն Աղեքսանդրէն ու կը զօրանայ Մեծն Տիգրանի ատեն. և սակայն ամենէն աւելի Ե. դարու մէջ է որ Հելլենաբանութիւնը կը տարածուի ու հայ լեզուին մէջ մուտ կը գործէ՝ յունական ոգիով դաստիարակուած կարգ մը թարգմանիչներու կողմէ։ Յունարէնէ առնուած բառերը, թուով գրեթէ 300, առհասարակ եկեղեցական ու իմաստասիրական հանգամանք ունին, որոնք նախ գրականութեան և ապա լեզուի մէջ գործածուած են։ Ահաւասիկ. կաղանդ, եկեղեցի, եպիսկոպոս, կիրակի, կապար, պոռնիկ, կոնդակ, զեփիւռ, կայսր, մեքենայ, պանդոկ, ռոյկ և այլն։

ԱՐԱԲԱԿԱՆ ՏԱՐՐ.— Ինչպէս յայտնի է, արաբական ազդեցութիւնն սկսաւ Հայաստանի մէջ՝ Է. դարուն։ Մինչև ԺԱ. դար արաբներու հետ սերտ քաղաքական կապակցութիւն ունեցան հայերը։ Արաբական տարրը շատ տարածուած չէ հայ լեզուին մէջ, որովհետև ընդհանրապէս բժշկարաններու մէջ գործածուած գիտական բառերէ կազմուած է։ Զոր օրինակ. նոպայ, ռահան, մզկիթ, աճպարար, սնտուկ, մկրատ, սեպեղ և այլն։ Ասոնց թիւը հազիւ 50ի կը հասնի։

ԼԱՏԻՆԱԿԱՆ ՏԱՐՐ.— Ռուբինեանց շրջանէն սկըսաւ լատինական ազդեցութիւնը, երբ հայերն սկսան կըրօնական, քաղաքական և առևտրական յարաբերութիւններ ունենալ խաչակիրներուն և եւրոպական ու մասնաւորապէս լատին ազգերուն հետ։ Ունիթորները սկըսան գործել ԺԴ. դարուն և լատինական դրոշմ տուին ժամանակակից հայ լեզուին։ Շատ մը լատինական բառեր մուտ գտած են ունիթորական շրջանին մէջ, որ երկար ատեն տևեց։ Լատին բառեր են՝ վեղար, նօտար, պարոն, դուքս, մարաջախտ և այլն։

ԹՐՔԱԿԱՆ ՏԱՐՐ.— Օսմ. տիրապետութեան ամբողջ շրջանին մէջ, որ գրեթէ վեց դար տևեց, տաճկերէնը մեծ ազդեցութիւն գործեց հայ լեզուին վրայ՝ բառագիտական և համաձայնական կրկնակ տեսակէտ-

ներով։ Հայ լեզուի վերանորոգութենէն վերջ այս ողողումը բաւական սահմանափակուեցաւ, բայց ժողովուրդին խօսած լեզուին մէջ թուրքերէն բառերը կը մնան։ Այսուհանդերձ գրականութեան մէջ ալ հայացած շատ մը բառեր կան, ինչպէս՝ հէքեաթ, աշուղ, օճախ, խաբըր, զուղայ, թայլեղ, տարտղնել և այլն։

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՏԱՐՐ.— Լեզուի վերանորոգութեան և աշխարհիկ հայ լեզուի կազմակերպութեան շրջանին ֆրանսական լեզուի ազդեցութիւնը մուտ գործեց լեզուին մէջ լայնօրէն, մանաւանդ ֆրանս. կրթութիւն առնող երիտասարդներու միջոցաւ։ Արեւմտեան հայերէնի մէջ ֆրանսերէն ռճն է որ կը տիրէ։ Այս հանգամանքին նպաստած են ֆրանսերէնի տիեզերական լեզուի բնոյթը, հայ գաղթականները, ֆրանսական գոլէճները և այլն։ Ֆրանսերէն են՝ իսկալ. մեթոտ, ֆիզիքական, մուսիքական, քրոնիկ և այլն։

ԱՆԳԼԻԱԿԱՆ ՏԱՐՐ.— Միսիոնարութեան գործունէութենէն և հայ-բողոքականութեան հաստատութենէն վերջ անգլիերէն լեզուն հետզհետէ տարածուեցաւ հայոց մէջ՝ ամերիկեան գոլէճներու, միսիոնարներու և Ամերիկա կրթութիւն առնող գիտուններու միջոցաւ։ Այս հոսանքը զօրանալու վրայ է հայ լեզուին մէջ։ Անգլիերէնէ առնուած կարգ մը բառեր կան։ Օր. տիփլոմա, չէքըր, գօլէճ, ռինէրր, ճինէրր և այլն։

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԶԱՆԱԶԱՆ ՏԱՐՐԵՐ.— Ասոնցմէ դուրս կան նաեւ ռուսական և գերմանական լեզուներէ փոխառութիւններ՝ մանաւանդ ռուսահայերէնին մէջ. բայց զգալի աստիճանի հասած չեն տակաւին։ Այս զանազան լեզուներու ազդեցութեանց հետ կ'արժէ չմոռնալ նաեւ զանազան բառեր ալ, որոնք զանազան առիթներով մտած են մեր լեզուին մէջ։ Օր.

1. ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԵՏ.— Յակոբոս, Մարիամ, Գրիգոր, Գէորգ, Մարկոս, Կիրակոս, Ագապի և այլն

2. ԴԵՐՁԱԿՈՒԹԵԱՆ ՀԵՏ.— Մանթօ, փալթօ, փոլքա, փէլըրին, ճաքէթ, ժիլէ, փաւկարօ, փարամէնթօ, ֆիլէթօ և այլն

3. ԿՕՇԿԱԿԱՐՈՒԹԵԱՆ ՀԵՏ.— Բամփա, փիյանթա, մանթեկա, գոնթօփեոյ, խաֆիֆանիա, քավէթա և այլն

4. ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ.— Փարթի, պալիա, եարտա, մէթրօ, ինչէս, քիլօ, չէնթ, ծիրօ, գօնէսըմանթօ, սաթէն, վըլիւր, վաթէր, շանժան և այլն։

5. ԱՊԱՀՈՎԱԳԻՐ. ԳՈՐԾԵՐՈՒ ՀԵՏ.— Սիկուրթա, ֆիրմ, փօլիս, ավանս, փրօփօզիսիօն, աժէնդ և այլն։

6. ՀԻՆ ՈՒ ՆՈՐ ԱՌԱՔԵԼՈՒԹԵԱՆՑ ՀԵՏ.— Պրօպականտա, ունիթոր, պարօն, միսիոնար, սթէյշըն, բրօֆէսոր և այլն։

7. ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԶԱՆԱԶԱՆ ՃԻՒՂԵՐՈՒ ՀԵՏ.— Ասոնք հաշուել կարելի չէ։ Ամէն ոք գիտէ թէ ի՛նչ ահագին է թիւն այնպիսի բառերու, որոնք այլեւայլ գիտական ճիւղերու մէջ կը գործածուին՝ առ ի չգոյէ հայերէն համապատասխան բառերու։

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ.—

Կ'արժէ կարճ կերպով նկատողութեան առնել թէ ի՛նչ է հայ լեզուին նկարագիրը, և ի՛նչ որոշ առաւելութիւններ կամ գնահատելի ի՛նչ յատկութիւններ ցոյց կու տայ անիկա, որպէսզի կարելի ըլլայ իր ապագային մասին ենթադրութիւն մը ընել։ Այս մասին բարեբաղդաբար շատ նպաստաւոր պատասխան կու տայ մեզ՝ հայ լեզուին պատմութեան ուսումնասիրութիւնը։ Ամբողջ տասնըհինգ դարերէ ի վեր գրականօրէն և անկից առաջ ալ բանաւոր կերպով ապրող այս լեզուն՝ ցոյց տուած է մեծ ճկունութիւն և ընդունակութիւն, որով յարմարած է ամէն տեսակ գրական սեռերու և գաղափարներու արտայայտութեան։ Ուր որ պէտքը զինքը ասպարէզ կանչած է, անիկա առանց տկարանալու գոհացուցած է։ Եւ արդէն հայ լեզուն ունի այնպիսի յատկանիշներ, որոնք իրեն կու տան արժանաւորութիւնը՝ քաղաքակրթուած ցեղի մը քաղաքակրթութեան հետ քալող լեզուի կոչումին։ Թուենք իր գլխաւոր յատկութիւնները։

1. Հայ լեզուն ունի նախնական բառերու գանձ մը։

2. Իր բառագիտական կազմակերպութիւնը վերջին ծայր նուրբ է, և ամէն տեսակ գաղափարներ իրենց իմաստին համապատասխան եղանակաւ հնչական արտայայտութեան՝ շատ յարմար ու ընդունակ է։

3. Հայ լեզուն ունի մասնիկներու առատութիւն և յարմարութիւն։

4. Ճարտար է իր առոգանութիւնը.

5. Ունի գաւառաբարբառներու մեծ գանձ մը, զոր կարելի է շահագործել։

6. Հայ լեզուն, իր կազմին մէջ ունի աղուոր հնչարանութիւն մը, որ զինքը անուշ լեզուներու կարգը կրնայ դասել:

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՄՇԱԿՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ·—

Լեզուն ազգի մը քաղաքակրթութեան մեծագոյն ազդակն է։ Հայ Քաղաքակրթութեան ընթացքին մէ՛ջ մանաւանդ՝ մե՛ծ է եղած հայ լեզուին դերը․ Ան էր որ բաղդաղուրկ, հալածական, թափառական, արիւնոտած ու վիրաւոր հայութիւնը կապեց ազգային կապով մը և ազգային վերանորոգութիւնը առաջացուց։ Ժամանակակից դարերու մէջ այլեւս անհրաժեշտ պէտք մ'է լեզուներու մշակութիւնը՝ բոլոր մշակուած ժողովուրդներու համար։ Մեր Աշխարհաբար մանաւանդ, որ կը գտնուի իր երիտասարդութեան առոյգ օրերուն մէջ, շա՛տ աւելի պէտք ունի լուրջ հոգածութեան ու մշակման։ Այդ մասին պէտք է որոշ ու գծագրուած ուղղութիւն։ Ստորեւ կը խտացնենք քանի մը գլխաւոր սկզբունքներ՝ իբր հայ լեզուի մշակման պայմաններ.

1. Խնամոտ հոգածութեան առարկայ դարձնել առօրեայ մամուլը, որպէսզի անիկա հանդիսանայ լեզուին մեծագոյն առաջնորդողը։

2. Պէտք է ամենէն զգուշաւոր ջանքերը կեդրոնացնել դպրոցներու վրայ, որպէսզի մեծ խնամքով աւանդուին հայ լեզուի և գրականութեան դասերը, և մատաղ ու թարմ միտքեր՝ ոչ միայն ջերմ սիրով փարին իրենց մայրենի լեզուին, այլև՝ իրենց մատաղ հասակէն իսկ օժտուին լեզուական առողջ սկզբունքներով։

3. Առօրեայ մամուլին առաջխաղացութենէն չգոհանալով ոյժ տալ պարբերական հրատարակութիւններու։

4. Քաջալերել մատենագրական գրականութիւնը և գիրքի ձեւով երկարաշունչ հեղինակութիւններու արտադրութիւնով ճոխացնել հայ լեզուի մատենադարանը։

5. Ուսումնասիրութեան ոգին արծարծել։

6. Օտար հռչակերտներու թարգմանութիւնով լեզուն ընդունակ դարձնել արտայայտելու մեծ մտքերու ազնուութեանց արդիւնքն եղող հսկայ գործեր։

7. Գիրքերով, յօդուածներով և ուսումնասիրութիւններով հետզհետէ լեզուն կարող ընել ամեն տեսակ գաղափար հեշտիւ արտայայտելու։

8. *Լիակատար «Բառարան»ներու միջոցաւ բառերուն և ոճերուն ճշգրիտ սահմանները պահպանելով լեզուն քմահաճոյքներէ ազատել, և գոհացուցիչ «Քերականութիւն»ներու միջոցաւ ալ՝ լեզուին կանոնները անվթար պահել։*

9. *Ուսումնասիրել հայոց հին լեզուն ու մատենագրութիւնը։*

10. *Ուսումնասիրել օտար գրականութիւնները։*

11. *Մասնաւոր հոգ տանիլ Հայ Բեմին, Թատրոնին և Գեղարուեստին, որոնք լեզուի մշակութեան գործին լաւագոյն ազդակները կրնան ըլլալ։*

12. *Լրացնել ու հարստացնել անոր բառագանձը՝ օգտուելով գրաբարի ու գաւառականներու զուտ հայեցի բառերէն, ասութիւններէն ու ոճերէն, իբրև հայ ժողովուրդին իսկատիպ արտայայտութիւնը։*

13. *Մրցումներու միջոցաւ գրականութիւնն ուժեղացնել և հեղինակները քաջալերել լաւագոյն երկերու համար։*

14. *Հրատարակչականներու հաստատութեամբ փոշիներէ ազատել նիւթապէս անկարող հեղինակներու գործերը։*

15. *Ամեն կարելի միջոցներով միօրինակութիւն և կանոնաւորութիւն տալ մեր գրական լեզուին։*

16, *Լեզուին մէջ ներմուծել միօրինակեալ տառադարձութիւն։*

17. *Բնականութիւն տալ լեզուին, զգուշանալով ճամարտակութիւններէ և պարզագոյն ու գեղեցիկ ձևին վերածել զայն։*

***Յարգա՛նք Հայ լեզուի ժիր մշակներուն։***



# ՀԱՅ ԳԻՐԸ



## ԳՐԻ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ



*Նշանագրերու կարեւորութիւնը.— Գրի ծագումը.— Գրի զարգացումն ու տեսակները.— Տառ կամ հնչական նշանագրեր։*

**ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ.—** Առանց գիրի՝ գրականութիւն չկրնար ըմբռնուիլ որեւէ ցեղի համար։ Գիրը այն գերազանց միջոցն է, որով գաղափարներ ու խորհուրդներ կարելի կ՚ըլլայ արձանագրել թուղթի կամ ուրիշ առարկաներու վրայ։ Եթէ գիրը գոյութիւն չունենար, մարդկային լեզուն՝ քաղաքակրթութեան տեսակէտով՝ իր բարձրագոյն դերը լիապէս կատարելու պիտի տկարանար։

**ԳՐԻ ԾԱԳՈՒՄԸ.—** Գրի ծագման ժամանակը ճշդել կարելի չէ։ Հազարաւոր տարիներէ ի վեր գրի զանազան տեսակներ գործածուած են։ Կը կարծուի թէ մարդ նախ մտածեց գծագրել այն առարկան կամ կենդանին, զոր նշանացի կերպով ներկայացնել ուզեց։ Յետոյ մարդկութիւնը ժամանակի ընթացքին հետ նորանոր նշաններ կամ ձեւեր յօրինեց, մինչեւ որ վերջապէս հասաւ հնչական նշանագրութեան։

**ԳՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ՏԵՍԱԿՆԵՐԸ.—** Գրի առաջին տեսակը Պատկերագրութիւնն է, որ կը կայանար ներկայացուելիք մարմինին պատկերին ուղղակի գծագրութեան մէջ՝ զայն ցոյց տալու համար։ Զոր օրինակ՝ մարդ, տուն,

ձի, լեռ և այլն ներկայացնելու համար պէտք էր զանոնք գծել։ Բայց բացատրութեան այս եղանակը շատ թերի էր, որովհետև վերացական գաղափարները թանձրացեալ ձևով ներկայացնելու անկարելիութիւն կար։ Օրինակի համար. ի՞նչպէս ներկայացնել մարդուն քալելը, հովը, գիտութիւնը, անցեալը, ուրախութիւն և այլն։ Ահա ասոր համար Գաղափարագրութիւնն հնարուեցաւ, որով քալելու վրայ եղող մարդու մը պատկերը կը նշանակէր շարժում, ճամբան՝ անցեալ, աւազասար՝ հով, բաց աչքը՝ գիտութիւն, կշիռ՝ արդարութիւն և այլն։ Ապա գործածուեցաւ Վանկագրութիւնը, որ երկար ատեն իր գոյութիւնը պահեց, մինչև որ անոր ալ բազմադիմի դժուարութիւններն ըմբռնած՝ մարդիկ յաջողեցան վերջապէս ուշադրութեամբ ուսումնասիրել լեզուական հընչումները և հնարել Տառագրութիւնն կամ Հնչական Նշանագրութիւնը։ Լեզուի մը ձայնանիշներուն ամբողջութիւնը կը կոչուի Այբուբեն։

ՀՆՉԱԿԱՆ ՆՇԱՆԱԳՐԵՐ.— Տառերը կամ հնչական նշանագրերը լեզուի մը մէջ գտնուող հնչումներուն իւրաքանչիւրն ու ամբողջութիւնը ցոյց կուտան։ Այլ և այլ ազգեր ունին զանազան թիւերով այբուբեններ, համաձայն իրենց լեզուին մէջ գտնուող հնչումներու թիւին։ Երբեմն ազգերու նշանագրերը իրարու կը նմանին իրենց ձևերով։ Շատ ազգեր ձախէն աջ կը գրեն (հայերէն, անգլիերէն, ֆրանսերէն), բայց կան ազգեր ալ, որոնք աջէն ձախ (թուրքերէն, արաբերէն) և կամ վերէն վար (չինարէն, ճապոներէն) կը գրեն։

Հնչական նշանագրերու գիւտը մեծ առաջդիմութիւն պարգևեց մարդկային իմացական կեանքին, որովհետև դիւրացուց գրի ուսումը և շատ տարածեց զայն։



# ՀԱՅ ԳՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ



Հայաստանի մէջ հին նշանագրեր.— Օտար այբուբենի գործածութիւն.— Բնատոհմիկ հայ տառերու պէտքը.— Գրի գիւտին պատմութիւնը.— Մեսրոպէ առաջ հայ գիր.— Հայ գիրեր ու ասորիները.— Ի՞նչ էին Դանիէլեան գրերը.— Դանիէլ գի՞ր տուաւ թէ գիրք.— Ամբողջացո՞ւմ թէ ըստեղծագործում.— Հին գիրերուն ձեւը.— Հայկական այբուբենը.— Մեսրոպեան տառերու փոփոխութիւնը:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՀԻՆ ՆՇԱՆԱԳՐԵՐ.— Հին քաղաքակրթութեան առեն, երբ ասորեստանեան տիրապետութիւնը չատ լայն ծաւալ ունէր, Հայաստան մէկն էր անոր ենթարկուած երկիրներէն։ Այդ շրջանէն, ինչպէս նաեւ ուրարտական շրջանէն մնացած կան Հայաստանի մէջ տակաւին մինչեւ այսօր սեպագիր քանդակներ, որոնք ցոյց կուտան ասորական կամ ուրարտական բեւեռագրերու գործածութիւնը։ Պարսից տիրապետութեան առեն զենտական եւ կամ բակտրեան գրերը գործածուած են հայոց մէջ բաւական երկար առեն, մինչեւ որ քրիստոնէութեան եւ հելլենականութեան հետ ասորերէն եւ յունարէն լեզուները տարածուած են ու անոնց այբուբենը գործածուած է ժամանակ մը, մինչեւ հայ գիրերու գիւտը։

ՕՏԱՐ ԱՅԲՈՒԲԵՆԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ.— Այս երեւոյթին վրայ հիմնուած է որ ոմանք պնդեցին թէ Գր. Լուսաւորչի Յաճախապատումը, Ագաթանգեղոսի Պատմութիւնը, Փաւստոսի Բիւզանդարանը եւ Դ. դարու քանի մը մատենագիրներու գործերը՝ հայերէն լեզուով բայց յունարէն կամ ասորերէն գիրերով գրուած են։ Ո՛չ քանդակներու, արձանագրութիւններու եւ ո՛չ ալ մատենագրութեան միջոցաւ որեւէ բան հասած է մեր ձեռքը՝ այս բանը հաստատող։

**ԲՆԱՏՈՀՄԻԿ ՀԱՅ ՏԱՌԵՐՈՒ ՊԷՏՔԸ**.— Եթէ նոյն իսկ օտար գիրեր գործածուած ըլլային հայ լեզուին մէջ, յայտնի է որ անոնք անկարող պիտի ըլլային ամբողջովին ներկայացնել հայկական հնչումները. ուստի այս օտարոտի և անյարմար գիրերու գործածութենէն և այդ շրջանին մէջ ազգային գոյութեան սպառնացող ձուլման մեծ վտանգէն ազատելու ու ազգային ինքնուրոյն հեղինակութիւն մը ստեղծելու համար՝ բնատոհմիկ հայ գիրերու պէտքը կը շեշտուէր:

**ԳԻՐԻ ԳԻՒՏԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ**.— Կորիւն, Փարպեցի և Խորենացի գրեթէ միևնոյն կերպով կը պատմեն հայ գիրերու գիւտը: Մաշտոց Մեսրոպ վարդապետ Սահակ կաթողիկոսին կը դիմէ հայ գիրերու համար: Խորհրդակցութիւն կը կատարուի Սահակի, Մեսրոպի, Վռամշապուհ թագաւորին և ուրիշ կարևոր անձերու ներկայութեան: Հոն կը յայտնէ Վռամշապուհ թէ Հաբել անուն ասորի քահանայէ մը լսած է որ Դանիէլ ասորի եպիսկոպոսին քով հայկական գիրեր կը գտնուին: Անմիջապէս Վահրիճ անուն մէկը կը ղրկուի, որ նոյն գիրերուն ձևերն ու գործածութիւնը սորվելով կը դառնայ: Փորձը ցոյց կուտայ թէ այդ գիրերն անբաւական են մեր լեզուի հնչումները ներկայացնելու, ուստի Մեսրոպ անձամբ կ'երթայ Դանիէլի քով, Միջագետք. բայց անօգուտ: Ապա կը դիմէ Եդեսիոյ դիւանին վերակացու Պղատոնին: Մեսրոպ Պղատոնէն և տեղւոյն Բաբիլաս եպիսկոպոսէն յանձնարարականներ առնելով կը մեկնի Փիւնիկաստան, ուր կար Եպիփանոս վարդապետ: Դժբաղդաբար Մեսրոպ զայն մեռած գտնելով անոր համբաւաւոր աշակերտին Հռոփանոսին հետ կը խորհրդակցի ընդերկար: Վերջապէս մարդկային որևէ հնարագիտութենէ յուսահատ, օր մը տեսիլքէ մը յափշտակուած՝ կը տեսնէ թաթ մը, որ նշանագրեր կը գրէ: Մեսրոպ կ'արթննայ իսկոյն և գիրերուն ձևը միտքը պահած ըլլալով, անմիջապէս կ'երթայ Հռոփանոսին քով, որպէսզի վայելուչ ու գեղեցիկ ձևեր տան անոնց:

ՀՐԱՇՔԻ ԱԽԱՆԴՈՒԹԻՒՆԸ.— Հինաւուրց ջերմեռանդութիւնը հայ գիրերու գիւտը հրաշք համարեց: Սակայն անիկա ուրիշ բան չէր, բայց եթէ Մեսրոպի քրտնաջան աշխատութիւններու և մտահոգ վիճակին հոգեբանական արդիւնքը: Մեծագոյն հրաշքը Մեսրոպի պէս գիւցազնի մը ծնունդն էր:

ՈՒՐՏԵՂ ԳՏՆՈՒԵՑԱՆ ՀԱՅ ԳԻՐԵՐԸ.— Մեր մատենագիրները որոշ բան մը չեն ըսեր հայ գիրերու գիւտին ճշգրիտ ո՛ւր տեղի ունենալուն մասին: Խորենացին Սամոս, Կորիւն՝ Սամուսատ և Վարդան պատմիչ՝ Բալու կը յիշատակեն: Բնաւ հաւանական չնկատուիր Սամոս կղզին: Ընդունուած կարծիք մը չէ նաև Բալուն: Առհասարակ Սամուսատը կը նկատուի այն վայրը, ուր Մեսրոպ Հռուփանոսի գործակցութեամբ ամբողջացուց հայկական այբուբենը: Սամոսատ կամ Սամուսատա կը գտնուէր Միջագետքի մէջ, Եդեսիայէն քիչ հեռու: Անոր տեղ հիմա կայ Սամսատ կամ Շամշատ գիւղը:

ԳՐԻ ԳԻՒՏԻՆ ԹՈՒԱԿԱՆԸ.— Հայ գիրերու գիւտին ճիշդ ժամանակը որոշելն ալ դժուարին է, վասնզի մատենագիրներ որոշ թուական մը չեն յիշատակեր, որով և հաստատուն կռուան մը չեն տար բանասէրին: Այդ մասին յայտնուած կարծիքները կը տարբերին: Ընդհանուր կերպով ընդունուած թուականը՝ 403-406ն է, մանաւանդ 404ը: Վերջերս Գալուստ Տ. Մկրտիչեան 412էն կանուխ չենթադրեց հայ գիրերու կատարելագործութիւնը, որուն գիւտ անունը տուած են մինչև հիմա:

ՄԵՍՐՈՊԷ ԱՌԱՋ ՀԱՅ ԳԻՐ.— Կարգ մը կարևոր բանասէրներ կ'ընդունին թէ հայերը Մեսրոպէ առաջ գիր ունեցած են, Դանիէլ ասորի եպիսկոպոսին քով գտնուած նշանագրերը «վաղնջական հայ գիրեր» էին և թէ Մեսրոպ այս գիրերը կատարելագործեց ու ո՛չ թէ ամբողջ հայերէն այբուբենը նոր ի նորոյ յօրինեց: Մեր հին մատենագիրներն ալ ակնարկութիւններ ունին այս մասին: Հաւանաբար հեթանոսական շրջանի գրեր էին ատոնք, որոնք Քրիստոնէութեան տարածուելէն վերջ հալածուեցան կամ [illegible] լքուեցան:

**ՀԱՅ ԳԻՐԵՐ ՈՒ ԱՍՈՐԻՆԵՐԸ.**— Ինչո՞ւ հայ գրեր ասորիի մը քով կը գտնուին։ Դանիէլ եպիսկոպոս կը թուի Մեսրոպի բերուած գրերուն աւանդապահը ըլլալ և ո՛չ թէ յօրինիչը։ Արդէն Քրիստոնէութենէն վերջ հայոց և ասորիներու յարաբերութիւնը ա՛յնչափ սերտ էր որ երբեք զարմանալի չկարծուիր որ հայերէն գիրեր ասորիի մը քով կը գտնուին, մանաւանդ գիտական անձնաւորութեան մը քով, որպիսին էր Դանիէլ։

**ԻՆՉ ԷԻՆ ԴԱՆԻԷԼԵԱՆ ԳԻՐԵՐԸ.**— Մատենագիրներու վկայութենէն իսկ կը տեսնենք որ Դանիէլեան գիրերը անբաւական էին ներկայացնելու հայ լեզուին ամբողջական հնչումները։ Այս գիրերուն թիւը ոմանք 17, 22էն 24, ոմանք ալ 29 կ՚ընդունին։ Ամենէն ճշմարտանմանը կը նկատեն 22 թիւը, համապատասխանելու համար զայն սեմական վաղեմի այբուբենին, որմէ ծագած կը սեպեն հայ գրերն ալ։ Հաւանական է որ 7 ձայնաւորներն ու հայ լեզուին յատուկ զանազանիչ կրկնակ գրերն ըլլան Մեսրոպի աւելցուցածները։ Անոնց ծագումը հայկական, մեսրոպեան, զենտա-պարսկական և յունական ենթադրողներ ալ կան։

**ԳԻ՞Ր ԹԷ ԳԻՐՔ.**— Դանիէլ ապահովաբար գրերու ցանկ մ՚էր որ տուաւ և ո՛չ թէ անոնցմով շարադրուած գիրք մը։ Եթէ գիրք մը ըլլար, այն ատեն Մեսրոպ պէտք չունէր այդչափ տեղեր շրջան ընելու և մատենադարաններ պրպտելու։ Անշուշտ հայկական այդ հնաւուրց գրերով գրուած հատորներ ալ գոյութիւն ունէին հայոց հեթանոսական սրբավայրերուն մէջ, բայց հարիւր տարուան քրիստոնէական գործօն ժամանակամիջոցի մը մէջ հայերը մոռցած էին անցեալի այդ յիշատակարանները, որոնք փճացած էին Քրիստոնէութեան առջև։

**ՄԵՍՐՈՊ ՍՏԵՂԾԵ՞Ց ԹԷ ԱՄԲՈՂՋԱՑՈՒՑ.**— Մինչև հիմա ըսուածներէն դիւրին պիտի ըլլայ հետևցնել ուրեմն որ Մեսրոպ հայկական ամբողջ այբուբենը չի յօրինեց, այլ՝ դանիէլեան-հայկական հին նշանագրերու թերութիւնն ամբողջացուց և զանոնք կատարելագործեց։

ՀԻՆ ԳԻՐԵՐՈՒՆ ՁԵՒԸ.— Վաղնջական հայ նշանագրերու թերութիւնները լեցնելու ժամանակ Մեսրոպ հարկաւ կատարեալ եղողներուն ձեւերը փոխելու պէտք չունէր, քանի որ կրնային բացատրել հայկական հնչումը։ Իբրեւ հնութիւններ ալ, Մեսրոպի համար դիւրին չէր ձեռնմխելիութիւն գործել։

ՀԱՅԿԱԿԱՆ ԱՅԲՈՒԲԵՆԸ.— Այսպէս ահաւասիկ շնորհիւ Մեսրոպի և իր գործակիցներու ջանքերուն, հայ ժողովուրդն օժտուեցաւ թանկագին նուէրով մը, որ ազգին գոյութեան ամուր մէկ սիւնն էր,— Հայ Գիրը։ Հայկական այբուբենը բաղկացած է 36 տառերէ, որոնց վրայ ի վերջոյ աւելցած են Ու՝ Ե-ի ու Ւ-ի միացումով, Օ և Ֆ՝ օտար լեզուներու միջոցաւ։ Հայկական նշանագրերը հետեւեալ դասակարգերուն կը բաժնուին.

1. Ձայնաւոր գրեր.— ա, ե, է, ը, ի, ո, ւ, օ.

2. Բաղաձայն գրեր.— բ, գ, դ, զ, թ, ժ, լ, խ, ծ, կ, հ, ձ, ղ, ճ, մ, յ, ն, շ, չ, պ, ջ, ռ, ս, վ, տ, ր, ց, ւ, փ, ք, ֆ.

Բաղաձայններուն մէջ կան ձայներու երեք աստիճաններ, որոնց համեմատ երեք խումբերու կրնան բաժնուիլ, ինչպէս.

1. Նուրբ տառեր.— պ, կ, տ, ծ, ճ, ժ, զ.
2. Միջակ » բ, գ, դ, ձ, ջ.
3. Թաւ » փ, ք, թ, ց, չ, շ, ս.

Նայ կը կոչուին լ, ղ, մ, ն, ր եւ ռ բաղաձայնները։

Բաղաձայնները կարելի է բաժնել նաև շրթնական (բ, պ, փ, վ, ւ, ֆ, մ), ատամնային (դ, տ, թ), ատամնային-սուլական (ձ, ծ, ց, զ, ս), կոկորդային (գ, կ, ք, ղ, խ, հ, յ), քմային-շշական (ջ, ճ, չ, ժ, շ), և լեզուային (ր, ռ, լ, ն) խումբերու։

ՄԵՍՐՈՊԵԱՆ ՏԱՌԵՐՈՒ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆԸ.— Մեսրոպեան նշանագրերը այլեւայլ ժամանակներու մէջ ձեւերու զանազան փոփոխութիւններ կրած են։ Տպագրութիւնն է որ հաստատուն և անփոփոխ ձեւ տուած է այլեւս հայ գրերուն։ Անցեալի այդ փոփոխութիւնները կ'ամփոփենք ստորև։

1. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԵՐԿԱԹԱԳԻՐ, որ տեւած է մինչեւ Թ. դար և կը համապատասխանէ մեր հիմակուան գլխագրին.

2. ՄԻՋԻՆ ԵՐԿԱԹԱԳԻՐ, որ մինչեւ ԺԲ. դար տեւեց.

3. ԲՈԼՈՐԱԳԻՐ. մեր այժմեան տպագրական բոլորագրին նման, որ տեւեց մինչեւ ԺԴ.—ԺԵ. դար։

4. ՆՕՏՐԱԳԻՐ, որ տեւած է մինչեւ ԺԹ. դար, և կը համապատասխանէ մեր այժմեան տպագրական նօտր գրին։

5. ՇԵՂԱԳԻՐ, որ մեր հիմակուան ձեռագիրն է։ Սա ունի իր մանուր գլխագրի ձեւերն ալ, երկաթագրերէն եղանակաւորուած։

# ՀԱՅ ԳՐՉԱԳՐԵՐ

*Գրչագրերու օգտակարութիւնը.— Հին գրչագրեր.— Մագաղաթ եւ թուղթ.— Հայ արուեստին պատմութիւնն ու ձեռագրերը.— Հայ գրչագրերու աւանդապահները:*

ԳՐՉԱԳՐԵՐՈՒ ՕԳՏԱԿԱՐՈՒԹԻՒՆԸ.— Գրչագիր կամ Ձեռագիր կը կոչուին այն հնադարեան մատեանները, որոնք միմիայն օրինակութեան միջոցաւ իրենց գոյութեան շարունակութիւնը պահպանած են: Գրչագրերը մեր աղքատ բայց թանկագին ազգային մատենադարանին հատորներն են, ժառանգ մնացած՝ անցեալ դարերու մէջ ապրող միտքի մարդոցմէ: Երկար ատեն, մինչեւ տպագրութեան արուեստին հայոց մէջ տարածուիլը, անո՛նք պահպանեցին մեր իմացական գանձը և իրենց էջերովը մեզ տուին՝ հայ պատմութիւնը, հայ իմացականութիւնը և հայ կեա՛նքը մէկ խօսքով: Տպագրութի՛ւնն էր որ փրկեց զանոնք կորուստէ: Գրչագրերու մեծ մասը պահպանուած է կը կարծուի. բայց ժամանակն ու դէպքերը անտարակոյս շատ մը գրչագրեր ոչնչացուցած են: Թանկարժէք են մանաւանդ գրչագրերու յիշատակարանները, որոնք յաճախ պատմական շատ մը խնդիրներ կը լուսաբանեն:

ՀՆԱԳՈՅՆ ԳՐՉԱԳՐԵՐ.— Մինչեւ հիմա ձեռք բերուած գրչագրերու հնագոյնն է Լազարեան Ճեմարանի Աւետարանը, որ 887 թուականը կը կրէ, գրուած է մեսրոպեան խոշոր երկաթագրերով, և որ լուսատիպ օրինակութեամբ հրատարակուեցաւ վերջերս: Մ. Յովհաննէսեան կը հաւաստէ որ Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքը գտնուած գրչագիրը բաղդատմամբ առաջինին 285 տարուան հնութիւն ունի, գրուած՝ մագաղաթի վրայ, երկաթագիր, հայոց ԾԱ. թուականին: Մեզի ծանօթ գրչ-

չագրերը Ը. և Թ. դարէն անդին չեն կրնար անցնիլ ուրեմն. և եթէ երբեմն երբեմն լսենք աւելի հին գրչագրերու մասին, ստուգութեան կը կարօտին և աւելի յարգ տալու միտքով է որ հին ժամանակներու կը վերագրուին։ Վերջին և աւելի մերձաւոր դարերու մէջ գրուած ձեռագրերը աւելի կիլիկեան շրջանի ժառանգութիւններ են։ Ձեռագիրներու յարգը իրենց հնութեան և պարունակութեան համեմատ է։

ՄԱԳԱՂԱԹ ԵՒ ԹՈՒՂԹ.— Նախապէս մարդիկ կը գրէին քարի, թրծուն աղիւսի, փղոսկրի և փայտի վրայ։ Հին գրչագրեր սկսան ապա գրուիլ մագաղաթի վրայ։ Մագաղաթը կը պատրաստուէր մատղաշ գառի, ուլի կամ այլ կենդանիներու մորթերէն՝ ողորկ ու փայլուն։ ԺԱ. և ԺԲ. դարերէն սկսած է բամպակէ թուղթին գործածութիւնը մեր մէջ։ Գրչագրի մը հնութեան առաջին նշանն ուրեմն անոր նիւթն է։ Մագաղաթը հնութեան նշան է, պայմանաւ որ արդէն անգամ մը քերթուած և երկրորդ անգամ գրուած չըլլայ։ Այդպիսին կը կոչուի կրկնագիր։ Շատ մը հին գրչագրեր ալ այս շահագործութեամբ ջնջուած են։

ԳՐՉԱԳՐԵՐԸ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏՈՎ.— Հայ գրչագրերը մասնաւոր նշանակութեան արժանի են հայ արուեստի պատմութեան տեսակէտով։ Անոնց մէջ գործածուած զարդերը և գոյները կրնան գաղափար մը տալ՝ իրենց ժամանակին նկարչութեան ու ճաշակին մասին։

ՀԱՅ ԳՐՉԱԳՐԵՐՈՒ ԱՒԱՆԴԱՊԱՀՆԵՐԸ.— Հայ գրչագրերու ամենէն անխոնջ ուսումնասիրողն է Հ. Յ. Տաշեան, Վիեննական Մխիթարեան հայր, որ այդ նիւթին մէջ բացարձակ հեղինակութիւն է։ Այժմ հայ գրչագրեր պահուած են զանազան ազգ. կամ օտար թանգարաններու մէջ՝ Էջմիածին, Երուսաղէմ, Վենետիկ, Վիէննա, Բարիզ, Լոնտոն, Հռոմ և այլն։ Հայ վանքերու և եկեղեցիներու մէջ ալ բաւական թուով գրչագրեր կան։



# ՀԱՅ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆԸ

## ԲԱՆԱՒՈՐ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

*Ընդհանուր տեսութիւն.— Անանուանի շրջան եւ հայրենի աւանդութիւններ.— Գողթան երգեր.— Հեթանոսական երգեր.— Քրիստոնէական շրջան.— Միջնադարեան երգիչներ.— Ժողովրդական նոր բանահիւսութիւնը.— Նորագոյն եւ ժամանակակից շրջան:*

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—

*Աչքի առջեւ ունենալով հայ ցեղին հին ու նոր բանաւոր բանահիւսութեան արտայայտութիւններու փըշուրները, դժուար չպիտի ըլլայ անշուշտ վճռել թէ հայ լեզուն հարուստ է ժողովրդական բանագործութեան տեսակէտով, եւ թէ հայկական միջավայրն ու կեանքը ընդունակ եղած են ստեղծելու հարազատ եւ գեղեցիկ բանահիւսութիւն մը ժողովրդական, որ ունի հիանալի կտորներ:*

*Բանաստեղծութիւնը, իբրեւ բնութեան ձայնն ու խօսքը, դպրութեան բոլոր սեռերուն մէջ ամենէն հինն է, որ կը ներշնչուի բնութենէն: Ուստի անշուշտ զարմանալի չէ որ գեղեցիկ բնական միջավայրի մը մէջ ապրող հայ ժողովուրդը անբաժին չմնար միջավայրին այդ հզօր ներգործութենէն: Իր գոյութեան բոլոր օրերուն մէջ հայ կեանքը համակ բանաստեղծութիւն մը եղած է կարծես՝ մերթ դիւցազներգական ու խրոխտ, մերթ սրբազան ու աղօթաւոր, մերթ քնարերգական ու դիւթիչ, ու մերթ ալ, թերեւս յաճախ՝ լացող ու սարսռուն: Հայուն կեանքը, իր բոլոր դառն ու փոթորկալից ելեւէջներուն մէջ չորանին եղած է այլազան դիմայեղումներու, որոնք ագ-*

դրած են իր ճակատագրին վրայ, և անխուսափելիօրէն տակաւ բերած՝ ըմբռնումները, գաղափարները, զգացումները և խորհուրդները փոփոխական պատկերներ. անոնց վրայ դրոշմելով կնիքը ժամանակակից հոգեբանութեան: Ու հայ բանաստեղծութիւնն ալ, իբրև հարազատ երգիչն այդ կեանքին տառապանքներուն ու ցընծութիւններուն, սասանումներուն ու անկումներուն, շատ պատկերոտ և ճշգրիտ համապատասխանողն եղած է հայ կեանքին՝ անոր դիւցազնական, հեթանոսական, քրիստոնէական, տագնապալից կամ մարտական շրջաններուն մէջ:

Միայն բանաստեղծութեան մէջ չէ՛ որ հայ ժողովուրդին ստեղծագործող տաղանդը փայլած է սակայն: Ընդհանուր առմամբ բանահիւսո՛ղ ժողովուրդ մ'է եղած հայ ցեղը: Ան՝ կեանքի բոլոր հանգամանքներուն մէջ բա՛ն մը ունեցած է ըսելիք. անոր շրթունքին վրայ լեզուն ապրած է իր բոլոր առօրագեղիքներով: Մանուկին օրօրոցին առջե՛ւ ըլլայ թէ մեռած սիրելիի մը դագաղին վրայ, աշխատանքի ընթացքին մէջ և կամ տաքուկ նահապետական թոնիրին շուրջը, ուրախութեան և կամ տրտմութեան օրերու մէջ՝ միշտ բա՛ն մը դրած է իր հոգիէն՝ իր լեզուին ու բանահիւսութեան վրայ: Շատ քիչ աշխատութիւն տրուած է սակայն՝ հաւաքելու համար ժողովրդային բանահիւսական արտադրութիւններուն ամբողջութիւնը: Մինչև հիմա եղած փորձերն իսկ սակայն բաւական են ապացուցանելու թէ մեծ գանձ կայ ժողովրդային բանահիւսութեան մէջ: Դեռ ևս շատ բաներ կան հաւաքելիք ժողովուրդին բերնէն՝ իբրև բանահիւսական հարստութիւններ: Եթէ այդ աշխատութիւնը նշանակելի համեմատութեան հասնի, ահագին լոյս կրնայ սփռուիլ հայ բանահիւսութեան պատմութեան վրայ: Այդ ուսումնասիրութիւնը անհրաժեշտութիւն մ'է:

Հայ բանաւոր բանահիւսութեան մէջ մինչև հիմա յայտնուած նշխարները կը վերաբերին կարգ մը ճիւղերու, որոնք այլեւայլ շրջաններու մէջ ծնունդ առած են, և ս-

րանք կարելի է իրենց ընդհանուր գիծերուն մէջ հետեւեալ կերպով դասաւորել։

1. ՎԷՊ ԿԱՄ ԱՌԱՍՊԵԼ.— Սա կը կոչուի նաեւ Վիպասանութիւն կամ Վիպագործութիւն, որուն մէջ ճշմարտութիւնն ու երեւակայութիւնը իրարու խառնուած կը ներկայանան՝ արձակ կամ չափաբերական ձեւով։ Կան դիցաբանական և կամ դիւցազնական վէպեր։ Հայկական աստուածներու շուրջ հիւսուածները դիցաբանական վէպեր են։ Դիւցազնական վէպի լաւագոյն օրինակն են Հայկի ու Բելի պատմութիւնը, Վահագնի և Տորք Անգեղի մասին գոյութիւն ունեցող երգն ու աւանդութիւնը և այլն։

2. ՋՐՈՅՑ ԿԱՄ ՀԷՔԵԱԹ.— Հեռահեռէ իրականութենէն հեռանալով բոլորովին շինծու պատմուածքներ դարձող ժողովրդական աւանդութիւնները կը կոչուին զրոյց կամ հեքիաթ։ Պատմական զրոյցներ են՝ Արայի պատմութիւնը, «Շամիրամի ուլունքը», Տիգրան Ա.ի և Արտաշէս Բ.ի պատմութիւնները, Արտաւազդի ապիրատութիւնն ու անկումը, Սասմայ Ծռերը և այլն։ Իսկ Հէքեաթները ծանօթ են արդէն ամենուն։

3. ԵՐԳ ԲԱՆԻՑ ԿԱՄ ԵՐԳ ԹՈՒԵԼԵԱՑ.— Պատմական անձնաւորութիւններու կեանքը հաւանաբար ժամանակագրական շարքով աւանդական առասպելական գոյներով նկարագրող պատմութիւններ կամ երգեր, որոնք յաճախ ոտանաւորով շինուած կ'ըլլան։ Այդպիսի գործեր են գողթան երգերու փշուրները։

4. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ.— Ասոնք բազմատեսակ են եւ կեանքի այլ և այլ պարագաներուն յարմարցուած։ Յիշենք գլխաւորները. — պարերգ, գեղօն, լալօն կամ ողբունի, հարսներգ, օրրային, գութանի, երգիծական, պանդուխտի, բնութեան, գինիի, ուրախութեան, օրօրոցի և այլնի վերաբերեալ զանազան երգեր, որոնք բերանով և կամ նուագարաններու ընկերակցութեամբ կ'երգուին։ Հայաբնակ բոլոր գաւառներու մէջ ալ կարելի է գտնել ասոնց նմոյշները։ Կան նաեւ բնական, քաղաքական կամ տնտեսական աղէտներու վրայ շինուած ժողովրդային երգեր (ցէպան)։

5. ԱՌԱԿՆԵՐ կամ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՎԷՊԵՐ.— Ասոնք կը նմանին ժամանակակից առակներուն, շինուած աղուէսներու, արջերու, գայլերու, արծիւներու կամ առիւծներու վրայ։ Աղուէսավէպերը մանաւանդ նշանաւոր են։

6. ԱՌԱԾ կամ ԱՍԱՑՈՒԱԾՔ.— Հայ լեզուն հարուստ է առածներով։ Ասացուածները պարզապէս պատմական ակնարկութիւններ են (Օր. Եթէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարքն չեն)։

7. ՀԱՆԵԼՈՒԿ.— Ասոնք այնպիսի այլաբանական առաջարկներ են, որոնց մէջ իրենց բուն իմաստը քողածածկուած է։ Ամեն գաւառի մէջ ալ հանելուկներ շատ կան։

8. ՕՐՀՆԵՆՔ ԵՒ ԱՆԷԾՔ.— *Օրհնութիւններն ու անէծքները շատ տարածուած են ժողովուրդին մէջ։ Անոնց մէջ եւս դիտելու արժանի ստեղծագործութիւններ կան, երբեմն ուղղակի, երբեմն այլաբանական։*

9. ՆՈՐ ԵՒ ՆՈՐԱԳՈՅՆ ԺՈՂՈՎՐԴԱՑԻՆ ԵՐԳԵՐ.— *Ասոնք շատ հին դարերու չեն վերաբերիր և կը պատմեն կրօնական և ազգային նահատակներու կեանքերն ու հերոսներու քաջագործութիւնները, զանազան աղէտներ, կոտորած և այլն։*

*Հայկական բանաւոր կամ ժողովրդական բանահիւսութիւնը ամէն կերպով հետաքննութեան արժանի է և կ'արժէ որ շատ լուրջ ջանք մը թափուի զանոնք գրականացնելու և կորուստէ ու փճացումէ փրկելու համար։*

## ՀԱՅՐԵՆԻ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐ.—

*Կար ժամանակ մը, երբ հայրենի աւանդութիւնները, վէպերը, առասպելներն ու զրոյցները իբրև իսկական հայոց պատմութիւն կ'ընդունուէին հայ բանասէրներուն ու ժողովուրդին կողմէ։ Մեր անզուգական պատմահայրը, Մովսէս Խորենացի, իր հռչակաւոր երկասիրութեան մէջ պատմական վաւերականութիւն տուած էր անոնց և զանոնք շարահիւսելով հայ ցեղին պատմութիւնը կազմած էր։ Արդիական քննադատութիւնը, պատմութիւնն ու աւանդութիւնները անողոք կերպով վերլուծելու իր պաշտօնին մէջ, խորտակեց անխնայ Խորենացիի կազմած պատմական այդ շէնքը և եկաւ քանդել անոր գործին վաւերականութիւնը։ Խորենացի մեր մատենագիրներուն մէջ միակն էր, որ՝ այսպէս կամ այնպէս բաներ մը կ'ըսէր վերջապէս հայ ցեղին ծագման և անոր պատմութեան մասին։ Ահագին գրականութիւն մը ստեղծուեցաւ Խորենացիի գործին շուրջը, թէր ու դէմ շատ մը բաներ ըսուեցան, սակայն նախատինքներու իսկ ենթարկեցին մեծ ծերունիին յիշատակը, և վերջապէս իր տուած պատմութիւնը վերածուեցաւ բանահիւսական սքանչելի գանձարանի մը, որ հայրենի աւանդութիւնները կը փոխանցէր յաջորդող սերունդներուն։ Մեզի համար ուրեմն պատմահայրը կը դառնայ*

այլեւ այն գիծը, որ նախապատմական ազգային աւանդութիւնները կը կապէ պատմական շրջանին և կը մնայ թանկագին ու հսկայ բանահաւաքը, որուն կը պարտինք ազգային ոգիին ու ձգտումներուն արտայայտութիւնն հանդիսացող մեր հայրենի աւանդութիւնները։ Անոնք իրենց պատմական վաւերականութենէն զրկուելով հանդերձ, սերտիւ կը պահպանեն իրենց բանահիւսական բարձրագոյն արժէքը, ինչ որ ալ ըլլայ համեմատութեան կշիռը՝ բաղդատմամբ ուրիշ ցեղերու ազգային աւանդութիւններուն։ Մենք Խորենացիի պատմութեան միջոցաւ մեզ հասած աւանդութիւններուն մէջ կը գտնենք մայրին ճշմարիտ ստեղծագործութիւնը հայ ցեղին և անոր իտէալ բաղձանքներուն։ Պզտիկ վերլուծում մը բաւական է հաստատել թէ ո՛րչափ մաքուր է հայկական կեանքին մէջ բարոյականի ըմբռնումը, որ կը ցոլանայ ամեն մէկ վէպի, զրոյցի կամ առասպելի մէջ։ Անտարակոյս առաւել կամ նուազ պատմական հիմ ալ կայ անոնց մէջ՝ առասպելական սակայն։ Ծանօթացնենք գլխաւորները(*)։

ՀԱՅԿ ԵՒ ԲԵԼ.— Խորենացի կը նկարագրէ Հայկ դիւցազնը, որ կը պատերազմի Բելի դէմ՝ չուզելով հնազանդիլ անոր բռնութեան. Բել պատերազմին մէջ կը մեռնի ու կը յաղթուի և Հայկ իր նոր հայրենիքը կ'ազատէ։ Այս աւանդութեան մէջ Հայկ կը մարմնացնէ ազատութեան գաղափարը, իսկ Բել՝ բռնապետութեան. ու բռնապետութիւնն է որ տեղի կուտայ ազատութեան։

ԱՐԱՄ.— Սա՝ բարեկարգչի և արիութեան տիպարն է, որ կարգ կանոն կը մտցնէ Հայաստանի մէջ։ Իր անունով պատմուած յաղթութիւնները քաջագործութեան փառաբանութիւնն են պարզապէս։ Ան հայ ցեղին անունին կապուած նահապետն է, որուն անունին յաղթութիւններ միայն կը յաջորդեն։ Նշանակելի է Արամի նախանձախնդրութիւնը հայ բարբառին նկատմամբ։

(*) Հարկ չէ ծանրանալ անոնց մանրամասնութիւններուն վըրայ, որովհետև հայոց պատմութեան մէջ ընդարձակօրէն խօսուած է։ Անոնց համառօտակի վերլուծումը միայն կարևոր կը նկատենք։

ԱՐԱՅ ԳԵՂԵՑԻԿ ԵՒ ՇԱՄԻՐԱՄ.— Հայկական աւանդութեանց մէջ Արայ Գեղեցիկ՝ մաքուր բարոյականութեան և ամուսնական հաւատարմութեան տիպարն է, որ կուրծք կուտայ ցոփ ու հեշտասէր թագուհիի մը,— Շամիրամի,— հետապնդումներուն ու վերջապէս պատերազմական յարձակումներուն։ Վերջինը կը ներկայանայ հաճոյամոլ իշխանուհի մը։

«Ուլունքն Շամիրամայ».— Կը պատմուի թէ անգամ մը Շամիրամ պզտիկ տղաքներու ձեռքը կը տեսնէ ուլունք մը, զոր գտած էին գետնէն և հետաքրքրութեամբ կը դիտէին։ Շամիրամ տեղեակ անոր կախարդական զօրութեան, ձեռք կը ձգէ «ուլունք»ը և կը սկսի հայ երիտասարդները գլխէ հանել։ Անոնք ալ զզուած էին այս անբարոյ արարքէն. հայ ծերունիի մը վիճակեցաւ հրաշագործ ուլունքին յափշտակութիւնն ու փախուստը։ Շամիրամ վազեց անոր ետեւէն ու չի հասնելով՝ իր մազերը պարսատիկի տեղ գործածեց և մեծ քար մը նետեց ծերունիին ետեւէն։ Քարը ծովը ինկաւ, իսկ ծերունին ալ ուլունքը Վանայ Ծովը նետեց։ Մինչև հիմա Արտամետի մօտ ցոյց կուտան փոս մը, ուր գլորած է քարը։ Վերջինը «Շամիրամայ քար» կը կոչուի։ Այս պատմուածքին մէջ որոշ չէ՞ անառակ կնոջ մը կեանքը և հայ ցեղին մաքուր բարոյականի նախանձախնդրութիւնը։

ՏԻԳՐԱՆ Ա. ԵՒ ԱԺԴԱՀԱԿ.— Հայաստանի անտեսական կեանքը բարելաւողն է Տիգրան Ա.։ Ո՛րքան ճարտար է հիւսուածքը Մարաց Աժդահակ թագաւորի երազին։ Գեղեցկօրէն և յաջողապէս շինուած է զրոյցը, ուր քաղաքական նպատակներով Աժդահակ Տիգրանուհիի հետ կ'ամուսնանայ, բայց անոր կնոջական նախանձոտութիւնը գրգռել կ'ուզէ. վերջապէս Տիգրանուհի կը փախչի։ Աժդահակ կը յարձակի Հայաստանի վրայ և չարաչար կը պարտուի ու կը սպաննուի։ Ասոր մէջ յաջող վէպի մը պէս պարզ կը տեսնուի վեհապետներու քաղաքական նպատակներով ամուսնութիւնը, հայ աղջկան սէրն ու անձնուիրութիւնը դէպի իր եղբայրն ու իւրենները և հայ թագաւորին քաջութիւնը։

ՎԱՀԱԳՆ ՎԻՇԱՊԱՔԱՂ.— Դիցաբանական դէմք մ'է անշուշտ Վահագն, որուն վրայ հիւսուած «Երկնէր երկին ու երկիր» երգը կը յիշեցնէ հնդկական Ագնի աստուածը։ Խորենացի ականջովը լսած է անոր երգերը։ Վահագն վիշապներու հետ կռուած ու յաղթած է անոնց։ Իր արձանը կանգնուած էր ու կը պաշտուէր՝ ո՛չ միայն հայերուն այլ և վրացիներուն կողմէ։

«Յարդգողի Հետք».— Անանիա Շիրակացի կը պատմէ թէ ձմեռ ատեն մը Վահագն ասորւոց Բարշամ աստուածին գոմէն յարդ գողնալով՝ երկինքը պահուըտեցաւ։ Ծիր-Կաթինը, որ Յարդգողի Հետք ալ կ'ըսուի հայերէն, Վահագնի գողցած ու թափած յարդին հետքն է աստղերուն մէջ։ Հնդկական, պարսկական և յունական նման զրոյցներ ալ կան։

ԱՐՏԱՇԷՍ ԵՒ ԱՐՏԱՒԱԶԴ.— Գողթան երգերը կը պատմեն Արտաշէսի փառաւոր ամուսնութիւնը, Սաթենիկի անհաւատարմութիւնը և այլն, զորս Խորենացի գրառած է։ Այս պատմութեան մէջ օտար ամուսինի մը հոգեբանութի՛ւնն է որ խտացած է, ինչպէս նաև ժողովուրդէն սիրուած և քաջ վեհապետի մը կեանքը։ Որդիական ապերախտութեան վառ օրինակն է Արտաւազդ, որ հօրը անէծքով Մասիսի վիհերէն մէկին մէջ կը գտնուի և բանտարկուած ու շղթաներով կապուած է քաջերու կողմէ։ Երկու շուներ կը կրծեն շղթան՝ զայն ազատելու համար, բայց հայ դարբիններու մուրճերուն ձայնը կրկին կը զօրացնէ շղթաները։

ՏՈՐՔ ԱՆԳԵՂ.— Խորենացի կը խօսի ուրիշ դաժան, տգեղ և վիթխարի հսկայի մը մասին, որ Հայկի սերունդէն էր և կը կոչուէր Տորք կամ Տուրք Անգեղեայ։ Սա ամուր և մեծ քարերը կրնար ձեռքովը ճեղքել, եղունգներովը քերել և անոնց վրայ նկարներ գծագրել։ Կը պատմուի թէ անգամ մը Պոնտոսի ծովուն ափերուն վրայ թշնամիներու նաւերուն հանդիպելով, հակառակ անոնց փախուստին ու 8 ասպարէզ հեռաւորութեան, բը-

լուրի նման քարեր կ՚առնէ, որոնց վրայ այծեր ալ կը ճարակէին, և կը նետէ նաւերուն ետևէն՝ զանոնք ընկղմելով։ Հոմերոսի նկարագրած Պոլիֆէմ կիկլոպն ու պարսկական Րիւսթէմը կը մօտենան Տորքի։

«ՍԱՍՄԱՑ ԾՌԵՐ».— Ասիկա ամբողջական վէպ մ՚է, որ հասած է մեզ՝ իր քանի մը նմանապատումներով։ Կը խօսի Ասորւոց Սենեքերիմ թագաւորին Հայաստան փախչող երկու որդիներուն՝ Ադրամելէքին, Սանասարին և անոնց սերունդին մասին։ Վէպի ընթացքին կը խօսուի Սասունի հիմնարկութեան և հէքեաթունակ շատ մը դէպքերու մասին։ Կ՚ենթադրուի թէ այս վէպին հերոսները պատմական ծանօթ անձնաւորութիւններ են։ Սասմայ Ծռերը չորս մասերու կարելի է բաժնել. 1. Սանասար և Ադրամելէք, 2. Առիւծաձև Մհեր, 3. Սասունցի Դաւիթ և 4. Պզտիկ Մհեր։

## ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐ

ԳՈՂԹԱՆ ԵՐԳԻՉՆԵՐ.— Ամեն ազգերու մէջ ալ գոյութիւն ունեցած են երգիչներ, որոնք նուագարաններու միջոցաւ կ՚երգեն հանդիսաւոր առիթներու մէջ։ Հայոց երգիչները ծաղկեցան մանաւանդ Գողթն գինեւէտ և արգաւանդ գաւառին մէջ։ Գողթան երգերը այլևայլ ժամանակներու դէպքեր և անցքեր յիշատակելով, յայտնի է որ այլևայլ ժամանակներ յօրինուած են. և որովհետև միայն պատմական երգեր են, ուստի մեր նախնիքներու լեզուով կոչուած են վէպ, վիպասանութիւն, թուելեաց երգ և այլն։ Ընդհանրապէս Գողթան երգեր կը կոչուին անոնք։ Ուրիշ ազգերու մէջ ալ նման երգիչներ կային հին ատեն, ինչպէս Յունաստան ունէր հագներգուներ, Գաղղիան՝ բարդեր, Սքանտինաւեան ժողովուրդը՝ սգալդներ և այլն։ Հայոց մէջ կային եղերամայրեր ալ, որոնք մեռելներու վրայ կ՚ողբային։ Գողթան երգերը անոնցմէ տարբեր են սակայն բոլորովին։ Անոնց մեծ մասը տոհմիկ դէմքեր կը նկարագրէ, իսկ

մէկ մասն ալ օտար դէմքեր կը ներկայացնէ։ Կը կարծուի թէ Խորենացիի յիշած «Երգ վիպասանաց»ը պարսից Շահնամէին նման գիրք մ'էր, որովհետև դէպքերուն շարքն ու մինչև ցարդ ծանօթ հատակտորները շղթայաւորում մը կը ներկայացնեն։ Այս շրջանէն մեզի կը հասնի տաղանդաւոր բանաստեղծի մը անունը, ժամանակի մոռացումէն հազիւ խուսափած։ Վրո՛յրն է ան, Տիրիթ-Արտաշէսի որդին, որ պերճ լեզուով ու վսեմ ոճով գրած է արքունական պատմութիւններ, մանաւանդ իր հօրը կեանքէն։

ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐՈՒ ՓՇՈՒՐՆԵՐ. — Գողթան երգերու փշուրներն ընդհանրապէս Խորենացի կը նուիրէ մեզ։ Անոնց մէջ կը տեսնուի պերճ լեզու, վայելուչ ոճ և ընդհանուր գեղեցկութիւն։ Մեզի հասածները հետևեալներն են։

Երուանդեան Տիգրանի երեք որդիներէն մէկին, — Վիշապաքաղ Վահագնի, — կը վերաբերի այս երգը, որուն թամբուրի ընկերակցութեամբ երգուիլը Խորենացի իր ականջովը լսած է։

«Երկնէր երկին եւ երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծով.
Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող՝ ծո՛ւխ ելանէր,
Ընդ եղեգան փող՝ բո՛ց ելանէր,
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր,
Ապա թէ բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք»։

Վահագնէն ետքը գողթան երգիչներ Արտաշէս Բ. քաջ թագաւորին կեանքէն կ'առնեն իրենց նիւթը։ Նախ կը պատմեն ալանաց թագաւորին աղջկան Արտաշէսի կողմէ հայոց բանակը բերուիլը, այսպէս.

«Հեծաւ արի արքայն Արտաշէս
    Ի սեաւն գեղեցիկ.
Եւ հանեալ զոսկէօղ
    Շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի
    Սրաթեւ՝ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ

Շիկափոկ պարանն,
Ընկեց 'ի մէջ(ք)
Օրիորդին Ալանաց.
Եւ շատ ցաւեցոյց
Ըզմէջ(ք) փափուկ օրիորդին,
Արագ հասուցեալ
'Ի բանակն իւր (Արտաշիսի)»:

Արտաշէսի փեսայութիւնն ու Սաթենիկի հարսնութիւնը գուսաններու կողմէ հետեւեալ տողերով կը փառաբանուի .

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեանն Սաթինկանն»:

Բայց Սաթենիկ հաւատարիմ կին մը չըլլալով կը սիրահարի իշխան Արգաւանին, ինչպէս կ'երեւի գողթան երգերու յետագայ տողերուն մէջ, որոնք քանի մը անհասկնալի բառերու պատճառաւ զանազան մեկնութիւններու տեղի տուած են ։

«Տենչայ Սաթենիկ տիկին տենչանս
Զարտախոյր խաւարտ եւ զտից հաւարծի (խաւարծի)
'Ի բարձիցն Արգաւանայ»:

Արտաշէս մեռաւ արշաւանքներու ատեն օտար երկիրներու մէջ ։ Գ . Մագիստրոս ալ իր ժամանակակիցներէն լսած էր որ գուսաններ անոր հայրենաբաղձ վիճակին ու մահամերձիկ զգացումները բացատրելու համար կ'երգեն .

«Ո՜ տայր ինձ զծուխ ծխանի
Եւ զառաւօտն Նաւասարդի,
Զվազելն եղանց եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք»:

Արտաշէս մեծագործ և սիրուած վեհապետ մ'էր ։ Իր մահուան առթիւ հեթանոսական սովորութեան մը համաձայն մեծ կոտորած եղաւ , և շատեր ինքզինքնին ըսպաննեցին անոր գերեզմանին վրայ ։ Աստ վրայ իր որդին Արտաւազդ՝ սրտնեղած ու նախանձով լեցուած՝ կ'ըսէ .

«Մինչ դու գնացեր, եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար՝
Ես աւերակացս ո՞ւմ թագաւորեմ»:

Որդիական զգացումներու անվայել այս խօսքերուն վրայ Արտաշէս կ'անիծէ զայն գուսաններուն բերնով .

«Դու յորս հեծցես յԱզատ ՚ի վեր ՚ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին յԱզատ ՚ի վեր ՚ի Մասիս,
Անդ կացցես եւ զլոյս մի՛ տեսցես»:

Ասոր իբր հետեւանք՝ Արտաւազդին բանտարկութիւնը, քարայրի մը մէջ, մասնաւոր զրոյց մը ունի արդէն։

Գողթան երգերու հատուածներէն է նաեւ հետեւեալ երգը, որ Վարդգէսի (Տիգրան Ա.ի քեռայրը) վրայ երգուած է եւ կը վերաբերի Արտիմէդ քաղաքին շինուածքին։

«Հատուած զնացեալ Վարդգէս մանուկն ՚ի Տուհաց
գաւառէն զՔասաղ գետով,
Եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ,
ընդ Քասաղ գետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի»։

Ասոնք են ահաւասիկ ուշագրութեան արժանի հատուածները (1), որոնք գնահատուած են մեծապէս՝ իրենց լեզուին ու ոճին համար։ Անշուշտ գերազանցօրէն հիանալի պիտի ըլլար անոնց ամբողջութիւնը, որ կը պակսի, աւա՜ղ։

**ԱՐՈՒԵՍՏԸ ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐՈՒ ՄԷՋ.**— Տարակոյս չկայ որ գողթան երգերը արձակ գրութիւններ չեն, բայց միանգամայն չունին այն չափն ալ, զոր գործածած են ընդհանրապէս մեր քերթող հեղինակները։ Անոնց արուեստն ինքնատիպ է, վասնզի երգիչներ ո՛չ պարսկական, ո՛չ յունական եւ ո՛չ ալ ուրիշ ազգերու տաղաչափութեան ստրկօրէն հետեւած են։ Կ՚ենթադրուի թէ երաժշտականին աւելի նմանութիւն ունի գողթան երգերու արուեստը։ Այս երգերու չափին մէջ թէեւ կատարեալ ազատութիւն կը տեսնուի, բայց անկասկած ան ալ իր քերթողական չափին մէջ մնալու համար ունեցած սահման մը, որ տակաւին բացայայտ չէ։

(1) Ստեփաննոս Ռոշքեան (ԺԷ. դար) իր բառարանին մէջ հին մատենագիրներէն հաւաք պատմագրական բաւական մնացորդներ կը բերէ, որոնք գողթան երգերու կը նմանին, ուսումնասիրութեան կարօտ են եւ կը վերաբերին Հայկի ու Բելի, Մեհենական քուրմերուն, Շամիրամի, Սմբատի, Վաղարշակի, Արայի, Արշակի, Արտաշատի, Արտաշէսի եւ Սաթենիկի, Գնելի, Երուանդի, Տիգրանի, Տիգրան Ա.ի, Տիգրան Բ.ի եւ Տրդատի։

## ՀԵԹԱՆՈՍԱԿԱՆ ԵՐԳԵՐ·—

*Հայկական բանաւոր բանահիւսութեան համար շատ թանկագին գանձեր պիտի ըլլային նաեւ հեթանոսական սրբազան երգերը եւ կամ վերջապէս հեթանոսական կեանքի շրջանին մէջ հայ ժողովուրդին մէջ տարածուած տաղերը։ Անկարելի է որ հեթանոսական երգեր գոյութիւն ունեցած չըլլան, քանի որ՝ թէ մեհենական արարողութիւններու և թէ զանազան տօնակատարութիւններու միջոցին նուագարաններու ընկերակցելու պահանջը կար։ Եւ աւելորդ է ըսել արդէն որ՝ հայ ժողովուրդը, իր բընական միջավայրին բերումով, շէնշո՛ղ, երգո՛ղ ժողովուրդ մը պիտի ըլլար։ Սակայն կարելի չէ ժխտել որ նախաքրիստոնէական շրջանի վերաբերող ամեն տեսակ յիշատակարաններու հետ փճացան բանահիւսական արտադրութիւններն ալ։ Գողթան երգերու սակաւաթիւ փըշուրները հազիւ հազ պրծած են այդ ընդհանուր ոչնչացումէն, շնորհիւ անշուշտ այն գաւառին, ուր հայութեան սի՛րտը, հոծ զանգուա՛ծը կար, որ մասունքներ գէթ կրնար պահպանել աւանդաբար։*

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՇՐՋԱՆ·—

*Այս շրջանը շատ աւելի հարուստ պիտի ըլլար բանաւոր բանահիւսութեան տեսակէտով, եթէ մեր եկեղեցականներ յունական կամ ասորական գիրերուն ծանօթ չըլլային։ Ի վերջոյ, երբ գրի գիւտը հասաւ, բանահիւսական արտադրութիւնները գրականացան. մանաւանդ որ նշանակելի է քրիստոնէական կեանքին մէջ սրբազան բանահիւսութեան՝ հայ կղերի՛ն միայն սեփականացած ըլլալու բացայայտ հանգամանքը։ Այսուհանդերձ չէ կարելի անտեսել բանաւոր սրբազան բանահիւսութեան մը գոյութեան հաւանականութիւնը, Քրիստոնէութեան առաջին մուտքէն վերջ, հալածանքի շրջանին, քրիստոնեայ նահատակներու վերաբերեալ։ Ժամանակը շատ աւերներ կրնար գործել անոնց մասին ալ։ Եկեղեցական երգերն ու շարականները արդէն մատենագրութեան բաժինը դարձած են։*

## ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԵՐԳԻՉՆԵՐ(1).—

*ՇՐՋԱՆԸ.— Հայ ժողովրդական բանահիւսութիւնը երկար դարեր ամլութիւն ցոյց կուտայ՝ մինչև ծանօթ միջնադարեան աշուղներու հետ կեանք առնելու պայմանաւ։ Ասիկա չնշանակեր թէ ժողովրդական բանահիւսութիւն գոյութիւն չունեցաւ հայոց մէջ, գողթան երգերէն կամ Քրիստոնէութենէն վերջ։ Այս երևոյթը բացատրելու համար պէտք է գիտել որ ոսկեդարէն վերջ, երբ ազնուական լեզուն,— գրաբարը,— հայ կղերին սեփականութիւնը դարձաւ դարերով, անդին հայ ժողովուրդը տակաւ առ տակաւ ռամկօրէն լեզուով բաւականացաւ։ Իր երգերը, տաղերը և ամեն ինչ ռամկօրէն էին։ Գիրը եկեղեցական հայրերու և մատենագիրներու մենաշնորհն ըլլալով՝ սպասելի չէր անշուշտ որ անոնք գրի առնէին ժողովրդային բանաւոր բանահիւսութիւնը։ Քանի՛ կեանք կար, այդ կեանքին արտայայտութիւնը անխուսափելի էր։ Կեանքի զանազան պարագաներ, ինչպէս հարսնիք, մահ, ուրախութիւն, վիշտ, տօն, դաշտային աշխատանք, օտար արշաւանքներ, կոտորածներ, ժողովրդական դէմքեր, աղէտներ և այլն անտարակոյս կ'երգուէին ռամկօրէնով։ Երգիչներու գոյութիւնը խնդրական չէ Հայաստանի համար, սկիզբէն ի վեր։ Անոնք կային, կը շրջէին գիւղէ գիւղ, քաղաքէ քաղաք, ու կ'երգէին, կը նուագէին։ Ո՞ր նախանձախնդիր եկեղեցական մատենագիր կրնար, կը հանդուրժէր և կամ կը համարձակէր ռամիկ և գեղջուկ բարբառով եղած տաղեր գրի առնել։ Մինչև ԺԱ. դար ուրեմն ակնկալելի չէր այս, որովհետև անդրանիկ աշխարհական մատենագիրը, Գ. Մագիստրոս, ԺԱ. դարուն մէջ երևցաւ։ Անկէ վե՛րջ է միայն որ կրնանք յուսալ ժողովրդային և աշուղական տաղերգութեան գը-*

(1) *Միջնադարեան հայ բանաստեղծութիւնը ո՛րչափ Բանաւոր Բանահիւսութեան, նոյնչափ ալ Գրականութեան կամ Մատենագրութեան բաժնին կը վերաբերի։ Մենք կարգը պահելու՛ համար միայն Բանաւոր Բանահիւսութեան շարքին մէջ կը դնենք։*

թուլանալումը, երբ ռամկօրէնը տիրական դարձած էր։ Եւ սրտէն այդ կերպով է միայն որ մաս մը միջնադարեան երգիչներու և անոնց հատուածներուն ծանօթացած ենք։ Կարելի՞ բան էր որ հայ աշուղը անտարբեր մնար հայ կեանքի խրադարձութիւններուն հանդէպ։ Ժամանակը, Հայաստանի խիստ աննպաստ պայմանները և այն միջնադարեան բանահիւսական արտադրութիւններուն մեծ վնաս հասցուցին։ Դեռ վերջերս է որ հետզհետէ երգիչներու կեանքերն ու գործերը կ'ուսումնասիրուին (1), որոնցմէ կ'երեւայ թէ միջնադարեան տաղերգուները իրենց լեզուով փարախներով հեռացած են գրաբարէն ու ընդգրկած ժամանակակից աշխարհիկ լեզուն։

Հոս կը ներկայացնենք միջնադարեան երգիչներու գլխաւորները։

ԱՌԱՋԻՆ ԵՐԳԻՉԸ Ո՞Վ Է. — Միջնադարեան երգիչներն ու իրենց երգերը վերջին տարիներուս մէջ ուսումնասիրութեան առարկայ դարձան. սակայն տակաւին կը կարօտին նորանոր հետազօտութիւններու, որպէսզի կարելի ըլլայ ո՛չ միայն լոյս հանել բոլոր այն դէմքերը, որոնք այժմ անծանօթ են, այլ և՝ ճշդել անոնց արտադրութիւնները, ամբողջովին վերլուծել զանոնք և ի վիճակի ըլլալ ըսելու թէ ո՛րն է ամենահին երգիչը, և ո՛րն է միջնադարեան շրջանին անդրանիկ երգը։ Կարծիքներ ու ենթադրութիւններ միայն կան։ Ոմանք Կոստանդին Երզնկացիին կու տան առաջնութիւնը, ուրիշներ ալ՝ Սառաքել Շիրակվանցիին, որ 1222ին Երազահան անուն գիրքը արաբերէնէ կը թարգմանէ հայերէնի։ Իրենն է թարգմանութիւնն ալ Պղնձէ քաղաքի պատմութիւնն, որուն ազդեցութիւնը կը տեսնուի երգիչներէ ոմանց գործերուն մէջ։ Լեւոնի գերի վարուիլը եղերերգող երգ մը կայ գտնուած, որ հաւանաբար 1267-68 տարիին մէջ հեղինակուած է,

(1) Հայ աշուղներու կեանքին ու գործերուն հետազօտութեան գործին մէջ մեծ ծառայութիւն մատուցած են՝ Գ. Ախվերդեան, Կ. Կոստանդեան, Ա. Չօպանեան, Հ. Մ. Պօտուրեան, Հ. Տէփկանց, Յ. Թագէոսեան, Գ. Վ. Սրուանձտեանց և այլն։

և որուն հեղինակն անծանօթ է։ Ցնապգայ քանի մը տուները կրնան գաղափար մը տալ իր մասին․

«Աւա՜ղ ըզԼեոնն սեւ,
Որ տաճկաց գուռն ընկել գերի։
Իմ լուս, իմ լուս ու սուրբ կոյս․
Սուրբ խաչն օգնական Լեոնիս ու ամենուս։

Սուլթանն ի մօյտան ելել
Իր ոսկի գունդն կու խաղայ։
Խաղայ ի Լեւոնն երես․

«Ա՛ռ խաղա՛ ու տուր տատայիդ,
Լեոն, դու տաճիկ լինիս,
Ես ու իմ տատաս քէ գերի»։

Լեոնն ի բերդին նըստել
Դաստառակն աչիցն ու կուլար․
«Քէրվանդ որ ի Սիս կ'երթաս՝
Դուն խապար տանիս պապային»։

ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՐԶՆԿԱՑԻ․— Մինչեւ հիմակուան յայտնի տաղերգուներուն ամենէն հինը, որ կը թուի Երզընկայի վանքերէն մէկուն եկեղեցական կարեւոր մէկ դէմքն ըլլալ։ Ապրած է ԺԳ․ դարու երկրորդ կէսին ու ԺԴ․ դարու առաջին քառորդին մէջ։ Իր մահուան թըւականն յայտնի չէ, բայց՝ ամեն պարագայի մէջ՝ 1336ին կենդանի եղած ըլլալու էր։ Պզտիկ հասակէն իսկ իր շուրջիններուն նախանձը շարժելու չափ յաջողակ և ժողովուրդէն շատ սիրուած գրող մ'էր․ ասոր համար շատ հալածուած է իր եղբայրակիցներէն, ինչպէս կը տեսնուի իր տաղերուն մէջ։ Կոստանդին Երզնկայիին կ'ընծայուին 26ի չափ երգեր, որոնք հրատարակուած են առանձինն ալ (Հ․ Մ․ Պոտուրեան)։ Իր տաղերը 1․ Սրբազան-պատմական, 2․ Խրատական, 3․ Գանգատ և Ողբ և 4․ Նկարագրական են, ամենն ալ կրօնական գոյնով։ Բննադատութիւններէ ազատ մնալու համար՝ Երզնկացի հոգեւոր-կրօնական դիմակի տակ ծածկած է իր երգերը։ Մինչեւ հիմա հազիւ 7-8 աշխարհիկ տաղեր կան գտնուած՝ վարդի, ոսկակի, արշալոյսի, առաւօտի, բնութեան և այլնի մասին։ Լեզուն նախնական աշխարհաբարն է, և արտաքին պակասութեան, սկարութեան և տխրացուակա-

նութեան հակառակ, նա բաւական լաւ և նուրբ բանաստեղծ է։ Ունի լեզուական նորութիւններ։ Իր միակ հաւատարիմ բարեկամն է դավրիժարնակ Ամիր-Փոլին, որուն երբեմն երգեր կը նուիրէ և զոր հոգևոր եղբայր կ՚անուանէ։ Տաղաչափութիւնը յաճախ յանգաւոր է, և կը կրէ պարսկական հետք։ Պարսկերէնի հետևողութեամբ գրած է Ֆարմանի Ասման ոտանաւոր վէպը՝ ասորեստանցի ասպետի մը և պարսիկ իշխանուհիի մը սիրային արկածներուն վրայ։ Ասոր մէջ կայ Շահնամէին չափը։ Ունի դարձեալ Հարցմունք Աղջկան Նորավէպը, որ արձակ է և Հազար ու մէկ Գիշերներուն տպաւորութիւնը կը թողու։ Երզնկացի ունի հրապարակախօսական և վարդապետական կտորներ ալ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻ կամ ՊԼՈՒԶ.— Սա ծընած է Երզնկա՝ 1260 թուականներուն, և նշանաւոր է աւելի իբրև մեկնիչ, թարգմանիչ և քերական։ Շատ մը ճամբորդութիւններ ըրած է. գիտէ լատիներէն և այլ լեզուներ։ Իր բանաստեղծական գործերէն մինչև հիմա յայտնագործուած են խրատական և իմաստասիրական քառեակներ, որոնք ժողովրդային ասացուածքներէ քաղուած են։ Իր լեզուէն զատ աշխարհիկ բան չունի. ընդհանրապէս իր մեղքերուն վրայ կուլայ և արքայութեան ճամբան կը փնտռէ։ Տեղ տեղ գեղեցիկ մտածումներ ալ ունի տակային։ Ահա իր քառեակներէն ու տաղերէն նմոյշներ։

ՔԱՌԵԱԿ.— «Մարդ կայ որ հազար արժէ,
Հազար կայ որ մէկ մի չարժէ.
Ան մարդն որ հազար արժէ,
Անգէտին մօտ փո՛ղ մի չարժէ։

Խելօքն է ի ծով նըման,
Որ քանի չափես՝ կու տանի,
Անգէտն է ի տիկ նըման
Փուչ էվէլ լըռնու՝ նա պատռի»։

ՏԱՂ.— «Լսեցէ՛ք իմ եղբարք, որդիք սիրելի,
Տղայոց միտքըն մոմ կակուղ կու լինի
Մանեհար դիր զուտումն, որ չուտով նստի.
Զիրէ զուտիկ է մատղաշ որ հեշտ ոլորի.
Հայելի է պայծառ որ ժանգ նա չունի.
Զերդ զոսկի է խալաս որ յայպ նա չունի.
Զերդ ճոհար ակն ուլայ որ լոյս կու ցայթի.
Թէ ուզես որ կրթես զմանուկն ի բարի,
Դու ըռկամ դիր լեզուին որ շատ չխօսի»։

ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌՈՒԵՑԻ կամ ՑՐԻԿ.— Կոստ. Երզնկացիի ժամանակակից քահանայ մ'է Խաչատուր Կեչառեցի։ Ցրիկ և այս՝ միևնոյն անձերը կը համարուին․ կը յիշուի Թագւորի որդի և Դորոնայի եղբայր։ Ունի գրաբար և աշխարհաբար կրօնական տաղեր ու «գանձ»եր։ Ընդհանրապէս բարոյախօսական են իր կտորները։ Անոնցմէ մին, որ ճնշումներու ու անհաւասարութիւններու դէմ կը բողոքէ Աստուծոյ, չահեկան և ուշադրաւ է՝ իր ժողովրդային լեզուին և ընկերային հարց մը շօշափող պարունակութեանը համար։ Ահաւասիկ քանի մը տուներ.

Մէկն ի պապանց պարոնորդի
Մէկն ի հարանց մուրող լինի.
Մէկին հազար ձի և ջորի,
Մէկին ո՛չ ուլ մի, ո՛չ մաքի։
Մէկին հազար դեկան ոսկի,
Մէկին ո՛չ փող մի պըղընձի.
Մէկին բեհեզ և ծիրանի,
Մէկին բրդէ շալ մի չանկնի...։

Ցրիկ եթէ մեծ տաղանդ մը չէ, երբեմն սակայն ունի բանաստեղծական անկեղծ և նուրբ տողեր, ճարտար տաղաչափութեամբ։ Եթէ Խաչատուր Կեչառեցի և Ցրիկ միևնոյն անձերն են, ապա ուրեմն իրեն պիտի ընծայուին Մեծն Աղեքսանդրի վարքին համառօտութիւնը և ուրիշ գրութիւններ ալ, որոնցմէ գլխաւորն է Ողբը, ժամանակակից թշուառութիւնը նկարագրող։

ՄԿՐՏԻՉ ՆԱՂԱՇ.— Ծնած է Բաղէշի Պոռ գիւղին մէջ 1390-1400ին։ Հայրը բարեկեցիկ քահանայ մը՝ լաւ կրթեց իր տղան, որ գեղագիր և ծաղկանկարիչ էր փոքր հասակէն իսկ։ 1430ին Նաղաշ Վահկայի Կոստանդին կաթողիկոսէն եպիսկոպոս ձեռնադրուեցաւ և Ամիդի (Տիգրանակերտ) առաջնորդ անուանուեցաւ։ Գործունեայ, ճարտարախօս, դիւանագէտ ու ճարպիկ՝ յարաբերութիւն հաստատեց մահմետական իշխաններու հետ, սիրաշահեցաւ մանաւանդ Օսման ամիրայի սիրտը և վայելեց լայն առանձնաշնորհումներ։ Շնորհիւ իր այս քա-

ղաքագիտութեան, Մ․ Նաղաշ յաջողեցաւ իր վիճակը երկար ատեն մահմետական բռնադատութիւններէ ազատ պահել։ Մեռած է 1469էն վերջ՝ 1470-80 թուականներուն մէջ։ Իր կեանքը ծանօթ է, բայց իր գրուածքներէն շատերը կորսուած են։ Թողուցած է 10-12 քնարերգական կտորներ, կրօնական ու խրատական չեչաերով, որոնց մէջ անկեղծութիւն, ճաշակ և յաջողութիւն կայ։ Նաղաշ ազդուած է Կոստանդին Երզնկացիէն, և յաճախ հետեւած է անոր գրութիւններուն՝ փոփոխելով զանազան կէտերը։ Շատ յոռետես է և կ'ողբայ իր ժամանակի կղերին ու ժողովուրդին չարիքները։ Իր ամենէն յաջող գրութիւնն է այն՝ որով կը նկարագրէ սովէն կամ սրածութենէն մեռնող ազգ մը, որուն չկրնար օգնել ճարահատեալ հայրը։ Ունի քանի մը հատ ալ ուրախութեան, հարսնիքի և պանդուխտի երգեր, որոնց մէջ աւելի ժողովրդական և պարզ է լեզուն։ Սիրային երգ մ'է Գաբրիէլ ու Մարիամ անհեթեթ վերնագիրը կրող երգը, որ պարզապէս վարդին ու սոխակին սիրային մըրմունջները կը ներկայացնէ։ Իրենն է Կռո՛ւնկ, ո՞ւստի կուգաս գեղեցիկ երգը, որ տարածուած է ամեն կողմ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԼԿՈՒՐԱՆՑԻ․— Միջնադարեան երգիչներու մէջ առաջինը, որ յանդգնած է առանց այլաբանութեան սէրը երգել։ Սիսի կաթողիկոսն էր։ Ծնած է Տիգրակերտի Թլկուրան կամ Թուլկուրան գիւղը և ապրած է ԺԵ․ դարուն մէջ (1450-1525)։ Իր երգերէն կը հասկցուի որ նա ապրած է 70 տարիէն աւելի։ Ամեն տեսակ նեղմիտ մտածողութիւններէ հեռու՝ ազատամիտ կղեր մ'է Յովհ. Թլկուրանցի, որ կ'երգէ գարնան հաճոյքը, սէրը, կնոջ գեղեցկութիւնը, վայելքը, ծաղիկները, ծով աչքերը և այլն՝ մեծ եռանդով ու ոգեւորութեամբ։ Իրմէ առաջ ո՛չ ոք համարձակած էր սէրն երգել։ Խիզախ տողեր չե՞ն.

Սէրն կու տանի զամօթն յերեսէն
Ի հարեղայէն, ի վարդապետէն,
Երէց, սարկաւագ կու ձգէ կարգէն...
Մարդ որ սիրոյ կու հանդիպի
Նա քան զկրակ կու լինի վառ
Այլ ո՛չ ազօթք ի միտ կուգայ,
Ո՛չ Յայսմաւուր կարդալ ու ճառ...

Թլկուրանցի տաքսիրտ և ժողովրդական գրող է։ Ծանօթ են իր 24 կտոր քերթուածները։ Ունի հրաշալի տողեր և արեւելեան չքնաղ պատկերներ։ Իր գրութեանց մէջ կը նշմարուի զզուանք աշխարհէս, և երբեմն կը շարէ հզօր տողեր, ինչպէս. մահն ակնարկելով,

Արծիւ ես յերագ թռչիս,
Լայնանձիգ զթեւդ տարածես,
Զինչ յաշխարհ հզօր մանուկ՝
Ի թեւիդ ծայրն ծրարես։

Իր յաջող տաղերն են Դու զարմանալի վարդ ու բուրաստան, Արեւու նման շող շող կ'տաս. Ահա եղար շող շաղ գարուն և այլն։ Հետաքրքրական է Տաղ վասն արբեցութեան բարոյական-խրատական կտորը, ուր արբեցութեան աւերները կը թուէ։ Նշանաւոր է Տաղ խաչի Լիպարտին քերթուածը, որ Լիպարիտ իշխանին վրայ գրած է։ Մեռած է 1525ին։

ԳՐԻԳՈՐԻՍ ԱՂԹԱՄԱՐՑԻ.— Յովհաննէս Թլկուրանցիին կը յաջորդէր ուրիշ կրակոտ երգիչ մը, Գրիգորիս Աղթամարցի, որ ծնած էր Վանի շրջակաները՝ ԺԵ. դարու վերջին քառորդին մէջ (1480)։ Հօրն անունն է Աքանդար և մօրը Գուլան։ 1512ին Աղթամարի կաթողիկոս կը յիշատակուի։ Իր մասին որոշ տեղեկութիւններ կը պակսին. բայց կը կարծուի թէ մինչեւ ԺԶ. դարուն վերջերն ապրած է։ Գ. Աղթամարցի գերազանց երգիչն է սիրոյ, գեղեցկութեան ու աշխարհային վայելքներու։ Իր տաղերն իրենց ոճով, ձեւով ու նիւթով Թլկուրանցի կը բուրեն։ Անոր պէս վառվռուն է իր երեւակայութիւնն ալ։ Հրաշալի նկարագրութիւններ ունի երբեմն՝ արեւելեան վառ պատկերներով։ Ահա իր սիրոյ երգերէն կտոր մը.

Ունքդ է կամար որպէս աղեղնակ
Աչերդ է պայծառ որպէս գծովակ.
Թարթափդ է խանջար, ինքն պողպատ զուտ,
Այսով զիս հարիր,— արիր խուրտ ու մուրտ։

Քան զշամբայ եղէգն ելեր ես շիտակ,
Քո մէջքն է բարակ քան զուռի վարոց,
Շրթունքդ է քո լար, կզլափդ է ամպար.
Սպիտակ ատամունք մարգարտէ շարոց։

Լեզուդ է շիրին քան զՄորայ շաքար
Երբոր դու շարժիս ստոքդ ըռավան,
Ուր որ դադարիս այն տեղն է պոստան։

Աղթամարցի չհետաքրքրուիր իր ժամանակի քաղաքական վիճակով և այս մասին ո՛չ մէկ ակնարկութիւն կայ իր տաղերուն մէջ։ Ծանօթ է Ֆիրդուսիին և արեւելեան բանաստեղծութեան։ Երբեմն ամբողջ պարսկերէն տուներ ու տողեր կը դնէ իր երգերուն մէջ։ Ունի կրօնական ու սիրային քերթուածներ, որոնց մէջ կայ փափկութիւն ու շնորհք։ Հանրածանօթ է Սոխակին և Այգիին այլաբանութիւնը։ Իր ծերութեան օրերուն մէջ գրած է զաւեշտից երգեր, որոնց լաւագոյնն է Ցամենառաւոս։

ՆԱՀԱՊԵՏ ՔՈՒՉԱԿ.— Միջնադարեան տաղերգուներուն ամենէն նշանաւորն է Նահապետ Քուչակ, զոր արժանաւորապէս յայտնագործողն է Ա. Չօպանեան։ Հաւանաբար ԺԵ. դարու մէջ ապրած է Քուչակ, որուն կեանքին մասին տեղեկութիւններ խիստ կը պակսին դժբաղդաբար։ Իր լեզուէն դատելով կարծողներ կան թէ Ակնցի է։ Ուրիշներ ալ Վանեցի կը նկատեն։ Սա յայտնի է միայն որ իր վերջին օրերը Վանի շրջականներն ապրած է և մեռած՝ Խառակոնիս կամ Հաւկուաց գիւղին մէջ, որուն գերեզմանատան մէջ մինչեւ այսօր կայ իր գերեզմանը, սուրբի մը գերեզմանին պէս յարգուած և ուխտատեղի դարձած։ Իր անունը կը բացատրեն երկու կերպով. քէօչէկ՝ (խաղացող) կամ կիւչիւկ (պզտիկ)։ Նահապետ Քուչակ իբրեւ բանաստեղծ ինքնատիպ է ու անուշ երգիչ, գեղեցկագէտ, հրապուրիչ, անզսպօրէն խրապաշտ և շքեղ։ Գրուածքները պարզ, բայց համեղ ու գողտրիկ են։ Իր լեզուն ժողովրդական է, և ողողուած պարսկերէն ու տաճկերէն բառերով, պարզուկ ռամկօրէնով մը և քերականական խորթութիւններով։ Շատ օգտուած է պարսիկ բանաստեղծութենէն։

Քուչակի երգերը, որոնցմէ ոմանք կրնայ ըլլալ որ իրը չըլլան և իրեն վերագրուին, երեք տեսակ են, 1. Սիրային, 2. Խրատական և 3. Պանդուխտի, ընդհանրապէս քառեակներու ձեւով գրուած։ Իր շեշտը բարի, քաղցր, քնքուշ ու տաք է։ Սէրը կը դնէ իր տաղերուն

մէջ, իր եարին մերթ երկրպագելով, մերթ խունկ ծխելով և մերթ ալ աղերսելով։

Ես մեռնիմ ի քո վերայ, դու զքո ծամդ կտրես,
Կտրես մաշալա փաթես, ձեռքդ առնուս ու գլխ փնտռես,
Կամ ի հողվերօքս անցանես, հեր լնուս զաչերդ ու թափես,
Գրկիկ մը վզիս ածես, զապտուած վէմդ համբուրես։

Եւ կամ

Կանչեմ այդ ծովին վրայ, ծովս ի յակէն թանաք դառնայ,
Զինչ ի շամբ եղէգ որ կայ, ամենն ինձ գրիչ պիտենայ.
Զինչ երէց ու հարեզայ դանուշման որ գիր գիտենայ,
Գրէ, չկարենայ կարդալ զինչ իմ սրտան կայ զուտայ։

Նահապետ Քուչակի զգացումները շատ խոր են և իր դարուն մէջ ո՛չ ոք կը հաւասարի իր բանաստեղծականութեան։ Հո՛ս ալ, այդ ժամանակի պայմաններուն բերումով, ճչգրտօրէն անդրադարձ մը կ'ունենայ Քուչակի տաղերուն մէջ։

ԱՌԱՔԵԼ ՍԻՒՆԵՑԻ.— Սիւնեցի կը յայտնուի ԺԵ. դարու սկիզբները՝ իր Ադամագիրք կամ Կողգիրք անուն չափական գրութիւնով, որ կարևոր գործ մ'է։ Այս բանաստեղծութեան նիւթն է նախամարդուն ստեղծումն ու անկումը։ Ամբողջ գործը երեք մասերու բաժնուած և 1740 տունէ ձևացած է։ Ծրագիրը Միլտոնի Դրախտ Կորուսեալը կը յիշեցնէ, համեմատութեան եզրերը պահելով անշուշտ։ Պատմութեան նիւթը Ս. Գիրքէն առած է՝ ընդարձակելով ու մանրամասնելով անշուշտ։ Ադամգիրքին մէջ Սիւնեցիի ոճը տափակ և սովորական է, բայց տեղ տեղ ունի յաջող տուներ։ Իր անունով գտնուած են այլևայլ տաղեր ու գանձեր ալ, որոնք կրնան նոյնանուն անձերու պատկանիլ։

ՍԱՐԳԱՒԱԳ ԲԵՐԴԱԿՑԻ.— Ո՛չ կեանքը և ո՛չ ալ իր գրելու ժամանակը գիտենք։ Իր մէկ սիրուն գրուածքը յայտնուեցաւ Տաղարանի մը մէջ, 1617ին։ Յայտնի է որ կրօնաւոր է. բայց գրած է գինիի և ուրախութեան մասին։ Մեծ ոգևորութեամբ կը գովաբանէ խաղողը։

ՂԱԶԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ.— ԺԶ. դարու վերջերն ապրած Սեբաստացի քահանայ մը կ'ենթադրուի։ Աստ

անունով 1617ին Տաղարանի մը մէջ գտնուած է երգ մը, որուն մէջ իր սիրուհին կը նկարագրէ բոցավառ բղձացումներով։ Եարին խնկարկու մը՝ որ արևով ու լուսինով կը խօսի անոր հետ։

*ՄԻՆԱՍ ԹՈԽԱՏՑԻ*.— Ապրած է Լեհաստանի Իլվով քաղաքին մէջ, ԺԶ. դարու վերջերը։ Մինաս երգիծաբան և յաջողակ կատակող է։ Այս հանգամանքով, իբրև Հայ Երգիծաբանութեան հայրը, ուշադրութեան արժանի կը դառնայ։ Գրած է սիրուն տաղեր՝ հերիսայի, ակռայի ցաւի, ճանճերու, ծխախոտի և այլ նիւթերու վրայ։

*ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԵՐԳԻՉՆԵՐ*.— Վերը յիշատակուած կարևոր երգիչներէն զատ կան բազմաթիւ երկրորդական երգիչներ ալ, որոնց գլխաւորներն են. *ՆԵՐՍԷՍ ՄՈԿԱՑԻ* (Վիճաբանութիւն երկնի եւ երկրի բանաստեղծութեան հեղինակը), *ՕՔՍԻԶ ՏԷՐՏԷՐ* (Առաւօտուն ծաղիկն ցոյգերգը), *ՅԱԿՈԲ ԱՐՃԿԷՑԻ* (Տաղ վարդն վարդի), *ԴԱՒԻԹ ՍԱԼՆԱՁՈՐԵՑԻ* (Ծաղիկներու երգիչը), *ՏԱՏՈՒՐ ՍԱԼՆԱՁՈՐԵՑԻ* (Գինիի երգիչը), *ԱՄԻՐ ՄՈՒՍԷ*, *ԱՐԹՈՒՆ ԳՐԻԳՈՐ*, *ՅՈՎԱՍԱՓ ՍԵԲԱՍՏԱՑԻ*, *ՄԿՐՏԻՉ ՏԱՐՕՆԵՑԻ*, *ՄԱՐՏԻՐՈՍ ՂԱՐԱՃԱՍԱՐՑԻ* (Գարահիսարցի), *ԽՕՆՈՒԶ*, *ՂԱԶԱՐ ԿՈՅՐ*, *ՄԵԼՔՈՆ*. *ՄՈՒՐԱՏ ԽԻԿԱՐ* (Մարտըն կուզայր ծաղկըներով ժողովրդական երգի հեղինակը), *ԶԱՔԱՐԻԱ ԱԳՈՒԼԵՑԻ*, *ԽԱՉԻԿ ԿԱՖԱՑԻ*, *ԹԱԴԷՈՍ ՍԵԲԱՍՏԱՑԻ* և այլն։

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՆՈՐ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆԸ.—

*ՆՈՐ ՇՐՋԱՆ*.— ԺԸ. դարու վերջերն ու ԺԹ. դարու սկիզբները Հայաստան փոթորիկներու մէջ էր։ Ռուսօ-պարսկական և Թրքօ-պարսկական ընդհարումները ստեղծած էին սոսկալի դրութիւն մը։ Հայ լեզուն կրած էր թաթարական շատ մեծ ազդեցութիւն, այնպէս որ անոր մէջ որոշակի կը տեսնուէին թրքական, արաբական և պարսկական բառեր ու ձևեր։ Այս շրջանին մէջ ժողովուրդին ծոցէն կեանք առած են զանազան երգիչներ,

որոնք աշուղ կամ աշըգ կ'անուանուին։ Անոնց մէջ նաև կան բանաստեղծական տաղանդ, խառնուածք և արժէք ունեցող դէմքեր, որոնց գլխաւորները անուանենք.

ՍԱՅԵԱԹ-ՆՈՎԱ.— Նորագոյն աշուղներու գլխաւորն է աս։ Սայեաթ-Նովա իր գրական անունն է. բուն անունը Յարութիւն է։ Հայրը Հալէպցի էր ու ի վերջոյ Թիֆլիս հաստատուած։ Իր արհեստը ջուլհակութիւն էր։ Ժամանակ մը թէ արհեստին կը հետևէր և թէ կը մշակէր երգչութիւնը, որուն սիրահար էր իր պզտիկ հասակէն, բայց ետքը աշուղութեան կը նուիրուի բոլորովին։ Սայեաթ-Նովա նախ թուրքերէն տաղեր կը յօրինէր. բայց վերջը հայերէն գրել սկսաւ 1752ին։ Իր համբաւն այնչափ տարածուած էր որ վրաց Հերակլ թագաւորը զինքն իր արքունիքին երգիչ հրաւիրած էր։ 58 տարեկանին քնարը թողլով կրօնական դարձաւ։ Պարսից Մահմէտ Խանի արշաւանքին ժամանակ Հաղբատու առաջնորդական եկեղեցին մէջ պարսիկներուն ձեռքով սպաննուեցաւ 80 տարեկան հասակին մէջ (1795)։

Սայեաթ-Նովա ունեցած է 17 տարուան երգիչի կեանք և թողած է 114 թուրքերէն, 46 հայերէն և անթիւ վրացերէն տաղեր։ Իր երգերուն մեծ մասը սիրային են՝ արևելեան գունեղ ոճով։ Իրապաշտ բանաստեղծ մ'է, որ իր եարին համար շատ մաշեր ու շատ ալ երգեր է։ Ունի նաև բարոյախօսական ու խրատական երգեր։ Սայեաթ-Նովա երգիչներու նորագոյն դպրոցին առաջնորդն է։

ԹՈՒՐԻՆՋ. (1790-1875).— Մոլեգին սիրահարուած աշուղ, որ կը սպառնայ ինքնիրեն սպաննել, եթէ իր փափաքին չհասնի։

ՄԻՍԿԻՆ ԲՈՒՐՋԻ (1810-1860).— Հոգևորդու աշուղ։ Իր ամենէն ժողովրդականացած երգն է Ս. Էջմիածնի մուխամմազը։ Իր միւս երգերը սիրահարական են և չունին լեզուի նրբութիւն։ Լեզուն Գանձակի բարբառն է։

ԱԶԲԱՐ ԱԴԱՄ.— Ժողովրդական երգիչ մը, որուն հայրը Պարսկաստանցի էր և յետոյ Երևան գաղթած։

Ադամ երկար ատեն սոսր անոր քով ծառայութեան մէջ մնաց և վերջապէս կոչնակար եղաւ։ Պարապ ատեններ բանաստեղծութեամբ կը զբաղէր։ Շատ յարգուած էր և ամէն հարսնիքներու կը հրաւիրուէր։ Մեռած է 1846ին։ Ազբար Ադամ Միսկին Բուրջիի բաղդատմամբ աւելի տաղանդաւոր է։ Ունի շատ մը սիրային տաղեր. Մինաս Թօխաթցիի պէս երգիծող ալ է և սրամիտ տողեր գրած է։ Իրենն է Ակոռիի ողբը՝ հիւսուած Մասիսի հրաբուխին վրայ։

ԱՇԸՂ ՇԻՐԻՆ. — Բուն անունն է Յովհաննէս Կարապետեան։ Ծնած է Երեւանի Կողպ գիւղին մէջ՝ 1827ին։ Երկու տարուան էր, երբ աչքերը կուրցան։ Հայրը կոյր Յովհաննէսը զրկեց Ալեքսանդրապոլ՝ Բաբա կոչուած անուանի երգողին քով, աշակերտելու համար։ Երեք տարի վերջ կոյր աշուղը անցաւ Կարին, Թիֆլիս ու Հայաստանի զանազան կողմերը։ Նախ թաթարերէն կ'երգէր, բայց ապա բարեկամներու խորհուրդով սկսաւ հայերէն գրել։ Աշըղ Շիրին սրամիտ և սրաբան է. ունի երգիծական, սիրային, բարոյախօսական և բնութեան երգեր։ Գործածեց այն լեզուն, որ գրաբարի մօտիկ էր, և որ ետքը դարձաւ կովկասահայերու գրական լեզուն։

ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆ. — Ապրած է ԺԷ. դարուն։ Շոռոթեցի է, և մեծ հայրը՝ համանուն նկարիչին։ Ընդհանրապէս Թիֆլիս ապրած է, ախորժելի և մեղկ կեանքով մը։ Օգտուած էր Թուլի իրմէ առաջ ապրող երգիչներէն։ Կեանքի բանաստեղծն է Յովնաթան, թեթեւ, անհոգ ու զուարթ։ Կը սիրէ կեանքը, գինին և կինը։ Հայ ցեղին ժողովրդային հարուստ բանաստեղծութեան մէկ ներկայացուցիչն ալ աս է։ Իր ոտանաւորներուն մէջ ամենէն աղուորներն են Ջատկի ու գարնան վրայ գրած երգերը։

ՔԻ. — Թաթարական երգերուն նման բառախաղով աշուղ մը, որ կ'ըսէ.

Սիրաբա՛ն, կա՛ց, սիրաբանիդ սիրաբան եմ, սիրեկա՛ն...
Պատուական ես, պատուականիդ պատուական եմ, սիրեկան...։

ՈՒՐԻՇ ԴԷՄՔԵՐ. — Վերը յիշատակուած դէմքերէն զատ տակաւին կան ուրիշ շատ մը աշուղներ ալ.

առաւել կամ նուազ կարեւոր։ Յիշենք մի քանին. ՔԵԱՆՀԱՆ, հայրենասէր աշուղ, որ տխրագին երգեր է մարախներուն աւերը՝ Արարատ նահանգին մէջ. ԱՇՈՒՂ ԻՎԱՆԻ, Աւետարանի քարոզիչ. ԱԼԻԱՆ ՕՂԼՈՒ, պարկեշտ ու երկիւղած. ՔԻՋԻԿ-ՆՕՎԱ, ուխտաւորներու և եկեղեցիի աշուղ. ՋԱՄՉԻ ՄԵԼՔՈՆ, ԳՈՒՐՃԻ ՆԱՎԷՆ, ՋԱՐԿԵԱՐ և այլն։

ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ԵՐԳԵՐ.— Օսմ. տիրապետութեան շրջանին մէջ, մանաւանդ ԺԷ. և ԺԸ. դարերու մէջ, և նոյն իսկ ԺԹ. դարուն սկիզբը զանազան քաղաքներու մէջ մահմետականներու կողմէ նահատակուած մարտիրոսներու վրայ կան յօրինուած կրօնական նահատակներու երգեր, որոնց հեղինակներն յայտնի պատճառներով անյայտ են։ Հայոց նոր վկաներու շուրջ հիւսուած ժողովրդային բանահիւսութիւնը շատ յատկանշական է և ուշադրութեան արժանի։ Գրեթէ ամեն հայաբնակ գաւառներու մէջ նմանօրինակ երգեր կան։

## ՆՈՐԱԳՈՅՆ ԵՒ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՇՐՋԱՆ.—

Ժողովրդային բանահիւսութիւնը ազգային կեանքէն անանջատ ըլլալով, իր նիւթն առած է յաճախ հանրային աղէտներէ, հրդեհէ, կոտորածէ, երաշտութենէ, սրածութենէ, գաղթէ և այլն։ Աշուղական կեանքը հին է հայոց մէջ։ Երգիչներ կը պտտէին ամեն կողմ և կ'երգէին հանրութիւնը շահագրգռող և ժողովրդային կեանքէն քաղուած երգեր։ Մինչև հիմա աշուղներ ի պատուի են։ ԺԹ. դարու վերջին քառորդին մէջ, աշուղներ և ժողովրդային բանահիւսներ իրենց նիւթն առնել սկսան հայկական ազատագրութեան պայքարէն։ Եւ ահա ազգային գոյն առաւ բոլորովին ժողովրդային բանահիւսութեան նորագոյն և ժամանակակից շրջանը։ Յեղափոխական հերոսներու կեանքը, բռնապետութեան սոսկալի նախճիրները, վայրագ խժդժութիւններ և այլն երգերու նիւթ դարձած են։ Առանձին ուսումնասիրութեան արժանի է այս շրջանը, որ հայելին է ժամանակակից ժողովրդային հոգեբանութեան և տրամադրութեան։ Ազգային երգարաններ լեցուն են այսպիսի տաղերով, որոնք եղանակով կ'երգուին։



# ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՄՈՒՏՔ

*Հայ Գրականութեան սկիզբը.— Հայ Գրականութեան պատմութեան էութիւնը.— Հայ Մատենագրութիւնը.— Հայ Գրականութեան նկարագիրը.— Հայ Գրականութեան շըրջանները:*

*ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՍԿԻԶԲԸ.— Հայկական բանահիւսութիւնը թէեւ սկզբնաւորուած կամ կազմակերպուած կը գտնենք փրկչական թուականէն դարեր առաջ, սակայն Հայ Գրականութեան կամ Մատենագրութեան սկիզբը գրի գիւտին հետ կապուած է։ Ուստի շատ տրամաբանական է որ Հայ Գրականութիւնն սկսի Ե. դարէն, և հայ լեզուով պատրաստուած վաւերական երկեր առաջին անգամ ոսկեդարու մէջ երկնուած ըլլան։ Այդ շրջանին մէջ է որ կը ստեղծուի գրական այն մեծ շարժումը, որ ամբողջ հայ գրականութեան կեանքին մէջ լուսաշող աստղի մը նման կը փայլի, մանաւանդ հին դարերու խաւար հորիզոնին վրայ։ Հայ գրականութեան հայրերն են հայկական տառերու անմահ հնարիչները՝ Սահակ ու Մեսրոպ։*

*ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԷՈՒԹԻՒՆԸ.— Հայ գրականութեան պատմութիւնը իր մէջ կը խտացնէ կեանքերն ու գործերը այն մտաւորականներուն, որոնք այլեւայլ ժամանակներու և շրջաններու մէջ Հայ Միտքն արտայայտած են, Հայ Իմացականութիւնը ներկայացուցած և կազմած բուրաստանը այն ծաղիկներուն, որոնք փթթած են հին ու նոր գրագէտներու արտադրութիւններով։ Հայ գրականութեան պատմութիւնը իր*

մէջ կը բովանդակէ հին ու նոր մատենագրութիւնն ու լրագրութիւնը, որոնք պահպանակն են իրենց ժամանակներու հայ մտայնութեան(1)։

ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.— Հայկական Մատենագրութիւնը կը խօսի մեր գրական դէմքերու կեանքին և անոնց երկասիրութիւններուն վրայ։ «Հայկական Մատենագրութիւն» բացատրութիւնն աւելի ընդարձակ իմաստ ունի. սակայն առհասարակ հին գրականութիւնն է որ Մատենագրութիւն անունով կը ճանչցուի։ Լրագրութեան գոյութենէն վերջ այլեւս Գրականութիւն պէտք է կոչել հայ-գրական շարժումը, վասնզի եղած են ժամանակներ, երբ գրեթէ միմիայն լրագրութիւնը կամ պարբերական մամուլն հանդիսացած է մտաւոր արտայայտութեան միջոց։ Հայ Մատենագրութիւնը երկու կերպով կրնայ ըմբռնուիլ. 1. Իբրեւ գրաւոր երկասիրութիւններ, և 2. Իբրեւ պատմական և կենսագրական ծանօթութիւններ։

ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ.— Թէ՛ գրաւոր երկասիրութիւններու և թէ՛ գրական դէմքերու կենսագրական ծանօթութիւններու կողմանէ եթէ ոչ բոլորովին աղքատ, գէթ ճոխ չէ հին հայ մատենագրութիւնը։ Այս կէտը կը շեշտուի մանաւանդ, երբ նկատի առնելով իր հնութիւնը, փորձենք զայն բաղդատել յոյն և լատին հարուստ գրականութեանց հետ։ Նոր և նորագոյն հայ գրականութիւնը համեմատաբար հարուստ է թէ՛ արտադրութեան և թէ մատենագիրներու կենսագրական ծանօթութեանց մասին, շատ հասկնալի պատճառներով։ Յաջորդաբար կը բացատրուին արդէն հայ գրականութեան նշանակելի դէմքերն ու անոնց գործերը։ Իսկ թէ ինչո՞ւ համար ակնայայտ է Հայկական հին Մատենագրութեան աղքատութիւնը։ Ատոր պատճառները հետեւեալներն են.

(1) Յաճախ սովորութիւն է գրականութեան սահմանէն դուրս թողուլ կարգ մը գրական սեռեր և անոնց մշակները, առաջնութիւն տալով միմիայն զուտ գրական արտադրութիւններու։ Մենք ատիկա անիրաւութիւն կը նկատենք, մանաւանդ հայ մատենագիրներու ցանցառ շարքին և աղքատիկ ցանկին մէջ։

1 Ժողովուրդին պարզ և տարրական քաղաքակրթութիւնը, որուն մէջ ազգը ստիպուած էր զուրկ մնալ մտաւորական առաջդիմութեան բարձրագոյն պայմաններէն։

2. Մտաւորական աշխատութիւններու անհրեկութիւնը.

3. Ժողովուրդին քաղաքական դիրքը։

4. Անտարբերութիւն և քաջալերանքի պակաս.

5. Թէ՛ օտարներու և թէ՛ ազգայիններու կողմէ՝ գրաւոր յիշատակարաններու փճացումը։

Այսուհանդերձ իր աղքատութեան մէջ ալ՝ պատուական պէտք է ըլլայ մեր ազգ. մատենագրութիւնը, որուն կը պարտինք մեր լեզուին պահպանութիւնը. և կարգ մը գործեր, որոնք հիմա գիտնականներու հետազօտութիւններուն առարկայ դարձած են։

ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ.— Հայ Մատենագրութիւնը զանազան շրջաններու բաժնելու փորձեր եղած են՝ հետեւելով ընդհանուր ազգերու պատմութեան ընթացքին։ Երբեմն ալ ուզած են լեզուի ու գրականութեան փոփոխութիւններուն համեմատ ոսկի, արծաթ, պղինձ և այլն անուններով որակել շրջանները։ Մենք քիչ մը տարբեր կերպով կը գծենք Հայ Գրականութեան շրջանները։

1 ԱՄԵՆԱՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.— Նախաքրիստոնէական դէմքեր։

2. ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.— Քրիստոնեայ մատենագիրներ, գլխաւորապէս Դ. դարու վերաբերող։

3. ԳՐԱՒՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ.— Գրերու գիւտէն մինչեւ այսօր։ Ունի չորս բաժանումներ.

- Ա. Գրաբարի շրջան, ուր մատենագրութիւնը բացառապէս գրաբարով եղած է։ Ե.-ԺԲ. դար։
- Բ. Միջին շրջան, ուր մատենագրութիւնը թէ՛ գրաբարով և թէ ռամկօրէնով է։ ԺԲ.-ԺԹ. դար։
- Գ. Նոր շրջան, ուր արդի հայերէնն է տիրապետողը։ Այս բաժնին մէջ են Արեւմտահայ և Արեւելահայ գրականութիւնները։ ԺԹ. դար։
- Դ. Լրագրութիւն, որ կը սկսի ԺԸ. դարու վերջին տարիներէն և կը տեւէ մինչեւ մեր օրերը։

# ԱՄԵՆԱՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

*Ընդհանուր նիշեր.— Մարիբաս Կատինա.— Արտաշազդ Ա.— Ողիւպ կամ Ողիմպիոս.— Լաբուբնա կամ Ղերուբնա.— Բարդածան:*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Իսկական հայ գրականութեան չեն վերաբերիր այս շրջանին դէմքերն ու անոնց գործերը. ընդհանրապէս օտար ալ են արդէն. սակայն ուրովհետեւ հայ մատենագրութեան ու հայկական հին պատմութեան հետ առնչութիւն ունին, ուստի հայ գրականութեան պատմութեան մէջ ալ կը յիշատակուին: Անոնցմէ ոմանք հայ և օտար բանասէրներու քննական հետազօտութեանց առարկայ դարձած են, այնպէս որ համառօտակի զանոնք ծանօթացնելն աւելորդ չէ:

ՄԱՐԻԲԱՍ ԿԱՏԻՆԱ (Բ. Ա. 149).— Մովսէս Խորենացի երեւան կը բերէ գոյութիւնը Մարիբաս Կատինա անուն ասորի դէմքի մը, զոր իրեն աղբիւր կ՚ընդունի՝ իբրեւ պատմական հեղինակութիւն:

Երբ պարթեւները կը տիրեն Հայաստանի, Վաղարշակ՝ հայոց թագաւորը (Արշակունեաց թագաւորութեան հիմնադիրը), իր եղբօրը պարթեւաց Արշակ թագաւորին կը ղրկէ Մարիբասը կամ Մար Աբաս Կատինան, քաղդէական և յոյն լեզուներուն հմուտ ասորի մը, նամակով մը խնդրելով որ Նինուէի դիւանը բացուի անոր առջեւ և թոյլ տրուի հայոց ծագումն ու պատմութիւնը երեւան բերելու: Մարիբաս կը քրքրէ դիւանը, և վերջապէս կը գտնէ հին ձեռագիր մը, որ կը բովանդակէր հին ազգերու պատմութիւնը, և որուն քաղդէական բնագիրը Մեծն Աղեքսանդրի ժամանակ և անոր հրամանով յունարէնի թարգմանուած էր: Ասորի գիտունը անոր մէջ կը գտնէ հայ ազգին մասին իր փնտռածը, և քաղելով հայոց պատմութիւնը, հայոց ծագումէն մինչեւ Հայ-

կազանց վերջին թագաւորը, Վաչէ, կը դառնայ Հայաստան։ Վաղարշակ ուրախութեամբ կ'ընդունի զայն, հայոց պատմութեան խիստ կարկառուն մասերը կոթողաձեւ քարերու վրայ փորագրել կուտայ, որպէսզի ամեն հայ ըմբռնէ զանոնք, և բերուած գործը խնամով կը պահէ Մծբինի դիւանին մէջ։

Մարիբասի գիրքը մեր ձեռքն հասած չէ։ Զինքը միայն Խորենացիով կը ճանչնանք։ Խորենացի կը խոստովանի արդէն թէ հայոց անցեալ պատմութեան մասին իր աւանդներն անկէ քաղած է, երբեմն նոյն իսկ բառ առ բառ։ Սակայն երբ այս բոլորը Խորենացիէն գոնէ 6-700 տարի առաջ տեղի կ'ունենան, ինչպէս կ'ըլլայ որ մի՛այն Խորենացի կը տեսնէ այդ գիրքը. ո՞ւր են քարերու վրայ փորագրուած արձանագրութիւնները. ի՞նչ լեզուով և ի՞նչ տառերով գրուած են։

Խորենացիին գործին քննութեան ատեն աւելին պիտի տեսնենք Մարիբասեան աւանդութեան մասին։ Սաչափ միայն ըսենք որ արդիական քննադատութիւնը հիմնուելով կարգ մը փաստերու վրայ, կը նկատէ զայն իրականապէս գոյութիւն չունեցող առեղծուածային անուն մը միայն։ Պէտք է ըսել որ Խորենացիի պատմութիւնը, Մարիբասեան աւանդութեան հետ, մեծ ուշադրութեան ու քննութեան առարկայ դարձած է եւրոպացի նշանաւոր բանասէրներու կողմէ, և քանիցս եւրոպական լեզուներու թարգմանուած է։

ԱՐՏԱՒԱԶԴ.— Յունական քաղաքակրթութեան ազդեցութեան օրերուն, Ա. դարուն (Ք. Ա.), հելլենական լեզուն ու գրականութիւնը հայոց մէջ ունեցած է իր ներկայացուցիչն ու քաջալերողը՝ Արտաւազդ Ա. թագաւորին անձով։ Պլուտարքոս յոյն պատմիչը իր Զուգակշիռներ անուն գրքին մէջ կը գրէ թէ Արտաւազդ (Մեծն Տիգրանի յաջորդը), որ հռովմայեցիներուն ձեռքը գերի ինկաւ և ոսկի շղթաներով կապկպուեցաւ, իր թագաւորութեան և տարագրութեան դառն օրերուն մէջ

բանասիրութեամբ կը զբաղէր և կը յօրինէր յունարէն լեզուով թատերգութիւններ, ճառեր ու պատմութիւններ, որոնք մեծ յարգ վայելած են ժամանակակիցներուն մէջ։ Մե՛ղք որ ոչինչ հասած է մեզ։

ՈՒՂԻՒՊ ԿԱՄ ՈԼԻՄՊԻՈՍ.— Դարեհ Վողոգէսի և Արտաշէս Բ.ի ժամանակ ծաղկած պատմագիր մ'է Ուղիւպ կամ Ոլիմպիոս, որ ապրած է Բ. դարուն վերջերը։ Ինք քրմապետն էր Անի կամ Հանի ամրոցին, որուն պատմութիւնը գրած էր։ Կ'ըսուի թէ գրած էր նաև ուրիշ մեհենական պատմութիւններ ալ, որոնք մեզի հասած չեն։ Իր պատմութեան մէջ աւանդած է Դարեհի և Արտաշէսի օրով պատահած դէպքերը։ Կը կարծուի թէ Խորենացին ասկէ՛ առած է Արտաշէսի մասին իր պատմածները։ Հաւանաբար Բարդածան և Եւսեբիոս ալ օգտուած են իրմէ։

ԼԱՐՈՒԲՆԱ կամ ՂԵՐՈՒԲՆԱ.— Խորենացի կը յիշատակէ Աբգարի ժամանակակից պատմիչ մը, Լարուբնա կամ Ղերուբնա անունով, որ Ափշադարայ քուրմին տղան էր և մեհենական պատմութիւններու հմուտ։ Գրած է Աբգարի և անոր տղուն Սանատրուկի պատմութիւնը։ Լարուբնա կու տայ՝ Աբգարի պատմութիւնը, Յիսուսի հետ ունեցած բանակցութիւնը, արքունի գերդաստանին վրայ ծանօթութիւններ և այլն։ Խորենացի հաւանաբար ասկէ առած է Աբգարի պատմութիւնը, որովհետև շատ կը համաձայնին իրարու։

Հետաքրքրական է Լարուբնայի գիրքը, որ բանասիրական հետազօտութեանց առարկայ դարձած է։ Երկար ատեն Լարուբնայի պատմութիւնը կորսուած կը համարուէր. Խորենացի նոյնիսկ՝ տեսած ըլլալուն մասին բան մը չէր ըսեր։ ԺԳ. դարու Մխիթար Այրիվանեցին միայն կը յիշէ զայն ապա։ Խորենացիին գիրքը լատիներէնի թարգմանուած ժամանակ Լարուբնայի գործը ծանօթ չէր տակաւին։ 1853ին Բարիզի Ազգային Մատենադարանի հայկական ձեռագիրներուն մէջ գտնուեցաւ Լարուբնայի գործերուն մէկ մասը, որուն մէկ օրինակն ալ եգիպտական Նիտրիոյ վանքերէն Անգլիա բերած

էին։ Ասորերէն բնագրին և հայերէն թարգմանութեան մէջ գրեթէ տարբերութիւն չկայ։ Հետզհետէ անոր ֆըրանսերէն, անգլիերէն և հայերէն թարգմանութիւնները հրատարակուեցան։ Շատ քննադատուած է մանաւանդ Աբգարի և Յիսուսի թղթակցութեան զրոյցը։ Կարծողներ կան թէ մինչև այսօրուան մեր ձեռքն հասած գիրքը՝ Լաբուբնայի բնագիրը շատ խեղաթիւրուած է։

ԲԱՐԴԻԱԾԱՆ.— Իր մասին շատ բաներ չենք գիտեր։ Ծնած է Ասորեստանի մէջ, հաւանաբար Եդեսիա։ Մատենագիրներ զայն կը յիշեն իբրև ասորի, միջագետացի, պարթև, բաբելոնացի, հայ և այլն։ Ժամանակակից է Անտոնինոս Կարակալլա և Լուկիոս Վերոս կայսրերուն։ Հմուտ էր մոգական գիտութեանց և աստեղագիտութեան. գիտէր ասորերէն ու լաւ հելլէներէն։ Իր յաջող ճարտարախօսութեան մասին շատ մը բաներ կը պատմըւին։ Ասորերէն լեզուն կը գործածէր միշտ։ Կ՚ըսուի թէ արևելեան եկեղեցիներուն մէջ ի՛նք է որ եղանակ մտցուցած է։ Գրած է 150ի չափ եկեղեցական երգեր։ Իրեն կ՚ընծայուին Բաշխից կամ Գուշակութեանց անուն գիրքը, ինչպէս նաև նմանօրինակ ուրիշ գրութիւններ։

Երբ հռոմէացիք Եդեսիոյ տիրեցին, ինք անցաւ Հայաստան, ուր ապրած ատեն, երբ Անի ամրոցին մէջ էր, շարադրեց հայոց առաջին թագաւորներու և հայոց մեհենական պատմութիւնները, զորս ապա իր աշակերտները յունարէնի թարգմանելով պահեցին Եդեսիոյ դիւանին մէջ։ Բարդածան եղած է ճշմարտախօս և կորովի հեղինակ։ Խորենացի և Եւսեբիոս շատ օգտուած են իրմէ։ Մարիբաս Կատինայէն վերջ մեր պատմութեան ու գրութեան մէջ ամենէն հին օտար աղբիւրը Բարդածանն է։



# ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## (ԱՆԳԻՐ ԺԱՄԱՆԱԿ)

*Ընդհանուր ակնարկ.— Գրիգոր Լուսաւորիչ.— Ագաթանգեղոս.— Զենոբ Գլակ.— Փաւստոս Բիւզանդ.— Ներսէս Պարթեւ.— Պոլյեւկտոս կամ Պարոյր Հայկազն.— Խոռոհբութ.— Արտիթէոս եւ այլն:*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ.— Հայաստանի վերջնական դարձէն առաջ հայ եւ օտար քանի մը դէմքեր կան, որոնք կը գրեն հայոց եւ Հայաստանի մասին։ Ասոնք ալ գրի գիւտէն առաջ ապրելով, ամենահին մատենագրական դէմքերուն պէս թէեւ ուղղակի հայ գրականութեան չեն վերաբերիր, մանաւանդ երբ իրենց գործածած լեզուն խնդրական է, սակայն իբրեւ աղբիւր ծառայած ըլլալով եւ հայ պատմութեան ու դպրութեան հետ առնչութիւն ունենալով՝ կը ներկայացնենք համառօտակի։*

*ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.— Իրմով կը սկսի քրիստոնէական այն գրականութիւնը, որ հայ մատենագրութեան առաջին մասն է։ Գրիգոր ծնած է 247ին։ Մեծն Խոսրովը սպանող դաւաճանին եռամեայ որդին էր, որ իր քրիստոնեայ դայեակին Եւթաղի ձեռքով կոտորածէն ազատելով տարուեցաւ Կապադովկիա։ Իր կրթութիւնն առաւ այդ նահանգին Կեսարիա քաղաքին մէջ, որ քրիստոնէական դաստիարակութեան կարեւոր կեդրոն մ'էր այն ատեն։ Իր ամուսնութենէն ունեցաւ երկու մանչ զաւակներ Վրթանէս եւ Արիստակէս։ Ի վերջոյ երկուստեք յօժարութեամբ իր կնոջմէն զատուեցաւ եւ Հա-*

յատուկ եկաւ Տրդատի քով ծառայելու։ Տրդատ սափ-պեց զինքը կուռքերուն պաշտամունք ընել, բայց ան մերժեց խոպառ։ Ասով սկսաւ չարչարանքի այն շարքը, որուն մասին մանրամասնօրէն գրել աւելորդ է։ Ասոր ձգուեցաւ վիրապը, ուրկէ Եկեղեցական Պատմութեան մէջ պատմուած հրաշալի պայմաններուն մէջ ելլելով՝ դարձաւ հայկական կրօնական յեղաշրջութեան պարագլուխն ու մեծագոյն գործիչը։ Քառորդ դարու չափ արժանաւորապէս բազմեցաւ հայրապետական աթոռին վրայ, իր գործունէութեան ամբողջ ընթացքին մէջ ուսումնական շարժում, քրիստոնէական կրթութիւն և կենդանութիւն տարածելով ամեն կողմ։ Ինչպէս Հայ Եկեղեցին, այնպէս ալ Յոյն Եկեղեցին կը տօնէ իր յիշատակը՝ զայն անուանելով Մեղաղոյ Արմենոյ (Մեծ Հայ)։

Գրիգոր Լուսաւորիչ գրեց Յաճախապատում, որ կը պարունակէ 23 հատ ճառեր՝ աստուածաբանական, կրօնա-բարոյագիտական, եկեղեցական ու կենցաղական նիւթերու վրայ. կը խօսի ժողովրդային կեանքին մասին. կուտայ յորդորներ, հայրապետական սաստ ևայլն։ Ժամանակակից յունա-քրիստոնէական փիլիսոփայութեան հայոց պատշաճեցումն է ասիկա։ Յաճախապատումի լեզուն խնդրական է. ոմանք կը կարծեն թէ հայերէն լեզուով գրեց՝ յունական գրերու փոխառութեամբ. ուրիշներ ալ յունարէն գրելը կ'ընդունին։

Իրեն կ'ընծայուին քանի մը մանր երկասիրութիւններ ևս.— 30ի չափ եկեղեցական Կանոններ, «Հաւատոյ Հանգանակ»ին մէջի յաւելուածական Իսկ մեք փառաւորեսցուք, Աստուած մեծ, Ոչ որ եւ փառաւորեալ քարոզը, Օրհնեալ է մարդասիրութիւն քո, Սէր իմ և Աղաչեմ զքեզ սկզբնաւորութիւնով աղօթքները։ Վերջերս Պատարագամատոյց անուն գործ մ'ալ իրեն ընծայեցին։

ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ.— Յունական-հռովմէական առաքելութեան գլխաւոր արտադրութիւնն է Ագաթանգեղոսի անունով հասած պատմութիւնը։ Սա ազգով հռովմայե-

ցի, Տրդատի հետ Հռոմէն եկած էր՝ իբրեւ անոր արքունի քարտուղարը: Իր անունը կազմուած է ագաթոս և անկեղոս յունարէն բառերէն, որոնք կը նշանակեն բարի հրեշտակ կամ բարի աւետիք: Ագաթանգեղոս կ'ապրէր Դ. դարու սկիզբները և ականջալուր ու ականատես էր Լուսաւորչի քարոզութիւններուն ու Տրդատի մեծագործութիւններուն: Արքունի հրամանով գրած է Տրդատի և Լուսաւորչի գործունէութեան պատմութիւնը: Իր մասին գովեստով կը խօսին Խորենացի, Փարպեցի և բոլոր հայ մատենագիրները: Ագաթանգեղոսի ոճը գունագեղ է և հրաշապատում, և գրիչը ճարտար ու կարգաւոր: Կը պատմէ Լուսաւորչի գործերը՝ հրաշալի երեւոյթով մը, չափազանցեալ ու խանդավառուած կերպով:

Ագաթանգեղոսի պատմութեան նիւթը կը կազմէ Քրիստոնէութեան Հայաստան մուտքը, սկսելով Խոսրովէն ու հասնելով մինչեւ Լուսաւորչի առանձնանալը: Իր պատմութիւնն ունի երեք մասեր. 1. Ս. Լուսաւորչի վկայաբանութիւնը, 2. Գր. Լուսաւորչի վարդապետութիւնը և 3. Հայաստանի դարձը: Գործը կ'աւարտի քրիստոնէական վարդապետութիւնով ու մեկնաբանութիւններով: Հաւանական է որ ասորական դպրոցի արտադրած պատմութիւններն են որ իր գործին առաջը կազմած են: Արդիական քննադատներ կը կարծեն թէ Ագաթանգեղոսի գործը հաւաքածոյ մ'է, պատրաստուած՝ 456էն ետքը, որուն ամենէն ստուգապատում մասը Ս. Գրիգորի կեանքն է: Անոր հրաշապատում հանգամանքը առասպելական թըւած է: Ագաթանգեղոսի թէ՛ հայերէն և թէ յունարէն բնագիրները կան. խնդրական է յունարէն կամ հայերէն գրած ըլլալը: Երկու տեսակէտներն ալ պաշտպանողներ կան:

Պատմութիւնը կ'աւանդէ Կոստանդիանոսի դարձին առթիւ խնդակցութեան համար Տրդատի ու Լուսաւորչի Հռոմ երթալը և հոն բարեկամական դաշինք հաստատուիլը՝ Կոստանդիանոսի ու Տրդատի և Սեղբեստրոսի ու Գրիգորի միջեւ: Այս մասին ակնարկութիւններ ունին Բիւզանդ-

Փաւստոս և Զենոբ Գլակ։ Հիմա կայ Դաշանց թուղթ անուն գրուածք մը, որ Ագաթանգեղոսի կ'ընծայուի. բայց ասոր օտար ու խառնակ լեզուն, պատմական սխալներն ու մանաւանդ «ձախող ներշնչմունք»ը իր անհարազատութեան ապացոյցներն են։

ՁԵՆՈԲ ԳԼԱԿ.— Զենոբ Գլակ ասորի մըն էր, որ Լուսաւորչի հետ Կեսարիայէն Հայաստան եկած էր՝ նոր կրօնին ծառայելու համար։ Լուսաւորիչ Մուշի Իննակնեան կամ Ս. Կարապետ վանքն հիմնելով՝ անոր վանահայր կարգեց զինքը։ Իր կեանքին մասին ասկէ աւելի բան չենք գիտեր։

Իր անունով հասած է Տարօնոյ Պատմութիւն մը, ուր երկարօրէն կը պատմէ Լուսաւորչի կեանքը, չարչարանքը, քարոզութիւնները, Տրդատի ու Լուսաւորչի մղած կռիւները՝ Արձան քրմապետին և անոր Դեմետր որդւոյն հետ, հեթանոսութեան անկումը, կուռքերու կործանումը և այլն։ Եգիպտոսէն հալածուած քանի մը եպիսկոպոսներ Բիւզանդիոնի մէջ կը լսեն քուրմերու և Քրիստոնէութեան կռիւներն Հայաստանի մէջ և Տրդատի յաջողութիւնը։ Ասոնք հետաքրքրուած՝ Լուսաւորչի կը գրեն նամակ մը քանի մը ճգնաւորներու և իրենց աշակերտներու մասին լուր մը առնելու և թէ տեղեկութիւններ քաղելու համար։ Ասո՛ր վրայ է որ Լուսաւորիչ Զենոբի կը յանձնարարէ գրի առնել այս պատմութիւնը։ Գիրքը կը սկսի քանի մը նամակներով, որոնց կը հետեւին պատմական դէպքերը։ Զենոբ Գլակ այս գործին մէջ Լուսաւորչի կենսագիրն է, որ կը ծանրանայ այն բոլոր դէպքերուն ու անձերուն վրայ, որոնք կապ ունին անոր հետ։

Կը կարծուի թէ Զենոբի գործը իր հարազատութիւնը կորսնցնելով շատ աղաւաղուած է։ Արդիական քննադատներ Զենոբ Գլակի անունով ճանչցուած այս պատմութիւնը կը համարին Է. դարու Յովհան Մամիկոնեանի գործը։ Սա թարգմանուած է եւրոպական լեզուներու։ Հաւանաբար Զենոբ ասորերէն գրած է իր պատմութիւնը և հայերէնը անոր թարգմանութիւնն է։

ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴ.— Դ. դարու գլխաւոր պատմագիրներէն մին է Փաւստոս, որուն կենսագրութիւնը չունինք։ Միայն իր գործին մէջ ըրած ցիրուցան ակնարկութիւններէն կը հետևի թէ եպիսկոպոս, աղքատանոցի տեսուչ, ժամանակագիր յունաց և ազգաւ Հռոմ էր։ Իր ուսումն առած է Բիւզանդիոնի մէջ. կարծողներ կան թէ ատո՛ր համար Բիւզանդ կամ Բիւզանդացի կոչուած է։ Ոմանք հայ, ոմանք յոյն և ոմանք ալ ասորի կը կարծեն։ Հաւանական է որ հայ եկեղեցին մէջ երկար ատեն պաշտօնավարող յոյն հոգևորական մ'էր։

Բիւզանդ Փաւստոսի գործն է Բիւզանդարան կոչուած պատմութիւնը, որ կը պարունակէ 29 տարուան պատմութիւն։ Նախ համառօտիւ կը յիշատակէ Ագաթանգեղոսի և Զենոբի պատմածները և ապա կը մանրամասնէ Լուսաւորչի ու Տրդատի գործունէութիւնը, կը պատմէ ապա Տրդատէ վերջ Լուսաւորչի յաջորդներուն և Խոսրով Բ.ի, Արշակի, Մեծն Ներսէսի և Հայաստանի յունաց ու պարսից մէջ բաժանման մասին։ Բիւզանդարանը կը պարունակէ վեց դպրութիւն։ Ա. և Բ. դպրութիւնները չկան. հաւանաբար Լաբուբնայի և Ագաթանգեղոսի պատմութեան կրկնութիւնն է։ Գ. Լուսաւորչի և անոր տղոց ու թոռներուն հայրապետութիւնը։ Դ. Մեծն Ներսէսի կեանքին ու գործերուն պատմութիւնը։ Ե. Մեծն Ներսէսի մահուան պարագաները, քաղաքական անցքերով համեմուած։ Զ. Հայոց աշխարհին յունաց և պարսից մէջ բաժնուիլը։ Մէկ խօսքով Բիւզանդ կուտայ Արշակունիներու անկման պատմութիւնը, մեծ լոյս սփռելով այդ բոլոր անցքերուն վրայ։ Իր գործին մէջ կան նախարարութիւններու, տոհմային սովորութիւններու և հայկական աւանդութիւններու վրայ տեղեկութիւններ։ Ագաթանգեղոսէն ու Զենոբէն աւելի ուշադրութեան արժանի, արժանահաւատ և յարգի է Փաւստոս, իր ընտիր և գեղեցիկ երկասիրութեամբ։ Ղազար Փարպեցի մեծ գովեստով կը խօսի իր մասին։

Ունեցած է շատ մը աղբիւրներ. ծանօթ է արքունական ու մեհենական դիւաններու, ազգային պատմութիւննե-րու, ասորերէն եկեղեցական ու քաղաքական պատմու-թիւններու, Ագաթանգեղոսի և այն պատմութեան, որ կորսուած է դժբաղդաբար, և որուն մէկ մասն է Սան-դուխտի վկայաբանութիւնը՝ Ագաթանգեղոսէն և իրմէն պատմուած։ Իր գործին թէ՛ յունարէն և թէ հայերէն բնագիրները կան. բայց ամենայն հաւանականութեամբ յունարէն լեզուով գրած է։ Լեզուն պարզ է և մաքուր։ Անարգական տեղեր ունի հայ-քրիստոնէութեան հասցէին, իբրև մոլորութիւն։ Ասիկա փաստ մ'է իր յոյն և գիր-քին ալ յունարէն գրած ըլլալուն։ Ոմա՛նք կ'ըսեն թէ Ս. Ներսէսի ի պատիւ և կամ իր պաշտօնակից եպիսկոպոս-ներու խնդրանքով հայերէն գրած է, ու ի վերջոյ յունա-րէնի թարգմանուած։ Այսպէս մտածողները յոյն օրինա-կողներու կը վերագրեն այդ անարգական մասերը։

ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ ՊԱՐԹԵՒ.— Հայոց բանիբուն հայ-րապետը, որ յաջորդեց Փառնէրսեհի։ Գլխիկուց կրթը-ւած է Կեսարիա՝ կրօնական և իմաստասիրական ուս-մանց մէջ։ Նախ զինուորական էր, որ ապա կղերական դարձաւ։ Իր կաթողիկոսութեան ատեն եղաւ մեծագործ.— շինեց դպրոցներ, վանքեր; դարմանոցներ, որբանոցներ, և այլն, 2000ի չափ, և ամեն տեղ կարգ ու կանոն մըտ-ցուց։ Մեծ էր Ներսէսի ազդեցութիւնը իր ժամանակի սերունդին վրայ՝ հոգեւորապէս, բարոյապէս և իմացա-կանապէս։ Եղած է մեծ բարեկարգիչ մը և յունակա-նութեան հզօր առաքեալ մը։ Իր կենսագրութիւնը ա-ւելի Եկեղեցական Պատմութեան կը վերաբերի և մա-տենագրական յիշատակներ չունի դժբաղդաբար։ Հին աւանդութիւն մը իրեն կ'ընծայէ քանի մը Աղօթներ և Հանգստեան շարականներ։

ՊԱՐՈՅՐ ՀԱՅԿԱԶՆ.— Աթէնքի և Հռոմի նշանա-ւոր ուսանողներէն է Պրոյերեսիոս կամ Պարոյր Հայկազն, Դ. դարու հայ նշանաւոր պերճախօսը, որ օտար երկիր-

ներու մէջ փայլեցուց իր հանճարը։ Իր մասին հայ մատենագիրները ոչինչ կ՚ըսեն։ Ժամանակակից հեղինակ մը, Եւնապիոս յոյն է որ իր կենսագրութիւնը կուտայ սքանչանօք։ Նախնական կրթութիւնն առած է հռետոր Ուլպիանոսէն, Անտիոքի մէջ, ուրկէ Աթէնք անցած է։ Իր ուսանողական կեանքը շատ թշուառ ու արգահատելի է։ Բայց յարատեւ աշխատութեամբ մեծ յաջողութիւններ կ՚ունենայ և ճարտարախօսութեան ուսուցիչ կ՚ըլլայ։ Ունեցած է նշանաւոր աշակերտներ։ Հակառակ իր նախանձորդներուն ու թշնամիներուն, յարգուեցաւ ու գնահատուեցաւ Աթէնքի արքունիքէն ու ազնուականներէն։ Իր մրցակիցներուն լարած դաւերուն պատճառով կեանքին մէջ ունեցաւ անկումներ ալ։ Վերջապէս Կոստանդ կայսրը զինքը ղրկեց Հռոմ, ուր փառքը չի բաժնուեցաւ իրմէ։ Իր տաղանդին վրայ հիացողները քաղաքին մէջ կանգնեցին արձան մը, որուն վրայ գրուած էր «Դշխոյն քաղաքաց՝ թագաւորի բանին»։ Մեռաւ 95 տարեկան հասակին մէջ, ոչինչ թողլով զինքն արտագրող ցեղին։ Իր կենսագրութիւնը կարդալով միայն կարելի է հասկնալ այս հանճարին մեծութիւնը։

ԽՈՌՈՀԲՈՒՏ.— Խորենացի կը յիշատակէ զինքն, իբրեւ դպիր պարսից թագաւորին, Դ. դարուն մէջ ապրող։ 362ին Յուլիանոս ուրացողէն գերի վարուելով կ՚անցնի Յունաստան և քրիստոնեայ կ՚ըլլայ Եղիազար անունով։ Ըստ Խորենացիի, Խոռոհբուտ շարադրած է պատմութիւն մը, որ կը ներկայացնէ Շապուհի, Յուլիանոսի և Խոսրովի գործերը, և կուտայ հայոց ու պարսից վրայ առասպելներ։ Խորենացի զայն աւելի ճշդապատում կը սեպէ։

ԱՐՏԻԹԷՈՍ.— Լուսաւորիչ քրիստոնէացուց զայն, որ քուրմի մը տղան էր։ Արտիթէոս դաստիարակուելով մինչեւ իսկ եպիսկոպոս եղաւ։ Մարկոս անունով միայնակեացի մը ուղղեալ նամակի ձեւով գրած է Լուսաւորչի վարքը, հաւանաբար հայերէն լեզուով։ Անկէ առած է Խորենացի իր պատմութեան այդ մասը։ Գրուածքը կորսուած է։

# ԳՐԱՒՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ա. ԳՐԱԲԱՐԻ ՇՐՋԱՆԸ

*Ընդհանուր տեսութիւն.— Ոսկեդարը եւ ոսկեդարեան մատենագիրներ.— Վեցերորդէն մինչեւ ԺԲ. դարու մատենագիրներ եւ իրենց գործերը։*

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*Գիրերու գիւտէն վերջ հայ մատենագիրներ մինչեւ ԺԲ. դար ջանացած են գրել գրաբար լեզուով։ Հոս տեղը չէ քննելու թէ ի՛նչ է եղած այդ գրաբարը, անիկա միակերպութիւն ունեցա՞ծ է բոլոր դարերու մէջ ալ, ի՛նչ ազդեցութիւններ կրած է և ռամկօրէնը ի՛նչ չափով անոր հարազատութիւնը խաթարած է։ Ասոնք հարցեր են, որոնք հայ լեզուի պատմութեան ընթացքին մէջ վերլուծեցինք համառօտակի։ Գրաւոր մատենագրութեան այս առաջին շրջանը՝ գրաբարի տիրապետութեան ժամանակն է ուրեմն։ Մենք դարերը առանձին առանձին առնելով, հետզհետէ կուտանք մինչեւ ԺԲ. դար հայ մատենագրութեան մէջ երեւցող կարեւոր դէմքերը՝ իրենց կարճ կենսագրական գիծերով ու գործերով։*

### ՈՍԿԵԴԱՐ

*Ընդհանուր տեսութիւն.— Սահակ Պարթեւ.— Մեսրոպ Մաշտոց.— Եզնիկ Կողբացի.— Կորիւն.— Դաւիթ Անյաղթ.— Եղիշէ.— Մովսէս Խորենացի.— Մամբրէ Վերծանող.— Ղազար Փարպեցի.— Դիւտ Կաթողիկոս.— Յովհան Մանդակունի.— Թարգմանիչներ։*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Գիրերու գիւտէն անմիջապէս վերջ հայ լեզուն ու դպրութիւնն ունեցան անօրինակ ծաղկում մը։ Ամեն կողմ բացուեցան դպր-*

րոցներ ու ուսումնավայրեր, ուր հայ պատանեկութիւնը ուսման պարապեցաւ։ Սահակ ու Մեսրոպ իբրեւ ընդհանուր ղեկավարները այս գործունէութեան, պատրաստեցին Ոսկեդարը, որ շնորհիւ թարգմանիչներու անխոնջ և անձնուէր ջանքերուն՝ տուաւ շրջանին փայլուն դրոշմ մը։ Ժողովուրդին բերնին մէջ խօսուած լեզուն դարձաւ գրական լեզու և շատ մը գործեր, թարգմանածոյ կամ ինքնագիր՝ ձեռագիր օրինակութեամբ տարածուեցան ամեն կողմ։ Ոսկեդարն արտադրեց ոսկեղինիկ լեզու մը, անհաւասարելի տաղանդներ և սքանչելի երկեր, որ հայ գրականութեան վարդերն են։ Հին դարերու մէջ չկայ աւելի արդիւնաւոր գրական շրջան մը, քան Ե. դարը։ Ստորեւ կը ներկայացնենք Ոսկեդարի գլխաւոր մատենագիրները։

ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ.— Հայ լեզուի ու գրականութեան մատուցած իր թանկագին ծառայութեամբ անմոռանալի է այս անունը։ Սահակ Պարթեւ Մեծն Ներսէսի որդին և Լուսաւորչի ցեղին վերջին շառաւիղն էր, որուն ծննդեան ժամանակն յայտնի չէ։ Իր կրթութիւնն առած էր Կեսարիոյ և Կ. Պոլսոյ մէջ։ Յունարէնը գիտէր մայրենի լեզուին պէս և շատ մը յոյն գիտուններէ աւելի հելլենագէտ կը համարուէր, լաւ ուսումնասիրած ըլլալով միեւնոյն առեն պարսկերէնը։ Ասպուրակէսէն վերջ կաթողիկոսական աթոռը բարձրացաւ 400 թուականին։ Սահակ որչափ վարչագէտ կաթողիկոս մը, նոյնչափ ալ ձեռնհաս գիտուն մը ու բանասէր մ'էր։ Իր կաթողիկոսութեան շրջանին մէջ և իր ալ ջերմ մասնակցութեամբ սկսած էր ուսումնական ա՛յն արթնութիւնը, որ գրի գիւտին ծնունդ տուած էր, և ա՛յն ոգեւորութիւնը, որ այդ մեծ գիւտին հետեւած էր։

Բացի Հայ Գրի կատարելագործութեան դժուարին գործին մէջ իր ունեցած աշխատակցութեան թանկագին բաժինէն. Սահակ իբրեւ մատենագիր եւս կը մնայ յաւէտ նշանաւոր։ Ինք գիտնական և հմուտ թարգմանիչն է Աստուածաշունչի, որուն գոհար թարգմանութիւնը ապա

բաղդատական սրբագրութեան ենթարկուելով թարգմանիչներու կողմէ՝ աւելի՛ եւս գեղեցկացաւ եւ դարձաւ աշխարհի լաւագոյն թարգմանութիւններէն մին։ Ս. Գրոց թարգմանութեան լեզուն խիստ ընտիր հայերէն է, ազատ բոլորովին յունաբանութենէ եւ խրթնաբանութիւններէ։

Սահակի ինքնագիր հեղինակութիւններուն մէջ նշանաւոր է Վաղարշապատ գումարուած մեծ ժողովէն վերջ գրած Կանոնական թուղթը, որ 8 գլուխներու բաժնուած է եւ կը բովանդակէ եպիսկոպոսներու եւ առաջնորդներու պարտականութիւնները, եկեղեցիին կարգը, քահանաներու ու ժողովուրդին փոխ-յարաբերութիւնները, վանքերու կանոնադրութիւնը, եկեղեցիներու ու վանքերու մատակարարութիւնը եւ եկեղեցւոյ պաշտօնեաներուն ու եկեղեցիին տուրքը կամ ընծան։

Իրեն կ'ընծայուին Մաշտոցին մէջ Քահանայօրհնէքը, Քահանայաքաղը, Աշխարհաքաղը եւ գիշերային ժամերգութեան չորս Քարոզները։ Իր հոգեշունչ քնարին կը պարտինք Աւագ Շաբթու շարականները՝ մեծ մասամբ։

Հայ եկեղեցւոյ այս մեծ դէմքը 439ին կնքեց իր մահկանացուն, գրեթէ 86 տարեկան հասակին մէջ եւ թաղուեցաւ Աշտիշատ։

**ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ.** — Իբրեւ եռանդուն քարոզիչ, Հայ Գիրը կատարելագործող, Հայ լեզուն տարածող եւ վաստակաւոր ուսուցիչ՝ երախտագիտութեան արժանի է միշտ Մեսրոպ։ Իր անունին կցուած Մաշտոց բառը կը մեկնեն յունարէն Մաստոս բառով, որ կը նշանակէ վարպետ։ Մեսրոպ Տարօն գաւառին Հացեկաց գիւղէն Վարդան անուն հայու մը զաւակն էր, որ մօտաւորապէս 361ին ծնած է։ Իր մանուկ հասակէն իսկ հելլենական դպրութեանց քաջածանօթ ըլլալով՝ երիտասարդութեան միջոցին ժամանակ մը արքունի դիւանին մէջ քարտուղարութիւն ըրաւ, յետոյ զինուորական ասպարէզը մտաւ եւ վերջապէս վարդապետ ձեռնադրուեցաւ։ Իր քարոզչութեան շրջանին էր որ հայ գիրերու պէտքին վրայ մտա-

ծեց ու Սահակի և Վռամշապուհի գործակցութեամբ իր իտէալն իրագործեց։ Հայաստանի ամէն կողմերը գրի գիւտէն վերջ բացուած դպրոցներու հոգին էր Մեսրոպ, և յոգնաջան ուսուցիչը, որ ամէն տեղ կը հասնէր։ Գործեց գլխաւորաբար Գողթն, Սիւնիք և Ատրպատական նահանգներուն մէջ, ուր տակաւին կռապաշտութեան հետքեր կային։ Հայոց Գիրը ամբողջացնելէն վերջ Վրաց ու Աղուանից ալ օգտակար եղաւ միևնոյն կերպով, անոնց լեզուներն ալ կատարեալ այբուբենով օժտելով։ Մեսրոպ Բիւզանդիոն ևս գնալով հոն ալ վարժարաններ բացած է և այնչա՛փ մեծ գործունէութիւն ցոյց տուած որ կայսրէն ու Ատտիկոս հայրապետէն Ակումիտ (անքուն հսկումով ուսումնասիրող) տիտղոսն առած է։ Իր կեանքին մասին աւելին չենք գիտեր դժբաղդաբար. այսչափն ալ կը պարտինք Կորիւնի։

Աստուածաշունչին թարգմանչական աշխատութենէն զատ, որ արհամարհական գործ մը չէ անշուշտ, իրեն կ'ընծայուին Մեծ պահոց շարականներն ու քանի մը աղօթքներ։ Ինքը կը համարուի ազգային-եկեղեցական ծիսարանին կարգադրիչը, որ թարգմանութիւնով կամ հեղինակութիւնով ճոխացուց զայն և իր Մաշտոց անունն անոր տուաւ։

Մեռաւ երանելին՝ Սահակ Պարթևէն վեց ամիս վերջը, 439 Մեհեկան ամսոյ 17ին և թաղուեցաւ Օշականի մէջ։

ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ.— Ոսկեդարի երէց թարգմանիչներէն է Եզնիկ, Սահակի ու Մեսրոպի աշակերտը և Բագրեւանդի եպիսկոպոսը։ Իր դաստիարակութիւնն առած էր Բիւզանդիոնի մէջ և շատ հմուտ էր ո՛չ միայն հայ, յոյն, ասորի, պարսիկ և նոյնիսկ եբրայական լեզուներու, այլ և ժամանակին իմաստասիրական ու բնական գիտութիւններուն։ Գրի գիւտէն վերջ Սահակի յանձնարարութեամբ նա գնաց Եդեսիա և Բիւզանդիոն Ս. Գիրքերու «ստոյգ և հաստատուն» օրինակներ բերելու համար։ Մասնակցած է Աստուածաշունչի գոհար թարգմանութեան և մեծագոյն օժանդակն հանդիսացած Սահակի և Մեսրոպի։

Թարգմանչական աշխատութիւնէն զատ Եզնիկ գրած է պատմական գործեր, որոնք ժամանակի ընթացքին մէջ փճացած են։ Զինքն անմահացնող հրաշակերտն է Եղծ Աղանդոցը, որուն մէջ Կողբացի կը յայտնուի՝ պայծառ ոճով, նուրբ ու բարձր ճաշակով, սքանչելի հայերէնով, եռանդուն տրամաբանութեամբ և ջախջախիչ ընդդիմաբանութեամբ։ Եզնիկ հանգամանօրէն ծանօթ էր հեթանոսական և պարսկական հաւատալիքներու, հայկական ժողովրդային նախապաշարումներու, յունական փիլիսոփայութեան և քրիստոնէական աղանդներու։ Նա իր այս գիրքով կը պայքարի ա՛յն սերունդին դէմ, որ Աղեքսանդրիայէն ու Աթէնքէն իր հետ կը բերէ գրականութեան, գիտութեան, գաղափարներու ու փիլիսոփայութեան բոլորովին նոր հոսանքներ, որոնք կրնային հայ ժողովուրդին համար գայթակղեցուցիչ ըլլալ։ Եզնիկի այս գործը կը բաղկանայ չորս մասերէ(1), որոնք կը հերքեն հեթանոսները, պարսից և յունաց իմաստուններու գաղափարն ու Մարկիոնի աղանդը։ Եղծ Աղանդոցը բաւական գաղափար կու տայ պարսիկներու և մանաւանդ հին հայոց կրօնքին, հաւատալիքներուն, նախապաշարումներուն և մտածութիւններուն մասին, կը խօսի յունական փիլիսոփայութեանց մասին և Ե. դարու քրիստոնեայ հայերու մտայնութիւնը ցոյց կու տայ։ Եզնիկ ունի աղամանդեայ չքնաղ հայկաբանութիւն և հիանալի շարադրութիւն։

Իրեն կ'ընծայուին նաև խրատական փոքրիկ յորդորակներ, որոնք սակայն Ս. Ներսէսի վերաբերելով՝ հաւանաբար իր թարգմանութեամբ հայացած են։

ԿՈՐԻՒՆ.— Սահակի և Մեսրոպի երիցագոյն աշակերտներէն է Կորիւն, Վրաց աշխարհին եպիսկոպոսը, որ Ղեւոնդ Երէցի հետ Բիւզանդիոն գնաց ուսանելու համար և ապա Երուսաղէմ ալ այցելեց։ Իր կեանքը յայտնի չէ աւելի։ Գրած է իր ուսուցչին Մեսրոպի կեան-

(1) Ա. Եղծ աղանդոց հեթանոսացն, Բ. Եղծ քէշին պարսից, Գ. Եղծ կրօնից յունաց իմաստնոցն և Դ. Եղծ աղանդոյն Մարկիոնի։

*քը: Միակ տեղեկատուն է Մեսրոպի նկատմամբ, որ, թէեւ անոր կեանքին մանրամասնութիւնը չտար, բայց լաւ կը պատկերացնէ այն դէպքերը, որոնք կապ ունեցած են անոր հետ: Գիրքին անունն է* Պատմութիւն վարուց Ս. Մեսրոպայ*, որուն մէջ ականատեսօրէն կը պատմուի Մեսրոպի զինուորական եւ կրօնաւորական կեանքը: Կորիւնի լեզուն մաքուր է եւ ոճն ընտիր. բայց երբեմն այնպիսի խրթին ու մութ դարձուածքներ ունի որ օրինակողներու խղճամտութիւնն ու ուշադրութիւնը կասկածի կ'ենթարկուի: Լեզուի նմանութենէն հետեւցնելով ենթադրողներ կան որ Ագաթանգեղոսի թարգմանիչը Կորիւնն է:*

*ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ.— Սահակի եւ Մեսրոպի ղրկած* 60 *աշակերտներէն մին է Դաւիթ, Խորենացիի քեռորդին, որ ծնած է Տարօնի Հարք գաւառին Հերեթ կամ Հերեան գիւղին եւ կամ Ներգին աւանին մէջ: Ասոր համար երբեմն* Ներգինացի *ալ կ'ըսուի: Իր ուսումն առաւ Աթէնքի մէջ, եւ իր մեծ տաղանդով մեծ համբաւ հանեց Յունաստանի մէջ: Կոչուեցաւ «եռամեծ փիլիսոփայ», «ամենագիտուն» եւ* անյաղթ*: Իր Հռետորական ու փիլիսոփայական կարողութիւններուն մասին շատ մը առասպելներ կը պատմուին: Երկար ատեն Յունաստան մնալէ վերջ երբ Հայաստան դարձաւ, տեսնելով հայրենիքի խեղճութիւնն ու գիտութիւններու վերաբերմամբ տիրող արհամարհանքը՝ քաշուեցաւ վանք մը եւ հեռացաւ կեանքէն:*

*Հակառակ իր համբաւին, համեմատաբար քիչ բաներ հասած են մեր ձեռքը՝ Դաւիթ Անյաղթի գործերէն: Իր փիլիսոփայական գործերն են.* 1. Մեկնութիւն Ստորոգութեանց Արիստոտէլի, 2. Վերլուծութիւն ի Ներածութիւն Պորփիւրի, 3. Գիրք սահմանաց կամ Սահմանք իմաստասիրութեան *եւ այլն: Իբրեւ հայկաբան ոչինչ կ'արժէ Դաւիթ Անյաղթ, որուն լեզուն հելլենաբան է կատարելապէս եւ բարբարոս: Ոսկեդարի յունաբանութեան պարագլուխն ու ներկայացուցիչն է Դաւիթ Անյաղթ: Այս խառն լեզուն թէեւ հետեւողներ ունեցաւ, բայց բարեբաղդաբար տե-*

ւական և հիմնական չիզար։ Այս օտարոտի լեզուով քանի մը ուրիշ երկրորդական թարգմանութիւններ ալ ունի։ Խաչի ճառը սակայն, զոր իրեն կ'ընծայեն, զերծ է լեզուի այս թերութենէն։

ԵՂԻՇԷ. — Նշանաւոր պատմիչ է Եղիշէ, որ կը համարուի Վարդան Մամիկոնեանի մտերիմը և քարտուղարը կամ պարգևապետը։ Իր կեանքին մասին ասկէ աւելին չենք գիտեր։ Մեռաւ Ռշտունեաց գաւառին մէջ, և թաղուեցաւ վանք մը, որ կը կոչուի Ս. Եղիշէի Վանք, (Ջաղար Ս. Նշան) և որ կը գտնուի Վանայ Ծովին մօտ Ոստան գաւառին մէջ։

Եղիշէի գլուխ գործոցն է Պատմութիւն Վարդանանցը, ուր իբր ականատես կը պատմէ Ե. դարու մէջ տեղի ունեցած Շաւարշանի հայ-պարսկական մեծ պատերազմը։ Եղիշէի Պատմութիւնը կը բաժնուի եօթը գլուխներու կամ եղանակներու, ինչպէս ինք կ'անուանէ, որոնց մէջ վիպական քնքշութեամբ մը կը պատմէ այդ շրջանի բոլոր իրադարձութիւնները։ Ոսկեդարի գործերէն մին է իր գիրքը՝ իր ճոխ, մաքուր ու յանկուցիչ լեզուով։ Եղիշէ աւելի բանաստեղծ ու վիպագիր է այդ գործին մէջ, քան պատմագիր, բայց ստուգապատում ըլլալէ չդադրիր։ Եզնիկէ վերջ երկրորդ հայկաբանն է Եղիշէ։ Եզնիկի հայկաբանութիւնը շատ ուժեղ, պարզ ու վճիտ է, մինչ իրենը՝ գեղեցիկ, փափուկ ու արուեստոտ։ Եղիշէի պատմութիւնը «Ոսկեղինիկ մատեան» կոչած են։ Թարգմանուած է եւրոպական քանի մը լեզուներու։ Եղիշէ ունի նաև ուրիշ զուտ կրօնական գործեր ալ, միևնոյն մաքուր լեզուով գրուած. ինչպէս, Ճառ միանձանց, Մեկնութիւն Յեսուայ եւ Դատաւորաց, Մեկնութիւն Տէրունական աղօթից և զանազան ճառեր՝ Քրիստոսի Մկրտութեան, Այլակերպութեան, Խաչելութեան և Թաղման վրայ։

Վարդանանց պատերազմէն ետքը Եղիշէ առանձնացաւ նախ Մոկաց լեռներուն և ապա Ռշտունեաց գաւառին մէջ, ուր և կնքեց իր մահկանացուն։

*ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ.— Ամբողջ հայ մատենագրութեան ընթացքին մէջ չկայ դէմք մը, որուն վրա այնչափ թեր ու դէմ բաներ խօսուած ու գրուած ըլլան, որչափ Մովսէս Խորենացին, որուն շուրջը 50 տարիէ ի-վեր բանասիրական ահագին գրականութիւն մը կայ կազմըւած: Հայ և օտար գիտուններ զբաղած են իրմով: Իր գործը, որ կը վերաբերի հայոց ծագման և ամբողջական պատմութեան, քանիցս մանրամասն հետազօտութեան ու քննադատութեան ենթարկուած է: Ժամանակ մը Խորենացին ամէն ինչ էր Հայոց Պատմութեան համար. և ի վերջոյ նկատուեցաւ անարժէք ու նոյն իսկ խարդախող:*

*Ըստ աւանդութեան, Մովսէս Խորենացի, որ քերթողահայր և պատմահայր տիտղոսն ունի, ծնած է Տարօնի Խորոնք գիւղը: Ենթադրողներ կան որ Հայաստանի կեդրոնէն էր, Արարատեան նահանգէն, որ հին ատեն Խորին Հայք կը կոչուէր: Կրտսեր թարգմանիչներէն էր: Իր ծննդեան ու մահուան թուականներուն մասին ո՛չ մէկ յայտնութիւն կայ. 370-490 թուականներուն մէջ ապրած կը նկատեն: Խորենացի բազմահմուտ անձնաւորութիւն մ'է, ուսումնասիրող, քննող, ընթերցող ու քաջածանօթ իր ժամանակի գիտութեանց և իմաստասիրութեան: Երկար ժամանակ օտար երկիրներ մնաց: Իր վերադարձի թուականը 441ը կը նկատեն: Հայաստան եկած ատեն՝ Սահակ, Մեսրոպ և ուրիշ երէց թարգմանիչներ մեռած էին արդէն: Իր ծերութեան օրերն անցուցած է թշուառութեամբ: Կ'ըսուի թէ միմիայն Գիւտ Կաթողիկոս քաջալերեց զինքը և օգնեց իրեն: Պատմութիւնն արձանագրած է այն սոսկալի անարգանքը, որուն ենթարկեց իր ժամանակի հայ կրօնաւորութիւնը այս գիտնական ծերունին, նախանձէն բոլորովին կուրցած: Մեռած է Տարօնի մէջ և թաղուած Ս. Առաքելոց վանքի եկեղեցին:*

*Խորենացի հանճարեղ գրող է և փայլուն դէմք մը Հայ Մատենագրութեան մէջ: Մեծահամբաւ գործն է Պատմութիւն Հայոցը, զոր Սահակ Բագրատունիի խնդ-*

բանքին վրայ գրեց՝ աւարտելով 480ին։ Այս գործին մէջ պատմահայրը, օգտուելով հայ և օտար բանաւոր կամ գրաւոր աղբիւրներէ, մանաւանդ Մարիբաս Կատինայի գիրքէն, ինչպէս ինք կը խոստովանի, կու տայ հայոց ծագումն ու 2-3000 տարուան պատմութիւնը՝ համառօտ ու ճոխ ոճով մը, վարպետ գրիչով և պատմելու գրաւիչ ու հետաքրքրական եղանակով մը։ Խորենացիի լեզուն խրթին է և շատ հելլենաբան, — բան մը՝ որ իր կլասական և իմաստասիրական պարագաներուն կրնայ վերագրուիլ։ Խորենացիի Պատմութիւն Հայոցը երեք մասերէ կը բաղկանայ.

Ա. ԾՆՆԴԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ.— Գիրքին այս մասին մէջ Խորենացին աշտարակաշինութենէն սկսելով կը խօսի Հայ Ազգին ծննդաբանութեան ու ծագումին մասին։ Այնուհետեւ կը գրէ Հայկի և իր յաջորդներուն վրայ՝ մինչեւ Հայկազանց հարստութեան վերջը։ Ապա հարեւանցի կերպով կ'անցնի անիշխանական շրջանին վրայէն։

Բ. ՄԻՋԱԿ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԵՐՈՑՆ ՆԱԽՆԵԱՑ.— Ասոր մէջ նախ պզտիկ գլուխով մը կը խօսի պարսկական առասպելներու մասին։ Ապա կը մտնէ բուն նիւթին մէջ, որ կը սկսի Արշակունեաց հարստութենէն մինչեւ Սասանեաններու ոտնձգութիւնները, Քրիստոնէութեան Հայաստան մուտքը և Տրդատի ու Լուսաւորչի մահը։

Գ. ԱՒԱՐՏԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՄԵՐՈՑ ՀԱՅՐԵՆԵԱՑ.— Կը սկսի Տրդատի յաջորդներէն և հասնի մինչեւ Արշակունեաց իշխանութեան տխուր անկումը։ Այս Գ. Գիրքին մէջն է այն նշանաւոր Ողբը, որուն մէջ Խորենացի կը պատկերացնէ Հայաստանի ապականած բարքերն ու աղտոտութիւնները։

Խորենացիի գործին քննադատութիւնով զբաղողներն են Կարիէր, Գուտշմիդ, Սէն Մարդէն, Վէպեր, Լէօզիէռ, Բեդերմէն, Վիքթոր Լանկլուա, Պիշար, իսկ հայազգիներէն՝ Յակոբ Վրդ. Կարինեան, Բրոֆ. Պատկանեան, Ա. Գարագաշ, Մ. Էմին, Բրոֆ. Գ. Խալաթեանց և այլն։ Հոս կ'ամփոփենք գլխաւոր եզրակացութիւնները։

1. Շատ կասկածելի է որ Արշակի օրով Նինուէն թագաւորական դիւան ունենար, վասնզի Աղեքսանդր ո՛չ կամք և ո՛չ ալ ժամանակ ունէր Նինուէի պատմական յիշատակարանները քաղդէերէնէն յունարէնի վերածել տալու:

2. Մարիբաս Կատինայի անունը Արշակի ժամանակին չպատկանիր, վասնզի այս անունը կազմող բառերը ասորիներու մէջ գործածուած են Քրիստոնէութեան ատեն կամ անկէ վերջը։

3. Խորենացի ամենեւին ի ձեռին չէ ունեցած կարգ մը գործեր, զորս կը յիշէ, այլ՝ օգտուած է մի՛միայն անոնց այն հատուածներէն, որոնք կը գտնուին Եւսեբիոսի Ժամանակագրութիւնն ի հայերէն թարգմանութեան մէջ։

4. Մարիբասի կորուած շարագրութեան բովանդակութիւնը հիմնուած է ո՛չ թէ Նինուէի դիւանէն քաղուածներուն, այլ՝ հայոց ժողովրդական-վիպասանական զրոյցներուն վրայ։

5. Հայկազեան առաջին 10 իշխանները պատմական անձեր չեն, այլ՝ ցեղական, տոհմային և տեղական վիպանուններ։ Հայկազեան յիշուած 30 թագաւորներու անունները ալ պատմական չեն, այլ՝ յօրինուած Շամիրամի 30 անընդունակ յաջորդներու նմանութեամբ, Կտեսիասի պատմութեան համաձայն։

6. Մովսէս Խորենացիի պատմութիւնը Ե. դարու գործ չէ, որովհետեւ 1.) Ղազար Փարպեցի, որ իրմէ առաջ եղած մատենագիրները խնամով կը յիշատակէ, հակառակ իր սովորութեան, չյիշեր Խորենացին, և 2.) Եթէ գրուած է Սահակ Մարզպան Բագրատունիին (մեռած 482ին) խնդրանքին վրայ, ուրեմն պէտք է գիտնայ Վարդանանց պատերազմը, մինչդեռ այդ մասին ոչինչ կ'ըսէ։ Եթէ չգիտեր, ուրեմն Սահակ Բագրատունիի մանկութեան ատեն կը հանդիպի այդ պարագան։

7. Խորենացի օրինակութիւններ կ'ընէ այնպիսի հեղինակներէ, որոնք Ե., Զ. և նոյնիսկ Է. դարուն կը պատկանին։

8. Որպէսզի իրեն առաջարկուէր Բագրատունեաց տոհմին պատմութիւնը գրել, հարկ էր մինչեւ Ը. և Թ. դարերը հեռանալ, որպէսզի Բագրատունիներու բարձրացումը տեսնուի։

9. Ուրեմն Մովսէս Խորենացի Ե. դարու մատենագիր մը չէ, այլ կեղծ և խարդախ գրող մը, որ առնուազն Է. դարուն մէջ պէտք է ապրած ըլլայ։ Իր պատմութիւնը մտացածին առասպելներու հիւսուածք մ'է։ Իր գլխաւոր աղբիւրը Մարիբաս Կատինա պատմական արժէքէ զուրկ է։ Շատ շատ Խորենացիի անունը շփոթուած է ուրիշի մը հետ, եթէ անխիղճ խարդախող մը չէ։

Ինչ որ ալ ըլլան Մովսէս Խորենացիի մասին գոյութիւն ունեցող քննադատութիւնները, որոնք իր գործին պատմական արժէքը կասկածի տակ կը դնեն լրջօրէն, մեզի համար անմահ կը մնայ Խորենացիին անունը և իր գործը, քանի որ իրմո՛վ միայն կրնանք տեղեկութիւններ ունենալ, — հոգ չէ թէ աղօտ և աժգոյն, — մեր անցեալին ու աւանդութիւններուն մասին։ Խորենացի հիանալի բանահաւաք մ'է, որ, առանց պատմագրի տիտղոսին ալ, պիտի մնար գերազանցօրէն յաջողակ գրագէտը։

Ի՛նչ է որ իր պատմութեան միջոցաւ կը դառնայ հայկական աւանդութիւններու գանձարանը, կուտայ Հայաստանի մասին աշխարհագրական արժէքաւոր տեղեկութիւններ և մարաց-պարսիկ աւանդավէպերու մնացորդը ու է՛ հայ ժողովուրդին ազգասիրութեան դարերու ներշնչարանը։ Մովսէս Խորենացիի Պատմութիւն Հայոց դանազան ժամանակներու մէջ թարգմանուած է շատ մը եւրոպական լեզուներու։

Խորենացիին ուրիշ գործերն են. 1. Աշխարհացոյց, որ կ՚ամփոփէ այդ ատենի բոլոր աշխարհագիրներու տուած տեղեկութեանց ամփոփումը, 2. Գիրք Պիտոյից, Պատմութիւն Հռիփսիմեանց, Պատմութիւն Սրբուհւոյ Աստուածածնի եւ պատկերի նորա, Ճառ Վարդավառի, Քերականութիւն եւայլն։

ՄԱՄԲՐԷ ՎԵՐԾԱՆՈՂ. — Խորենացիին կրտսեր եղբայրն էր Մամբրէ, և Սահակի ու Մեսրոպի աշակերտներէն մէկը, որ վերծանող կոչուած է։ Իր մասին մեծ գովեստով կը խօսին թէ՛ ժամանակակից և թէ յետագայ մատենագիրները։ Իր հաւանական բազմաթիւ երկասիրութիւններէն միայն երկու ճառեր հասած են մեր ձեռքը 1. Ղազարու Յարութեան վրայ և 2. Ի Գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ։ Գիւտի և յօրինուածքի տեսակէտով առաջինն աւելի ընտիր ու գերազանց է։ Թ. դարու պատմագիր Թովմա Արծրունի ալ Մամբրէի կ՚ընծայէ պատմական գրուածք մը, որ չկայ դժբաղդաբար։

ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ. — Ոսկեդարի ակնառու պատմիչներէն մին ալ Ղազար Փարպեցին է։ Սա ունի ազնուական ծագում, իր նախնական կրթութիւնն առած է վրաց Աշուշայ բդեշխին տան մէջ և կը թուի Վահան Մամիկոնեանի խաղընկերն ու կաթնեղբայրը եղած ըլլալ։ Ղազար ալ ուրիշ մատենագիրներու պէս Յունաստանի մէջ առած է դաստիարակութիւնը, և Ճարտասան կոչուած։ Երբ Հայաստան դարձաւ, նախ Սիւնեաց գաւառը մնաց և ապա Վահան Մամիկոնեանի կողմէ էջմիածնի նորաշէն կաթողիկէին հոգաբարձու նշանակուեցաւ։

Պէտք է ըսել որ ինք բարեկարգեց վանքը և իր անձնուէր աշխատութիւններով մեծ համբաւ հանեց: Հայ եկեղեցականներ, որոնք չէին կրնար հանդուրժել Փարպեցիի յաջողութեան ու համբաւին, նախանձով լեցուած՝ զինքն ամբաստանեցին իբրեւ աղանդաւոր, մոլութեանց քաջալերիչ և այլն: Վահան ասոնք լսելով սպառնաց Ղազարն ու բոլոր կրօնաւորները վանքէն դուրս վռնտել: Ղազար ինքզինքն արդարացնելու համար ի զուր դիմեց Յովհան Մանդակունի կաթողիկոսին. իսկ իր հակառակորդները, լքուած և անպաշտպան գտնելով զինքը, առիթէն օգտուեցան և օր մը վանքէն վտարեցին: Ղազար Ամիդ գնաց և անկէց Վահանի գրեց իր նշանաւոր թուղթը՝ ուր ինքզինք կը պաշտպանէ՝ իր մասին նախանձոտներու ըրած զրպարտութիւններուն դէմ:

Ղազար Փարպեցիի գլխաւոր երկասիրութիւնն է Պատմութիւնը: Գործը կը սկսի Ագաթանգեղոսի և Բիւզանդի պատմածներով, Արշակունեաց թագաւորութեան անկումով, կը շարունակուի տառերու գիւտով, կրօնական հալածանքով, Եղիշէի պատմութիւնով և կը հասնի մինչև Վահանի մարզպանութիւնը: Ղազարի ոճը կորովի է և լաւ նկարագրող: Իր լեզուն պարզ է և աւելի ազդուած Նախնեաց ռամկօրէնէն: Այս գիրքը եւրոպական քանի մը լեզուներու թարգմանուած է:

ԳԻՒՏ ԿԱԹՈՂԻԿՈՍ.— Փարպեցի կը վկայէ Գիւտ Կաթողիկոսի համար թէ հմուտ էր հայ և յոյն լեզուներու ու եռանդով կը քարոզէր ժողովուրդին: Իր գրութիւններէն շատ քիչ բան հասած է մեր ձեռքը. երկու թուղթեր միայն, մին Դաւիթ Անյաղթի ուղղուած և միւսը՝ Աղուանից Վաչէ թագաւորին: Կատարած էր անշուշտ թարգմանչական աշխատութիւններ: Ժամագիրքի և Հասարակաց Աղօթքի կարգադրութեան ալ մասնակցած է: Մեռած է 475ին:

ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ.— Արշակունեաց Ծախնոտ գիւղէն էր Յովհան Մանդակունի, որ 75 տարեկան հասակին մէջ Վահան Մամիկոնեանի խնդրանքով կաթողի-

կոսական աթոռը նստաւ։ Վեց տարի հայրապետական պաշտօն վարելէ ետք իր մահկանացուն կնքից եւ թաղուեցաւ Շիրակ գաւառի Բեռնոս գիւղին մէջ։ Իր գլխաւոր երկասիրութիւնները կը սեպուին 28 խրատական կամ վարդապետական ճառեր, որոնց հարազատութեանը մասին ոմանք կը կասկածին։ Փարպեցի կ'աւանդէ իր մէկ գեղեցիկ ատենաբանութիւնը, զոր խօսած է Դուինի եկեղեցիին մէջ՝ Վահանի մարզպանութեան ատեն։ Իրեն կ'ընծայուին Մաշտոցի քանի մը մասերը (Խաչօրհնութիւն, Պսակ, եկեղեցւոյ հիմնարկէք, ակիհի օրհնութիւն եւ այլն)։ Պատարագամատոյցին եւ Ժամագիրքին մէջ ալ ունի այլեւ այլ աղօթքներ ու քարոզներ։

ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐ.— Այս յիշատակուած մատենագիրներէն զատ Ոսկեդարի մէջ կը յիշուին ուրիշ շատ մը թարգմանիչներ ալ, որոնք ժրաջան աշխատութեամբ օտար շատ մը քրիստոնէական-կրօնական կարեւոր գործեր մաքուր լեզուով մը հայացուցին եւ հայ գրականութիւնը ճոխացուցին։

Երէց թարգմանիչներու մէջ յիշատակութեան արժանի են նաեւ ՅՈՎՍԷՓ, Վայոց Ձորէն, որ ապա կաթողիկոս ընտրուեցաւ, ՅՈՎՀԱՆ, որ Խոստովանող կոչուեցաւ, Վանանդացի ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ, որ արիաբար կռուեցաւ զրադաշտականութեան դէմ, ՄՈՒՇԷ ՏԱՐՕՆԵՑԻ եւ ՏԻՐԱՅՐ ԽՈՐՁԵՆԱՑԻ, որոնք ուսումնական գործունէութիւն ունեցան, ՅՈՎՍԷՓ ՊԱՂՆԱՑԻ, ՅՈՎՀԱՆ ԵԿԵՂԵՑԱՑԻ, ԵՆՈՎՔ, ԴԱՆԱՆ, ԵՐԵՄԻԱ, ԹԱԴԻԿ, ԳՆԵԴ, ԱՐՁԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ, ԱՂԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ եւ ՂԱԶՐԻԿ կամ ՂԱԶԱՐԻԿ։ Կրտսեր գլխաւոր թարգմանիչները ներկայացուցած ենք արդէն։

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՐ

Ընդհանուր տեսութիւն.— Պետրոս Եպիսկոպոս Սիւնեաց.— Աբրահամ Եպիսկոպոս Մամիկոնէից.— Մովսէս Եղիվարդեցի եւ Հայոց Տոմարին Նորոգութիւնը.

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Կատարելապէս ամուլ է այս դարը։ Կարեւոր որեւիցէ գրական դէմք կամ

երկասիրութիւն չերեւար։ Աննշան են այն դէմքերը, զորս հայ մատենագրութիւնը մեզ կը ներկայացնէ։ Հետեւեալներն են Զ. դարու երկու մանր գրողները.

ՊԵՏՐՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱՑ.— ԺԴ. դարու պատմագիրներէն Ուռպէլեան մեծ գովեստով կը խօսի իր մասին եւ կ'անուանէ փիլիսոփոս, ճարտող եւ այլն։ Մատենագիրներէն ոմանք Խորենացիի աշակերտ կը համարեն զինքը։ Սիւնեաց Եպիսկոպոսին կ'ընծայուին շատ մը թարգմանութիւններ, ճառեր, մեկնութիւններ, պատմական գրութիւն մը եւ այլն, որոնք մեր ձեռքը հասած չեն։ Իրմէն ունինք ճառեր ու ներբողեան մը։

ԱԲՐԱՀԱՄ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՄԻԿՈՆԷԻՑ.— Քանի մը խրատական գրութիւններ ունի։ Երբեմն կը նկատուէր Եփեսոսի Ժողովին համառօտ պատմութեան հեղինակը, բայց ի վերջոյ յայտնուեցաւ թէ ինք շատ շատ անոր թարգմանիչը կրնար ըլլալ, քանի որ բուն հեղինակը յոյն եպիսկոպոս մ'էր։

ՀԱՅՈՑ ՏՈՄԱՐԻՆ ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆԸ.— Այս դարուն մէջ Մովսէս Եղիվարդեցի կաթողիկոս նորոգեց Հայոց Տոմարը եւ Հայկական Թուականը գործածուիլ սկսաւ։

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐ

Ընդհանուր տեսութիւն.— Կոմիտաս Կաթողիկոս.— Յովհան Մամիկոնեան.— Սեբէոս Եպիսկոպոս.— Մովսէս Կաղանկայտուացի.— Անանիա Շիրակացի.— Մատենագրական ուրիշ դէմքեր։

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Այս դարու ընդհանուր երեւոյթներուն մասին խօսած ենք արդէն լեզուի պատմութեան ընթացքին մէջ։ Զ. դարու մատենագրական ամլութիւնը թեթեւ շարժումով մը փոփոխութիւն կը կրէ։ Մտաւորական ուժգին գործունէութիւն մը չի կայ կրկին։ Ոսկեդարի նուաղկոտ ճառագայթները հազիւ կը նշուլին։ Բաղդատմամբ իր նախորդ դարուն՝ աւելի բեղմնաւոր է այս դարաշրջանը, որուն գլխաւոր մատենագիրներն են.

**ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ**.— Կոմիտաս, որ Աբրահամ կաթողիկոսի յաջորդեց, իր հայրապետութեան օրով Հռիփսիմեանց վկայարանները նորոգելու ձեռնարկեց։ Ագաթանգեղոս տուած էր արդէն Հռիփսիմեան կոյսերու պատմութիւնը. Կոմիտաս կաթողիկոս ալ իր ձեռնարկութեան առթիւ գրեց իր անունով մեզ հասած գրական միակ գեղեցիկ գոհարը, Անձինք նուիրեալք շարականը, որ պատրաստուած է այբուբենի կարգաւ և մեր շարականներու ամենէն գողտրիկներէն և առաջնագոյններէն մին է։

**ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ**.— Տարօնի եպիսկոպոսն էր Յովհան Մամիկոնեան, որ Ներսէս Շինող կաթողիկոսի հրամանով գրած է Տարօնոյ Պատմութիւն մը։ Ամբողջ գործը կը բաղկանայ ութը գլուխներէ, որոնց հինգը Զենոբ Գլակէ թարգմանուած են, իսկ երեքը՝ հեղինակութիւն։ Առաջին հինգ գլուխներուն մէջ կը պատմուին Լուսաւորչի կեանքը և գործերը։ Յովհան Մամիկոնեան ապա կը խօսի Մուշեղ Մամիկոնեանի և Գայլ Վահանի ժամանակին ու գործերուն վրայ։ Իր Պատմութիւնը մեծ արժէք մը չունի. հետաքրքրական է լոկ իր պարզ և ռամկական ոճին համար, որ նոյն դարու ռամկօրէնի ուսումնասիրութեան տեսակէտով կրնայ օգտակար ըլլալ։

**ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ**.— Բագրատունեաց տոհմին պատկանող եպիսկոպոս մէ Սեբէոս։ Ունի Պատմութիւն ի Հերակլ անուն կարեւոր պատմական գործ մը, որ կը պարունակէ 170 տարուան պատմութիւն։ Կը սկսի Ղազար Փարպեցիի թողուցած տեղէն, կը նկարագրէ արաբներու արշաւանքն ու վայրենի նուաճումները, Սասանեանց տկարանալն ու անկումը, արաբներու և Հերակլի ու Մօրիկ կայսեր պատերազմները։ Գործին սկիզբը կայ հայոց ամենահին պատմութիւնը, ուր Ադամ, Նոյ, Հայկ եւայլ բոլորը կը յիշուին։ Սեբէոս գլխաւորաբար այս նի Սոր չօշափելով հանդերձ լաւ կը ներկայացնէ նաեւ նոյն ժամանակի հայ կեանքն ու կրօնական վէճերը։ Սեբէոսի պատմութիւնն ուշագրաւ ըլլալէ չդադրիր։

ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ .— Սա ծնած է Ուտի գաւառին Կաղանկայտուք աւանին մէջ: Իր նշանաւոր երկասիրութիւնն է Պատմութիւն Աղուանից, որ իր տեսակին մէջ հազուագիւտ է: Այս գործին մէջ Մովսէս Կաղանկայտուացի, որ երբեմն Աղուանեցի ալ կը կոչուի, կուտայ Աղուանից ծագումը, անոնց Դ. դարուն Հայաստան գալը, անոնց բարքերն ու հեթանոսական սովորութիւնները, Քրիստոնէութեան դարձը, անոնց դպրութեան մէջ Մեսրոպի դերը, անոնց քաղաքական պատմութիւնը եւ այլն: Հեղինակին գովելի ջանքն եղած է վեր հանել Քրիստոնէութեան եւ Հայականութեան ազդեցութիւնը այս ցեղին վրայ, որ հետզհետէ հայոց բարքերն իւրացուց: Կը հասնի մինչեւ Է. դար: Գովեստով կը խօսի Ջիւանշիր իշխանին խորամանկութեանն ու դիւանագիտութեանը մասին: Իր ոճն ուռուցիկ է, շատ հեռու ըլլալով ընտիր հայկաբանութենէ:

ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ .— Է. դարու ամենէն համբաւաւոր եւ աչքառու մատենագիր դէմքն է հին դարերու այս մեծ գիտնականը, որ իր մշակած սեռով շեղում մը կը կատարէ կարծես հայ գրագէտներու կրօնական ու պատմական երկասիրութիւններուն մէջ: Երկար ատեն Բիւզանդիոն, Պոնտոս եւ այլ կեդրոններ մնացած է ուսման հետեւելու համար: Շիրակացիի ինքնակենսագրութիւնը բարեբաղդաբար բաւական տեղեկութիւններ կուտայ իր կեանքի մասին: Հմուտ էր համարողական (ուսողական) գիտութիւններու: Հայաստան դարձած ատեն ժողովուրդը շատ անտարբեր ու յուսահատ կը գտնէ գիտական ուսմանց նկատմամբ: Իր ժամանակի մարդոց մէջ շատ հալածուած է: Ունեցած է շատ մը աշակերտներ:

Իր գործերուն մէջ մեզի հասածներն են 1. Ինքնակենսագրութիւնը, 2. Կրօնական մի քանի ճառեր, 3. Ցաղագս երկնի անունով Աստեղագիտութիւնը, որուն մէջ կը խօսի երկինքի, երկրի, ծովու, ամպերու եւ այլ բնական երեւոյթներու մասին, 4. Ցաղագս չափուց եւ կշռոց, ո-

րով կը ներկայացնէ զանազան ազգերու մէջ իր ժամանակին գործածուած չափերն ու կշիռները, 5. Բախտական հանելուկներ, որոնցմով թուաբանական խնդիրներ կ'առաջարկուին։ Անանիա Շիրակացի, իբրեւ գիտուն, հայ մատենագրութեան մէջ չատ հետաքրքրական և ուսումնասիրութեան արժանի դէմք մ'է։ Այնչափ մեծ եղած է իր անունը որ այնուհետեւ սովորութիւն դարձած է ուրիշ համարողական գործեր իր անունով մկրտել։ Այս կերպով կը կարծուի հեղինակը նկատուած ըլլալ Եօթնագրեանի կամ Վեցհազարեանի անուն մոգագիտական հատորին, որ հմայողական արուեստին վերաբերող բաւական տարածուած գործ մ'է։ Շիրակացիի հմտութիւնը ուղիղ կը համեմատի իր մաքուր լեզուին հետ։

*ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՈՒՐԻՇ ԴԷՄՔԵՐ*. — Այս դարու մէջ կան նաեւ ՄԱԹՈՒՍԱՂԱ, որ Ուռպելեանի կողմէ «մեծ քերթող և անյաղթ փիլիսոփայ» անուանուելով հանդերձ, իրմէ կարեւոր գործ մը չունինք ձեռքերնիս. ԲԱՐՍԵՂ ՃՈՆ, որուն գլխաւոր երկասիրութիւնն է Մեկնութիւն Մարկոսի Աւետարանին, ԹԷՈԴՈՐՈՍ ՔԸՌԹԵՆԱՒՈՐ, որ ունի խրթին լեզուով զանազան ներբողեաններ, ԳՐԻԳՈՐ ԱՐՇԱՐՈՒՆԻ, որ ընտիր հայկաբանութեամբ Մեկնութիւն ընթերցուածոցը գրած է, ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՁՈՐԱՓՈՐԵՑԻ, ԵԶՆԻԿ ԵՐԷՑ, ԵԶՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՅՐԱՎԱՆԵՑԻ, ԴԱՒԻԹ ԲԱԳՐԵՒԱՆԴՑԻ, ՄՈՎՍԷՍ ՍԻՒՆԵՑԻ, ԴԱՒԹԱԿ ՔԵՐԹՈՂ և այլն։

## ՈՒԹԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր տեսութիւն.— Յովհան Իմաստասէր Օձնեցի.— Ստեփաննոս Սիւնեցի.— Ղեւոնդ Երէց.— Սահակդուխտ.— Խոսրովիդուխտ։*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ*.— Այս դարու հայ մատենագրութիւնը կը չարունակէ նոյն աղքատութիւնը։ Ժամանակի աւերումէն մեզի հասած մատենագրական

դէմքերն ու անունները յատկանշական նորութիւն, առուգութիւն և ընդհանուր ազդեցութիւն չունին։ Միշտ միեւնոյն նիւթերը կը մշակեն մատենագիրներ.— կրօնական, բանաստեղծական և պատմական։ Յիշատակելի են.

ՅՈՎՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ ՕՁՆԵՑԻ.— Տաշրայ գաւառի Օձն կամ Օձուն գիւղէն ըլլալով Օձնեցի կոչուած է։ Իր հմտութեանն ու իմաստալից գրութիւններուն համար Իմաստասէր անունն առած է այս մեծ վիճաբանողը։

Օձնեցիին գլխաւոր երկասիրութիւններն են 1. Ճառ ընդդէմ երեւութականաց (գրուած հերձուածողներու դէմ), 2. Ճառ ընդդէմ Պաւղիկեանց (Մարկիոնի աղանդին հետեւողներուն դէմ), 3. Յաղագս կարգաց եկեղեցւոյ (ժամակարգութեան մեկնութիւններ)։ Գովեստով կը յիշուի այն Ատենախօսութիւնը, որ խօսեցաւ Դուինի ժողովին մէջ։ Իմաստասէրին կ՚ընծայուին Աւագ տօնից շարականներուն մեծ մասը և Հատուածք բանից ու Յաղագս մեծի աւուր միաշաբաթու ճառերը։ Յովհան Օձնեցի ընդհանրապէս ընտիր լեզու ունի, թէեւ հելլենական ազդեցութիւն կը կրէ։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ.— Ուսած է Հայաստանի, Աթէնքի և Հռոմի մէջ, ու բնականաբար հմուտ է հելլեներէնի։ Իրեն կը պարտինք Դիոնիսիոս Արիսպագացիէն և Ս. Կիւրեղէն թարգմանութիւններ։ Գրած է մեկնութիւններ, որոնք մեզի հասած չեն։ Սիւնեցիի թարգմանութիւնները հելլենաբանական են։

Իբրեւ քերթող՝ տաղանդաւոր է Ստեփաննոս Սիւնեցի։ Բարձր բանաստեղծութիւն կայ Սրբութիւն սրբոց և Աւագ օրհնութեանց ընտիր շարականներուն մէջ։

Այս նշանակելի մատենագիրը գիշեր իր անկողնին մէջ սրախողխող սպաննուեցաւ ձեռքովը անառակ կնոջ մը, որ յանդիմանած էր, իր պաշտօնին բերումով։

ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ.— Է. դարու վերջերն ապրած է Ղեւոնդ Երէց պատմագիրը, որուն միակ գործն է Պատմութիւն յաղագս երեւելոյն Մահմետի եւ յաջորդաց նորա։ Այս երկասիրութեան մէջ Ղեւոնդ պարզ եւ [illegible]

լեզուով մը կը խօսի մահմետականութեան արշաւանքնե-
րուն վրայ, կը նկարագրէ Հայաստանի նուաճումը և ա-
պա կուտայ ազգային կեանքը։ Հակառակ գիրքին անունին
իսլամական մարգարէին մասին ոչինչ ըսուած է անոր մէջ,
որովհետեւ Մուհամմէտի մահէն կը սկսի արդէն։ Ղեւոնդի
Պատմութիւնը համառօտ է, բայց ստուգապատում։

ՍԱՀԱԿԴՈՒԽՏ.— Հայ գրականութեան մէջ առաջին
կին դէմքն է Սահակդուխտ, Ստ. Սիւնեցիի քոյրը։ Հը-
մուտ երաժիշտ և երգահան էր սա, որ ի վերջոյ ինք-
զինքը մենակեացութեան տալով՝ քաշուեցաւ առանձնա-
րան մը, որուն առջեւ ձգուած վարագոյրին ետեւէն կ'ե-
ղանակէր և կ'ուսուցանէր։ Իր համբաւը տարածուած
էր ամեն կողմ, և շատեր իրեն աշակերտելու կուգային։
Սահակդուխտ յօրինած է մեղեդիներ և կցուրդներ, որոնց-
մէ մէկը ծայրանունով էր։ Դժբաղդաբար յայտնի չէ թէ
մեզի ծանօթ մեղեդիներէն ո՛րը իրեն կը վերաբերի։

ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ.— Վահան Գողթնացիին քոյրն էր
Խոսրովիդուխտ, որուն կ'ընծայէ աւանդութիւնը Շարական
Վահանայ Գողթնացւոյն ողբանուագ բանաստեղծութիւնը։

## ԻՆՆԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Մաշտոց Կաթողիկոս.— Յովհան Կաթողիկոս.— Թովմա Արծրունի.— Շապուհ Բագրատունի.— Մատենագրական ուրիշ դէմքեր։*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Հետզհետէ մատենագիրներ
իրենց գործերուն մէջ անխնամ լեզու կը գործածեն, շատ
հեռացած ըլլալով գրաբարէն, որուն գերընտիր պարզու-
թիւնը տեղի տուած է արաբական ճոռոմ ոճին։ Հարուստ
չէ Թ. դարն ալ իր նախորդին և իր յաջորդին պէս։ Թը-
ւենք գլխաւոր մատենագիրները.

ՄԱՇՏՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ.— Լաւ դաստիարակուած
մատենագիր մ'էր Մաշտոց, որ քահանայի մը տղան էր
ու իր ընդունակութիւններուն շնորհիւ մինչեւ կաթողի-

կոսական աթոռը բարձրացած։ Իր անունով բաւական գրուածքներ կը յիշատակուին, սակայն անյայտ են մինչեւ հիմա։ Յովհան կաթողիկոս իր Պատմագրութեան մէջ գրած է անոր երկու թուղթերը, որոնցմէ դատելով շատ ընտիր պէտք է ըլլան իր միւս գրութիւնները։

Իր անունին նմանութեանը պատճառաւ ոմանք Հայ Եկեղեցիի Միաբանը,— Մաշտոցը,— ասոր կուզեն ընծայել։ Հաւանական է որ փոփոխութիւններ մտցուցած ըլլայ անոր մէջ․ բայց կարելի չէ հեղինակ համարել։

**ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ**.— Մաշտոց կաթողիկոսին յաջորդեց Յովհան։ Բագրատունեաց պատմիչն է ինքը, իբր գլխաւոր երկասիրութիւն գրած ըլլալով Պատմագրութիւնը, որուն համար զինքը պատմաբան կ՚անուանեն։ Յովհան Կաթողիկոս պահելով ազգային պատմիչներու համար սովորական դարձած եղանակը, իր պատմութիւնը կը սկսի Հայկէն ու կը հասնի մինչեւ իր ժամանակները։ Շատ գեղեցկօրէն կը ճառէ իր ժամանակի անցքերուն, Աշոտ Երկաթի կեանքին, անոր գործերուն, պատերազմներուն և արաբներուն ու յունաց հետ ունեցած քաղաքական յարաբերութիւններուն վրայ։ Իր ոճը գեղեցիկ է, բայց զերծ չէ արուեստականութենէ։

**ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ**.— Արծրունեաց տոհմին անդրանիկ պատմիչն է Թովմա, որ Թ. դարու կարեւոր դէմքերէն է։ Իրեն կը պարտինք այն պատմութիւնը, որ թէեւ չամփոփուիր իր առաջադրած սահմաններուն,— միմիայն Արծրունեաց պատմութեան,— մէջ, այսուհանդերձ կուտայ հետաքրքրական էջեր։ Իր ոճին վրայ կը տեսնուի արաբական լեզուի ազդեցութիւնը։ Շատ համարձակ ու եռանդուն է, այնպէս որ ոմանք ատկէ կը հետեւցնեն թէ աշխարհական մ՚է։ Թովմա Արծրունիի անծանօթ չեն հայ և օտարազգի գրեթէ բոլոր կարեւոր պատմիչները։ Ասով չգոհանալով, անձամբ ալ Հայաստան շրջած ու պատմական տեղեկութիւններ հաւաքած է։ Թովմա Արծրունի իր այս առաւելութիւններով՝ յարգի պատմիչ մ՚է։

Իր պատմութիւնը չորս մասերու բաժնուած է ։ Ա. մասը կը սկսի Նոյէն, կը շարունակուի Մակեդոնական արշաւանքներով և կը հասնի մինչև Ե. դար, միշտ Արծրունեաց տոհմի ցեղական պատմութեան մասնաւոր կարևորութիւն տալով ։ Բ. գիրքին մէջ 400 տարուան դէպքեր կան ։ Ասոր մէջ նկարագրուած են Սասունցիներու կեանքն ու քաջութիւնները ։ Գ. գիրքը կը պատկանի Բուղա արաբ ոստիկանին բարբարոսութիւններուն ։ Դ. րքին մէջ հեղինակն իբրև ականատես կը խօսի Գագիկ Արծրունիի տղուն Գրիգոր Դերենիկի գործերուն, Աղթամարի վանքին և ուրիշ տեղերու շինութեանց վրայ ։

ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ.— Յովհան կաթողիկոսի վկայութեան համաձայն Աշոտ Անթիպատրկի որդին Շապուհ կը ձեռնարկէ գրել՝ «գեղջուկ բանիւ յօրինեալ» Պատմութիւն մը, որ փճացած է, և որ անշուշտ պիտի տար նոյն ատենուան ռամկօրէնը ։ Ազնուական լեզուի նախանձախնդիր մատենագիրները, որոնք ռամկացումը հայ գրականութեան իրաւունքներուն բռնադատումը կը նկատէին, դեր ունին անշուշտ այս թանկագին կորուստին մէջ ։

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՈՒՐԻՇ ԴԷՄՔԵՐ.— Այս դարու մատենագրական դէմքերուն մէջ են նաև՝ ԶԱՔԱՐԻԱ ԿԱԹՈՂԻԿՈՍ, որ թողած է թուղթ մը հայոց Քաղկեդոնի ժողովին չմասնակցիլը պաշտպանող, և զանազան ճառեր՝ կրօնական նիւթերու վրայ, ՍԱՀԱԿ ՄՌՈՒՏ ԱՊԻԿՈՒՐԷՇ, ՀԱՄԱՄ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՐԵՒԵԼՑԻ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ԲԺԻՇԿ, ԴԱՒԻԹ ՎԱՆԱՀԱՅՐ և ՍՏԵՓԱՆՈՍ ։

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Անանիա Նարեկացի.— Խոսրով Անձևացի.— Գրիգոր Նարեկացի.— Ստեփաննոս Ասողիկ.— Ուխտանես Եպիսկոպոս.— Երկրորդական դեմքեր:*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Ժ. դարն ալ ինքնին առանձին երևոյթ մը չընծայեր հայ մատենագրութեան պատմութեան մէջ, իրմէ առջի երկու դարերուն պէս ։ Ծաղկող գրիչները հետևեալներն են.

ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ.— Ազգային պատմիչները կը ներկայացնեն զինքը փիլիսոփայ, այր անուանի եւ գիտնական, գրող մեկնող եւ այլն։ Իրեն ընծայուած գործերէն աննշան ճառ մը միայն հասած է։ Կորսուած են Ընդդէմ աղանդոյն Թոնդրակեցւոց, Մեկնութիւն Առաքելական Թղթոց, Համեմատութիւն Աւետարանաց եւ այլն

ԽՈՍՐՈՎ ԱՆՁԵՒԱՑԻ.— Գրիգոր Նարեկացիին հայրըն ու Անձեւացեաց գաւառին եպիսկոպոս, որ ուսումնական լայն պատրաստութիւն ունենալով՝ եկեղեցական նշանաւոր գրիչ մը դարձաւ։ Իր գլխաւոր երկասիրութիւնն է Մեկնութիւն Ժամագրոցը, որ ընտիր ու պարզ ոճով գրուած հմտութեան կարօտ գործ մ'է։ Ունի նաեւ Մեկնութիւն խորհրդոյ արդոյ պատարագին անունով շատ համառօտ գրուածք մը՝ բաղդատաբար անարժէք։

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ.— Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսին որդին ու Անանիա Նարեկացիի աշակերտն էր Ժ. դարու այս գերազանց տաղանդը, որ ծնած էր 951ին։ Օժտուած բնածին ընդունակութիւններով, շուտով առաջացաւ եւ ժամանակի ընթացքին մէջ նշանաւոր դէմք մը հանդիսացաւ հայ եկեղեցականներու շարքին մէջ։ Սակայն իր յաջողութիւնները շատերուն նախանձը գրգռեցին եւ շատ մը տգէտներ նոյն իսկ զինքն ամբաստանեցին կաթողիկոսին առջեւ։ Նարեկացի անխռով, առանց կարեւորութիւն տալու այս յաչաղկոտ չարախօսութեանց, ամփոփեց ինքզինքը եւ նուիրուեցաւ իր աշխատութիւններուն։ Գրիգոր Նարեկացի ապրեցաւ 60 տարի միայն. իր մահկանացուն կնքեց 1009ին եւ թաղուեցաւ Նարեկայ վանքին մէջ։

Իր ամենէն նշանակելի երկասիրութիւնն է Աղօթք կամ Նարեկ կոչուած հոգեշունչ հրաշալի գործը, որ մեծ հիացման առարկայ դարձած է հայ թէ օտար գրագէտներու ու բանաստեղծներու կողմէ։ Նարեկը կը բաղկանայ 95 գլուխներէ, որոնց մէջ արձակ ոգեբերական չքնաղ, ճոխ ու գողտրիկ բանաստեղծութիւնք կը յայտնուին այս հազուագիւտ արուեստագէտին։ Հոն Նարեկացին իր

սիրտն ու հոգին կը պատկերացնէ աստուածային խօսակցութեան մը հրավառ անընչանքովը: Յոյս, վախ, սէր, հաւատք, զղջում, հայցուածք և ձգտում իրարու կը յաջորդեն՝ իր գեղահիւս և գերազանցօրէն չքեղ տողերուն մէջ: Նարեկին մէջ կայ փայլուն ստեղծագործութիւն, վերադիրներու ցնորեցուցիչ առատութիւն, մեծապանծ լեզու և գաղափարներու աներևակայելի յորդութիւն: Հայ գրականութեան այդ գոհարը որչափ ալ ազդեցութեան դրոշմը կրէ արաբական գալարածոյ ոճէն, ունի սակայն անկեղծութիւն մը և ինքնատպութիւն մը, որ էապէս հրապուրիչ կը դարձնէ այս հսկայ ողբերգութիւնը: Նարեկացիին այս գիրքը ամեն բարեպաշտ հայու համար նուիրական մատեան է, որ Աստուածաշունչին քովիկը կը դրուի գաւառներու մէջ:

Նարեկացի ունի հեղինակած շատ մը ճառեր և ներբողեաններ, ինչպէս. Ապարանից խաչին պատմութիւնը, Գովեստ Առաքելոց, Ներբող Խաչի, Ներբող Աստուածածնի, Գովեստ ի Ս. Յակոբ Մծբնայ հայրապետ և այլն: Իբրև մեկնողական գրութիւն կ'արժէ յիշել Երգ երգոցի մեկնութիւնը: Ասոնցմէ զատ Նարեկացիի գրչէն արտադրըւած կան գանձեր, տաղեր, մեղեդիներ և թուղթեր:

Նարեկացի հայկական դպրութեանց մէջ պիտի գրաւէ բարձրագոյն տեղ:

ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՍՈՂԻԿ.— Երաժշտական տաղանդի տէր մատենագիր մ'է Ստեփաննոս, ինչպէս ցոյց կուտայ իր Ասողիկ անունը: Տարօն գաւառին մէջ ծնած ըլլալուն համար երբեմն զինքը Տարօնեցի ալ կ'անուանեն: Ապրած է Ժ. դարու վերջերը: Հայ պատմագիրներուն մէջ իր որոշ տեղն ունի Ասողիկ: Գրած է տեսակ մը ընդհանուր պատմութիւն, որ արարչագործութենէն սկսելով կը հասցնէ մինչև 1004 թուականը, պատմելով իր ժամանակի դէպքերը, Գագիկ Բ.ի կեանքը, Անիի կործանումը և այլն: Բաժնուած է երեք մասերու: Ա. մասը Խորենացիէն քաղուած է, Բ. մասը արաբ ամիրապետներու գործերուն նկարագրութիւնն է, իսկ Գ. մասը՝ ժամանակակից

*անցքերու նկարագրութիւնը։ Բաւական կարեւոր տեղեկութիւններ կուտայ մանաւանդ վերջին մասին մէջ։ Իրեն կ'ընծայեն նաեւ Երեմիա Մարգարէի Մեկնութիւն մը, որ մեզի հասած չէ։ Ոճը հետեւակ է եւ շնորհալի։*

*ՈՒԽՏԱՆԷՍ.— Անանիա Նարեկացիի խնդրանքին վրայ Ուխտանէս եպիսկոպոս գրեց իր ծանօթ Պատմութիւնը, որ գնահատելի լուսաբանութիւններ կուտայ իր ներկայացուցած անցքերուն նկատմամբ։ Իր գործն ամբողջովին մեզ հասած չէ, բայց մեր ձեռքն եղած կտորներն ալ լաւ աղբիւրներ են եկեղեցական պատմութեան համար։ Վերջին երկու մասերը առաջինին հետ կապ չունին, եւ սակայն ամենէն հետաքրքրական բաժինն են գրքին։ Ուխտանէս կը գրէ Վրաց եւ Հայոց եկեղեցիներուն բաժնուիլը՝ այս երկու մասերէն մէկին մէջ, որ Պատմութիւն բաժանման վրաց ի հայս անունն ունի։ Գրքին վերջին թերթերը բոլորովին կորսուած են։ Լեզուն աղքատ է ու ոճն ալ անկանոն։*

*ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԴԷՄՔԵՐ.— Այս մատենագիրներէն զատ երկրորդական ուրիշ գրողներ ալ չեն պակսիր. ինչպէս, ՍԱՄՈՒԷԼ ԿԱՄՐՋԱՁՈՐԵՑԻ, ԽԱՉԻԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ, ՊԵՏՐՈՍ ՄԵԿՆԻՉ, ՄԵՍՐՈՊ ԵՐԷՑ եւ այլն։*

## ԺԱ. ԴԱՐ

*Ընդհանուր տեսութիւն.— Գրիգոր Մագիստրոս.— Արիստակէս Լաստիվերցի.— Գրիգոր վկայասէր.— Երկրորդական մատենագիրներ:*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Ընդհանուր նկատողութեամբ ԺԱ. դարը բաւական սփոփարար երեւոյթ մը կ'ընծայէ հայ դպրութեանց պատմութեան մէջ։ Թէեւ հայ մատենագրութեան վերափթթումը վերապահուած էր յաջորդ դարուն, այսուհանդերձ այս շրջանն ալ արշալուսային էր կարծես։ Այս դարը գրաբարի տիրապետութեան վերջին ժամանակամիջոցն է, ուրկէ վերջ այլեւս հայ գրականութիւնը կ'ունենայ երկու որոշ հոսանքներ, — գրաբար լեզուով գրողներն ու ռամկօրէնի հետեւողները։ ԺԱ. դարու մատենագիրները ներկայացնենք։*

**ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ**.— Պահլաւունեաց ազնուական տոհմէն սերած էր հռչակաւոր իմաստասէրը եւ լեզուագէտ զինուականը, որ մագիստրոս եւ դուքս տիտղոսներն ընդունեց Կոստանդին Մոնոմախոս կայսրերուն կողմէ՝ Բիւզանդիոն բնակած ատեն։ Բոլոր մատենագիրներ կը միաբանին իր տաղանդը ներբողելու համար։ Մագիստրոս առաջին աշխարհական մատենագիրն է եւ իր դարուն մէջ քաղաքական կարեւոր անձնաւորութիւն մը։ Երբ Գագիկ Թագաւոր զինքն հալածեց, նախ Տարօն եւ ապա Բիւզանդիոն քաշուեցաւ։ Անիի անկումէն վերջ կայսեր հաւանութեամբ Հայաստանի մէջ իր ունեցած կալուածները փոխեց Միջագետքի մէջ գտնուող հողերու հետ, եւ հոն քաշուելով՝ իր քաղաքական գործունէութեան վերջ տուաւ։ Զինքը կ'ամբաստանէին իբրեւ յունասէր եւ կը հակառակէին իրեն ու կը հալածէին, ստիպուած ըլլալով միեւնոյն ատեն ընդունիլ իր անվիճելի տաղանդը։

Մագիստրոս ունի թէ արձակ եւ թէ տաղաւոր գրուածքներ։ Ասոնց մէջ նշանաւոր են 80ի չափ թուղթեր, որոնց մին կը վերաբերի Թոնդրակեցիներուն եւ միւսը Թուլայլացիներուն, որոնց մասին բուռն ատելութեամբ կը խօսի. միւսները նուիրուած են կրօնական, իմաստասիրական եւ այլ խնդիրներու։ Գրիգոր Մագիստրոս մեծ մտքի տէր ըլլալով հանդերձ՝ բանաստեղծ ալ էր։ Իր քերթողական գրուածքներուն մէջ ուշադրութեան արժանի է Հին ու Նոր Կտակարաններու պատմութիւնը, հազար տուներու մէջ բովանդակուող Մեծ եւ գործ Աստուծոյ սկզբնաւորութեամբ քերթուածը, զոր ընծայած է հազարացի Մանուչէի, անոր առաջարկին համաձայն։ Քերականական գործերուն մէջ Մագիստրոսի միակ կարեւոր երկասիրութիւնն է Մեկնութիւն քերականին, որուն մէջ մասնաւոր գլուխով մը կը ճառէ գրի գիւտին վրայ, գրագիտական բաժանումները կը ծանօթացնէ եւ ապա կ'անցնի քերականական օրէնքներու։ Պղատոնէն ու Եւկլիտէսէն ունի յաջող թարգմանութիւններ, որոնցմէ պատա-

ունինք միայն անունը ի ձեռին։ Մագիստրոսի լեզուն խրթին է և յունաբանութեամբ խճողուած, բայց ինք կը մնայ յաւէտ ուշագրաւ մէկ դէմքը ԺԱ. դարուն։ Մեռած է 1058ին։

ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ. — ԺԱ. դարու ողբացող պատմագիրն է Արիստակէս Լաստիվերտցի, որուն կենսագրութենէն ոչինչ գիտենք։ Իր ոճէն կարելի է ենթադրել թէ եկեղեցական մ'է։ Ականատես է սելճուգթաթարներու արշաւանքներուն և անոնց գործած նախճիրներուն։ Գրած է Պատմութիւն մը, որ չափազանցըուած ու լալկան ոճով մը կը ներկայացնէ Հայաստանի վիճակը։ Լաստիվերտցիի պատմութիւնը լի է սակայն էջերով, որոնց մէջ կան սրտաճմլիկ նկարագրութիւններ։ Հիացումով կը խօսի Բագրատունեաց թագաւորութեան և Անի քաղաքին ճոխութիւններուն վրայ։ Կը նկարագրէ Անիի վաճառումը յոյներուն և ապա Ալփասլանի կողմէ առումը։ Հետաքրքրական տեղեկութիւններ կուտայ Թոնդրակեցիներու աղանդին(1) վրայ, որ

(1) ԹՈՆԴՐԱԿԵՑԻՆԵՐՈՒ ԱՂԱՆԴԸ. — Այս աղանդին մասին Վ. Փափազեանի գրքէն (էջ 157-160) կ'առնենք յետագայ տեղեկութիւնները, որոնց աղբիւրն է Լաստիվերտցիի պատմութիւնը։ Այս աղանդը, որ բողոքականութեան շատ նմանութիւն ունէր, ինքնատիպ երեւոյթ մըն էր հայոց մէջ ԺԱ. դարուն։ Թոնդրակեցի կոչուած են աղանդաւորները, որովհետեւ Ապահունեաց գաւառի Թոնդրակ գիւղը աղանդին կեդրոնատեղին և աղանդապետի ապաստանած վայրն էր։ Աղանդի ծագման պատմութիւնն է հետեւեալը։ Հարք գաւառի եկեղեցիներուն վերակացուն, Յակոբոս եպիսկոպոս, որ բարեպաշտ և մաքուր եկեղեցական մ'էր, իր հովուական կարողութեամբ այնչափ գրաւած էր ժողովուրդը, որ ամէնքը պատրաստ էին իրեն համար զոհուելու։ Իր այս համբաւին մէջ, նա սկսեց կծու և սուր խօսքերով պախարակել ժամանակակից քրիստոնեայ եկեղեցին, անոր ծէսերն ու կղերականութիւնը։ Յակոբ շատ հետեւողներ ունէր, որոնց մէջ աղանդի տարածման համար մեծ դեր կը կատարէին երեք կիներ.— Վրվէռ իշխանի երկու քոյրերը, Ախնի և Կամարայ, ու Թոնդրակեցի Կունծիկ աբեղայի օգնականուհին, Հրանոյշ, որ նշանաւոր տոհմէ էր, հարուստ և կալուածատիրուհի։ Թոնդրակեցիներու ղեկավարն էր Յակոբ, որ կը պնդէր թէ միմիայն արժանաւոր մարդիկ քահանայ ըլլալու են, ամէն անգամ պատարագ ընելն ու հաղորդուիլն աւելորդ է. տարին երեք անգամը բաւական է։ Նա կը յայտարարէր թէ ո՛չ պա-

իր ժամանակին մէջ այժմէութիւն ունէր։ Իր անունով պահուած են քանի մը անկարեւոր ճառեր ու հատուածներ։ Ունի յստակ և պարզ ոճ մը։

ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ.— Մագիստրոսի որդին էր Գրիգոր, որ հակառակ իր իշխանական դիրքին, նախընտրեց միայնակեցութիւնը և իր հանրածանօթ արժանիքներով հայրապետական գահը բարձրացաւ։ Տարի մը վերջ ուսումնասիրութեամբ պարապելու համար թողուց իր աթոռը և անցաւ Բիւզանդիոն ու Եգիպտոս, ուր գտաւ մեծ ընդունելութիւն։ Գրիգոր զբաղած է գլխաւորաբար թարգմանութիւններով և մանաւանդ սուրբերու վկայաբանութեանց կարգաւորութիւնով, որուն համար ալ կոչուեցաւ Վկայասէր։ Իր երկասիրութեանց մէջ գլխաւոր տեղը կը բռնէ Մեկնութիւն Գործոց Առաքելոց։ Վկայասէր հմուտ թարգմանիչ և յաջողակ գրող է։

ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ.— Այս դարուն մէջ կան նաև ուրիշ մատենագիրներ ալ, որոնց մէջ նշանաւոր է ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈԶԵՌՆ, որուն գիտական գործերէն հատուածներ միայն մնացած են, ՊԵՏՐՈՍ ԳԵՏԱԴԱՐՁ, որ հեղինակած է ճառեր ու շարականներ, ՍԱՐԳԻՍ ՍԵԽԱՆԵՑԻ, ՍԱՄՈՒԷԼ, ԿԻՐԱԿՈՍ, ՄԱՏԹԷՈՍ և ԳԷՈՐԳ վարդապետներ, ՍԻՄԻԱՆՈՍ ՎԱՐԴ. ՍԵԲԱՍՏԱՑԻ, ՊՕՂՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ և այլն։

---

տարագը, ո՛չ յիշատակութիւնը և ո՛չ ալ մատաղը կ՚օգնեն եթէ մարդ իր անձովը մեղանչեր է ու չէ ապաշխարեր։ Թոնդրակեցիներու աղանդը արմատական փոփոխութիւն կը պահանջէր քրիստոնեայ եկեղեցիին մէջ։ Չէին ընդուներ եկեղեցական ո՛չ մէկ ծէս, ո՛չ մկրտութիւն, ո՛չ պատարագ, ո՛չ խաչ, ո՛չ ալ պահք, ո՛չ բարեխօսութիւն և ո՛չ ալ մատաղ։ Թոնդրակեցւոց աղանդը այնչափ ծաւալ գտած էր որ իրեն հետեւորդներուն մէջ շատ իշխաններ և կրօնաւորներ կը համրուէին։ Երկու անգամ հայ եկեղեցականներ հաւաքուեցան, որ միջոց մը գտնեն այս աղանդի տարածումն արգիլելու համար, նոյն իսկ Յակոբոսին ճակտին իբրեւ անարգանքի նշան աղուեսադրոշմ դրին, բանտարկեցին, բայց նա փախաւ Խլաթի լեռները և շարունակեց իր քարոզութիւնները։

Այս միեւնոյն սկզբունքներն էին որ Լուտեր քարոզեց Թոնդրակեցիներու աղանդի ծագումէն հինգ դար վերջը, և այսօր բողոքական եկեղեցին այդ նոյն սկզբունքներն ունի։

# Բ. ՄԻՋԻՆ ՇՐՋԱՆ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

Մինչեւ ԺԱ. դար, ինչ որ ալ ըլլան երբեմնի մատենագիրներու նախնեաց ռամկօրէնին հակում ունենալու եւ կամ շատ մը մատենագիրներու ռամկօրէնէ ազդուելու աստիճանը, վերջապէս ռամկօրէնը մատենագրութեան մէջ իբրեւ գրաւոր լեզու համարձակօրէն գործածուած չէ.— գէթ այսօր այդպէս կ'ընդունինք, երբ մեր ձեռքը գտնուած ռամկօրէնի վաւերական առաջին արտադրութիւնները աւելի առաջ չեն տանիր մեզ: ԺԲ. դարուն մէ՛ջ է միայն որ ռամկօրէն մատենագրութիւնն ըսկիզբ առած է՝ Մխիթար Հերացի բժշկապետին Ջերմանց Բժշկութիւն կամ Մխիթարութիւն անուն գիրքով (1184): Թէեւ ոմանք կ'ենթադրեն, որ Վիեննայի վանքը գտնուած գրչագիր ռամկօրէն Բժշկարանը աւելի՛ հին է (Ժ. կամ շատ շատ ԺԱ. դարու գործ), սակայն ասիկա կարծիք է տակաւին, որ ստուգութեան կը կարօտի: Ուրեմն եթէ ռամկօրէն մատենագրութեան արշալոյսը ԺԱ. դարուն մէջ ալ է, առաւօտը սակայն ԺԲ. դարուն մէջ պիտի փնտռենք:

Ռամկօրէն լեզուի քաղաքացիանալէն վերջ այլեւ միջին շրջանի (ԺԲ.-ԺԹ. դար) հայ գրականութիւնը կ'առնէ երկու ուղղութիւն՝ ունենալով երկու հոսանքներ: Մատենագիրներ մեծամասնութեամբ՝ գրաբար լեզուով կը գրեն դարձեալ, բայց անոնց քովէն կը ծագի գրողներու ուրիշ դասակարգ մը, որ գիտական եւ ժողովրդային նիւթերը ժողովրդականացնելու համար ժողովուրդին լեզուն կը նախընտրէ: Երբեմն դէմքեր կան, ռամկագիր մատենագրութեան մէջ, որոնք եկեղեցական ամենէն բարձր աստիճաններն ունենալով հանդերձ միմիայն սրբազան գրականութեան կը վերապահեն գրաբարը, եւ ռամ-

կօրէն լեզուն կը գործածեն գործնական և ժողովրդային նիւթերու համար։ Այս կերպով ահա ԺԲ. դարէն վերջ սրբազան նիւթերը պիտի գտնենք գրաբարին մէջ, իսկ ժողովրդական տաղեր, հանելուկներ, երկրագործական, բժշկական և գիտական գործերն ալ՝ ռամկօրէնի մէջ։

Հայկական Գրականութեան այս միջին շրջանին մէջ մենք երկու հոսանքներն ալ պիտի ներկայացնենք յաջորդաբար։

## 1. ԳՐԱԲԱՐ ԼԵԶՈՒՈՎ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

*Ընդհանուր տեսութիւն.— ԺԲ. դար եւ արծաթի շրջան.— ԺԳ. դար.— ԺԴ. դար.— Միջնադարեան երգիչներու շրջան.— ԺԷ., ԺԸ. եւ ԺԹ. դարեր։*

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Այս շրջանին մէջ, որ կը տեւէ ԺԲ. էն մինչեւ ԺԹ. դար, Հայ Մատենագրութիւնն ու գրականութիւնը կրած են մեծ փոփոխութիւններ և ունեցած են հսկայ առաջխաղացութիւն։ Մանաւանդ ԺԷ. դարէն վերջ ԺԸ. դարուն, երբ Մխիթարեան Միաբանութիւնն հիմնուած է ու հայ լեզու ու գրականութիւն, շնորհիւ այդ հիմնարկութեան երկու ճիւղերուն, առած են մեծ թափ։ Այս գլուխներուն մէջ մենք՝ պիտի տանք գրաբար լեզուով մատենագրող գլխաւոր դէմքերու կեանքերը միայն՝ իրենց նշանակելի գործերով։ Այն դէմքերը, որոնք թէ գրաբար և թէ ռամկօրէն լեզուներով գրած են, պիտի երեւան երկու բաժիններուն մէջ ալ։

## ԺԲ. ԴԱՐ ԵՒ ԱՐԾԱԹԻ ՇՐՋԱՆ

*Ընդհանուր նիշեր.— Յովհաննէս Սարկաւագ Վարդապետ.— Ներսէս Շնորհալի.— Սարգիս Շնորհալի.— Ներսէս Լամբրոնացի.— Մատթէոս Ուռհայեցի.— Մխիթար Գօշ.— Երկրորդական մատենագիրներ:*

**ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.**— Կիլիկեան շրջանի փայլուն արտադրութիւնն է ԺԲ. դարու մատենագրութիւնը, որ

կու գայ բանալ արծաթի շրջանը եւ մասնանշել գրական կո-րովի գործունէութիւն մը։ Մեծ Հայքի մէջ ամլութիւն կայ միայն։ Եթէ որբազանները՝ նպաստէին եւ կիլիկեան այս բեղմնաւոր գրականութիւնը շարունակական դառ-նայր հնարաւորութիւնը ունենար, անտարակոյս հա-րուստ գրականութիւն մը պիտի հանէր մեզ։ Այս շըր-ջանին մէջ ամենէն շատ ծաղկած ճիւղը բանաստեղծու-թիւնն է, որուն ներկայացուցիչը,— Ներսէս Շնորհալի,— կը գերազանցէ հայ մատենագրութեան մէջ երեւցող բո-լոր բանաստեղծները։ Թէ՛ ԺԲ. դարը բաւական ձեռըն-տու պայմաններ ներկայացուցած է հայ կեանքին համար, այդ կ'երեւի հայ եւ յոյն եկեղեցիներու միացման հարցին երկար ժամանակ յուզուելէն։ Այս դարը թէ՛ գրաբարին եւ թէ ռամկօրէնին համար նշանակալից է։ ԺԲ. դարու գլխաւոր գրագէտներն են.

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ.— Սարկա-ւագ ապրած է Մեծ Հայքի մէջ եւ ժամանակակից է Ներ-սէս Շնորհալիին։ Ծնած է ԺԱ. դարուն վերջերը Ար-ցախու Փառիսոս գաւառին մէջ եւ ինքնօգնութեամբ մեծ առաջդիմութիւն ձեռք բերած Սանահինի եւ Հաղբատի վանքերուն մէջ, որոնք անուանի ուսումնավայրեր էին այս ժամանակ։ Ներկայացուցիչն է պատկառելի բարքե-րու եւ իմաստութեան, եւ մեծ յարգանք վայելած է իր ժա-մանակակիցներէն, կոչուելով Սոփեստես։ Իր վանահայ-րութեան շրջանին Հաղբատի վանքը ծաղկած վիճակի մը մէջ դրուած է։ Մեռած է 1129ին եւ թաղուած է Հաղ-բատի Ս. Աստուածածին եկեղեցւոյ զանգակատան տակ, ուր դեռ յայտնի է իր տապանաքարը, որուն վրայ գրուած է. «Արձանս այս սեփական է Սոփեստեսի Սարկաւագին»:

Իր նշանաւոր գործն է Պատմութիւնը, որմէ հատած հատուածներն իսկ բաւական են ցոյց տալու իր նուրբ ու գեղեցիկ շարադրութիւնը։ Ժամանակագրական ձեւ ունի եւ արժէքէ զուրկ չպիտի ըլլար ամբողջութիւնը։ Ունի տոմարագիտական հմտութիւն, բանաստեղծական

խանդ և քրիստոնէական իմացողութիւն։ Իր զանազան աղօթքները, ճառերը, ներբողեանները ու զանազան կրօնական գրութիւնները, որոնց մեծ մասը կորսուած է, զինքը գրագէտներու շարքին մէջ կը դնեն։ Իր անունով հասած է նաև Պայծառացիր շարականն ու Սարեակին քերթուածը։

ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ .— 1102ին ծնած է այս տաղանդաւոր ու արուեստագէտ գրողը, որ Գ. Մագիստրոսի թոռն ու Գրիգոր Պահլաւունիի եղբայրն է։ Իր արդասէր վարքը, ձիրքերն ու բարեմասնութիւնները Շնորհալի մակդիրով օժտեցին զինքը։ Երկար ատեն արժանաւորապէս վարեց Կիլիկիոյ Հայրապետութեան աթոռը։ Շնորհալի իր վարքով ու բարքով միշտ յարգանքի ու համակրանքի արժանացած էր թէ՛ ժողովուրդին ամէն դասակարգերէն և թէ՛ նոյնիսկ օտարներէն։ Այս շնորհալի և հանճարեղ բանաստեղծը տուաւ դարուն ուշագրաւ արտադրութիւնները։ Ո՛չ ոք կրցաւ իրեն չափ շքեղօրէն թրթռացնել սրբազան քնարը։ Իր երգերն ու շարականները շատ սիրուած ու ժողովրդականացած են։ Ամէն հայ գիտէ իր երգերէն մէկը կամ մէկէ աւելին, որոնց շատերուն եղանակներն ալ ինք յօրինած է, ունենալով երաժշտական հմտութիւն ալ։ Շատ համակրութիւն ցոյց կուտար հայ և յոյն եկեղեցիներու միացման հարցին, որ այն ատեն յուզուած էր, և մասնաւոր ձեռնարկներ ալ ըրած էր այդ մասին, բայց դժբաղդաբար իր ջանքերը դեռ չյաջողած՝ մեռաւ 1173ին, 70 տարեկան հասակին մէջ։

Շնորհալի թէ՛ իբրև արձակագիր և թէ՛ իբրև քերթող Հայ Մատենագրութեան պատմութեան մէջ ստացած է անհամեմատ դիրք։ Իր արձակ գրութեանց մէջ նշանակելի են Ատենաբանութիւնը, որ կաթողիկոսական աթոռ բարձրացած ատեն խօսած է, Ընդհանրական թուղթը, իր գահակալութեան առթիւ ուղղուած հայութեան բոլոր դասակարգերուն, հայ և յոյն եկեղեցիներու միացման և կամ այլևայլ առիթներով գրած զանազան թուղթերը։

Ունի մեկնութիւններ և ներբողեաններ։ Իր բանաստեղծական արտադրութիւններն են սակայն ամենէն հռչակաւորները, որոնց մէջ առջի կը դառնուին Վիպասանութիւնը, անյանգ ոտանաւորով գրուած հազարատողեայ հայոց համառօտ պատմութիւն մը, Ողբ մը Եդեսիոյ վրայ, Յիսուս որդի բազմաթիւ տպագրութիւններու արժանացած քերթուած մը։ Շնորհալիի լեզուն մաքուր է այս գործերուն մէջ, և սակայն տաղաչափութիւնը, որ առ հասարակ թուական ոտանաւորով մշակած է, միօրինակ է։ Գերազանցօրէն գեղեցկահիւս և քաղցրանուագ են այն երգերը, որոնք Հայ Եկեղեցիի Շարականոցին մէջ գրուած են. ինչպէս, Այսօր Անճառ, Աստուած Անեղ, Առաւօտ Լուսոյ, Աշխարհ Ամենայն, Արարչական, Նորաստեղծեալ և այլն։ Շնորհալի գրած է նաև ռամկօրէն լեզուով և չափական ձևով մանկական հանելուկներ, զորս ռամկօրէն գրականութեան մէջ պիտի տանք։

ՍԱՐԳԻՍ ՇՆՈՐՀԱԼԻ.— ԺԲ. դարու մէջ ապրած և մասնաւորապէս լաւ պատրաստուած մեկնիչ մըն է Սարգիս, որ իր գրութեանց մէջ ցոյց կը դնէ եռանդ, ողջամտութիւն. քննական սուր ոգի և պերճախօսութիւն։ Երկայնաբան է և տաղտկացուցիչ սակայն։ Գլխաւոր գործն է Կաթողիկեայց մեկնութիւն։ Իրեն կ՚ընծայեն Եսայեայ մեկնութիւն մ՚ալ, որ անծանօթ է մեզի։

ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ.— Ներսէս Լամբրոնացի, որ Շնորհալիի թոռն է, 1153ին ծնած է ազնուական և բարեկեցիկ տոհմէ։ Երիտասարդ տարիքին մէջ ձգելով իր իշխանական կեանքը, կրօնական ասպարէզին նուիրուեցաւ, և հազիւ 23 տարեկան՝ եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Լամբրոնացի մեծ յարգանք և համակրանք վայելած է, բայց ունեցած է և շատ մը չարամիտ նախանձորդներ, որոնք զինքը վարկաբեկելու համար ամբաստանութիւններ հեղինակած են, մեղադրելով զինքն իբրև օտարամոլ և հայ եկեղեցւոյ անհաւատարիմ։ Զուտ քրիստոնեայ էր Ներսէս, որ ազգային զգացումներու ուշ

չէր տար և քրիստոնէական եկեղեցիէն դուրս ոչինչ կը ճանչնար, երջանկութեան միակ աղբիւրը զայն նկատելով: Լամբրոնացի հանճարեղ էր և պերճախօս:

Իր երկասիրութիւնները արժէքաւոր են: Անոնց մէջ առաջին կը հանդիսանայ Մեկնութիւն Պատարագամատոյց գրոցը: Նշանաւոր է այն Ատենաբանութիւնը, որ խօսած է հայ և յոյն եկեղեցիներու միացման հարցին առթիւ 1179ին Հռոմկլայ գումարուած ժողովին մէջ՝ ազգային ըմբռնումին ու քրիստոնէական ճշմարտութեանց յարաբերութեան մասին իր տեսակէտը պարզելու համար: Համաքրիստոնէական սկզբունքներ կուտայ Լեւոն Թագաւորին ուղղած թուղթին մէջ ալ: Լամբրոնացի ունի տակաւին մեկնութիւններ, հինգ այլ և այլ ճառեր և թարգմանութիւն մը: Գրած է Շնորհալիի կենսագրութիւնը: Շատ հետաքրքրական է Լամբրոնացիի յոյն և լատին օրէնքներէն քաղած օրէնքներու հաւաքածոն, որ ունի շահեկան յիշատակարաններ:

ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ.— Մատթէոս, որ ինքզինքը վանեցի կ'անուանէ, ծնած է Եդեսիոյ մէջ: Օգտուելով իր ծննդավայրի նպաստաւոր պայմաններէն՝ գըրած է Ժամանակագրական Պատմութիւն մը, որ կը սկսի 952 թուականէն և կը հասնի մինչև 1136: Այս գըրքին մէջ, որ աւելի հետաքրքրական տարեգրութիւն մ'է, քան սիսթէմաթիք պատմութիւն մը, մանրամասնութիւններ կան բիւզանդացիներուն, պարսից, խաչակիրներուն ու հայոց վրայ: Շատ ատելութեամբ կը խօսի յոյներու կրօնական հալածանքներուն ու մահմետականներու բռնութիւններուն դէմ: Ուռհայեցի թէև հմտութենէ զուրկ, բայց հրապուրիչ տեսարաններ կը ներկայացնէ յաջողութեամբ: Իր ոճը ռամկական է:

ՄԽԻԹԱՐ ԳՕՇ.— Ո՛չ միայն ԺԲ. դարու, այլև ամբողջ հին հայ մատենագրութեան մէջ եզական ու պանծալի դէմք մ'է այս գիտնական անձնաւորութիւնն ու յարգելի օրէնսգէտը: Գօշ կոչուած է, որովհետև իր մօ-

րուքին մազերը շատ ցանցառ էին։ Իր կենսագրութիւնը մեզի ծանօթ է Կիրակոս Գանձակեցի պատմիչին միջոցաւ։ Մխիթար Գօշ ծնած է Գանձակ. նախ կրօնական կրթութիւն առած է, բայց վերջը հոս հոն թափառելով՝ բարձր գիտուններու աշակերտած և գիտական մեծ զարգացում և համբաւ ձեռք բերած է։ Մնաց միշտ Արեւելեան Հայաստանի մէջ ու իբրեւ գիտուն և առաքինի մարդ՝ հանրային յարգանքի մէջ ապրեցաւ մինչեւ մահը, որ պատահեցաւ 1213 ին։

Իբրեւ մատենագիր Մխիթար Գօշ կը ներկայանայ մեզ գիտական հոյակապ գործով մը, որուն մէջ ընտիր հայերէն ու իրաւագիտական մեծ հմտութիւն ցոյց կու տայ այս մեծ հեղինակը։ Դատաստանագիրքն է այդ, որ իր օրէնսգիտական բովանդակութեամբ առանձին տեղ ունի հայ գրականութեան մէջ։ Դատաստանագիրքը կը բաղկանայ երեք մասերէ. 1. Նախադրութիւն, 2. Եկեղեցական կանոններ և 3. Աշխարհական օրէնքներ։ Առաջին մասը կը բովանդակէ իր տեսութիւնները՝ իրաւաբանական բնոյթ ունեցող քանի մը հարցերու մասին։ Միւս երկու մասերը օրինագիրքեր են՝ կանոններու և աւանդութիւններու իբրեւ չահապրգռական հաւաքածոյ։ Այս գիրքը պատրաստելու ձեռնարկած ատեն Մխիթար աչքի առջեւ ունեցած է ժողովուրդին խոր տգիտութիւնը, օրէնքի ու կանոնի պակասը, ուսանելու ծուլութիւնը, սուտ երդումները և. այլն։ Գօշ օգտուած է հին ու նոր բոլոր կրօններու օրինագիրքերէն, աւանդութիւններէն ու եկեղեցական ժողովներու միջոցաւ ընդունուած կանոններէն։ Լեհաստանի հայ գաղթականութիւնը երկար ինքնավարօրէն կառավարուեցաւ Դատաստանագիրքի օրէնքներով։

Մխիթար Գօշ ունի նաեւ մեկնութիւն մը, աղօթքներ, կրօնական գրութիւններ, խրատական թուղթեր և 150ի չափ առակներ, որոնք նոր էջ մը կը բանան հայ գրականութեան սեռերուն մէջ, և Հայոց Եզովբոսը կ՚անուանեն զինքը։

*ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ.— ԺԲ. դարու երկրորդական մատենագիրներն են ՍՏԵՓԱՆՈՍ ՄԱՆՈՒԿ (սիրուած քարոզիչ և ուսուցիչ), ԳՐԻԳՈՐ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ (հայ գպրութեանց նպաստող, բանաստեղծ և վկայաբեր), ԻԳՆԱՏԻՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ (մեկնիչ). ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ (պատմիչ), ՍԱՄՈՒԷԼ ԵՐԷՑ (պատմիչ), ԳՐԻԳՈՐ ՏՂԱՑ (քերթող և աստուածաբան), ԽԱՉԱՏՈՒՐ ՏԱՐՕՆԵՑԻ (քերթող), ՍԱՐԳԻՍ ԿՈՒՆԴ (մեկնիչ), ԴԱՒԻԹ ԳԱՆՁԱԿԵՑԻ, ԳՐԻԳՈՐ ԻՄԱՍՏԱՍԷՐ, ԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏ և այլն։*

## ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Վանական Վարդապետ.— Վարդան Վարդապետ.— Կիրակոս Գանձակեցի.— Յովհան Երզնկացի.— Երկրորդական դէմքեր:*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Բաղդատմամբ նախընթաց ԺԲ. դարուն, կարելի է անկման դար կոչել այս դարը, զոր պղինձի դար ալ կ'անուանեն։ Կիլիկեան փայլուն մատենագրութիւնը չիջած է և ամբողջ չրջանը գրական առուգութիւն մը ցոյց չտար։ Սակաւաթիւ են գրագէտները, որոնց մէջ նշանակելի են.*

*ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ.— Վանական Վարդապետ Տաւուշեցի էր և Մխիթար Գոշի աշակերտներէն մին։ Թաթարաց արշաւանքներուն առեն զանազան ուղևորութիւններէ և արկածներէ վերջ Թաթարներուն ձեռքը կ'իյնայ ու դժուարաւ կ'ազատի։ Վերադարձին կը հաստատուի իր շինած Խորանաշատ անուն եկեղեցիին մէջ։ Հոն գրած է իր պատմութիւնը, որուն մէջ միասին արձանագրած է Թաթարական արշաւանքներն ու յարակից դէպքերը։ Իրեն օգնած է իր ճոխ մատենադարանը, զոր կազմած էր՝ գրական ուսումնասիրութեանց համար։ Դժբաղդաբար կորսուած է այս գործը, որ այլապէս իր գլուխ գործոցը պիտի ըլլար։ Վանական Վարդապետ այս գիրքէն զատ ունի նաև մեկնութիւն մը, շարականներ ու ճառեր։*

ՎԱՐԴԱՆ ՊԱՏՄԻՉ.— Վարդան վարդապետ Վանականի աշակերտներէն էր և յարգուած անձնաւորութիւն մը։ Երկար ատեն Կիլիկիա ապրած է իբրև պատգամաւոր Կոստանդին կաթողիկոսին։ Իր կարևոր գործն է Տիեզերական Պատմութիւն անուն գիրքը։ Վարդան մտադրած է ժամանակակից պատմութիւն մը գրել, բայց խօսեր է ո՛չ միայն հայ ազգի այլև՝ ընդհանուր պատմութեան վրայ.— Քանի մը հազար տարուան համառօտ ժամանակագրութիւն, որուն մէջ իր ժամանակակից դէպքերու մասին պատմածներուն կարելի է արժէք ընծայել։ Շահեկան մանրամասնութիւններ ունի իր ժամանակի և Բագրատունեաց հարստութեան պատմութեան նկատմամբ։ Թաթարաց մասին պատմածները նոր են։ Գիրքը կը վերջանայ եգիպտացիներու Կիլիկիա արշաւանքով և Կոստանդին կաթողիկոսի մահով։ Ունի նաև շատ մը մեկնողական գրուածքներ։ Վարդան, որ Մեծն մակդիրն առած էր, կը մեռնի 1271ին։

ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ.— Վանականի դասընկեր, կենակից ու բաղդակից է Կիրակոս, որ նոյնպէս գերի տարուած է Թաթարներէն և ապա ազատած։ ԺԳ. դարու գլխաւոր պատմիչն է Գանձակեցի։ Իր անունով յիշուած կարգ մը գործերու վաւերականութիւնը տարակուսական է, ուստի իր միակ գործն է Պատմութիւնը։ Գիրքին առաջին մասը աւելի եկեղեցական պատմութեան բնոյթ ունենալով՝ կը խօսի Լուսաւորչի և իր յաջորդներուն վրայ։ Քանի՛ գիրքը կ'առաջանայ՝ քաղաքական անցքերը այնքան աւելի տեղ կը գտնեն։ Երկրորդ մասին մէջ ընդարձակ տեղեկութիւններ կ'ուտայ Թաթարներու արշաւանքին, կիլիկեան մեր թագաւորներու կեանքին և յարակից անցքերու մասին։ Կիրակոս Գանձակեցի վստահելի պատմիչ է։

ՅՈՎՀԱՆ ԵՐԶՆԿԱՑԻ.— Կը կոչուի նաև Պլուզ (կապոյտ աչուի) և Ծործորեցի, երկար ատեն Ծործորի Ս. Աստուածածնի վանքը մնալուն համար։ Ունի մեկնո-

թիւններ, ներբողներ, ճառեր և այլն։ Իր գլխաւոր գործերէն մին ալ է Մեկնութիւն Քերականին, շարագըրուած Յակոբ կաթողիկոսի խնդիրքին վրայ։ Այս գիրքը պատրաստած ատեն օգտուած է Մագիստրոսի, Դաւիթ Անյաղթի և Խորենացիի նմանօրինակ երկերէն, ինչպէս նաև ուրիշ անանուն քերականներէ։ Այս գրուածքը երկու տեսակ ըլլալ կը թուի.— մին՝ Դիոնիսիոս Թրակացիի քերականութեան մեկնաբանութիւնը, իսկ միւսը՝ աւելի ընդարձակ քերականութիւն։

ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԴԷՄՔԵՐ.— ԺԳ. դարուն մէջ երկրորդական մատենագիր կը համարուին՝ ԳՐԻԳՈՐ ՍԿԵՒՌԱՑԻ, ԳԷՈՐԳ ՍԿԵՒՌԱՑԻ, ՎԱՀՐԱՄ ՎԱՐԴԱՊԵՏները։

## ՏԱՍՆԸՉՈՐՍԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Ստեփաննոս Ուրպելեան կամ Օրբելեան.— Հեթում պատմիչ.— Մխիթար Այրիվանեցի.— Եսայի Նչեցի.— Յովհան Որոտնեցի.— Գրիգոր Տաթևացի.— Միաբանասերներու դպրոցը.— Երկրորդական գրողներ:*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Այս դարուն մէջ հայ դըպրութեանց անկումն աւելի ևս կը շեշտուի, որովհետև կիլիկեան կեանքն ալ կը շիջանի։ Գլխաւորաբար պատմական սեռն է որ մշակուած է։ Ունիթորներու մուտքն ի Հայաստան թէ՛ գրգիռ եղած է հայ մտաւորականներուն և թէ՛ եռանդ ներշնչած, որով և ասպարէզ եկած են լատինականութեան դէմ պայքարող գրագէտներ։ Երգիչները կը սկսին ծաղկիլ, բայց ռամկօրէն գործածելով։ Այս դարուն գլխաւոր մատենագիրներն են.

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՈՒՐՊԷԼԵԱՆ կամ ՕՐԲԵԼԵԱՆ.— Սիւնեաց Տարսայիճ իշխանին որդին էր Ստեփաննոս։ Երիտասարդ հասակի մէջ կղերական ասպարէզը մտաւ։ Իր նշանաւոր գործն է Պատմութիւն նահանգին Սիւնեաց Աշխարհին։ Կը սկսի մարդկութեան սկզբնաւորութենէն, կը

հասնի մինչեւ Վաղարշակ, որուն վրայ խօսած ատեն կուտայ Սիւնեաց ազգաբանութիւնը եւ պատմութիւնը, ու գործը կը վերջացնէ ժամանակակից զրոյցներով։ Ուրպէլեանի գործին հետաքրքրականութիւնն այն է որ իբր աղբիւր գործածած է յիշատակարանները, եկեղեցիներու արձանագրութիւնները եւ մանաւանդ թագաւորներու հին նամակները։ Այս պատմութիւնն ապացոյց է որ Սիւնեաց աշխարհը, իբրեւ ազգային կեդրոն, նախամեծարութիւն կը ստանար հետզհետէ։ Թարգմանուած է գերմաներէնի եւ ֆրանսերէնի։

ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉ.— Կոռիկոսի բերդին Օշին իշխանին որդին էր այս պատմիչը, որ թէեւ իր գործը ֆրանսերէն գրած եւ ապա լատիներէնի թարգմանուած է, բայց ազգային մատենագիր կը համարուի։ Պատմութիւն Արեւելից կամ Պատմութիւն Թաթարաց համառօտ, բայց հետաքրքրական գիրք մ'է։ Կը բաժնուի 56 գլուխներու եւ կը խօսի համառօտակի ընդհանրապէս Թաթարաց ազգին եւ անոնց աշխարհակալութեանց մասին։

ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ.— ԺԴ. դարու այս պատմիչը թողած է Ժամանակագրութիւն անուն ընդհանուր պատմութիւն մը, որ աշխարհի ստեղծումէն մինչեւ 1328 թուականը կը հասնի։ Տեսակ մը պատմական մատենախօսութիւն է այս գործը, որ կը խօսի իրմէն առջի բոլոր պատմիչներուն եւ անոնց գրած պատմութիւններուն մասին։ Թարգմանուած է օտար լեզուներու եւ գիտական հետազօտութեանց առարկայ եղած։

ԵՍԱՅԻ ՆՉԵՑԻ.— Սասուն գաւառի Նիչ քաղաքէն էր, առաջնորդ եւ ուսուցիչ։ Ունի այլեւայլ դաւանական թուղթեր ու գրութիւններ։ Նչեցի պարագլուխն էր այն ազգայնական հոսանքին, որ ԺԴ. դարուն մէջ ստեղծուեցաւ ունիթորներու գործունէութեան դէմ։ Հաւանական չէ որ ինք ըլլայ հեղինակը քանի մը նախատալից եւ հայհոյական գրութիւններու, որոնք ունիթորներու դէմ գրուած են։ Այսուհանդերձ ինք կը մնայ մեծագոյն ազգա-

կը հայ եկեղեցիի աւանդական ոգիի պահպանման ժամանակակից ձգտումին։

ՅՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ.— Իւանէ իշխանի տղան է Յովհան, Որոտն գաւառի Վաղանդն գիւղէն։ Երկար ատեն ուսուցչութեամբ պարապած է։ Ունի մեկնութիւններ, ճառեր և ուրիշ կրօնական գրութիւններ։ Վերջին ծայր ընդունակ և գիտնական էր, ուստի միաբանասէրներու հոսանքին դէմ պայքարելով հանդերձ՝ կ'օգտուէր միեւնոյն ատեն անոնց բերած գիտութիւնէն ու լաւ բաներէն։

ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՒԱՑԻ.— Երկար ատեն մնացած է Տաթեւի վանքը, իբրեւ վարդապետ և ուսուցիչ։ Օժտուած ըլլալով հարուստ հմտութեամբ, ունեցած է ստուար մատենագրութիւն։ Միաբանասէրներու սոսկալի հակառակորդն է Տաթեւացին, որ Հարցմանց գիրք անուն երկու հատորներու մէջ ամփոփած է կրօնական վիճաբանութիւններու վերաբերեալ խնդիրներ՝ հարց-պատասխանի ձեւով։ Ունի գրած հարիւրաւոր քարոզներ, իմաստասիրական զանազան գործեր և քաղուածոյներ։

ՄԻԱԲԱՆԱՍԷՐՆԵՐՈՒ ԴՊՐՈՑԸ.— Լատին կրօնաւորներ, որոնք Ունիթոր անունով ծանօթ են, ունեցած են Հայաստանի մէջ ո՛չ միայն կրթական և ուսուցչական, այլեւ՝ գրական գործունէութիւն, որպէսզի իրենց գաղափարները տարածեն ամէն կողմ։ Այս լատին վարդապետներուն կը գործակցէին հայ-լատին վարդապետներ, որոնք գիրքեր ալ ունին գրած. ատոնցմէ գլխաւորներն են՝ ՅԱԿՈԲՈՍ, ՍԱՐԳԻՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՎԱՇԵՆՑ, ՄԽԻԹԱՐ ԱՊԱՐԱՆԵՑԻ, ՅՈՎՀԱՆ ՔՌՆԵՑԻ, ՆԵՐՍԷՍ ՊԱՂՈՆ և այլն։

ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ.— ԺԴ. դարու երկրորդական մատենագիրներու մէջ կը դասուին ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՅ, ՄԽԻԹԱՐ ՍԱՍՈՒՆՑԻ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ, ՄԵՍՐՈՎՊ ՎԱՐԴԱՊԵՏ, ԳԷՈՐԳ ԵՐԶՆԿԱՑԻ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈԼՈՏԵԿ, ՏԻՐԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ, ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹԵՑԻ և այլն։

## ՏԱՍՆԸՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Թովմա Մեծոփեցի.— Առաքել Սիւնեցի.— Առաքել Բաղիշեցի.— Աբրահամ Անկիւրացի.—*

**ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.—** ԺԵ. դարու մէջ հայկական կեանքը մխիթարական ո՛չ մէկ նշոյլ ցոյց կու տայ: Ամբողջ երկիրը քանդուած և ժողովուրդը՝ անապէկ ցրուած է աշխարհի չորս կողմը, ապահով տեղ մը գտնելու և իր գոյութիւնը միայն պահպանելու համար: Մատենագրութիւն չկայ. լեզուն խաթարուած է արդէն՝ մէկ կողմէ լատինական ազդեցութիւնով և միւս կողմէ ռամկօրէնին տիրապետութիւնով: Բացի քանի մը դէմքերէ, գրագէտներ չեն աւանդուիր մեզ: Երգիչներու ծաղկած շրջանն է այս դարը, միջնադարեան ռամկօրէն բանաստեղծութեան յաջողագոյն մէկ ժամանակը: Ահա՛ դարուն աչքի զարնող ցանցառ դէմքերը,

**ԹՈՎՄԱ ՄԵԾՈՓԵՑԻ.—** Մեծոփայ վանքին առաջնորդն ըլլալով՝ Թովմա կոչուեցաւ Մեծոփեցի: ԺԵ. դարու միակ պատմիչն է, ականատես Լէնկթիմուրի արշաւանքներուն, որ ճշգրիտ կերպով կու տայ իր ժամանակի դէպքերուն համառօտ պատմութիւնը: Իր նշանաւոր գործն է Պատմութիւն Լենկթիմուրայ եւ յաջորդաց իւրոյ անուն երկասիրութիւնը: Իր լեզուն գրաբարի է թէեւ, բայց շատ հասարակցած ու ինկած: Այս գործը թէեւ համառօտ, բայց շահագրգռական է պատմական տեսակէտով, ներկայացնելով 60 տարուան (1338-1446) պատմութիւն: Երբեմն դիւրահաւանութեամբ հրաշքներու արժէք կ՚ընծայէ:

**ԱՌԱՔԵԼ ՍԻՒՆԵՑԻ.—** Ունի զանազան կրօնական գրուածքներ: Աւելի իբրեւ քերթող արժէք ունի: Մենք զինքը ներկայացուցած ենք միջնադարեան երգիչներու կարգին:

**ԱՌԱՔԵԼ ԲԱՂԻՇԵՑԻ.—** Ծնած է Բաղէշի Գօռ աւանին մէջ: Յիշատակելի է Կ. Պոլսոյ առման վրայ գրած ոտանաւորը:

**ԱԲՐԱՀԱՄ ԱՆԿԻՒՐԱՑԻ.—** 4-500 տող խառնալեզու ոտանաւորի մը մէջ կը պատմէ Օսմանցիներու Կ. Պոլիս մտնելն ու Բիւզանդական կայսրութեան անկումը:

## ՏԱՍՆԸՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Երկրորդական Մատենագիրներ.— Միջնադարեան երգիչներու ոսկեդարը:*

***ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.***— *Գրական կեանքն ու հայ դպրութիւնը խոր քունի մէջ են Հայաստանի մէջ։ Եւրոպայի վերածնութիւնն ու իր բարերար արդիւնքները Հայաստանի համար ոչինչ ունին դեռ։ Սկսած է Հայկական Տպագրութիւնը, բայց անիկա հեռու է տակաւին հայ ժողովուրդին ծառայելէ։ Կարեւոր մատենագիրներ չկան։*

***ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ.***— *Քանի մը երկրորդական դէմքե՛ր միայն կը ներկայացնէ մեզ՝ մատենագրութեան պատմութիւնը։ Ահաւասիկ.* ***ԹԱԴԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԵԲԱՍՏԱՑԻ, ՍՏԵՓԱՆՆՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍԱԼՄԱՍՏԵՑԻ, ՂՈՒԿԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԿԵՂԵՑԻ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԾՈՐԵՑԻ, ՍԻՄԷՈՆ ԱՊԱՐԱՆԵՑԻ*** *եւայլն։*

***ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԵՐԳԻՉՆԵՐՈՒ ՈՍԿԵԴԱՐԸ.***— *Խամկօրէն մատենագրութեան մէջ թէեւ աչքառու արձակագիրներ չկան, միջնադարեան երգիչներու ոսկի շրջանն է սակայն ԺԶ. դարը։ Երգիչներու շրջանը ասկէ առաջ տուած ըլլալով՝ հոս կանգ չենք առներ։*

## ՏԱՍՆԸԵՕԹԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Առաքել Դաւրիժեցի.— Աբրահամ Կրետացի.— Զաքարիա Քանաքեռցի.— Ստեփաննոս Ռոշքեան.— Խաչատուր Կեսարացի.— Երկրորդական դէմքեր:*

***ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.***— *Եւրոպայի վերածնութեան ազդեցութիւնը քիչ քիչ հայոց մէջ ալ մուտ կը գտնէ։ Ամէն կողմ շարժում մը կայ, մանաւանդ գաղութներուն մէջ։ Տպարանները կը շատնան եւ վանքերը կը ծաղկին։ ԺԷ. դարու կէսէն վերջ արեւելեան Հայաստանի մէջ ալ ոգեւորութիւնը կը սկսի։ Դարը կուտայ քանի մը կարեւոր եւ շատ մը երկրորդական մատենագիրներ։ Ներկայացնենք զանոնք։*

ԱՌԱՔԵԼ ԴԱՎՐԻԺԵՑԻ․— Այս դարերու ամենալաւ և մանաւանդ կանոնաւոր պատմիչն է Դավրիժեցի, որ աշակերտած է և միաբանած Էջմիածնայ վանքին։ Իրեն ընծայուած քանի մը անկարեւոր հատուածներէ դուրս իր գլխաւոր գործն է Պատմութիւնը։ Կը բովանդակէ 60 տարուան դէպքեր, որոնց մեծ մասամբ ժամանակակից կամ ականատես եղած է։ Իր գործը շատ հետաքրքրական է, լաւ և արժէքաւոր։ Ճոխ նկարագրութիւններ ունի Ջուղայի բարօրութեան, անկման և վրաց դիմադրութեան մասին Շահ-Աբասի դէմ։ Մանրամասնօրէն կը պատմէ Շահ Աբասի արշաւանքը և բոլոր այն աղէխարշ դէպքերը, որոնք կապ ունին անոր անուան հետ։ Շատ յատկանշական մանրավէպեր կուտայ Շահ Աբասի մասին։ Լեզուն ընտիր չէ։

ԱԲՐԱՀԱՄ ԿՐԵՏԱՑԻ․— Գանտիացի ըլլալուն համար այսպէս կոչուած է։ Երբեմն Թէքիրտաղցի ալ կ՚ըսեն, հոն 25 տարի առաջնորդական պաշտօն վարելուն համար։ Իր անունով մեզի հասած հայրապետական քանի մը կոնդակները չհաշուելով՝ իր գլխաւոր երկասիրութիւնը կը մնայ՝ Պատմութիւն անձից իւրոց եւ Նատր Շահին Պարսից անուն գիրքը, որ, շարադրուած իր ծերութեան ժամանակ, տեղեկութիւններ կուտայ Էջմիածնի, շրջականերու և հայկական կեանքի վերջացած հին շրջանի իշխանական տուներուն ու հնացորդներուն մասին։ Դավրիժեցի և Զաքարիա ալ այս մասին հատակտորներ կուտան։

ԶԱՔԱՐԻԱ ՔԱՆԱՔԵՌՑԻ․— Մանուկ հասակէն իսկ կրօնաւորութիւն ընդունած է։ Դավրիժեցիի ժամանակակից մ՚է, կաղ ու կարճահասակ, որուն համար երբեմն կաղ Զաքարիա ալ ըսուած է։ Կուտայ Պատմութիւն մը, որուն մէջ Դավրիժեցիին գրածները կրկնելէ վերջ 40 տարի եւս առաջ կ՚երթայ։ Ամբողջ պատմութեան մէջ վիպական արուեստ կայ կարծես. ա՛յնչափ ախորժով կը յափուր։ Կարեւոր է նաեւ իր Կոնդակ Յովհաննավանից անուն համառօտ գործը, որ հետաքննութեան արժանի է։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՌՈՇՔԵԱՆ․— Լեհաստանի Կամենից քաղաքը ծնած ըլլալով երբեմն Կամենեցացի ալ կը կոչ-

ուի։ Եւրոպական լեզուներու ու դպրութեանց հմուտ էր Ռոշքեան։ Իր շատ մը գործերուն մէջ ուշագրաւ է ընդարձակ հայ-լատին Բառարանը, որ հմտութեամբ լեցուն և նախնեաց վկայութեամբ ճոխացած կարևոր գործ մ'է։

ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՍԱՐԱՑԻ.— Սա թէև մատենագրական կարևոր արտադրութիւններ չունի, սակայն իբրև ուսուցիչ և տպարանատէր մեծ ծառայութիւն մատուցած է հայ դպրութեան։

ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԴԷՄՔԵՐ.— ԺԷ. դարու երկրորդական դէմքերէն յիշատակենք ԶԱՔԱՐԻԱ ՎԱՂԱՐՇԱՊԱՏՑԻ, որ գրած է պատմական ընդարձակ Յիշատակարան մը, ՍՏԵՓԱՆՆՈՍ ԼԵՀԱՑԻ, որ ունի ինքնագիր և թարգմանածոյ գրութիւններ, ՍԻՄԷՈՆ ՋՈՒՂԱՅԵՑԻ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ, հայկական տպագրութեան վաստակաւորներէն մին, ԱՂԵՔՍԱՆԴՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՋՈՒՂԱՅԵՑԻ և այլն։

## ՏԱՍՆԸՈՒԹԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր տեսութիւն.— Մխիթար Աբբայ.— Մխիթարեան Միաբանութիւնը.— Յակոբ Նալեան Պատրիարք.— Միքայէլ Չամչեան.— Ղուկաս Ինճիճեան.— Մանուէլ Ջախջախեան.— Գաբրիէլ Աւետիքեան.— Գրիգոր դպիր Փեշտմալճեան.— Գէորգ դպիր.— Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան։*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— ԺԸ. դարը հայկական իմացական վերածնութեան դարն համարուած է, և շատ մը գրագէտներ Հայ Գրականութեան նոր շրջանը կը սկսին Մխիթար Աբբայով, որ առաջին մատենագրական դէմքն է։ Մենք ընդունելով հանդերձ որ հայ լեզուի վերանորոգութիւնն ու նոր շրջանը ԺԸ. դարու մէջ սկիզբ կ'առնէ, կը պահենք մեր պատմական կարգը այնպէս, ինչպէս առաջադրած ենք,— շարունակելով գրաբար լեզուով կատարուած մատենագրութիւնը, մինչև ԺԹ. դար։ Այս դարուն մէջ արդիւնաւոր գործունէութիւն ունեցած է Մխիթարեան Միաբանութիւնը, Հայաստանի և գաղթավայրերուն մէջ ուսումնական և գրական մեծ շարժում մը

ստեղծուած է և պոլսահայ մտաւորական կեանքը կազմուած է։ Շատ են այս դարու մատենագիրները, քերականները, բառարան շինողները ու տոհմաբանական գիրք հեղինակողները, սակայն մենք միայն գլխաւորներով միայն կը զբաղինք։

ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՅ ՍԵԲԱՍՏԱՑԻ.— Հայկական իմացական վերածնութեան առաջինն ու ջահակիրն է Մխիթար։ Ծնած է Սեբաստիա, Հող Դար արուարձանին մէջ, 1676ին։ Իր պատանեկութեան շրջանին մէջ առած է կրօնական կրթութիւն և 14 տարեկան հասակին մէջ անդրայն Ս. Նշան վանքը մտած է իբրև կղերականութեան հետևելու ուզող դպիր մը։ Ուսումնական պատրաստութեան համար Կարին, Էջմիածին ու Սևան գնացած և իր ուսման պապակին յագուրդ չգտնելով Ս. Նշան դարձած է։ Երկրորդ անգամ ըլլալով Պոլիս եկած է 1700ին և աշակերտներ հաւաքելով սկսած է դասախօսութեան։ Մխիթար տեսած էր Հայաստանի ուսումնական գլխաւոր կեդրոն կարծուած վանքերը և յուսահատած, ուստի իր նպատակն էր հաստատել տիպար հիմնարկութիւն մը, որ, հեռու բոլորովին այդ ժամանակին յատուկ չնչուած կրօնական խարութիւններէն ու կործանարար վէճերէն, իսկական կերպով հայ միտքին ու քաղաքակրթութեան ծառայէր։ Առաջին հիմնարկութիւնը տասը աշակերտներով սկսաւ՝ Կ. Պոլիս գաթոլիկներու վանքին մէջ, իբրև Ուխտ Ս. Աստուածածնայ (1701)։ Պոլսոյ գաթոլիկներու դէմ սկսուած հալածանքներու ամենակատաղի շրջանին ստիպուեցաւ ծպտուած կերպով իր աշակերտներուն հետ փախչիլ Մորա, որ այն ատեն Վենետիկի իշխանութեան ներքև էր, և հոն շարունակել իր գործը։ Հոն Մեթոն քաղաքին մէջ մնաց ամբողջ 12 տարի. հազիւ հազ կանոնաւորած էր իր գործը, երբ օսմանցիները Մորայի տիրեցին և Մխիթար ալ իրեններով Վենետիկ անցաւ և հոն մօտակայ Ս. Ղազար կղզիին վըրայ հիմնեց Մխիթարեան վանքը 1717ին։ Քսաներեք տարի վերջ մենաստանը բարեկարգուած էր արդէն և ու-

ներ եկեղեցի, տպարան, դպրոց և այլն։ Մխիթար ան-
վեհեր կերպով կուրծք տուաւ շատ մը նախանձոտ հա-
կառակորդներու հարուածներուն և խոհեմ ու իմաստուն
գործունէութեամբ իր մասին լարուած բոլոր դաւերն
անհետեւանք թողուց։ Մեռաւ այս հոյակապ դէմքը 1749
ին՝ հայութեան կտակելով իր լուսաւոր հաստատութիւ-
նըն ու Մխիթարեան արդիւնաւոր միաբանութիւնը։

Բացի իր այս գերազանցօրէն «մեծ երկասիրութիւն»էն, Մխիթար Աբբայ ունեցած է նաեւ մատենագրական գոր-
ծունէութիւն։ Գրած է կրօնական գիրքեր, հրատարա-
կած է՝ եկեղեցական գիրքերն ու նախնեաց գործերէն ո-
մանք, և օժտած է հայ լեզուն ու դրականութիւնը հայ-
կաբանական քանի մը կարեւոր գործերով, ինչպէս Քերա-
կանութիւն, Հայկազեան բառգիրք և այլն։

Մխիթար Աբբայ ունի մեծ համբաւ՝ թէ հայկական բոլոր հաստատութիւններուն և թէ եւրոպացիներու մէջ։

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ.— Մխիթարեան Միաբանու-
թիւնը, իր երկհարիւրամեայ գործունէութեամբ առանձին ուշա-
դրութեան և ուսումնասիրութեան արժանի հոյակապ հաստատու-
թիւն մ'է, որ հիմնուեցաւ Մխիթար Աբբայի ձեռներէցութեամբ ու ջանքով ու մեծ դեր կատարեց հայկական վերածնութեան գործին մէջ։ Հայ լեզուի վերանորոգութիւնը բացառապէս Մխիթարեաններու կը պարտինք. այլապէս՝ հայ լեզուն, օտար տարրերով խճողուած բո-
լորովին, իր քաոսային վիճակը պահելով՝ հայկական մշակոյթին մէջ անկարող պիտի ըլլար զօրաւոր ազդակ մը դառնալ։ Որպէսզի Մխի-
թար իր մենաստանն օտար երկիրներու մէջ հիմնէր, կային երկու լուրջ պատճառներ։ 1. Նոյն առենի քաղաքական պայմանները, որոնք հնարաւորութիւն չէին տար Թուրքիոյ մէջ այսպիսի ձեռնարկի մը իրականացման, 2. Ներքին ազգ. կրօնական վէճերը, որոնց կրնար զոհ երթալ այս փայփայուած ծրագիրը, և 3. Օտար պետութեան մը և կամ Վատիկանի պաշտպանութեան անհրաժեշտութիւնը՝ այդ շրջա-
նին համար։ Մխիթարի համար կար հայ ազգութիւն, որ կը կազմէր ամբողջութիւն մը, և կրօնք՝ որ հատուածներ կը ներկայացնէր մեր մէջ,— Լուսաւորչականութիւն և գաթոլիկութիւն։ Անոր համոզումն էր թէ ազգային զգացում և կրօնական դաւանանք պէտք չէ շփո-
թել իրարու հետ։ Եւ ճիշդ ա՛յս էր պատճառը, որ Մխիթարեան Մի-
աբանութիւնը յաջողութիւն գտաւ։ Կրօնական գործունէութիւնը Մը-
խիթարեաններուն համար միջոց էր միայն, իսկ ազգային գործունէ-

ութիւնը՝ նպատակ, այնպէս որ Հռոմն ու Էջմիածինը միշտ մօտիկ պահեցին իրենց։ Մինչեւ Մխիթարի մահը (1749) Միաբանութեան գործերը լաւ գնացին եւ համերաշխութիւն կար։ Բայց անկէ վերջ, Հ. Ստեփաննոս Մելքոնեանի աբբահայրութեան օրով ներքին երկպառակում առաջ եկաւ, այլ եւ այլ պատճառներով, որոնք մինչեւ հիմա լուսաբանուած ալ չեն կատարելապէս, եւ վերջապէս դժգոհ միաբանները, թուով 15, առաջնորդութեամբ Պարիկեան Աստուածատուր Վ.ի 1773ին նախ անցան Թրիեստ, հոն հաստատուեցան, եւ ապա՝ երբ Ֆրանսացիները 1807ին տիրեցին այդ տեղերուն եւ բոլոր վանքերն ալ կողոպտեցին, հարկադրուեցան Վիէննա ապաստանիլ։ Հոն 1811ին հաստատեցին երկրորդ Մխիթարեան Միաբանութիւն մը։ Հիմա Մխիթարեան երկու միաբանութիւններ կան, որոնք կը ճանչցուին իրենց հաստատուած քաղաքներու անունով, Վենետիկեաններ եւ Վիենականներ։ Առաջինը հին է եւ ունի 200 տարուան գոյութիւն, իսկ միւսը հազիւ հարիւրամեակ մը բոլորեց։ Մխիթարեան կրկին միաբանութիւններու կատարած դերը շատ մեծ է։ Ամփոփենք: 1. Հայ լեզուի վերածնութեան ռահվիրան եղան, մշակեցին զայն եւ զարգացուցին։ 2. Քերականութիւններով եւ բառարաններով հայ լեզուին բառամթերքը պահպանեցին եւ օրէնքները ճշդեցին։ 3. Մշակեցին գրականութիւն մը, որուն մէջ բաւական կարեւոր սեռեր կային։ 4. Հայկական ձեռագիրները հաւաքեցին։ 5. Շատ մը ձեռագիրներ փճացումէ ազատեցին՝ տպագրելով նախնեաց գործերը։ 6. Դասագիրքեր հրատարակեցին։ 7. Հայ լեզուի հաշակերտներ տուին։ 8. Օտար հրաշակերտներ հայացուցին։ 9. Բանասիրական եւ մատենագրական ճիւղին զարկ տուին։ 10. Հայ մատենագրութիւնն ու պատմութիւնը ճանչցուցին Եւրոպայի։ 11. Մասնագիտական գործեր հրատարակեցին եւ երկու լուրջ հանդէսներ տուին։ 12. Իրենց գործունէութեամբ գրգիռ եղան պոլսահայ մտաւորականներուն։ 13. Սերունդներ կրթեցին եւ վարժարաններ բացին։ 14. Շատ մը ուսեալ կղերներ նուիրեցին ազգին։ 15. Հայ թատրոնը հիմնեցին։ 16. Հայ աշխարհիկ գրականութեան մեծագոյն ազդակն հանդիսացան։ 17. Երկու մեծ մատենադարաններ կազմեցին իրենց վանքերուն մէջ։ 18. Հայկական գեղարուեստական գրականութեան ծառայեցին եւ այլն։

Մխիթարեան կրկին միաբանութիւններու գործունէութիւնները կրնան ունենալ իրենց քննադատելի կողմերն ու թերութիւնները, բայց գործին ամբողջութիւնը հոյակապ է եւ հիանալի։ Ամեն հայ պէտք է երախտագէտ ըլլայ վերջին դարերու այս բարերար ազիններուն ու զանոնք ներկայացնող երկու միաբանութիւններուն։

ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ (†1864). — Յովհաննէս Կոլոտի աշակերտներէն էր Նալեան, Կ. Պոլսոյ պատրիարքը, որ գրած ունի իր ժամանակին յուզուած կրօնական

խնդիրներու շուրջ շատ մը գիրքեր և մեկնութիւններ։ Մխիթարեաններու ազդեցութեամբ Պոլիս կազմակերպուած Թրքահայ մտաւորականներու պարագլուխներէն մին էր։

**Հ. ՄԻՔԱՅԷԼ ՉԱՄՉԵԱՆ** (1738-1823).— Մխիթարեան բազմահմուտ և անխոնջ միտք մը, որ պատմական և աստուածաբանական խոր հմտութիւն ունէր։ Իր գլխաւոր գործերն են. 1. Քերականութիւն. Առանց լատինաբանութեան զտուած և մաքուր հայերէնի առաջին ընդարձակ ու ընտիր քերականութիւնն է. 2. Պատմութիւն Հայոց. Եռահատոր հսկայ գործ մը, որ մինչև այսօր հրատարակուած բոլոր պատմութիւններու ամենէն ընդարձակն է։ Կը սկսի Հայկէն և կը հասնի մինչև 1770։ Ասոր մէջ հեղինակը գործածած է պարզ և գրաւիչ լեզու։ Գ. հատորի վերջը կան ժամանակագրութիւն, թըւականներու համեմատութիւն, ազիւսակներ, ծանօթութիւններ և այլն։ Այս գործը քննական արժէք չունի, որովհետև հեղինակն այն ատեն անծանօթ էր կարգ մը ազգ. պատմիչներու, աղբիւրներու ընտրութիւն ըրած չէ, բեւեռագրական- հնագիտական ոչինչ կայ և գաթոլիկ ոգիով գրուած է։ 3. Մեկնութիւն Սաղմոսաց (10 հատոր):

**Հ. ՂՈՒԿԱՍ ԻՆՃԻՃԵԱՆ**(1758-1833).— Կ. Պոլսեցի է։ Մխիթարեան համբաւաւոր աշխարհագրագէտ, հնախօս և պատմաբան։ Իր կարեւոր երկերն են. 1. Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի (11 հատոր). Ասոր վերջին հատորը Նոր Հայաստանի կը վերաբերի և մեծ կարեւորութիւն ունի Հայաստանի աշխարհագրութեան համար. 2. Դարապատում (8 հատոր). Եւրոպական տէրութիւններու ժամանակակից պատմութիւնը, 1750-1800։ 3. Հին Հայաստան. Հայաստանի հին և միջին դարերու Աշխարհագրութիւնը. 4. Հնախօսութիւն Հայաստանեայց (3 հատոր). Կու տայ Հին Հայաստանի կեանքը, քաղաքական ու վարչական կազմակերպութիւնը, թագաւորի, նախարարներու և բանակի դրութիւնը։ Հին հայոց քաղաքակրթութեան պատմութեան առաջին փորձն է մեր մէջ։

Հ. ՄԱՆՈՒԷԼ ՋԱԽՋԱԽԵԱՆ (1770-1835).— *Ունեցած է գրական արդիւնաւոր կեանք. Վենետիկի Մխիթարեան է։ Իր գլխաւոր գործերն են՝ քերթուածներ, Ֆենելոնի Տելեմաքին թարգմանութիւնը և բառարաններ՝ հայերէնէ իտալերէն և իտալերէնէ հայերէն։ Ունի բանաստեղծական ու վիպագիրի խառնուածք։*

Հ. ԳԱԲՐԻԷԼ ԱՒԳԵՐԵԱՆ (1751-1827).— *Մխիթարեան հոյակապ աստուածաբան և նշանակելի քերթող։ Ունի հայրենաշունչ թրթռուն քերթուածներ։ Գլխաւոր գործերն են* Մեկնութիւն թղթոցն Պօղոսի *(3 հատոր),* Բացատրութիւն Շարականաց, Լուծումն Նարեկայ Աղօթից եւ ճառից։

ԳՐԻԳՈՐ ՊԱՏՈՒԵԼԻ ՓԵՇՏՄԱԼՃԵԱՆ(1773-1837).— *Հռչակաւոր պերճախօս ու գիտնական պոլսահայ մ՚էր, ինչպէս կ՚ըսեն իր ժամանակակիցները։ Մեծ գործունէութիւն ցոյց տուած է Պատրիարքարանի գործառնութեանց մէջ։ Նշանաւոր դարձած էր իբրև հայկաբան, աստուածաբան և բանաստեղծ։ Տպագրած է հին հայ մատենագրութեանց վերաբերեալ գործեր։ Իր գլխաւոր երկասիրութիւններն են.* Տրամաբանութիւն, Քերականութիւն, Լուսաշաւիղ *կամ* Բացատրութիւն Համզանակի *և* Բառգիրք Հայկազեան լեզուի *(2 հատոր)։ Իր հեղինակած* Ստուգաբանական բառարանը*, որ հրդեհի ատեն այրած է, չենք կարծեր որ գիտական արժէք մ՚ունենայ։ Բանաստեղծական նշանաւոր գործը կարելի է համարել՝* Դիմառնութիւն ի չարչարանս Քրիստոսի *ընդարձակ քերթուածը։*

ԳԷՈՐԳ ԴՊԻՐ (1737-1812).— *Պոլսահայ դէմք մը, որ նշանաւոր դարձած է իբրև լեզուագէտ, հայկաբան, աստուածաբան, պատմաբան, քերթող ու թարգմանիչ։ Ունի շատ մը թարգմանութիւններ, լեզուական գործեր (*Բառարաններ*՝ պարսկերէնէ հայերէն, արաբերէնէ հայերէն և* Քերականութիւններ*՝ պարսկերէն, արաբերէն և հայերէն), պատմական գործեր (*Պատմութիւն Վեզիրներու Օսմ. պետութեան*, անտիպ,* Պատմութիւն Օսմանեան, Պատմութիւն Հայոց*) և այլն։ Այս վերջինը լոյս տեսած չէ և կ՚ըսուի թէ Չամչեանի գործն է։*

ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ.— ԺԸ. դարու սկիզբներն ապրող հմուտ դէմք մը, որ ունի տաճկաբարբառ ու հայերէն շատ մը գործեր։ Իր պատմական գործերը նշանակելի են։ Օգտուած է Մեծոփեցիէն և Առաքել Դաւրիժեցիէն, որոնց ձգած տեղէն կը շարունակէ Պատմութիւն Հայոց մը։

ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ։— ԺԸ. դարու Մխիթարեան դէմքերու մէջ նշանակելի են՝ Հ. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱԳՈՆՑ ՔԻՒՎԷՐ, Հ. ՎՐԹԱՆԷՍ ԱՍԿԷՐԵԱՆ և այլն։ Իսկ տաճկահայոց մէջ փայլող երկրորդական դէմքերէն յիշենք՝ ՊԱՂՏԱՍԱՐ ՊԱՏՈՒԵԼԻ, ԽԱՉԱՏՈՒՐ ՎԱՐԺԱՊԵՏ (Սամաթիոյ). Տ. ՄԵՍՐՈՊ ՔԱՀԱՆԱՅ, ՑԻՋԻՔԱ ՊՕՂՈՍ ՊԱՏՈՒԵԼԻ, ԱՆԴՐԷԱՍ ՎԱՐԺԱՊԵՏ (Խասգիւղցի) և այլն։

## ՏԱՍՆԸԻՆՆԵՐՈՐԴ ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Հ. Մկրտիչ Աւգերեան.— Հ. Եղիա Թովմաճեան.— Մեսրոպ սարկաւագ Թաղիադեանց.— Կարապետ Վ. Շահնազարեան.— Հ. Արսէն Կոմիտաս Բագրատունի.— Հ. Եդուարդ Հիւրմիւզ.— Ցարութիւն Ալամդարեան.— Ցովհան Միրզա Վանանդեցի.— Ստեփան Հէքիմեան.— Զանազան գրական դէմքեր:*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— ԺԹ. դարն առաւելապէս նոր կամ աշխարհիկ գրականութեան կը վերաբերի, աշխարհաբար լեզուի գործածութեան տեսակէտով. սակայն այդ դարուն սկիզբները ծաղկած են. կարգ մը մատենագրական հոյակապ դէմքեր, Մխիթարեան կամ ոչ-Մխիթարեան, որոնք գրաբար լեզուով մատենագրած ըլլալնուն համար գրաբար մատենագրութեան բաժնին մէջ դրինք։ Արեւմտեան և Արեւելեան աշխարհիկ գրականութիւնները աւելի ԺԹ. դարու կէսին սկսան տարածուն գործունէութեան։ Աշխարհիկ գրականութեան բաժինն առանձին պիտի տեսնենք արդէն. մենք հոս կուտանք ԺԹ. դարու գրաբար լեզուով մատենագրող գլխաւոր գրչի մարդիկը։

Հ․ ՄԿՐՏԻՉ ԱՒԳԵՐԵԱՆ (1762-1854)․ — Վենետիկի Մխիթարեաններէն լեզուագէտ և աստուածաբան։ Իր նշանաւոր գործերն են 1․ Հայկազեան Բառարանը, (երից վարդապետաց), որուն պատրաստութեան մէջ՝ գլխաւոր բաժինը իրն է․ 2․ Առձեռն բառարան, 3․ Լիակատար Վարք Սրբոց (10 հատոր)։ Ասոնցմէ զատ Հ․ Մ․ Աւգերեան ունի շատ մը ճառեր, գրութիւններ ու թարգմանութիւններ։ Հայկազեան Բառարանի միւս աշխատակիցներն են Հ․ Սիւրմէլեան և Հ․ Աւետիքեան։ Այս գործը նախ ունէր 12 հատոր, բայց ի վերջոյ տպագրական ծախքերու մեծութիւնը համառօտութեան և 3 հատորի վերածելու ստիպեց զիրենք։

Հ․ ԵՂԻԱ ԹՈՎՄԱՃԵԱՆ (1777-1847). — Բազմարդիւն մատենագիր, լեզուագէտ ու թարգմանիչ։ Իր գլխաւոր թարգմանութիւններն են Հոմերոսի Իլիական ու Ոդիսական դիւցազներգութիւնները, Պլուտարքոսի Զուգակշիռները (6 հատոր), Արիստոտէլի գործերէն երկուքը, Եւրիպիդեսի Ողբերգութիւններէն մէկ քանին։ Ունի նաև քերթուածներ և այլ գործեր։

ՄԵՍՐՈՊ ՍԱՐԿԱՒԱԳ ԹԱՂԻԱԴԵԱՆՑ (1803-1858) . — Հնդկահայ գրագէտ։ Երկար ատեն Էջմիածնայ վանքը մնալէ վերջ ունեցաւ երկար ճանապարհորդութիւններ և ստանդղական կեանք։ Կալկաթայի մէջ մեծ գործունէութիւն ցոյց տուած է։ Թաղիադեանց իր ժամանակի նշանաւոր դէմքերէն է՝ իբրև գիտնական, բանաստեղծ, հայկաբան ու մանկավարժ։ Գրած է թարգմանութիւններ, մանկավարժական-դպրոցական, պատմական և ուղեգրական գիրքեր և գրական գործեր։ Իր ուղեգրական գործերուն մէջ գլխաւորն է Ճանապարհորդութիւն ի Հայս իսկ գրական գործերէն՝ Վէպ Վարսենկանն ու Վարդգէսի Վէպը։

ԿԱՐԱՊԵՏ Վ․ ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ († 1865). — Ս․ Էջմիածնի միաբաններէն է Կարապետ Վ․, պատմաբան և կրօնագէտ։ Իր ժամանակին ազատախոհ կղերներէն մին եղած է, գայթակղութիւն առաջ բերելու չափ։ Իր գըլ-

խաւոր երկասիրութիւններն են Հերմոնն Դաշանց թղթոյն, Կրօնագիտութիւն և այլն ։ Բարիզի մէջ հրատարակած է Շար Հայ պատմագրացը՝ ծանօթագրութիւններով ։ Ունի տաղերէն շատ մը ուրիշ երկեր ալ ։

Հ. ԱՐՍԷՆ ԿՈՄԻՏԱՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ (1790-1866) .— Վենետիկի միաբանութեան ամենէն հսկայ դէմքերէն մին, որ իր ինքնագիր ու մանաւանդ թարգմանածոյ գործերով գրաբար լեզուի հրաշակերտներն արտադրեց ։ Բագրատունի հմուտ էր զանազան լեզուներու ։ Գիտուն միտք մը և յոգնավաստակ մատենագիր մը ունինք իր անձով ։ Առաջնակարգ թարգմանիչ է և խորազգած ու արուեստագէտ բանաստեղծ ։ Իր գլուխ գործոցն է Հայկ Դիւցազն վիպական հիանալի քերթուածը, որով վիպական չքնաղ հանգոյցներով կը պատմէ Հայկ Նահապետի գործերն ու հայ ազգի հիմնարկութիւնը ։ Ունի գեղեցիկ քերթուածներ ։ Ճարտար և հեղինակաւոր գրչով մը թարգմանած է՝ Վիրգիլիոսի Մշակականը, Որատիոսի Արուեստ Քերթողականը, Հոմերոսի Իլիականը, Միլտոնի Դրախտ կորուսեալը, Փոսկոլէի Գերեզմանքը, Վոլթէրի, Ռասինի և Ալֆիէրիի Ողբերգութիւնները՝ հայկական չափով ։ Արձակ լեզուով հայերէնի թարգմանած է Պոսիւէի Դամբանականքը, Սոաւէի Տրամաբանութիւնը, Մասիյոնի Փոքրիկ Քառասնորդը և այլն ։ Իր լեզուաբանական բազմահմուտ գործն է Քերականութիւն ի պէտս զարգացելոց ։

Հ. ԵԴՈՒԱՐԴ ՀԻՒՐՄԻՒԶ (1799-1876) .— Բագրատունիի աշակերտն ու անոր գրական համբաւին տիրացած Մխիթարեան հայակալ մատենագիրն է, նշանաւոր դարձած աւելի իբրև թարգմանիչ քան իբրև քերթող ։ Հայ գրականութիւնը շատ բան կը պարտի իր գողտր ու նկարէն գրչին ։ Ինքնագիր գործերն են՝ Մաղթանք չափաւ, Բուրաստանք Վրուրի Ումզդանայ, Ցորայ գիրք, Ուռնկաբերք Հին Կտակարանաց, Ծաղկաքաղ ի Սաղմոսաց, Վրուրի Ումզդանայ սուրբ և այլն ։ Թարգմանածոյ գործերն են Ֆենելոնի Տելեմաքը, Պեռնարտէն տը

Սէն Բիէռի Պօղ եւ Վիրգինիան, Ֆլօրիանի Նումա Պոմպիլիոսը, Վիրգիլիոսի Ենէականը, Ռասինի Ի կրօնը, Պարթէլըմիի Ուղեւորութիւն Անախարսեայն, Ռօլէնի Հնախօսութիւնքը, Մանծոնի Խօսնեցեալքը, Գօթէնի Ախտականքը եւ ուրիշ շատ մը գործեր։

Հ. ՄԱՆՈՒԷԼ ՔԱՋՈՒՆԻ.— Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան գիտական դէմքերու գլխաւորներէն մին, որ մեզ տուած է դրական գիտութեանց ընդարձակ հատորներ. ինչպէս, Թուաբանութիւն, Աշխարհագրութիւն, Բնաբանութիւն, Բնալուծութիւն, Մեքենագիտութիւն, Արուեստաբանութիւն, Երկրագործութիւն, Շերամաբուծութիւն, Մեղուաբուծութիւն, Կաթնաբանութիւն, Պարտիզպանութիւն, Պտղաբանութիւն եւ այլն։ Իր ամենամեծ գործն է Բառգիրք Գիտութեանց եւ Արուեստից։ Ունի նաեւ Հնախօսութիւն Հայաստանի անուն գործ մը եւ այլ երկրորդական հեղինակութիւններ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ Վ. ԱԼԱՄԴԱՐԵԱՆ.— Աստրախան ծնած է Ալամդարեան 1796ին։ Տաղանդաւոր ուսուցիչ ու բանաստեղծ, որ գրեց գողտրիկ քերթուածներ։ Գործած է ուսումնարանի մէջ՝ իբրեւ ուսուցչական եւ ճարտարախօս ազգային գործիչ եւ շատ հալածանքներ կրած է։ Յարութիւն Վ.ի բանաստեղծութիւնները Բեղբաշուրկի մէջ հրատարակուած են 1884ին։

ՅՈՎՀԱՆ ՄԻՐԶԱ ՎԱՆԱՆԴԵՑԻ.— Ծնած է Վանի մէջ՝ 1771ին։ Իբրեւ ուսուցիչ երկար ատեն գործած է Իզմիրի մէջ։ Ունի թարգմանութիւններ եւ կրօնական զանազան հեղինակութիւններ։ Իր բանաստեղծական գործերուն մէջ դարագլուխ կազմող գործերն են, 1. Տեսարան Հայկայ, Արամի եւ Արամայ (վիպական քերթուած մը, բաղկացած չո ս գլուխէ), 2. Արփիական Հայաստանի (կրօնական դիւցազներգութիւն մը, բաժնուած 8 երգի) եւ 3. Ոսկի դար Հայաստանի (հովուերգութիւն մը, 4 երգի բաժնուած)։ Յովհան Միրզա Վանանդեցի առաջինն է որ հայ բանաստեղծութեան մէջ մացուցած է

ազգայնական ոգի ու շունչ։ Անոր հայրենաշունչ երգերէն մէկն է Հայաստան երկիր դրախտավայրը, որ ամէն երգարաններու մէջ կայ։ Իր գրական ուղղութեամբ նոր է, բայց գրաբար լեզու գործածելուն համար այս բաժնին մէջ դրուած է իր անունը։

ՍՐԱՊԻՈՆ ՀԷՔԻՄԵԱՆ (1832-1892).— Թատերեգակ և բանաստեղծ։ Հէքիմեան գլխաւոր գործակիցն է Պէշիկթաշլեանի։ Երկուքն ալ Հայ թատրոնի զարդերն են։ Աս է որ հաստատած է առաջին կազմակերպուած թատրոնը։ Գրած է շատ մը տաղեր և պատմական թատերգութիւններ, որոնց մէջ նշանաւոր են Արտաշէս եւ Սաթենիկ, Հարմակ եւ Աշխեն, Սամէլ կամ Կրօնք եւ տիրասիրութիւն, Վահրամ կամ Ասպետն երկաթաբազուկ, Արգամ, Ողիմպիադա եւ Փառանձեմ, Մեծն Ներսէս և այլն։ Իր բանաստեղծութիւններն ընդհանրապէս սիրային նիւթերու շուրջ կը դառնան։

ԶԱՆԱԶԱՆ ԳՐԱԿԱՆ ԴԷՄՔԵՐ.— Ասոնցմէ զատ կան նաեւ շատ մը մատենագիրներ՝ թէ Մխիթարեան հայրերուն և թէ աշխարհականներու ու տաճկահայերու մէջ։ Երկար կ'ըլլայ անոնց բոլորին ցանկը։ Յիշենք գլխաւորները։ Մխիթարեան հայրերէն՝ Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՒԳԵՐԵԱՆ, Հ. ԳԷՈՐԳ ՀԻՒՐՄԻՒԶ, Հ. ԿՂԵՄԷՍ ՍԻՊԻԼԵԱՆ, Հ. ՍՈՒՔԻԱՍ ՍՕՄԱԼԵԱՆ, Հ. ՅԱԿՈԲ ԻՍԱՎԵՐԴԵԱՆՑ, Հ. ՂԵՒՈՆԴ ՅՈՎՆԱՆԵԱՆ, Հ. ՊՕՂՈՍ ՅՈՎՆԱՆԵԱՆ. իսկ աշխարհականներէն՝ ՄՍԵՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ ՄՍԵՐԵԱՆՑ, ՍԵՐՈՎԲԷ ՊԱՏԿԱՆԵԱՆ և այլն։ Եկեղեցական նշանակելի դէմքեր են նոյնպէս՝ ԳԱԲՐԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՅՎԱԶՈՎՍԿԻ, ՍԱՐԳԻՍ Վ. ԹԷՈԴՈՐԵԱՆ, ՎԱՀԱՆ Վ. ԲԱՍՏԱՄԵԱՆՑ և այլն։

## 2. ՌԱՄԿՕՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ



*Ընդհանուր տեսութիւն.— ԺԲ.-ԺԹ. դարու ռամկագիր մատենագիրներ եւ ռամկօրէն մատենագրութիւն:*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Այս շրջանը կը յատկանշէ այն գրականութիւնը, որ կատարուած է հայոց մէջ ռամկօրէն լեզուով՝ մինչեւ ԺԹ. դար, արդի աշխարհաբարին գործածութիւնը: Ռամկօրէն լեզուով կատարուած մատենագրութեան սկիզբը պէտք է փնտռել ԺԲ. դարուն մէջ, առայժմ, քանի որ մեր ձեռքը գտնուած ձեռագիրներն ու վաւերական ռամկօրէն գիրքերը աւելին չեն ըսեր: Ճիշդ է որ ռամկօրէնի ըսկզբնաւորութիւնը մինչեւ Ը. դար տանողներ կան, առաջին ռամկագիր մատենագիրն համարելով Շապուհ Բագրատունին, որուն գրած ռամկագիր Պատմութեան վըրայ խօսած ենք արդէն, սակայն որովհետեւ կարելի է առարկել թէ Շապուհի Պատմութիւնը ո՛չ թէ ռամկօրէն լեզուով գրուած է, այլ՝ ռամկախառն, ուստի կրկին կը ստիպուինք վերադառնալ ԺԲ. դար, պահ մը առանց Վենետիկի Բժշկարանին ալ հնութեան տեսակէտով բացարձակ փաստ ընդունելու: Բնական է որ ռամկօրէն մատենագրութիւնը չունեցաւ բարձրագոյն այն թռիչը, որ դասական հայերէնին (գրաբարին) վայելչութիւնը կազմեց. սակայն վերին աստիճանի շահեկան են այն դէմքերն ու երկասիրութիւնները՝ որոնք ռամկագիր մատենագրութեան կը վերաբերին: Յաջորդաբար պիտի տանք բոլոր դարերու ռամկօրէն գրականութեան գրիչներն ու իրենց երկերը, խուսափելով մանրամասնութենէ ու ընդարձակութենէ:*

### ԺԲ. ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Ներսէս Շնորհալի.— Մխիթար Հերացի.— Մխիթար Գօշ.— Պոնիոս Անատոլիոս Պերիպացի.— Հայ Բժշկականութիւն.— Հայ առակագրութիւնը:*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Այս շրջանին մէջ ռամկագիր քանի մը դէմքեր միայն կ'երեւան, որոնք սակայն*

*բաւական են ըսելու մեզ թէ ո՛րչափ ժողովրդականացած է ռամկօրէն լեզուն և պարզ ու հասկնալի։ Ինչպէս դիտելի է, տակաւին գրաբարի տարրեր կան լեզուին մէջ և հետզհետէ՛ միյան ռամկօրէնը կը կատարելագործուի։*

*ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ.— Հայկական ռամկագիր գրականութեան առաջին ճաշակը կուտայ Կիլիկիոյ հայոց հայրապետը, Ներսէս Շնորհալի, որ հայ քնարին փառքն է և իր դարուն մեծագոյն դէմքը։ Զանազան մատենագիրներ կը վկայեն թէ Շնորհալի գրած էր զանազան հանելուկներ և առակներ, հաւանաբար* 1166-1173։ *Մինչեւ հիմա աստ անդ բաւական թիւով ձեռք բերուած են անոնք։ Շնորհալիի լեզուն գեղեցիկ է, բայց տակաւին գրաբարի կապանքներով կաշկանդուած։ Յետագայ օրինակները կրնան գաղափար մը տալ իր գործին մասին.*

ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Յամեն շրջի ինքն ի քարեր,*
*Ունի ծախու մազէ քրձեր.*
*Գինւոյ ունի աղուոր տըկեր,*
*Ի՛օժտէ ձրի գանկի կոթեր։*
(*Այծ*)

*Մանուկ մի կայր զօրեղ հրեղէն*
*Խըմեց հատցոյց զջուրն ի գետէն։*
(*Աշունը*)

*Տուն մը տեսայ սպիտակ բըռած,*
*Ու սեւ հաւեր ի ներս թառած.*
*Ձուս ածէին ցեղք ի ցեղաց,*
*Լեզուաւ խօսին բանականաց։*
(*Գիրք*)

*Աւասա որ չէ նա խիստ խեռ,*
*Չէ կըռընկու վիզն է ի կեռ.*
*Չէ այլազգի ելնէ ի լեռ,*
*Բնաւ չառնու յոտքըն բեւեռ։*
(*Ուղտ*)

*Այս ոճով ու կերպով Շնորհալի կը ներկայացնէ կատուն, այծը, գետը, գրիչը, սիրամարգը, նուռը, կապիկը, կատուն և այլն։*

*ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ.— Հռչակաւոր բժշկապետ մը, որ Հեր քաղաքը ծնած ըլլալով ընդհանրապէս Հերացի կոչուած է։ Պզտիկուց իսկ արաբերէն, պարսկերէն ու հելլեներէն սորված ու լաւ հմտացած էր բժշկութեան և գիտական ուրիշ ճիւղերու։ Իր ծննդեան ու մահուան պարագաներուն կամ թուականներուն մասին ոչինչ գիտենք։ Իր ժամանակակիցները կուտան իրեն մեծ տիտղոսներ (իմաստուն, ճարտար բժիշկ, բժշկապետ և այլն)։*

Մխիթարի մեր ձեռքն հասած միակ երկասիրութիւնն է Ջերմանց բժշկութիւն կամ Ջերմանց մխիթարութիւն կոչուած գիրքը, զոր գրած է ռամկօրէն լեզուով՝ «ժողովուրդին հասկնալի ըլլալու համար», 1184ին։ Այս գիրքին մէջ հեղինակը կը ճառէ ջերմերու տեսակներուն և անոնց դարմաններուն վրայ։ Օգտուած է արաբերէն ու պարսկերէն զանազան աղբիւրներէ։ Մխիթարի այս գիրքը առաջին զուտ բժշկա-գիտական գործն է հայ գրականութեան մէջ և ուշագրաւ է՝ թէ՛ իր նիւթին և թէ լեզուին տեսակէտով։ Հետագայ պատառիկը կրնայ գաղափար մը տալ իր ժողովրդական լեզուին վրայ։ Գիրքին սկիզբները աւելի գրաբարախառն է լեզուն, և հետըզհետէ աշխարհիկ գոյն առած։

«Ապա թէ խիստ փառուժի հիւանդն, դու մսի ջուր տուր այս նշանօքս։ Առ ուլու միս ի թիկանցն և ի շլիցն և ի կողոյն, մանր կըտրատէ և ի քարէ պտուկ արկ, և աղն պակաս արա և մեղմ կրակով եփէ։ Եւ որչափ ի մէջն ջուր եղանէ՝ դու հետէն առ զջուրն, ի զատէ աման արկ՝ մինչեւ ցամաքի միսն։ Ապա սակաւ մի անուշահոտ գինի, և իւր կիսոյն չափ խնձորի ջուր. զայսոք ի միսին ջուրն խառնէ, և մեղմ կրակով սակաւ մի եռցո՛, և ապա տուր կում կում որ խմէ, զի այս ջուրդ խիստ ուժովցնէ զհիւանդն...»

«Երբ տաքութիւնն անցանի, դալար մանր ձուկն խորված ուտէ, և ի խաւարտուռն՝ զհովն և զգիճային ի բան պահէ, որպէս հազարն և զփրփրեմն, զդալար գինձն և զոր նման սոցին»։

«Հիւանդն զկերակուրն թեթեւ և դիւրահալ ուտէ, որ անուշահոտոք եփած լինի, զերդ ուլի միս, հաւու ձագ, և զաւրին ողոշար՝ սխտան ջրով։ Եւ զկնի այսոր՝ խնձորի ջուր, և քաղցր և թթու սերկեւիլի ջուր՝ ընդ սակաւ մի գինի խառնեալ, և գերմակ հաց փշըրեալ խառնէ և ուտէ։»

ՄԽԻԹԱՐ ԳՈՇ.— Իր մասին խօսեցանք արդէն գըրաբարով կատարուած մատենագրութեան բաժնին մէջ։ Ինք իր առակներով միայն կրնայ մտնել ռամկօրէն մատենագիրներու բաժնին մէջ՝ նիւթի տեսակէտով. այլապէս՝ իր մշակած լեզուն գրաբարն է։

ՊՈՆԻՈՍ ԱՆԱԹՈԼԻՈՍ ՊԷՐԻԹԱՑԻ.— Պէրութցի յոյն մ՚ն է այս անձնաւորութիւնը, որուն Վաստակոց գիրք անուն գործը անծանօթ հայ թարգմանիչի մը կողմէ ա-

րաբերէնէ ռամկօրէնի վերածուած է։ Կը խօսուի երկրագործութեան վրայ և իր գրաբարախառն լեզուով կը թուի ըլլալ հին մատեան, չա՛տ հին, քան մինչեւ հիմա յայտնուած բոլոր ռամկագիր մատենագիրները։ Կ'ենթադրեն թէ մեզ հասած օրինակները հարազատ չեն։ Ճաշակ մը տանք այս գործէն ալ։

«Պարտ է զանգին լաւ ընտրել համօծս և գունօծս և տեսակաւն, որպէս գրեալ եմք ի տեղւոջ իւրում, և ապա բազմապատիկ փառատակել և փորել և սրբել յօտարոտի տակէ և ի բուսոց, և քարքաղ առնել և դուրել. վասնզի յամառնային տօթն՝ շոգանան քարինքն և այրեն զտունկն, թէ փոքրաքարուտ լինի և սալուտ և կոկնուտ. Նոյնպէս և ձմեռն պաղի քարն և ահոկէ. զայս այն քարինքն առնեն, որք վերեւ գետնին լինին։ Բայց այնոքիկ որ ներքեւն լինին՝ զընդդէմն գործեն ի տակքն, և այսոքիկ հովացուցանեն զտունկն և օգտեն, և ի պաղն ջեռուցանեն և...»։

ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ.— Ռամկօրէն մատենագրութեան մէջ շատ առատ են բժշկական գիրքերը, որովհետեւ միջին դարերու մէջ ամենէն կարեւոր և ժողովուրդին օգտակար մատենագրութիւնը տարակոյս չկայ թէ բժշկութիւնն է։ Հայ բժիշկներու ռամկօրէն լեզուով գրելն ալ դիւրաւ հասկնալի բան մ'է։ Բժիշկները առհասարակ աշխարհականներ էին և անշուշտ ընթացիկ աշխարհիկ լեզուն կը գործածէին։ Հայ բժշկականութեան սկիզբը բաւական հին է։ Թ. և Ժ. դարէն սկսեալ քանի մը հայ բժիշկներու անունները կը լսենք։ Մեզի կը թուի թէ արաբական տիրապետութեան շրջանին և շրջանէն վերջ կ'աճին բժիշկները մեր մէջ, օգտուելով արաբական գիտութեան նոյն ճիւղէն, որ շատ զարգացած էր։ Հայոց մէջ կան շատ մը Բժշկարաններ, որոնց մէջ յաճախ կը յիշատակուին կարգ մը նշանաւոր բժիշկներ, ինչպէս Մասերճուա, Յոհաննէս (Եահեա կամ Եուհաննա), Հունին որդի Սահակայ, Սապիթ կամ Թէպիտ Պէն Գուրրա (Ապուլ-Հասան), Սահակ, Մոհամմէտ իպնի Զաքարիյա (Ապու-Պէքիր), Իպնի Սինա (Ապու-Ալի), Յեսու, Ապուճարեհ, Մասեհ և այլն։

ՀԱՅ ԱՌԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Հայ դրականութեան մէջ ճոխ է առակագրութեան սեռը։ Հին դարերէ ի վեր

հայկական բանաւոր բանահիւսութեան մէջ, հայ ժողովուրդը մշակած է ժողովուրդին կեանքէն առնուած և փորձառական դասեր պարունակող առակներ։ Այս առակները յաճախ ունեցած են՝ իբրեւ հեղինակ՝ նշանաւոր մատենագիրներ, որոնք մասնաւոր փոյթ ունեցած են ըստեղծելու ժողովրդային այնպիսի ժամանցներ, որոնք զուարճանալ ուզողները անբարոյացուցիչ փորձութիւններէ հեռու կը պահէին։ Հայ առակագրական գրականութեան մէջ անուանի դէմքեր են Ներսէս Շնորհալի, Մխիթար Գօշ և Վարդան Այգեկցի։ Ասոնցմէ վերջինն է սակայն, որ իր ժողովրդական (ռամկօրէն) լեզուով գրած առակներով լաւ կը ցոլացնէ հայ ժողովուրդին միջնադարեան ոգին և կը մօտենայ անոր սրտին։

## ԺԳ. ԴԱՐ

Ընդհանուր տեսութիւն.— Սմբատ Սպարապետ պատմիչ.— Վարդան Այգեկցի.— Վարդան Արեւելցի կամ Մեծն.— Եկեղեցական ռամկագիրներ.— Դիւանական-ատենական գրութիւններ։

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Այս դարը ինչպէս գրաբար, նոյնպէս ալ ռամկօրէն մատենագրութեան համար աչքառու երեւոյթներ չընծայեր։ Միայն թէ ռամկօրէնի ժողովրդականացումը կ'ապացուցանէ, երբ յայտնի գրագէտներու գործերը ռամկօրէնի թարգմանելու ձեռնարկներ կ'ըլլան։ ԺԳ. դարու գլխաւոր ռամկագիր դէմքերն են.

ՍՄԲԱՏ ՍՊԱՐԱՊԵՏ ՊԱՏՄԻՉ.— Հեթում Ա.ի եղբայրն էր Սմբատ, որ կը կոչուէր սպարապետ կամ գունդստապլ։ Ապրած է 1208-1276 թուականին և հանդիսացած է Ռուբինեանց շրջանի գլխաւոր դէմքերէն մին։ Ունի ազնուական ծագում։ Զինքն իբրեւ մատենագիր նկատի առնելով պէտք է զետեղել ռամկագիրներու բաժնին մէջ։ Մինչեւ ԺԹ. դարու սկիզբները իր ծանօթ գործն էր Պատմութիւնը, կամ Տարեգիրք Սմբատայ, որ գրեթէ 400 տարուան (951-1231) դէպքեր կը բովանդակէ ժամանակագրական կերպով։ Ասիկա քաղուածոյ մէ Մատթէոս Ուռհայեցիի գործէն, վերջին մասը միայն իր

ձեռքով չարադրուած։ Սմբատի գործին մէջ մատենագրական արժանիք չկայ. ուշադրութեան արժանի է իբրև պատմական գործ և ռամկագիր երկասիրութիւն։ Պատմութիւնէն վերջ յայտնուեցաւ Օրինաց Մատեան կամ Դատաստանագիրքը, որուն մէջ կը բովանդակուին Մխիթար Գօշի ծանօթ գործին թարգմանութիւնն ու Անսիզք Անտիոքայ գործ մը, որ խաչակիրներուն ժամանակ Անտիոք քաղաքին մէջ բնակող քրիստոնեայ պարոններու և ցինե-րու փոխադարձ պարտքերն ու իրաւունքները կ'ամփոփէ։

ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻ.— Բրոֆ. Նիքոլս Մառ կը հաւատայ թէ ԺԳ. դարու դէմք մ'է նոյնպէս Վարդան Այգեկցի, որ, ըստ իրեն, Աղուէսագիրքին և Ոսկեփորիկ-ներու մէջ գտնուած առակներէն ոմանց հեղինակն է։ Այս դէմքը վերջերս յայտնուեցաւ։

ՎԱՐԴԱՆ ԱՐԵՒԵԼՔՑԻ ԿԱՄ ՄԵԾՆ.— Զինք ներկայացուցած ենք արդէն իբրև գրաբար լեզուով գրող մատենագիր։ Սակայն ունի կարգ մը ռամկօրէն գրութիւններ ալ։ Աղուէսագիրքին մէջ 140ի չափ առակներու հեղինակ կ'ուզեն ցոյց տալ զինքը, բայց կը կարծուի թէ անունի շփոթութիւնով իրեն վերագրուած են ատոնք։

ՌԱՄԿԱԳԻՐ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐ.— ԺԳ. դարու մէջ կան քանի մը դէմքեր, որոնք թէև գրաբար լեզուով գրած են, բայց որովհետև շատ ռամկախառն է իրենց լեզուն, ուստի սովորութիւն եղած է ռամկագիր գրագէտներու կարգը դասել։ Ասոնցմէ են՝ ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՅ և ԳՐԻԳՈՐ Է. ԱՆԱՒԱՐԶԵՑԻ, որոնց մանր մունըր ռամկական գրութիւններն ալ գտնուած են, անշուշտ գրաբարի ազդեցութեամբ ճնշուած։

ԴԻՒԱՆԱԿԱՆ-ԱՏԵՆԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ.— Ռուբինեանց շրջանին հայկական իշխանութեան քաղաքական և առևտրական յարաբերութիւններն, այլևայլ պետութիւններու հետ, ծնունդ տուած են կարգ մը պաշտօնական գրութիւններու, ինչպէս՝ հրովարտակ, հրամանագիր, արտօնագիր, նամակ, դաշնագրութիւն և այլն։ Ասոնցմէ մաս մը մնացած են։ Ծանօթ բանաստեղծ հայագէտ

Վիքթօր Լանկլուա առանձին գիրքով զանոնք հրատարակած է 1863ին։ Այս յիշատակագիրները այլ և այլ եւրոպական, արաբական և հայ լեզուներով գրուած են։ Հետաքրքրական են մանաւանդ չորսը, որոնք ռամկագիր են։ Ահաւասիկ. 1. Դաշնագիր մը՝ Պարոն Կոստանդինի և Տեւտոնեան ասպետներու միջեւ (1271). 2. Լեւոն Գ.ի ճենովայեցիներուն տուած մէկ արտօնագիրը (1288). 3. Երկու վաճառականական արտօնագրեր Օշին թագաւորէն (1314) և Լեւոն Ե. թագաւորէն (1321)՝ տրուած Մոնբելիէի վաճառականներուն. 4. Լեւոն Ե.ի Սիկիլիացիներուն տուած արտօնագիրը (1332)։

## ԺԴ. ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր եւ արձակագիրներու պակաս.— ԺԴ. դարու երգիչներ եւ իրենց լեզուն:*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.— Քաղաքական ճգնաժամային շրջանէ մը կ'անցնի հայ ժողովուրդը և իմացական կեանք չկրնար ապրիլ։ Գրաբար մատենագրութիւն չկայ գրեթէ։ Ռամկագիր արձակագիրներ ալ կը պակսին, այնպէս որ ռամկօրէն մատենագրութեան պատմութիւնը առատ ատաղձ չունի։

ԺԴ. ԴԱՐՈՒ ԵՐԳԻՉՆԵՐ ԵՒ ԻՐԵՆՑ ԼԵԶՈՒՆ.— Ռամկօրէն է լեզուն միջնադարեան այն երգիչներուն, որոնք ԺԴ. դարուն մէջ ծաղկեցան։ Տանք քանի մը նմոյշներ.

ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՐԶՆԿԱՑԻ

Ահա ըսկիզըն առնում բանից
եւ խրատ տամ հասարակաց,
Իմաստուն ձեզ ցուցանէ
յով որ հոգւոյ աչք կայ ի բաց։
Զինչ մարգարիտ շարեալ յօսկի
հանց գեղեցիկ բանն ի մտաց՝
Բայց անգիտին ոչինչ թուի,
զինչ մարգարիտն ի մէջ խոզաց։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻ

Լաւ մարդ ես նորա ասեմ,
որ բանայ զբերանն համով.
Հանցեղ լեզուն գին չունի,
զինչ լնուն տուն մի ճոհարով.
Աստուած երբ զաշխարհս արար,
զօդն ու զհուրն ու զհողն ջուրով,
Մսխալ մ'աւելի չարար,
այլ՝ կշռեց զամենըն չափով։

ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌՈՒԵՑԻ կամ ՖՐԻԿ

Աստուած արդար և յիրաւի,
Եւ ողորմած յամենայնի,
Հանդէս ունիմ բան մի վիճի,
Թէ դու լսես քո ծառայի։

Այս է զարմանք հիանալի,
Որ կու լինի վերայ երկրի.
Եւ հիացումն ազգի ազգի,
Զոր տեսանեմք ի աշխարհի։

Արդ այս բանն է հիանալի,
Եւ առաւել զարմանալի,
Թէ մէկ Ադամ և յեւայէ
Ո՛րքան ազգեր ծնան յերկրի։

Ուրիշ լեզու ամէն մէկի,
Որ մէկ մէկի ո՛չ հաւանի,
Որ մէկն է հայ, մէկն վրացի,
Մէկն տաճիկ, մէկն ասորի։

## ԺԵ. ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Ամիրտովլաթ Ամասիացի.— Երգիչներ եւ իրենց լեզուն:*

***ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ.*** — *Այս դարերը ռամկօրէնի տարածման և տիրապետութեան շրջաններն են։ Սիրուած է ժողովրդային լեզուն։ Յայտնի է որ մատենագիրներ ռամկօրէնի հոսանքին առջեւն առնելու անկարող կը հանդիսանան։ Միմիայն մէկ ուշագրաւ ռամկօրէն արձակագիր գրագէտ կայ. ան ալ Ամիրտովլաթն է։*

***ԱՄԻՐՏՈՎԼԱԹ ԱՄԱՍԻԱՑԻ.*** — *Մխիթար Հերացիի գործէն մօտաւորապէս երեք դար վերջը կը գայ Ամիրտովլաթ՝ իր առաջին գործը։ Իր մասին կենսագրական կարեւոր տեղեկութիւններ կու տայ իր գիրքերու առաջաբաններուն և յիշատակարաններուն մէջ։ Հմուտ անձնաւորութիւն մ'է և նշանաւոր բժշկապետ, որ արժանացած է Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ կայսեր անձնական բժիշկն ըլլալու բարձր պատիւին։ Գլխաւոր երկասիրութիւնն է Օգուտ Բժշկութեան, որուն մէջ գիտուն հեղինակը կը խօսի մարդակազմութեան, ախտաբանութեան և դեղատուութեան վրայ։ Երկրորդ գլխաւոր գործն է Անգիտաց Անպէտը, որ պարզապէս բժշկական բառգիրք մ'է։ Երկու գիրքերու լեզուներէն ալ նմոյշներ տանք։*

*ՕԳՈՒՏ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ.—«Եւ բժիշկն ալ պարտի որ իմաստուն լինի և գիտուն լինի, և յուլ չլինի և սուտզրուց չլինի, և վարպետի աշակերտ լինի և շատ գրեանք կարդացեր և շատ թաճրուպայի գիտել և խելօք խրատատու լինել և տամահի չլինել։»*

*ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏՆ.— «ՍԱՅԻԼ, որ է ջրի, այն է որ կու ասեն որ այնոր մասունքն ամէնայն դիմօք ուզէ որ ի յանձն քայլէ, որ է ջուրն և որ նման ասոր կան։ ՃԱՄԻՏ. Սայիլին ներհակն է, որ է հակառակն որ պաղի։ ԼԱՂԻՃ, որ է կպչուկ, այն դեղն է՝ որ քաշելով չի կտրիլ, գերդ մեղր։ ՀԱՇ, որ է փշրան, որ շուտ շուտ կտրի և փշրի, գերդ Ջաւպրնա։ ՄՈՒՀԱՄՄԻՐ, որ է կարմրցնող, այն դեղն է որ զօդուածքն տաքցնէ և զարիւնն կ'ուժովցնէ և այլն...։»*

***ԺԵ. ԴԱՐՈՒ ԵՐԳԻՉՆԵՐ ԵՒ ԻՐԵՆՑ ԼԵԶՈՒՆ.*** — *Այս դարուն մէջ եթէ մեծ թիւով ռամկօրէն արձակագիրներ կը պակսին, հարուստ է սակայն տաղաչափական*

ռամկօրէն գրականութիւնը։ Երգիչներու հոյլ մը կը մշակէ ռամկօրէնը՝ թէ ինքնագիր բանաստեղծութիւններով և թէ պարսկերէն կարգ մը տաղերու և արեւելեան քնարի արտադրութեանց փոխադրութիւնով։ Շատ գեղեցիկ է այն լեզուն, զոր կը գործածեն։ Հարիւրաւոր տարիներ առաջ երգիչներու գործերուն մէջ արձանագրըւած ռամկօրէնն այնքան մաքուր է որ, այսօր իսկ գընահատելի բարբառ մ'է։ Մկրտիչ Նաղաշ, Յովհաննէս Թլկուրանցի, Գրիգորիս Աղթամարցի, Նահապետ Քուչակ, Առաքել Սիւնեցի և այլն ԺԵ. դարու ծաղիկներն են։ Ըստորեւ կուտանք պատառիկներ.

Մ. ՆԱՂԱՇԼ.—

«Ղարիպին կեանքն է լալի ողբերգական,
Դառն ու լեղի լի տրտմութեամբ ի նեղ գնտան.
Յորժամ լինի յօտար երկիր թափառական,
Ղարիպն օտար ո՛չ ճանաչեն և՛ ոչ գիտենան։

Ղարիպին խելքն է կորեր, միտքն է մոլար.
Եւ թէ լինի քան զՍողոմոն մտօք ճարտար,
Որ թէ խօսէ բան մի քանի անգիր ճոհար,
Սատեն նմա թէ լու կացի՛ր, անգէ՛տ յիմար։

Ղարիպին ցերեկն եղու՛կ, գիշերն է վա՜յ.
Աչքերուն քունն է հատեր ու ճար չկայ.
Մտօք տանջի գիշերն ի բուն, ո՛չ դուրանայ.
Վաղուն ես ի՞նչ լինիմ գերիս, երբ լուսանայ»։

Յ. ԹԼԿՈՒՐԱՆՑԻէ —

Ահա եկաւ պայծառ գարուն.
Ծաղկեալ այգիքն ու պաղչանքն,
Դաշտք ու լերինք զարդարեցան,
Յարօտ հանեն գեխլանին։

Գունաքն ծաղկին ու հետ կապեն,
Անուշանայ հոտն ու քամին։
Ջագերն ձայն ածեն յայգին,
Քաղցր կուգայ ձայն պլպուլին։

Կու թանձրանայ շուքն ծառին.
Յորդոր գնայ ջուրն ի յառջին,
Ջթեւն բերեր բոլոր վզին,
Սիրով խմէր զանուշ գինին։

ԳՐԻԳՈՐ ԱՂԹԱՄԱՐՑԻէ.—

Յետ գնալոյ վարդին եկ պլպուլ յայգին
Ետես թափուր զվրանն, քաղեցաւ հոգին.
Շրջէր և հարցանէր ըղիւր սիրելին.
Կանչէր զար ու ֆիղան ի մէջ գիշերին։

*Այգի՛, ընդ քե՛զ սեմ, տո՛ւր ինձ պատասխան.*
*Ընդէ՞ր ոչ պահեցիր զվարդն իմ պատուական,*
*Որ էր ամէն ծաղկանց սալվար ու սուլթան,*
*Գունոյն գեղեցիկ, հոտ անմահութեան։*

ՆԱՀԱՊԵՏ ՔՈՒՉԱԿ.—

*Ան առաւօտուն լուսուն ձայնըն գայ գարնան ձագերուն.*
*Ա՛յ իմ փոքրիկ ձագեր, ձայն անուշ է քան ամենուն.*
*Զագ մի կայ պուլպուլ կ'ասեն, զինչ կ'ասէ՝ ամենըն սիրոյ,*
*Ձայնիկն ականջովս ինկաւ, չի դադրիր աչերս ի լալոյ։*
*Ա՛յ իմ նուռ ու նուշ բերան, նուռ ու նուշ ծաղիկ ու՛րահան.*
*Դու հազրեվարդի նման, մարդն չէ բերել քեզ նման.*
*Պակունքդ է լիմոն նման, կու բանաս դու մարդուն մատուն.*
*Լեզուդ է պլպուլ նման, կու գովէ զինչ գարնան նման։*

## ԺԶ. ԴԱՐ

*Ընդհանուր նիշեր.— Տպագրութիւնը եւ ռամկօրէն գիրքեր.— Երգիչներ եւ իրենց լեզուն։*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՇԵՐ .— Հայ մատենագրութեան գրաբարի շրջանին մէջ ինչպէս որ ԺԶ. դարը ամլութեան շրջան մ'է, նոյնը կարելի է համարել ռամկօրէն գրականութեան համար ալ ։ Արձակ գրող յայտնի մատենագիրներ չկան ։ Աս չնշանակեր անշուշտ թէ ռամկօրէնը գրի առնուած չէ, վասնզի ապահովաբար ժողովրդին մտաւորական դասակարգը իր առօրեայ բոլոր գործերը, թղթակցութիւն և այլն ռամկօրէնով կը կատարէր ։ Այս դարերու մէջ օրինակուած գրչագրերու յիշատակարանները այդ բանը ցոյց կուտան արդէն ։*

*ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՌԱՄԿՕՐԷՆ ԳԻՐՔԵՐ .— ԺԶ. դարուն մէջ արտադրուած կարեւոր ռամկօրէն գիրք չըլլալով հանդերձ, անկարելի է ժխտել այն բուռն սիրելութիւնը, զոր հայ ժողովուրդը կը տածէր՝ դէպի իր աշխարհիկ բարբառը ։ Գրաբարն ու գրաբար մատենագրութիւնն իրենց հրապոյրը վաղուց կորսնցուցած էին ։ Այնչափ պահանջ կար ռամկօրէն լեզուով գրուած գիրքերու, որ տպագրութեան գիւտը հայոց մէջ հազիւ մտած, հայ մամուլի անդրանիկ արտադրութիւններէն մին կ'ըլլայ անծանօթ հեղինակի մը կողմէ պատրաստուած Աղ-*

թարփ, որ ուրիշ բան չէր, բայց եթէ բժշկարան, միայն ունենալով ժողովուրդին նախապաշարումները գգուող ուրիշ գուշակութիւններ, երազներու մեկնութիւններ եայլն։

**ԵՐԳԻՉՆԵՐ ԵՒ ԻՐԵՆՑ ԼԵԶՈՒՆ.—** Երգիչներ կը շարունակեն իրենց կեանքն ու գործունէութիւնը՝ աւելի ծաղկած և աւելի՛ ևս պարզուած ու ճկունցած լեզուով։ Ահա՛ Սարկաւագ Բերդակցին, Ղազար Սեբաստացին, Մինաս Թոխաթցին և այլն՝ որ կը բանաստեղծեն.

### ՍԱՐԿԱՒԱԳ ԲԵՐԴԱԿՑԻԷՆ

Զքեզ քաղեն, տանին հնձան,
Ճմլեն զքեզ ու տան յիրար,
Վարդի նման ջուր կու բխես,
Գետի նման յորդոր գնաս։

Տանին լնուն զքեզ կարաս,
Առանց կրակի քո եռ գայ,
Շատ թագաւորք ժողվին առ քեզ,
Մեծ մեծ իշխանք և հուքմարարք։

Յորժամ խմէ մունճն է քենէ,
Որ ի լեզուէն քամ ու տկար,
Ջերթ զթութակն առնու լեզուն,
Մասխարանայ քան զդիւահար։

### ՂԱԶԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻԷՆ

Սո՛վ աչք, ամ քանի նայիս խոլորով.
Գաս նստիս, զաչերս ածես խնճերով.
Երբոր գաս անցնիս, ճեմես նազերով,
Տանիս շունչս ու խելս ու հոգիս ճորով։

Լուսին, արեգակ առ քեզ եկեալ են.
Սիրով ի մազերդ ի վայր կախեալ են,
Աստեղք ի քո ճակատըդ բոլորեալ են.
Չէդ հարըած ի քո սիրոյդ վառեալ են։

### ՄԻՆԱՍ ԹՈԽԱՏՑԻԷՆ

Յորժամ մտանք Թամուզ ամիս,
Ճանճն շատցաւ ի գլխնիս.
Երբ զհատ ուրին զթէննէքիս,
Նա՛ թափեցան վերանիս։

Ճանճն կուգայր տզվըզալով,
Եւ զուարճանայր նա խնդալով,
Վերայ թեւիս նստէր սիրով,
Թէ մեզ կարմիր գրի յոլով։

Յորժամ զճաշու հացն կերայ,
Երեք ճանճի հանդիպեցայ.
Ի ճանճերուն խապար հարցայ,
Ացին թէ այլքն այլվի կուգայ։

## **ԺԷ. ԴԱՐ.—**

*Ընդհանուր տեսութիւն.— Յովհաննէս Հոլով.— Ասար Սեբաստացի.— Բժիշկ Գալուստ Ամասիացի.— Բունիաթ Սեբաստացի։*

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Այս դարն ընդհանուր հայ դպրութեան համար վերածնունդի շրջան մ'է, երբ ամեն կողմ, մանաւանդ պարսկահայոց ու գաղութներուն մէջ գործունէութիւն մը կը տեսնուի։ Տարակոյս չկայ թէ միմիայն գրաբար մատենագրութիւնը չէ որ ԺԷ. դարու վերջին կէսին հայկական մշակութական ջանքերուն բարիքը վայելեց. ռամկօրէնն ալ իր կարգին օգտուեցաւ, և ռամկագիր մատենագիրներ ալ երեւցան։ Երգիչներու շարքը չէ վերջացած և ուստի ոտանաւոր ու արձակ ռամկական արտադրութիւններ հրապարակ կուգան։*

*ՅՈՎՀԱՆՆԷՍ ՀՈԼՈՎ.— Լատինական և ունիթորական կրօնական գործունէութիւնն ու պրօպականտան մղած էր զանոնք, ինչպէս գրաբար, նոյնպէս ալ ժամանակի պահանջման համաձայն ռամկօրէն կրօնական գրականութիւն մշակելու։ Յովհաննէս Հոլով մէկն էր ահաւասիկ լատիններու գրական դէմքերէն։ Ինք Կ. Պոլսեցի էր և Վենետիկի մէջ հրատարակեց Պարզաբանութիւն Սաղմոսաց անուն գիրքը, որ աշխարհաբար լեզուով տպագրուած հնագոյն գիրքերէն մէկն է (1685-1687), և որ կը ցուցադրէ չինծու և արուեստական աշխարհաբար մը՝ չափուած ու ձեւուած լատիններէնին վրայ։ Այս միեւնոյն վարդապետը նոյն խառնակ լեզուն նուիրագործել փորձած էր արդէն Հռոմ հրատարակուած (1674) Քերականութիւնով մը, որ թէեւ անարժէք, բայց վերջապէս ռամկօրէնի կանխագոյն քերականութիւնն է։*

*ԱՍԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ.— Սա եղած է նշանաւոր բժիշկ մը և հմուտ գրիչ մը, որուն թողած միակ գործն է Բժշկարանը, և կամ Գիրք բժշկական արհեստին, ինչպէս ինք կը կոչէ զայն առաջաբանին մէջ, որ Ամիրտովլաթի ծանօթ գործին հետեւողութեամբ չինուած է։ Ասար իր կենսագրութեան մասին գոհացուցիչ ակնարկութիւններ կամ վկայութիւն-*

ներ չունի. ուրիշներ ալ հազիւ կը ներկայացնեն զինքը՝ քանի մը ընդհանուր բառերով։ Գիրքը գրած կը համարուի 1625 թուականներուն։ Ասիկա բուսական լուրջ գործ մըն է, կազմախօսական կարգ մը տեղեկութիւններով ճոխացած։ Պատառիկ մը տանք Ասարի Բժշկարանէն.

«Այլ ասացեալ են ի բժշկական վարդապետացն՝ թէ զերդ զխաղողն որ քամեն, որ պիտի եռայ գինին, և փրփուրն վերայ գայ և մրուրն ի վայր նստի և պարզի գինին, (նոյնպէս և մարդոյ արիւնըն եռայ և պարզի), և զծաղիկն ի դուրս փչէ։ Եւ այնոց պատճառըն՝ որ ոմանց ի փոքրութեան դիպի և ոմանց ի մեծութեան, այս է՝ որ երբ տղային բնութիւնն ուժով լինի և արիւնն՝ թանձր, յուշ պարզի և յուշ ծաղկէ, և երթայ ի մեծութիւն հասանէ. և երբ տղային արիւնն նօսր լինի՝ շոյտ պարզի արիւնն և շուտ ծաղկէ. որպէս թանձր գինին՝ որ յուշ եռայ և պարզի, և նօսր շոյտ եռայ և շուտ պարզի»։

ԳԱԼՈՒՍՏ ԲԺԻՇԿ ԱՄԱՍԻԱՑԻ. — Գալուստի Բժշկարանը վերջերս յայտնուեցաւ։ Անոր մասին ալ կենսագրական տեղեկութիւններ կը պակսին։ Միայն թէ որովհետեւ հեղինակը 1668-69 թուականներուն բժշկական գործունէութեան սկիզբը կը գրէ, բնական է հետեւցնել ուրեմն որ ինք ԺԷ. դարու մարդ է։ Ազգ. բժշկականութեան պարծանք ըլլալու չափ շատ կանոնաւոր և լաւ հեղինակութիւն մը չէ սա, այլ՝ աւելի բանաքաղութիւն։ Կը պարունակէ վեց մասեր. Ա. Մարդակազմութիւն, Բ. Ախտաբանութիւն եւ Առողջապահութիւն, Գ. Դեղազուգութիւն կամ դեղագրաց գումարութիւն եւեթ, Դ. Բժշկական բառարան (Միրզայսար զարմանայի եւ բառոց), Ե. Ընդհանուր գիտելիք բժշկականութեան, Զ. Ախտապատիւ դեղագործութեան նախաշաւղաւ։

ԲՈՒՆԻԱԹ ՍԵԲԱՍՏԱՑԻ. — Այս բժշկական դէմքն ալ նոր յայտնուած է։ Իր բժշկական գրութիւններէն հատուածներ միայն կան և իր կենսագրութեան մասին կը պակսին լիակատար տեղեկութիւններ։ Յայտնի է որ բըժիշկ է, վասնզի քանի մը տեղեր կը յիշատակէ Ամիրտովլաթի և կամ Ասարի դեղագիրները գործածած և արդիւնք տեսած ըլլալը։

## ԺԸ. ԴԱՐ

*Ընդհանուր տեսութիւն.— Մխիթար Աբբայ.— Աւետիք Պատրիարք.— Պաղտասար դպիր.— Նալեան Յակոբ Պատրիարք.— Գէորգ վարդապետ Մխլայիմ.— Գրիգոր Պասմաճեան Պատրիարք.— Տիրացու Մանուկ Սըրմաքէշ.— Մկրտիչ վարդապետ Անանեան.— Սարգիս դպիր Յովհաննէսեան.— Մխիթարեաններ եւ ռամկօրէնը։*

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— ԺԸ. դարը ռամկօրէնի զարգացման տեսակէտով կուտայ սփոփարար երեւոյթ։ Հայկական ընդհանուր իմացական վերածնութեան հետ աշխարհիկ հայ լեզուն ալ կուգայ մտնել առաջդիմական շաւիղի մը մէջ։ Շատ մը հեղինակներ՝ արձակը կը մշակեն, շատ մը բանաստեղծներ եւ աշուղներ ալ՝ ոտանաւորը։ Հազուագիւտ չեն այլեւս ռամկօրէն գիրքերը եւ կարելի չէ կանգ առնել ամեն մէկին վրայ։ Մենք կը յիշատակենք քանի մը նշանաւոր ռամկագիրներ եւ կարճ ծանօթագրութիւններով կը բաւականանանք։

ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՅ ՍԵԲԱՍՏԱՑԻ.— Համանուն միաբանութեան հիմնադիրը, որ ինչպէս հայ լեզուի վերանորոգութեան ջահակիրն էր, այնպէս ալ ռամկօրէնի տեսակէտով առաջիններէն մին է։ 1727 ին հրատարակած է ռամկօրէնի համառօտ Քերականութիւն մը, Թուրքերէն բացատրութիւններով։ Մխիթարի գործունէութիւնը՝ ռամկօրէնի տեսակէտով՝ հոս կանգ չպիտի առնէր բնականաբար եւ ասով միայն բաւականանար՝ եթէ իր ժամանակի ոգին տակաւին աններող չըլլար կրօնական հաստատութեան մը գործածած լեզուին նկատմամբ։

ԱՒԵՏԻՔ ՊԱՏՐԻԱՐՔ.— Կ. Պոլսոյ պատրիարքներուն մէջ համբաւաւոր դէմք մը, գաթոլիկներուն թշնամին, որուն համար կ'ըսուի թէ Ֆրանսական դեսպանին ձեռքով Ֆրանսա աքսորուեցաւ, ուր Բաստիլի մէջ փակուած մնաց մինչեւ մահը։ Ինքնակենսագրութիւնը, որ ռամկօրէնով գրուած է, մինչեւ հիմա Ֆրանսայի արտաքին գործոց նախարարութեան արչիւներուն մէջ պահուած է։ Անշուշտ շատ հետաքրքրական գործ մ'է ատիկա։

ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ.— Պոլսահայ մատենագրութեան ղեկավարներէն մին։ Ի հեճուկս Մխիթարեաններու՝ մեծ գործունէութիւն ցոյց տուած է մայրաքաղաքին մէջ։ Իր ռամկօրէն երկասիրութիւններն են Քրիստոնէական (1737) և Գանձարան Ծանուցմանց (1758)։ Իր լեզուն ռամկօրէն է, ճիշդ ժամանակակից բարբառը, բայց գրաբարի հետքերը շատ են։

ՊԱՂՏԱՍԱՐ ԴՊԻՐ.— ԺԸ. դարու յարգուած ուսումնական դէմքերէն մին էր սա։ Այդ ժամանակին մէջ դպիր տիտղոսը արհամարհելի չէր և կը նշանակէր գրագէտ։ Պաղտասար առաջին փորձն ըրած է մեր մէջ՝ Գրաբար Քերականութիւնը աշխարհաբարով բացատրելու, ինչ որ սովորական էր ապա ԺԹ. դարուն մէջ։ ԺԸ. դարու երեք ռամկագիր Պոլսահայ բանաստեղծներէն մին (Գալուստ Կոյծալին Պատրիարք, Պետրոս Ղափանցի և Պաղտասար Դպիր) էր սա։ Հրատարակած է երկու Տաղարաններ։ Նշանաւոր գործն է Սրբոց Տաղարանիկը, որուն բովանդակած երգերը Պոլսոյ ժողովուրդին մէջ կ'երգուէին այն ատեն։ Հետագայ քանի մը տուները իր ոճին վրայ գաղափար մը կուտան.

Գարունն եկեալ անուշ հովերն հընչեցին
Սիրով վառեալ երէկ պլպուլն ի յայգին
Ի դէմ վարդին եղանակէր լալագին.
Բացվի՛ր, իմ Նազելի, տեսոյդ եմ կարօտ
Զարթի՛ր, իմ աննման, գեղոյդ եմ կարօտ։
Գերի լինիմ քո ամեն մէկ տերեւուն,
Քենէ ի զատ ինձ ո՛չ այլ ինձ երեւուն
Զի տար ինձ լոյս՝ առանց քո՝ լոյսն արեւուն.
Բացվի՛ր, իմ Նազելի և այլն...
Ես քո փշովդ թէ բիւր անգամ հարկանիմ,
Ի քո սիրոյդ թէեւ ի հուր հարկանիմ
Զայն ամենն ինձ անթիւ բարի վարկանիմ.
Բացվի՛ր, իմ Նազելի և այլն։

ԳէՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԽԼԱՅԻՄ.— Հանրահռչակ դէմք մ'էր այս վարդապետը իր ժամանակին։ Երկար ատեն Եւրոպա մնացած էր, հմտանալով կարգ մը լեզուներու։ ԺԸ. դարը բեղուն է կրօնական վէճերու տեսակէտով։ Մխլայիմ Վ. իր հմտութիւնը սպառած է ռամկօ-

րէն լեզուով իր գրած վիճաբանական գրուածքներուն մէջ։

ԳՐԻԳՈՐ ՊԱՍՄԱՃԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ.— Մտաւորական անձնաւորութիւն մը, որ ներողամիտ ոգի մը կրած է՝ ջանացիր ըլլալով կրօնական վէճերը չյանկցնել, որքան հնար էր։ Իր Ինքնակենսագրութեան ձեռագիրը Օրթագիւղի Անտոնեանց վանքին մէջ կը գտնուի հիմա։

ՏԻՐԱՑՈՒ ՄԱՆՈՒԷԼ ՍՐՄԱՔԷՇ.— Յակոբ Նալեան պատրիարքին օրով համբաւ հանող գիտուն անձնաւորութիւն մը, որ անձամբ գրած ու անձամբ չարած ու տպած է քանի մը կրօնական գրուածքներ, որոնց մէջ են Գաւազան Կրկնագոր (1750), Լուծիչ Տարակուսանաց (1754)։

ՄԿՐՏԻՉ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՆԱՆԵԱՆ.— 1769ին Վենետիկ հրատարակուած գրաբարէ աշխարհաբար և աշխարհաբարէ գրաբար բառգիրքներուն գլխաւոր աշխատակիցը։

ՍԱՐԳԻՍ ԴՊԻՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ.— Ունի ձեռագիր Քրիստոնէական մը (1773), որ չատ որոշ գաղափար կուտայ Կ. Պոլսոյ ռամկօրէնի արձակին վրայ։ Ահաւասիկ նմոյշ մը։

«Ի՞նչ է մահը։— Մարդուն հոգեվարքութեան սահաթն է որ լեզուն կը կապվի, մեղայ չի կրնար ըսել, խոստովանելու ժամանակ չի կայ. ապաշխարանք քաշելու առեն չունի. էյէր մեղաւոր է նէ աչքին առջեւ կ'երեւայ դժողքին կրակն»։

ՄԽԻԹԱՐԵԱՆՆԵՐ ԵՒ ՌԱՄԿՕՐԷՆԸ.— ԺԸ. դարու 70ական թուականներուն մէջ է որ Մխիթարեաններ ալ կը սկսին փափկանկատութիւնը մէկ կողմ թողուլ և ռամկօրէն գիրքեր գրել։ Թէ՛ Վենետիկի և թէ՛ ապա Թրիէսթէի ու Վիէննայի մէջ հետզհետէ կը հրատարակեն զուտ աշխարհաբար դասագիրքեր, ինչպէս Թուաբանութիւն, Աշխարհագրութիւն և այլն։ Մխիթարեան Միաբանութիւնը, այլեւս ժամանակը եկած համարելով, քանի մը տասնեակ տարիներ առաջ ռամկօրէնի մասին ունեցած զգուշութիւնը կը փոխանակէ համոզուած անկեղծութեան մը հետ և կ'ընդգրկէ աշխարհաբարը, թէեւ կարգ մը Մխիթարեան հայրեր մինչեւ ԺԹ. դարու կէսերը չարունակած են գրաբար գրել։

# Գ. ՆՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## (ԱՐԴԻ ՀԱՅԵՐԷՆԻ ՇՐՋԱՆԸ)

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

*Հայ գրականութեան նոր շրջանը կը սկսի գրեթէ ԺԹ. դարու կէսերէն, երբ գրաբար լեզուն տեղի կու տայ բոլորովին և ռամկօրէն կամ աշխարհաբար գրութիւնները կը սկսին յաճախել։ Այն ընդհանուր ոգեւորութիւնը, որ հայ դպրութեանց մէջ ԺԹ. դարու հայ կեանքը կենդանացուց, միայն մեր ազգային կեանքին յատուկ չէ։ Ամբողջ Եւրոպան արդէն մեծ յեղաշրջութեանց ենթարկուած էր քաղաքական և իմացական ուղղութեամբ. ամեն տեղ ռամկավարական գաղափարներով ողողուած էր և ամեն լեզուի ու գրականութեան մէջ ժողովրդային տարրը բացարձակապէս գերիշխան դարձած էր։ Հայկական նոր գըրականութիւնն ստեղծուեցաւ ու զարգացաւ տուեալ պայմաններու և մասնաւորապէս ազգային կեանքին մէջ այս դարուն երեւան եկող հզօր ազդակներու հետեւանքով։ Հայ գրականութեան ժողովրդականացումը անհրաժեշտութիւն մ՚էր, և այդ կրնար ըլլալ նոր հայերէնով, որ Մխիթարեաններու շնորհիւ վերանորոգուած, մաքրուած և առուգացած էր՝ թէեւ քիչ մը աւելի գրաբարին ենթարկուած։ Կը մնար ունենալ ինքնուրոյն գրականութիւն և տալ անոր անկախ ոգի։ Գրաբարն իր ծառայութիւնը կատարած էր արդէն լեզուի մշակներուն ձեռքով՝ մաքրագործելով հայ լեզուն այն բազմադիմի օտարոտի տարրերէն, որոնք իբրեւ տատասկ, կը սպառնային խեղդել լեզուն իր էականութեան, իր բնորոշ ոգիին մէջ։ Դա-*

ները քաղաքական ստորադասութիւնը հայ ցեղին, օտար լեզուներու ազդեցութիւնը ինքնամատոյց յօժարութեամբ ընդունիլ տուած է հայ լեզուին։

ԺԹ. դարու մէջ բարգաւաճող նոր գրականութեան մէջ միայն լեզուն չէ սակայն, որ ստացած է թարմատար ուղղութիւն ու երիտասարդական աւիւն, այլ՝ գրականութեան ոգի՛ն նոյն իսկ տոգորուած է նո՛ր շունչով, նոր ըմբռնումներով, մտաւորական նորագոյն հոսանքներու խմորումով։ Հայ գրականութեան մէջ մինչեւ ԺԹ. դար, հին և միջին շրջաններու մատենագրութեան մէջ տիրող դասական կրօնական-միստիքականութիւնն ու պատմական ոգին կուգար ընդունիլ գերադասութիւնը ազգայնական հոսանքին, վիպական ոգիին, որ՝ արեւմտեան գրականութիւններու նորագոյն ձգտումներուն հետ կը մտնեն հայ գրականութեան մէջ և մեր մտքի մշակներուն կուտան բոլորովին տարբեր դաւանանք մը և աշխարհիկ ուղղութիւն մը, սիրելի՝ ժողովրդային զանգուածին և սրտամօտ՝ ճլվլացող նոր սերունդին, որ տակաւ աչքերը կը շփշփէ օտար դպրութիւններու ճաճանչներուն դէմ, երբ գիտակցութիւնը կ'ունենայ այլեւս դատելու ու տրամաբանելու։

Ֆրանսական մեծ հայրենիքին պատմական մայրաքաղաքը, — Բարիզը, — դարձաւ նոր և նորագոյն հայ մտքի օրրանն ու հայ գրականութեան մշակներու խանդակաթ մայրը։ Հոն պատրաստուած սերունդն էր որ ապա Կ. Պոլսոյ մէջ ստեղծեց նոր գրականութիւնն ու ազգային գիտակցութիւնը։ Թերթեր, թարգմանութիւններ ու հրապարակախօսութիւններ՝ ֆրանսական մտքը տարածեցին, անոր բարձր գաղափարականները տուին հայ ցեղին։ Հայ ժողովուրդը ասիական խաւարին մէջ եւրոպական շողը ծագեցնել ուզեց։ Պահպանողական ոգին մեռաւ վերջապէս։

Ի՛նչ որ էր Բարիզը Տաճկահայոց համար, նոյնն էր և Դորպատը Ռուսահայոց համար։ Հոն պատրաստուած երիտասարդ տարրն ալ Կովկասահայ բարքերու մէջ տի-

րող պահպանողական ուղղութիւնը քանդեց և առաջդիմական մամուլ մը հաստատեց։

Այսպէս տեսանք՝ մէ՛կ կողմէ Տաճկաստանի և միւս կողմէ Կովկասի մէջ կազմակերպուեցան հայ աշխարհիկ գրականութիւնները, որոնք սահմանին երկու կողմերն ունեցան ահագին գործունէութիւն։ Վենետիկըն ու Վիէննան իրենց դերին մէջ էին արդէն, ծանրաբեռնուած՝ պատմական-բանասիրական և կրթական-բարոյական գործունէութեամբ։ Կ. Պոլիսը, Թիֆլիսը, Իզմիրը և Մոսկուան ալ դարձան արդիական գրականութեան կեդրոնները։ Ստեղծուած էին այլեւս ԺԹ. դարու կէսին՝ Արեւելեան և Արեւմտեան աշխարհիկ հայ գրականութիւնները։

Այս գրականութիւնները կոչուեցան ապա Տաճկահայ կամ Թրքահայ և Ռուսահայ կամ Կովկասահայ գրականութիւններ։ Մենք նախընտրութիւն կուտանք Արեւելեան և Արեւմտեան անուններուն, այն առարկութեամբ որ Տաճկահայ կոչուած գրականութիւնը չբովանդակեր արտադրութիւնները բացառապէս Տաճկաստան բնակող գրագէտներուն, այլեւ՝ Վենետիկի, Վիէննայի, Եւրոպայի, Ամերիկայի և Եգիպտոսի մէջ նոյն լեզուով արտադրուած գրականութիւնը, նոյնպէս ալ Ռուսահայ գրականութիւնը կը տարածուի Մոսկուայէն մինչեւ Պարսկաստան ու Կալկաթա՝ չսահմանափակուելով միմիայն Ռուսիոյ կամ Կովկասի մէջ։ Ուրեմն մեզի համար հայ աշխարհիկ գրականութեան մէջ կան երկու մեծ բաժանումներ.— Արեւելահայ գրականութիւն և Արեւմտահայ գրականութիւն։

Բռնապետութիւնը երկար ատեն հայ գրականութեան այս երկու մեծ հատուածները իրարմէ հեռու պահեց։ Օսմ. սահմանադրութեան հռչակումէն վերջ գրեթէ իրարու անծանօթ այս գրականութիւններուն մէջ եղբայրական սերտ կապակցութիւն մը ստեղծուեցաւ։ Հասարակական խնդիրներ թէ՛ արեւմտահայ և թէ՛ արեւելահայ մամուլին մէջ արձագանգ կը գտնեն և գրական գործունէութիւնները մասնաւոր ջանքով իրարու կը ծանօթացուին։ Ասիկա անշուշտ շատ շօշափելի արդիւնք մը կրնայ առաջ բերել երկու գրականութիւններուն մէջ ալ՝ զիրար լրացնելու պատեհութիւն տալով։

# ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

***Ծանօթութիւններ.— Արեւմտահայ աշխարհիկ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչները.— Արեւմտահայ ուրիշ գրողներ։***

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*Դժուար է որոշել ճիշդ այն սահմանագլուխը, ուր կը վերջանայ հին անունով հասկցուած գրականութիւնը, և ուրկէ կը սկսի Արևմտահայ աշխարհիկ գրականութիւնը. վասնզի կան այնպիսի գրագէտներ, որոնք իրենց գրաբարախառն լեզուով ու դասական գրականութեամբ հինի ու նորի միացման գիծը կը կազմեն։ Դժուարին է մանաւանդ գործը՝ նոր գրականութիւնը ներկայացնել ուզողին։ Տակաւին լիակատար ուսումնասիրութեան պէտք կայ գրական գնահատելի գործունէութիւն ունեցող գրիչներու վերլուծումն ընելու և հայ գրականութեան մէջ իրենց ճիշդ տեղը որոշելու համար։ Մենք կը բաւականանանք արևմտահայ աշխարհիկ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչներու կեանքը գծելով և իրենց նշանակելի գործերը թուելով, ու առհասարակ քիչ ու շատ ծանօթ արևմտահայ գրողներու գոնէ անունները յիշելով։ Ժամանակակից գրողներէն շատերը ծանօթ են արդէն և գրականութիւնով հետաքրքրուող ամէն մարդ մասամբ իր գաղափարը կազմած է անոնց արժանիքին նկատմամբ։ Աւելորդ է ըսել թէ այս բաժնին մէջ գրած ենք բոլոր անոնք, որոնք արևմտեան բարբառը գործածած են*(1)։

(1) *Մենք նախընտրեցինք այբուբենական կարգը։ Այն ուսուցիչները, որոնք հայ գրականութեան դասն աւանդելու կոչուած են, ազատ են անշուշտ երկրորդական գրչի մարդոց մէջէն ընտրելագոյնները ճանչցնել աշակերտներուն՝ իրենց կեանքերով ու գրական գործունէութեամբ։ Ծանօթութեանց այս բաժինը աւելի խճողել չենք ուզեր, քանի որ լեզուի պատմութեան ընթացքին մէջ երկարօրէն խօսած ենք Ժթ. դարու աչքառու երեւոյթներուն վրայ։ Կենսագրական գիծերու [illegible] լիապէս օգտուած ենք Արամ Անտոնեանէն։*

# ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀԻԿ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ
# ԳԼԽԱՒՈՐ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ



*ԱՂԵՔՍԱՆԴՐ ՓԱՆՈՍԵԱՆ* (*Ալփիար*).— *Արեւմտեան աշխարհիկ գրականութեան ամենայայանի բանաստեղծներէն մէկն է ինք։ Ծնած է Կ. Պոլիս* 1858*ին, և իր պատանեկութեան օրերուն իսկ սկսած է աշխատակցիլ Բուրաստան Մանկանց անուն մանկական թերթին։ Իր ոճը զուարթ, զբօսալի ու ստոստուն է։ Կը համարուի նշանաւոր յանգաւոր, ո՛րքան յաջող են իր ոտանաւորները՝ ճոխ յանգերու տեսակէտով։ Ալփիար ո՛չ միայն կը հեղինակէ, այլեւ՝ ֆրանսերէնէ կը թարգմանէ ոտանաւորներ, մեծ յաջողակութեամբ, եւ նոյնիսկ ֆրանսերէն թերթերու կ'աշխատակցի։ Ընդհանրապէս Ալփիար կը ստորագրէ, բայց երբեմն ալ ուրիշ ծածկանուններ կը գործածէ։ Մշակած է գլխաւորաբար ոտանաւորի երգիծական սեռն ու ֆանթեզին, որոնց մէջ անմրցելի է։ Իր արտադրութիւնները ցրուած են թերթերու օրաթերթերու և պարբերականներու մէջ։ Տըպագրուած գործերն են՝ Շողեր ու Ցոլքեր, Այգեկութք, Ազատ Քնար եւայլն։*

*ԱՏՈՄ ԵԱՐՃԱՆԵԱՆ* (*Սիամանթօ*).— *Բնիկ Ակնցի է Սիամանթօ, երգերու քաղաքէն, ու պզտիկ հասակէն իսկ արտասահման անցած։ Ծնած է* 1878*ին։ Սիամանթօ առաջին ներկայացուցիչն է սիմպօլիք բանաստեղծութեան և նորագոյն հայ դիւցազներգակը։ Ունի հզօր երեւակայութիւն, գեղեցիկ լեզու և ցնցող ու աւիւնոտ ոճ մը, որ կուտայ հայկական նոր ոգիին դիւցազնական շեշտը և կ'երգէ ահալից՝ հայկական արիւնն ու ընդհանուր զարհուրանքը հայ ցեղին։ Իր յայտնութիւնը եղաւ նախ Անահիտի և Դրօշակի մէջ։ Սիամանթօ կը կիրարկէ տաղաչափութեան բոլորովին նոր ձեւ մը, տեսակ մը*

արձակ տաղաչափութիւն, որուն առաջին անթիւ բանական հետեւողներ եղան։ Իր առաջին գիրքն է Դիւցազնօրէնը, որուն յաջորդեցին Հայորդիներ խորագրով տետրակներուն չորս շարքերը։ Հետզհետէ հրատարակեց Հոգեվարքի եւ յոյսի ջահեր, Կարմիր լուրեր բարեկամէս տետրակները, որոնցմէ վերջինին ներշնչարանը Կիլիկիոյ ահռելի աղէտն է։ Ամերիկայի Պոստըն քաղաքին մէջ իր ամբողջական գործերուն Ա. հատորը տպագրուած է 1911ին։

ԱՐԱՄ ԱՆՏՈՆԵԱՆ (Մերուասկու). — Ծնած է Կ. Պոլիս եւ աշակերտած Նարեկեան վարժարանին։ Տակաւին երիտասարդ հասակին մէջ սկսած է լրագրական գործունէութեան։ Օժտուած քննական սուր միտքով մը ու խիզախ ոգիով, մեծ յաջողութիւն ցոյց տուած է իբրեւ հրապարակագիր։ Ունի սահուն եւ ջղուտ հայերէն մը։ Հայ գրականութեան մէջ Մասիս-Արեւելք օրաթերթով սկսաւ իր մուտքը։ Երկար ատեն խմբագրական պաշտօն վարեց Արեւելքի մէջ։ Մ. Շամտանճեանի հետ հրատարակեց Մասիս կիսամսեայն եւ ապա Ծաղիկ օրաթերթը։ Մանզումէի խմբագրութեան մէջ եւս կարեւոր բաժին ունեցած է Անտոնեան։ Առանձինն հրատարակած է Ծաղիկ կիսամսեայն եւ Լոյս շաբաթաթերթը, որոնց երկուքն ալ ապացոյց են իր պրպտող մտքին, գրական ճաշակին ու ըմբռնումներուն։ Աննաչառ քննադատութիւն կայ իր հրապարակագրական յօդուածներուն, հմտութիւն՝ պատմական-բանասիրական ուսումնասիրութիւններուն եւ գրագիտական արտադրութիւններուն մէջ։ Գրած է հայ լեզուի դասընթացք մը, Գանձարան անունով, Ճշմարտութիւնը (վիպակ), Յարութիւն ամիրայ Պէզճեանի կենսագրութիւնը եւայլն։ Վերջերս սկսաւ մաս առ մաս հրատարակել Պալքանեան պատերազմին Պատմութիւնը։ Սահմանադրութենէն ետք յայտնուեցաւ իր երգիծական ընդունակութիւնն ու ծաղրանկարի վարպետութիւնը։ Ատոր լաւագոյն ապացոյցն է Կաւէ Արձանները, որ գլուխ-գործոց մ'է ինքնին։ Տարի մը չափ հրատարակեց Կառափնաս անուն երգիծական թերթը։ Իր

յօդուածներ գրուած են Թրքահայ պարբերականներու մէջ։

Հ. ԱՐՍԷՆ ԱՅՏԸՆԵԱՆ (1825-1902).— Վիեննայի Մխիթարեան միաբանութեան հոյակապ դէմքը և ընդհանրական աբբան։ Ծնած է Կ. Պոլիս, Բերայի մէջ։ Վիչէն փոքրիկ հասակին մէջ կը մանէ Վիեննայի վանքը և իր դաստիարակութիւնը հոն կ'առնէ։ Հմուտ է լատիներէնի, յունարէնի, ֆրանսերէնի, անգլիերէնի, գերմաներէնի և արաբերէնի։ Ուսուցչական պաշտօններ կատարած է Բարիզ, Կ. Պոլիս, Զմիւռնիա, Այտըն, Վենետիկ և այլն։ Լեզուագիտական բազմաթիւ գործերու մէջ իր հսկայական և անմահ աշխատութիւնն է Քննական Քերականութիւն արդի հայերէնի անուն հմտալից և յոգնաջան աշխատութիւնը՝ հրատարակուած 1866ին, որ ո՛չ միայն իր գլուխ-գործոցն է, այլև՝ ԺԹ. դարու հայ գրականութեան լաւագոյն արտադրութիւններէն մին։ Քննական Քերականութիւնը կը բաղկանայ երկու մասերէ։ Առաջինը, որ գիրքին ներածութիւնն է, 400 խիտ էջերու մէջ կ'ուսումնասիրէ աշխարհաբարի ծագումը, պատմութիւնը, գրաբարին հետ ունեցած փոխ-յարաբերութիւնները, լեզուական վէճը, աշխարհաբարի մշակման անհրաժեշտութիւնը և այլն։ Երկրորդ մասը նուիրուած է աշխարհաբար լեզուի ընդարձակ քերականութեանը։ Ինք էր որ իր այս մեծ գործով աշխարհաբարին ընծայեց իր վայել դիրքը և մեծ ծառայութիւն մատոյց։ Այտընեան հիմնած է Վիեննայի Հանդէս Ամսօրեայ լուրջ և բանասիրական արժէքաւոր հանդէսը և Մխիթարեան տպարանը իր կատարելագործութեան հասցուցած։ 1895ին տօնուեցաւ Հ. Այտընեանի քահանայական ու գրական գործունէութեան յոբելեանը։

Հ. ԱՐՍԷՆ ՂԱԶԻԿԵԱՆ.— Վենետիկի Մխիթարեան միաբանութեան ամենէն բազմարդիւն դէմքերէն մին է։ Ծնած է Պարտիզակի մէջ, 1870 Հոկտ. 8ին և յետոյ Վենետիկի աշակերտած։ Հմուտ է խորապէս գրաբարի ու դասական լեզուներու և հայ գեղագիր գրագէտի խղճամը-

ութեամբ օժտուած։ Նախապէս թունդ գրաբարեան մըն էր և բուռն պայքար մղած է աշխարհաբարեաններու դէմ։ Բազմավէպի խմբագրութեան մասնակցած է երբեմն։ Իր թարգմանութիւնները, որոնք իրենց մաքուր հայկաբանութեամբ ամենէն բծախնդիրներուն կողմէ իսկ գնահատուած են, բազմաթիւ են, և լաւագոյն զարդը կը կազմեն մատենադարանի։ Անխոնջ աշխատող է և ցարդ նուիրած է Լէօպարդիէն, Վիքթորիա Ագանուրէն, Տանթէէն, Հոմերոսէն ու Վիրգիլիոսէն հատորներ՝ աշխարհիկ տաղաչափուած հայերէնով մը։ Բայց իր ամենէն մեծ, բազմաշխատ ու ընդարձակ գործը պիտի ըլլայ Հայկական Նոր Մատենագիտութիւնը, որուն առաջին երեք հատորները տպագրուած են ցարդ։ Աս, ինչպէս անուանած է հեղինակը, հայ մատենագրութեան համրագիտարանն է, բովանդակելով 1512 է մինչև 1905 հայ գրականութեան մէջ հրապարակ ելած բոլոր գիրքերն ու հեղինակները.— Հիանալի և Համբերատար աշխատութեան արդիւնք։

ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ (Ա. Անգեղեայ).— Ծնած է Կ. Պոլիս 1879ին և աշակերտած Պէրպէրեան ու Կեդր. Վարժարաններուն։ Երիտասարդ բանասէր, որ բանասիրական ու պատմական շատ մը յօդուածներ և ուսումնասիրութիւններ գրած է Բիւզանդիոնի և այլ թերթերու մէջ։ Հրատարակած է մասնաւորաբար կենսագրական կտորներ։ Ոճը պարզ է և անխնամ։ Իր մէկ ուսումնասիրութիւնը, Էտիրնէի Հայ բնակչութիւնը, Իզմիրեանց մրցանակով պսակուած է։ Հրատարակած է Տիկին Սրբուհի Տիւսաբի վրայ գրուած ուսումնասիրութիւն մը։

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ։— Հայ գրականութեան ամենէն կարկառուն դէմքերէն մէկը՝ իբրև բանաստեղծ, գըրագէտ, քննադատ, բանասէր ու հրապարակագիր։ Ծընած է Կ. Պոլիս 1872ին և դաստիարակուած է Ղալաթիոյ Կեդրոնական Վարժարանին մէջ։ Ժամանակ մը հայ գրականութեան ուսուցիչ եղած է նոյն վարժարանին մէջ։ 1891-95 շրջանին է որ իր տաղանդն ու գրագիտական

ձեռնհասութիւնը յայտնեց։ Երկար ատեն աշխատակցեցաւ Հայրենիքի, որուն գլխաւոր սիւներէն մէկն էր։ 1895ին հրատարակեց Ծաղիկը, որ թրքահայ գրականութեան մէջ ուշքի զարթող լոյս և լաւ խմբագրուած հանդէս մ'էր։ Զօպանեան Կ. Պոլիսը թողուլ ստիպուեցաւ՝ 1895ի քաղաքական շփոթութիւններէն վերջը։ Բարիզի մէջ ամբողջ 12 տարի հրատարակեց Անահիտ ամսաթերթը՝ գրական, գեղարուեստական և ուսումնասիրական բաժիններով։ Անահիտ մեծ դեր կատարեց հայ լրագրութեան պատմութեան մէջ, սակայն նիւթական պատճառներով խմբագիրն ստիպուեցաւ 1912ին դադրեցնել անոր հրատարակութիւնը։ Զօպանեան ո՛չ միայն նշանաւոր է իբրև հայ գրագէտ, այլև՝ շատ անշահախնդիր և գնահատելի կերպով աշխատողներէն մին է՝ հայ ցեղը Եւրոպայի ծանօթացնելու գործին մէջ։ Ֆրանսերէնի հմուտ՝ Զօպանեան թէ՛ առանձին գիրքերով և ֆրանսերէն թերթերու մէջ գրած յօդուածներով և թէ բանախօսութիւններով մեծ գործունէութիւն ունեցած է այս տեսակէտով։ Իրեն կը պարտինք արժանաւոր յայտնագործումը միջնադարեան կարգ մը երգիչներուն, որոնց գործերը վերլուծական քննադատութիւններով ներկայացուց բանասիրական աշխարհին։ Իր գործերն են Թուղթի փառքը (հոգեբանական վիպակ), Արշալոյսի Ձայներ (գրական և բանաստեղծական), Քերթուածներ, Պետրոս Դուրեան (Վաղամեռիկ բանաստեղծին կեանքին ու գործերուն քննական ուսումնասիրութիւնը), Մկրտիչ Պէշիկթաշլեանի կեանքն ու գործերը, Մկրտիչ Պէշիկթաշլեանի Քերթուածներն ու Ճառերը (ուսումնասիրութիւններ), Նահապետ Քուչակի դիւանը, Նաղաշ Յովնաթան աշուղը և այլն։ Ֆրանսերէն լեզուով գրած գործերուն մէջ գլխաւորներն են "Poemes Armeniens anciens et modernes", "Chants populaires Armeniens", L'Armenie, son histoire, sa literature, son röle en Orient"։ Իր ծածկանունն է Ֆանթազիօ։

ԱՐՏԱՇԷՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ (Մալկարացի Կարօ).—

*Տաճկահայ գրողներու մէջ՝ ծանօթ է իր բանաստեղծական, իմաստասիրական ու քննադատական արտադրութիւններով։ Ծնած է Մալկարայի մէջ* 1873*ին և դպրոցական նախնական ընթացք մը աւարտելէ վերջ ինքնօգնութեամբ զարգացած։ Իննսունական թուականներուն յայտնուեցաւ հայ գրականութեան մէջ՝ նախ իբրև բանաստեղծ։ Քնարերգական սեռին մշակն է գլխաւորապէս։ Իր արձակը մաքուր է, և ոճը՝ կուռ, նկարէն ու ինքնատիպ։ Գաւառացի գրագէտներու մէջ նըշանակելի դէմք մ՚է։ Իբրև գրական քննադատ և հրապարակագիր՝ ուժեղ գրիչ մը ունի Յարութիւնեան։ Իր գրած շատ մը գրութիւններուն մէջ՝ միայն բանաստեղծութիւնները հրատարակուած են առանձին գիրքերով, որոնք են՝ Լքուած Քնար և Երկունք։*

*ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆ*.— (*Հրազդան, Հայկակ*. 1852-1908).— *Տաճկահայ նշանաւոր գրագէտ, հրապարակագիր և ազգային գործիչ։ Ծնած է Սամսոնի առջև, շոգենաւին մէջ՝ երբ իր ծնողքները Կ. Պոլիս կուգային։ Իր ուսումն առած է նախ Օրթագիւղի Թարգմանչաց և ապա Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան վարժարանը։ Իր երիտասարդական տարիքէն իսկ սկսած է ազգային գործունէութեան, և նուիրուած է մտաւորական աշխատութեանց։ Հայ գրականութեան մէջ իր մուտքը Արեւելք օրաթերթով սկսաւ և շուտով հանեց մեծ համբաւ։ Հետզհետէ խմբագիր եղած է Արեւելք, Մասիս և Հայրենիք թերթերուն, որոնց վերջինը* 90*ական թուականներուն մէջ հասած էր զգալի բարձրութեան և շատ տարածուած օրաթերթ մ՚էր։ Արփիար առաջին հայ գրագէտն է որ ձեռնարկած է տաճկահայ կեանքը ծանօթացնել ռուսահայերուն։ Երկար տարիներ Հայկակ ծածկանունով թղթակցած ու աշխատակցած է Գ. Արծրունիի հիմնած Մշակ օրաթերթին։ Դրօշակակիցն էր առաջդիմական գաղափարներու, որոնց անունով իր շուրջն հաւաքուած էին շատ մը երիտասարդ ոյժեր։ Հայրենիքի գլխաւոր ոյժն էր ինքը։*

Ունի գրած կարգ մը խմբագրականներ: 1896ին քաղաքական պատճառներով արտասահման անցնելու ստիպուեցաւ: Հոն եւս հրատարակից Նոր կեանք, Մարտ, Հնչակ, Հայ հանդէս, Լուսաբեր, Շիրակ եւ այլն թերթերը, որոնց մէջ ունի անհամար գրութիւններ: Իբրեւ սրամիտ քրօնիկագիր՝ Արփիար Արփիարեան կը մնայ անհաւասարելի: Իր Օրուան կեանքը եւ Հովուերգ խորագրով էջերը, որոնք մեծ մասամբ անտիպ կը մնան տակաւին, եւ որոնք ժամանակակից դէմքերու, եղելութիւններու եւ դէպքերու վրայ գրուած են, մատնանիշ կ՚ընեն իր հրապարակագրական մեծ տաղանդը: Արփիար ունի նաեւ երգիծական տաղանդ, որուն արտայայտութիւնն են Սկեպտիկ ստորագրութեամբ իր երգիծական սիրուն կտորները: Հրապարակախօսական անթիւ յօդուածներէն զատ, որոնք ցրցրուած են հոս ու հոն, իր առանձին գրութիւններն են՝ Կարմիր ժամուցը, Ոսկի ապրշանը, Երազի մը գինը, Դատապարտեալը, Ապուշը, եւ այլն: Հետաքրքրական է Ժամանակակից Պատմութեան Էջեր վերնագրով իր պատմական գրութիւնը: Արփիար Արփիարեան մինչ մնաց ժողովուրդէն սիրուած գրագէտ, սակայն իր յեղափոխական գործունէութիւնը ձախող էր եւ շատ պակսեցուց իր անուան հմայքը: 1908ին Գահիրէի մէջ սպաննուեցաւ այս մեծ տաղանդը:

ԲԱԲԳԷՆ ԵՊ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ.— Արմաշի Դպրեվանքին անդրանիկ շրջանաւարտներէն է այս հմուտ գրագէտ եկեղեցականը, որ ունեցած է գրչի աչքառու գործունէութիւն: Ծնած է 1868ին Այնթապի մէջ եւ իր նախնական ուսումը առած է տեղւոյն Վարդանեան դպրոցին մէջ: 1905-1906, երկու տարի յաջողութեամբ հրատարակած է Լոյս կրօնաթերթը, որուն մէջ ունի լուրջ ուսումնասիրութիւններ: Առաջնորդական պաշտօններ վարած է Ճանիկի, Մուշի եւ Անկիւրիայի մէջ: Մշակած է կրօնական, մատենագրական եւ բանասիրական գրականութիւն: Իր ոճը հայեցի է եւ սակայն գրաբարաբոյր: Աշխատակցած է Պոլսոյ եւ արտասահմանի մէջ հրատարակուող հանդէսնե-

րու։ Հրատարակած է Ժողովուրդին Տօնացոյցը (կրօնական-եկեղեցական), Քարոզներ, Եղիշէ (մատենագրական ուսումնասիրութիւն), Պատմական Գրիգոր Պատրիարքի Յիշատակարանը, Կոյս Յովհաննէս Պատրիարք եւ այլն։ Բարգէն Եպիսկոպոս ունի տակաւին կարեւոր ձեռագիրներ։ Արմաշականներուն ամենէն հմուտ դէմքն է։

ԲԻՒԶԱՆԴ ՔԷՉԵԱՆ (Տանուտէր Յարոյ).— Նշանաւոր է իբրեւ հրապարակագիր և լրագրապետ՝ քան իբրեւ գրագէտ։ 40 տարիէ ի վեր Բիւզանդ Քէչեան ծանօթ է լրագրական հրապարակին վրայ՝ իր քաղաքական, տնտեսական ու ազգային խնդիրներու շուրջ գրած կուռ և ուշագրաւ խմբագրականներով։ Երկար ատեն Մասիսի ու Արեւելքի մէջ խմբագրի պաշտօն վարելէ ետք, 1896ին հիմնեց Բիւզանդիոն օրաթերթը, որ մինչեւ հիմա անընդհատ կը հրատարակուի։ Քէչեան առաջնութիւն կու տայ միշտ գործնական նիւթերու և իր խմբագրական գործին մէջ նիւթական հաջողութիւն ու գրականութիւնը հաշտեցուցած է։ Ունի ուժեղ ոճ, գրաբարախառն սակայն։ Իբրեւ առանձին հեղինակութիւն գրած է Պատմութիւն Ս. Փրկչի Ազգային Հիւանդանոցին և թարգմանած է երեք հատոր Ընկերային Նամականիներ։

Հ. ԳԱԲՐԻԷԼ ՄԷՆԷՎԻՇԵԱՆ (Թաթուլ Վանանդացի). — Վիէննայի Մխիթարեան ուխտէն, բանասէր, լեզուաբան և գրագէտ։ Ունի կարեւոր գիրքեր և հոս հոն ցրուած շատ մը յօդուածներ ու ուսումնասիրութիւններ։ Գլխաւոր գործերն են Գիրք գրելու արուեստը, Պատմութիւն Հայ Լրագրութեան, Արդի լեզուաբանութիւնը, Բնական պատմութիւն (3 հատոր) և այլն։

Հ. ԳԱՐԵԳԻՆ ԶԱՐՀՊԱՆԵԼԵԱՆ (1827-1901).— Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան աշխատասէր անդամներէն մին, որ ծնած է Կ. Պոլիս։ Հայ մատենագրութեան ուսումնասիրութեանը նուիրուած այս հմուտ դէմքը արտադրած է կարեւոր երկասիրութիւններ։ Իր գլխաւոր գործերն են Պատմութիւն հին հայ դպրութեան,

Պատմութիւն նոր հայ դպրութեան, Մատենադարան հայկական նին թարգմանութեանց, Հայկական Մատենագիտութիւն, Պատմութիւն հայկական տպագրութեան, Ուսումնասիրութիւնք հայ լեզուի եւ մատենագրութեան յԱրեւմուտս:

ԳԱՐԵԳԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ (1840-1892). — Խրիմեան Հայրիկի արժանաւոր աշակերտը, ծընած Վանի մէջ։ Սրուանձտեանց գաւառի գրականութեան պատուաւոր ներկայացուցիչներէն մէկն ու հայ եկեղեցականներու մէջ ժողովրդական ու սիրուած դէմք մ'է։ Երկար տարիներ կարեւոր պաշտօններ վարած է Մուշ, Վան, Ակն և այլն։ Պատրիարքարանի կարգադրութեամբ ընդարձակ պտոյտներ ըրած է Հայաստանի մէջ՝ հայերու դրութիւնն ուսումնասիրելու համար։ Քննող ու պրպըտող միտք մը ու քնարերգական ոճ մը ունի։ Իր բոլոր գրութիւնները ալ համեղ ու գողտր են։ Բոլորովին ինքնատիպ կերպով կը նկարագրէ հայրենի երկիրը՝ իր բնական տեսարաններով ու աւերակներով։ Իբրեւ ազգագիր և բանահաւաք մեծ կարեւորութիւն ունին իր գործերը, որոնք հայրենիքին շունչը կը բերեն կարծես։ Հրաշալի էջեր ունի, որոնց մէջ գեղապանծօրէն բանաստեղծ ոգի մը ի յայտ կը բերէ։ Հայ գրականութեան ընծայած է Թորոս Աղբար (2 հատոր), Համով Հոտով, Մանանայ, Գրոց Բրոց, Հնոց ու Նորոց գրական ու ազգագրական գործերը և Շուշան Շաւարշանայ թարգմանութիւնը։ Մեռած է Պոլիս։ Իր կարգ մը ձեռագիրները կը մնան անտիպ։

ԳԵՂԱՄ Տ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ (Գեղամ). — Գաւառացի գրագէտ մը, որ հայեցի ոճով մը տուած է շարք մը պատմուածքներ ու պատկերներ, գաւառի հայկական կեանքէն։ Առանձին գիրք չունի. իր յօդուածներուն լաւագոյնները Տարեցոյցներու մէջ են։ Օսմ. Երեսփ. ժողովի Ա. շրջանին Մուշի երեսփոխանն էր։

ԳԷՈՐԳ ՄԵՍՐՈՊ. — Երիտասարդ բանաստեղծ և ուսուցիչ։ Ծնած է 1881ին Պարտիզակ։ Աշակերտած է Երուսաղէմի Ժառանգաւորաց վարժարանին և Արմաշի

դպրեվանքին։ Անխոնջ ուսումնասիրող մ՚է, որուն երկու ուշագրաւ երկերը վերջերս տպագրուեցան. Քրիստոնէութեան մուտքը ի Հայս Գրիգոր Լուսաւորչէն առաջ և Ուրարտու կամ Հայաստանի նախաբնիկները։

ԳՐԻԳՈՐ ՋՕՀՐԱՊ.— Փաստաբան, գրագէտ, հրապարակագիր և քաղաքական գործիչ։ Ծնած է Կ. Պոլիս, 1860ին և աշակերտած է Շահնազարեան վարժարանին ու ապա Լիսէին։ Արեւմտահայ գրականութեան մէջ իրապաշտ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչն է ու նորավէպի վարպետը։ Իր հրապարակագրութեան մէջ խիզախ է, սուր ու յանդուգն, իսկ նորավէպերուն մէջ՝ ջղուտ ու անկեղծ։ Երկար տարիներէ ի վեր կը գրէ պոլսահայ թերթերուն մէջ, իբրև առաջնակարգ գաղափարներու ջատագով։ Մասիսի ամենէն փայլուն շրջանին խմբագրապետն է։ Իր երիտասարդ տարիքին մէջ հրատարակած է Անհետացած Սերունդ մը վէպը։ Ուշագրաւ են իր Ծանօթ Դէմքերը, զորս հրատարակեց Մասիսի մէջ՝ ներկայացնելով քանի մը գրագէտներ ու ազգային գործիչներ։ Վերջին տարիներուս մէջ հրատարակեց իր նորավէպերը քանի մը հատորներու մէջ, որոնք Խղճմտանքի Ձայներ, Կեանքը ինչպէս որ է, Լուռ ցաւեր անունները կը կրեն։ Ասոնցմէ զատ գրած է քաղաքական և օրէնսգիտական քանի մը թուրքերէն և ֆրանսերէն կարեւոր գործեր։ Երեսփոխան է Օսմ. Երեսփ. Ժողովին մէջ։

ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍԵԱՆ (Բանագող Լութինեան).— Երգիծական սեռը մշակած է և գրած է զուարճալի ոճով քրոնիկներ։ Ունի յաջող էջեր։ Հրատարակած է Կիկօ և Զուռնա երգիծաթերթերը։ Իր երկասիրութիւնն է Կիկոյի տարեցոյցը։ Իր գրիչը բիւրեղանալու կարօտ է։

ԳՐԻԳՈՐ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ (Նուրեան).— Իզմիրցի գրագէտ, փաստաբան, թարգմանիչ և հրապարակագիր։ Ծնած է 1839ին։ Նշանաւոր է իր բազմաթիւ մեծ թարգմանութիւններով։ Հիմնած է Իզմիրի մէջ Ծաղիկ անուն ամսօրեայ հանդէսը, որ յանդուգն և ազատական թերթ մ՚էր եղած։

Ինքնագիր հատորն է Ուղեւորութիւն ի Կոստանդնուպոլիս։ Թարգմանած է ֆրանսական մատենագրութեան լաւագոյն գործերէն՝ Լամարթինի Ռաֆայէլը, Միւսէի Դարուս մէկ զաւակին խոստովանանքը, Վիքթոր Հիւկոյի Թշուառները։ Ունի մաքուր լեզու մը, որուն միակ թերութիւնը՝ գըրաբարախառն ըլլալն է։

ԳՐԻԳՈՐ ՕՏԵԱՆ.— 1834ին Կ. Պոլսոյ մէջ ծնած է այս հազուագիւտ տաղանդը, որ նշանաւոր հանդիսացած է իբր գրագէտ, պետական անձնաւորութիւն և ազգային գործիչ։ Ազգ. Սահմանադրութեան հիմնադիրներէն մին է Օտեան և Օսմ. Սահմանադրութեան հեղինակութեան գործին մէջ ալ Միտհաթ փաշայի գլխաւոր գործակիցը։ Միտհաթ փաշայի աքսորուելէն վերջ ապաստանեցաւ Բարիզ, ուր մեռաւ 1887ին։ Դժբաղդաբար այս մեծ գրագէտէն ամբողջական գրուածք մը չկայ։ Իր ատենախօսութիւններուն և գրուածքներուն մէկ մասը 1910ին ամփոփուեցաւ հատորի մը մէջ։ Բարիզէն թըղթակցած է Մասիսին՝ Վահրամ ծածկանունով։ Հայկական կեանքի մտաւոր յեղաշրջութեան պարագլուխներէն մին ալ Գրիգոր Օտեանն էր, որ Եւրոպայի ընկերային ու քաղաքական նորագոյն գաղափարները մուծուց հայոց մէջ։

ԴԱՆԻԷԼ ՎԱՐՈՒԺԱՆ (Չպուգքեարեան).— Արեւմըտահայ նորագոյն առաջնակարգ բանաստեղծը, որ ծընած է Սեբաստիոյ Բրգնիկ գիւղը՝ 1888ին։ Իր դաստիարակութիւնն առած է Վենետիկի Մուրատ-Ռաֆայէլեան վարժարանը և յետոյ Պելճիոյ մէջ հետեւած է քաղաքական և ընկերային գիտութիւններու։ Իր քնարերգական բանաստեղծութիւնը հասած է բարձրագոյն արուեստի ու լեզուական կատարելութեան։ Հայրենիքի տաք շունչն ու հայկական հին կեանքի ոգին կը սաւառնին իր արտադրութիւններուն մէջ։ Արտասահման գտնըւած ատեն հրատարակեց Սարսուռներ ու Ջարդը անուն երկու բանաստեղծական տետրակներ։ Իր քերթուածներուն մէկ մասն ամփոփուած է Ցեղին Սիրտին մէջ։ Աչ-

խատակցած է շատ մը հանդէսներու ։

ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ (Գրասէր Աստղ, Մեղանիա Թեւանիօ, Նուրանիա եւ այլն). — Արտակարգ բանաստեղծական տաղանդ եւ իմաստասէր գրագէտ։ Ծնած է Կ. Պոլիս 1851ին եւ փայլուն աշակերտն է Շահնազարեան վարժարանին։ Աս ալ ինքնօգնութեամբ զարգացած միտք մ'է։ Գրած է արձակ եւ ոտանաւոր բազմաթիւ գրութիւններ։ Ունի ճոխ ու հրապուրիչ լեզու եւ հարուստ հայկաբանութիւն, որուն մէջ երբեմն հաւասարակշռութիւնը կը պակսի։ Երբեմն խրապաշտ է, նկարագեղ եւ երբեմն ալ խորհրդապաշտ։ Երկրագունտ հանդէսին խմբագրութիւնը վարած է չորս տարի եւ Գրական եւ իմաստասիրական շարժումը հրատարակած է հինգ տարի։ Այս երկու թերթերուն մէջ գրած է ինքնատիպ շատ մը յօդուածներ։ Բաւական երկար ատեն ալ ուսուցչական պաշտօն ստանձնած է Պոլսոյ մէջ։ Իր հեղինակած գրքոյկներն են. Աւեզին ճառը, Շահնազարեանի մը խղճին պարզ յանդիմանութիւնը, Փիլիսոփայական բառարան, Ճառ աղջկանց դաստիարակութեան, Շրջագայութիւն մը իմ թաղիս մէջ, Տարերք Պատմութեան Իմաստասիրութեան, Ֆրանսերէնէ հայերէն եւ հայերէնէ ֆրանսերէն բառարաններ։ 1908ին ինքզինքը կախելով անձնասպան եղած է։

ԵՂԻՇԷ ԵՊԻՍ. ԴՈՒՐԵԱՆ. — Անուանի բանաստեղծին Պետրոս Դուրեանի կրտսեր եղբայրը, նոյնչափ հանճարեղ։ Ծնած է 1860ին Կ. Պոլսոյ մէջ։ Հայ եկեղեցականութեան կարկառուն դէմքերէն մին է, հմուտ բանասէր, մատենագրագէտ եւ զգայուն բանաստեղծ։ Բանաստեղծութեան մէջ մշակած է սրբազան քնարերգութիւնը, որուն մէջ իր դաշըն ու կրօնաշունչ ոճը կը փայլի գերազանց գեղեցկութեամբ մը։ Յաջորդաբար վարած է Արմաշի դպրեվանքին վանահայրութեան, Իզմիրի առաջնորդութեան եւ Կ. Պոլսոյ պատրիարքութեան պաշտօնները։ Իր հեղինակութիւններն են բացի գրաբար լեզուի ուսուցման համար պատրաստած դասագրքերէն՝ Հայ Մատենագրութեան համառօտ պատմութիւն մը։ Այս ու այն հանդէսներուն ու Տարեցոյց-

ներուն մէջ գրած է բազմաթիւ յօդուածներ և բանաստեղծութիւններ։ Հովուական Սիւնը իր սրբազան բանաստեղծութեանց մէկ մասին ժողովածուն է։ Դուրեան Սրբազան փայլուն դէմք մ'է արևմտահայ գրականութեան մէջ թէ իբր բազմահմուտ միտք և թէ իբր արուեստագէտ գրող։

ԵՐՈՒԱՆԴ ԹՕԼԱՅԵԱՆ (Կավռոշ).— Դերասան և երգիծաբան գրող։ Գրած է բազմաթիւ երգիծական յօդուածներ օրաթերթերու և հանդէսներու մէջ։ Հիմնած է Կավռոշ երգիծաթերթը՝ զոր 4 տարիէ ի վեր կը հրատարակէ։ Հեղինակած է Կավռոշին տարեցոյցները, Կավռոշ զինուոր և այլն երգիծական գործերը։ Իր գրիչը բիւրեղացման կը կարօտի։

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ (Eros).— Հրապարակագիր, վիպասան և երգիծաբան է Երուանդ Օտեան, Գրիգոր Օտեանի եղբօրորդին, որ ծնած է Կ. Պոլիս 1869ին։ Շատ կանուխէն սկսած է աշխատակցիլ հայ թերթերու։ Արփիարեանի Հայրենիքին խմբագրութեան մասնակցած է՝ սրբամիտ քրոնիկներով, որոնք մինչև հիմա ալ անմրցելի են։ Կոտորածներէն վերջ անցած է արտասահման՝ աստանդական կեանք մը վարելով՝ մէկ քաղաքէն միւսը և մէկ թերթէն միւսը։ Աշխատակցած է Նոր կեանքին և Անահիտի։ Եգիպտոսի մէջ հրատարակած է կարգ մը թերթեր, որոնք տևականութիւն ունեցած չեն։ Արտադրած է երգիծաբանական խիստ յաջող և հրաշալի էջեր, որոնց մէջ առաջնակարգ տեղը կը բռնէ Ծապլվարի Նամականին։ Իր գործերէն յիշենք Ոմանց Տարեցոյցը, Ֆրանկօ-թրքական պատերազմը, Ապտիւլ Համիտ եւ Շէրլօք Հոլմս մեծ վէպը և այլն։ Օտեան սահուն հայերէնով մը թարգմանած է Զոլայի Արգասաւորութիւնը, Թոլստոյի Յարութիւնը և Աննա Քարենինան։ Երուանդ Օտեան արևմտահայ առաջնակարգ և տաղանդաւոր երգիծաբանն է։

ՏԻԿԻՆ ԶԱՊԷԼ ԱՍԱՏՈՒՐ (Սիպիլ).— Արևմտահայ գրականութեան ամենէն նշանաւոր դէմքերէն մին. հրապարակագիր և մանաւանդ տաղանդաւոր բանաստեղծուհի։ Ծնած է Իսկիւտար 1863ին և շատ վաղուց սկսած է ցոյց տալ գրական հակումներ։ Հայ իգական սեռի

պատուաբեր ներկայացուցիչներէն մէկն է Սիպիլ։ Ինք կրթական շարժման մէջ՝ մեծ դեր կատարած է՝ թէ իբրեւ ուսուցչուհի եւ թէ իբրեւ ազգ. գործիչ։ Հիմնած է Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը, որ գաւառներու մէջ որբանոցներ ու վարժարաններ բացած է։ Օր. Ալիս ծածկանունով հրատարակած է Աղջկան մը սիրտը խորագրով վէպ մը. բայց ընդհանրապէս Սիպիլ կը ստորագրէ հիմա։ Իր լեզուն շատ մաքուր է եւ ազնիւ, իսկ ոճը՝ քընքոյշ ու գեղեցիկ։ Շատ մը թերթերու մէջ ցրուած են իր ոտանաւորները, որոնք գոհարներն են հայ բանաստեղծութեան եւ ցոյց կուտան զգայուն սիրտ, վառ երեւակայութիւն եւ ինքնատիպ գրելակերպ։ Հրատարակուած է իր բանաստեղծութիւններուն մէկ հատորը, Ցոլքեր։ Ամուսնոյն, Հրանտ Ասատուրի հետ հեղինակած է աշխարհաբար քերականութեան դասընթացք մը, եւ Թանգարան անուն հայ լեզուի դասական գիրքերու շարք մը։

ՏԻԿԻՆ ԶԱՊԷԼ ԵՍԱՅԵԱՆ.— Հրապարակագիր, գըրագէտ եւ վիպասան։ Ծնած է 1876ին Իսկիւտար։ Սկսած է գրել ինունսունական թուականներուն՝ «Զապէլ Յովհաննէսեան» ստորագրութեամբ։ Հետեւած է Բարիզի մէջ Սորպոնի դասախօսութեանց եւ հայոց մէջ զարգացած կին դէմք մ'է։ Աշխատած է գլխաւորաբար վիպական սեռը եւ արտադրած է այդ ճիւղին վերաբերող բազմաթիւ գրութիւններ, որոնք այլեւայլ թերթերու մէջ ցըրուած են։ Իր ոճը շնորհալի է եւ պարզ, իսկ լեզուն՝ սահուն։ Միայն երեք գիրքեր հրատարակուած են այս առաջնակարգ գրողէն. ատոնք են՝ Շնորհքով Մարդիկ, Կեղծ Հանճարներ եւ Սկիւտարի Վերջալոյսներ։ Վերջերս Հայոց Հրատարակչականը հրատարակեց իր ուրիշ կարեւոր մէկ գործը։

ԹԷՈԴԻԿ ԼԱՊՃԻՆՃԵԱՆ (Թէոդիկ).— Անխոնջ աշխատող եւ յարգի գրագէտ։ Մեր Նոր գրողներու լաւագոյններէն է։ Թէոդիկ ստորագրութեամբ բազմաթիւ յօդուածներ հրատարակած է օրաթերթերու եւ շաբաթաթերթերու մէջ։ Իր լրագրական յօդուածներուն մէջ Մա-

զուամէի մէջ հրատարակուած Ծանօթ դէմքեր ու Փրցուած էջեր կեանքի հատորէն վերնագրով գողտր գրութիւնները արժանի են ուշադրութեան: Գրած է նաեւ գեղեցիկ բանաստեղծութիւններ: Ունի ճոխ ոճ, գրելու ինքնատիպ եղանակ և շնորհալի գրագիտութիւն, որուն քիչեր կը հաւասարին: Իր բանասիրական յոգնաջան աշխատութեանց արդիւնքը կը ցոլանայ Ամենուն Տարեցոյցը անուն ժողովածուներուն մէջ, որոնք եօթը տարիէ ի վեր կանոնաւորապէս և գերազանցօրէն հրապուրիչ կերպով կը հրատարակուին: Իր ուրիշ գործերն են՝ Կաղանդ (փըրցըւած էջեր կեանքի հատորէն) և Տիպ ու Տառ հմտալից երկասիրութիւնը: Թէզդիկ գրագէտ ըլլալուն չափ բանասէր ալ է: Իր գրութիւններուն մէջ լեզուի սիրուն ինքնատպութիւն մը ունի, որուն մէջ իրեն կ'օգնէ «Պոլսոյ Հայէվար»ը, իր բառերով ու ոճերով, զորս լաւ ուսումնասիրած է: Այս աշխատութիւնը Իզմիրեանց մրցանակին արժանացաւ:

ԹԼԿԱՏԻՆՑԻՆ (Յովհաննէս Յարութիւնեան).— Արեւմտահայ գաւառական գրականութեան բոլորէն ինքնատիպ ներկայացուցիչներէն մէկը, որ տուած է հրաշալի պատկերներ ու պատմուածքներ՝ գաւառի հայ կեանքէն, վարպետ, ճարտար ու իրեն յատուկ ճկուն գրչով մը: Ծնած է Խարբերդ՝ 1860ին և կրթական մշակ մ'է: Հիմնած է Խարբերդի մէջ իր անունով վարժարան մը, որ մինչեւ այսօր կը շարունակէ: Թերթերու և Տարեցոյցներու մէջ ցրուած են իր զանազան թատրերգութիւններն ու այլ գրուածքները, որոնց մէջ կայ գաւառաբարբառին գանձը: Ունի նաեւ հրապարակախօսական և հեքեաթունակ յօդուածներ: Գլխաւոր գործն է Էնզի դէմքէն թատրերգութիւնը:

ԹՈՎՄԱՍ ԹԷՐԶԵԱՆ (1838-1909).— Վենետիկի Մխիթարեան միաբանութեան հասցուցած աշակերտներէն մին, որ սիրուած թատերագիր մը և գնահատուած ու յարգելի բանաստեղծ մ'եղած է: Սիրած է օտար սերունդէ, բայց հայ ոգին իւրացուցած է: Վարպետն է իրեն յաջորդող բանաստեղծ սերունդին: Լեզուն ու ոճը գա-

սական են, բայց տաղանդաւոր ստեղծագործութիւններ ունի։ Գրած է շատ մը թատերգութիւններ. ինչպէս՝ Արշակ Բ., Սանդուխտ, Ցոլակի գեղեցիկ, Մահ Աբելի, Մովսէս և Խոսրով Բ., որոնք պոլսահայ բեմին վրայ շատ անգամներ ներկայացուած են։ Թարգմանած է շարք մը դասական գործեր՝ Անակրէոնէն (Տաղեր), Կէօթէէն (Ֆաուստ) և Քարմէն Սիլվայէն (Աստրա)։ Թէրզեան եղած է արդիւնաւոր ուսուցիչ մը և պետական վարժարաններու մէջ պաշտօնավարած երկար ատեն։

ԼԵՒՈՆ ԲԱՇԱԼԵԱՆ.— 90 ական թուականներու Հայրենիքի սերունդէն մին, լաւագոյն հրապարակագիր և կատարեալ գրագէտ։ Ծնած է Կ. Պոլիս, 1868ին։ Պէրպէրեան վարժարանէն ընթացաւարտ ըլլալէ վերջ՝ իր գրական տաղանդին յայտնութիւնը տեղի ունեցաւ Արեւելքի ու Մասիսի մէջ գրած յօդուածներով։ Գրած է սքանչելի պատկերներ ու հիանալի նորավէպեր։ Հայկական կոտորածներէն վերջ ստիպուեցաւ Եւրոպա ապաստանիլ։ Հոն ժամանակ մը Արփիար Արփիարեանի հրատարակած զանազան թերթերուն աշխատակցեցաւ և յետոյ նաւթական պաշտօններով լքեց գրական ասպարէզն ու գործնական կեանքին մէջ մտաւ գործեց։ Իր գրուածքներէն յիշատակելի են Ծիծեռնակ և Թափառիկ ստորագրութեամբ արտադրած յօդուածները։ Ցեղին Ձայնը, Զարթօնք, Կրիայ, Կաղանդ նաեւ իր լաւագոյն պատկերներն են։

ԼԵՒՈՆ ՍԵՂԲՈՍԵԱՆ (Շանթ).— Ծնած է Բերա, 1869ին և արեւմտահայ լաւագոյն գրագէտներէն մին է։ Իր դաստիարակութիւնն ստացած է Էջմիածնի Գէորգեան Ճեմարանին մէջ. աշակերտած է նաեւ Եէնայի և Միւնխէնի համալսարաններուն։ Գլխաւորաբար կովկասահայոց մէջ գործած է՝ իբրեւ ուսուցիչ և գրագէտ։ Պահած է տաճկահայ բարբառը և արտադրած է գողտրիկ վէպեր ու բանաստեղծութիւններ՝ ջղուտ ու գեղեցիկ ոճով։ Սեղբոսեան սիրուած դէմք մ'է՝ թէ արեւմտեան և թէ արեւելեան հայ գրականութիւններուն մէջ։ Գլխաւոր վէ-

ղերն են Դուրեանցիները, Վերժին, Երազ օրեր, Դերասանուհին եւայլն։ Թատերգութիւններէն նշանաւորն են «Եսա»ի մարդը, Ուրիշի համար և Ճամբուն վրայ։ Հրատարակած է բանաստեղծութեանց երկու հատորներ. Երգեր և Լերան աղբիւր։ Այժմ ուսուցչական պաշտօն կը վարէ Կ. Պոլիս։

ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ (Պուքս).— Նշանաւոր բանաստեղծ, գրագէտ և ուսուցիչ։ Ծնած է Կ. Պոլիս 1815ին։ Ունի շատ մը հրապարակագրական, բանասիրական և քննադատական գրութիւններ։ Ամենէն գլխաւոր գրուածքներն են Բավուր, Ի ծնէ կոյրը եւայլն։ Գեղարուեստական միակ գրուածքն է Սոփիա։ Ծանօթ գրագէտ Յ. Գ. Մրմրեան հատորով մը ներկայացուցած է՝ Խաչատուր Միսաքեանը, որ 40ական թուականներու ազգային նշանաւոր գործիչներէն մին է։

ԽԱԶԻԿ ԼԵՒՈՆԵԱՆ.— Վանեցի հայ գրագէտ, որուն շատ մը գրութիւնները ցրուած են զանազան հայ թերթերու մէջ։ Ունի գաւառային պատկերներ, հայկական տոհմիկ կեանքէ վիպակներ և տեղագրական գեղեցիկ կտորներ։ Իր կարեւոր մէկ աշխատասիրութիւնն է Աղթամարայ Կաթողիկոսութիւնը անուն գիրքը՝ որ քանի մը տարի առաջ արժանացաւ Իզմիրեանց մրցանակին։ Այս տարի եւս մրցանակ ստացաւ պատմական նոր գործի մը համար։

ԽՈՐԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՆԱՐՊԷՅ (Լուսինեան).— Տաճկահայ կղերին մէջ ամենէն նշանաւոր դէմքերէն մէկն ու քնարերգական բանաստեղծութեան մեծ ներկայացուցիչներէն մին, որ աշակերտած է Մուրատ Ռափայէլեան վարժարանին։ 1857ին վերադարձած է Մայր-եկեղեցւոյ գիրկը և գործակից եղած է Եւրոպայի մէջ գոյութիւն ունեցող հայկական ձեռնարկներու։ Նարպէյ պերճախօս, լեզուագէտ և ներկայանալի եկեղեցական մէ։ Մասնակցած է հայկական հարցին համար 1878ին Պերլին գնացող հայ պատգամաւորութեան։ Ունի գողտրիկ բանաստեղծութիւններ, որոնք զինքը սիրելի գրիչ մը դարձուցած են արեւմտահայ գրականութեան մէջ։ Սոուէրք Հայկա-

կանէ, Քնար պանդխտին և Վարդենիք բանաստեղծական հաւաքածոները հրատարակած է։ Թարգմանած է Լամարթինի Դաշնակը։ Իրենն են Արշակ Բ. և Աշխարհանիս թատերգութիւնները։ Խորհրդաւոր պարագաներու մէջ մեռաւ 1893ին։

ԿԱՐԱՊԵՏ ԲԱՍՄԱՃԵԱՆ (Basmadjian). — Բանասէր և բնախօսութեան մասնագէտ։ Փարիզի մէջ երկար ատեն հրատարակած է Բանասէր հանդէսը գիտական-բանասիրական շատ լուրջ բովանդակութեամբ մը, որ պատիւ կը բերէ։ Ունի հայ թերթերու մէջ գրուած բազմաթիւ բանասիրական բնախօսական և կրօնական յօդուածներ։ Իբրև առանձին գիրքեր լոյս տեսած են մինչև հիմա՝ Համեմատական հետազօտութիւն յառաջիկայ եւ տեղեկութիւն Վանայ արձանագրութեանց վրայ, Պսակ մը Փրետրիխ Միւլլէրի գերեզմանին վրայ, Զինուորական օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ. Քաղաքական օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ, Լեւոն Ե. վերջին թագաւոր Հայոց, եայլն։ Վերջերս հրատարակեց այդ. պատմութեան դասընթացք մը, որուն բարձրագոյն մասը, Իսկական պատմութիւն Հայոց, որ մամլոյ տակ է, կը խոստանայ լուրջ գիտական լաւ գործ մը,

ԲՐՈՖ. ԿԱՐԱՊԵՏ ԹՈՒՄԱՅԵԱՆ. — Յայտնի ուսուցիչ, հրապարակագիր և ազգային գործիչ։ Ծնած է Մարզուանի մէջ և իր կրթութիւնն առած՝ Թամարզայի վանքին մէջ։ Համալսարանական ընթացքը հետեւած է Լօզանի մէջ։ Երկար տարիներ ուսուցչական պաշտօն վարած է Անաթոլիա-Գոլէճին մէջ։ 1893ին ձերբակալուեցաւ և Էնկիւրիի մէջ դատապարտուելէ վերջ Անգլիոյ դեսպանին միջնորդութեամբ ազատուեցաւ։ Իր գլխաւոր երկերն են Հոգեբանութիւն, որ առաջ ընծային պատճառաւ առանց հեղինակի անուան հրատարակուեցաւ Կ. Պոլիս 1899ին, Պատմութիւն Արեւելեան խնդրոյ եւ Հայկական հարցին եայլն։ Եւրոպայի մէջ մեծ աշխատութիւն ունեցած է՝ հայն ու իր տառապանքը ծանօթացնելու համար։ Հմուտ է լատիներէնի, ֆրանսերէնի և

անգլիերէնի։ Վերջերս հրատարակուեցաւ իր Մարզըւանցի Գրիգոր Դպիր գրքոյկը։ Հնաբոյր ոճ մը ունի։

ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ (Արախ).— Բանաստեղծ, գրագէտ, ուսուցիչ և հրապարակագիր։ Ծնած է 1862ին, և Բարիզի իրաւաբանական համալսարանէն վկայուած է։ Երկար ատենէ ի վեր նուիրուած է գրականութեան։ Սա արդիւնաւոր դէմք մ'է արևմտահայ գրականութեան մէջ։ Վարած է Արեւելք և Մասիս օրաթերթերու խմբագրութիւնը երկար ժամանակ։ Ունի շատ զգուշաւոր, մաքուր, յստակ ու խնամոտ հայերէն մը, որ կատարեալ է։ Հոս հոն գրած է շատ մը բանաստեղծական, գրական և հրրապարակագրական յօդուածներ։ Իր պատմական վառուն գրքին արդիւնքն է Պատմական Ներշնչումները։ Երկու տարի Ազգ. Հիւանդանոցի Ընդարձակ Օրացոյցը խմբագրած է, անոնց մէջ դնելով իր երկու աշխատութիւնները. 1. Ազգ. Հիւանդանոցի Պատմութիւն և 2. Կ. Պոլսոյ հայերը եւ իրենց պատրիարքները։ Իր տիկնոջ Սիպիլի հետ պատրաստած է աշխարհաբարի քերականութեան դասընթացք մը։ Իր յօդուածներուն մէջ յիշատակելի է մանաւանդ Հինէն ու նորէն վերնագրով շարքը՝ Մասիս և Արեւելք օրաթերթերուն մէջ։ Ձեռագիր կը մնայ իր Աշխարհաբարի պատմութիւնը։

Հ. ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆ (Նահապետ).— Վենետիկի Մխիթարեան միաբանութեան ամենափայլուն աստղերէն մին. հռչակաւոր բանաստեղծ և հնախօս-պատմագիր։ Ծնած է Կ. Պոլսոյ մէջ, 1820ին։ Արեւելահայ և արեւմտահայ գրականութիւնները զգալի ներգործութիւն կրած են Ալիշանի հայրենաշունչ քնարէն։ Հայ աշխարհիկ գրականութեան հիմնադիրներէն և ազգ. վերածնութեան հոյակապ ազդակն ու ներշնչարանն է։ Երկար ատեն իր քնարը թրթռացուց Հայաստանի հին փառքն ու հայրենական կեանքը քնարերգելով։ Ալիշան ունի բազմաթիւ աշակերտներ՝ իր ազգայնական բոցաշունչ ոգիովը տոգորուած։ Ահագին գրականութիւն ունի թողած այս

հսկայ տաղանդն ու անխոնջ, պրպտող միտքը, որուն Հայաստանի պատմութեան, աշխարհագրութեան, հնախօսութեան և բնաբանութեան վրայ գրած բազմահատոր գործերը մատենադարան մը լեցնելու բաւական են ինքնին: Ալիշանի բանաստեղծութիւնները հաւաքուած են Նուագք վերնագրով 5 հատորներու մէջ: Իր գործերուն մէջ առանձին տեղ կը բռնեն Այրարատ, Սիսուան, Շիրակ, Հայապատում, Ըշմարք եւ Նշխարք Հայաստանի, Հայբուսակ, Հին հաւատք Հայոց, Սոփերք Հայկականք, Շիրակ, Երկրագիտութիւն Հայաստանի, Հայ-Վենետ, Հայ վանօրայք յԵւրոպա եւայլն: Երկար կ'ըլլայ իր գործերուն հոս մի-առմի թուումը: Տակաւին անտիպ մնացած է իր գործերուն մէկ մասը, որ կը պարունակէ կարևոր աշխատութիւններ: Ալիշան միակ դէմքն է Մխիթարեաններու, որ ահագին հռչակ ու ժողովրդականութիւն ունի հայ ժողովուրդին մէջ: Իր լեզուն միջնադարեան հայերէնի ներգործութիւնը կը կրէ, գրաբարախառն է և շատ ալ անհրապոյր: Մեռած է Ս. Ղազարի մէջ՝ 1901ին:

Ա. ՄԱՏԱԹԻԱ ԳԱՐԱԳԱՇ (1818-1903). — Վիէննական Մխիթարեան. Նախ կղեր էր, բայց ապա Պիւխնէրի փիլիսոփայութեան հետեւելով աշխարհական դարձաւ: Ոսկեդարեան հայերէնի հմուտ է և անոր խիզախ պաշտպանը, թէև աշխարհաբար լեզուով գրած է աւելի, ափսոսուած անշուշտ: Գարագաշեան համբաւաւոր է հայոց մէջ իր հեղինակութիւններով: Երկար ատեն հայ դպրոցներու մէջ իր գրած դասագիրքերը կը գործածուէին: Իր գործերուն մէջ գլուխ-գործոցն է քառահատոր Քննական Պատմութիւն Հայոցը, որ հայոց մէջ քննական պատմութեան առաջին փորձն է:

ՄԱՂԱՔԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՕՐՄԱՆԵԱՆ.— Նախկին պատրիարք Կ. Պոլսոյ. Նշանաւոր քարոզիչ, աստուածաբան և պատմագէտ: Ունի բազմաթիւ պատմական ու վարդապետական հմտալից ուսումնասիրութիւններ թէ՛ հայ և թէ՛ ֆրանսերէն ու լատիներէն լեզուներով, որոնց

նման է։ Իր տպագրուած գործերուն մէջ նշանակելի աշխատութիւններ են Հայոց Եկեղեցին, Զոռս Ալեքսանդրեաններու համապատումը։ Վերջերս պրակ առ պրակ սկսաւ հրատարակել Ազգապատում անուն խիստ ընդարձակ գործ մը, որ կը խօսի հայոց եկեղեցւոյ պատմութեան վրայ։ Թննասէր ստորագրութեամբ շատ մը եկեղեցական գրութիւններ ունի Ազգ. Հիւանդանոցի Ընդարձակ Օրացոյցին մէջ։ Իր գործերէն Հայոց Եկեղեցին թարգմանուած է ֆրանսերէնի ու անգլիերէնի։ Ունի սահուն ու բնական լեզու մը։

ՄԱՏԹԷՈՍ ՄԱՄՈՒՐԵԱՆ (1830-1901).— Իզմիրի փառքն է Մամուրեան. Նշանաւոր գրագէտ, հրապարակագիր, ուսուցիչ և ազգային գործիչ։ Իր դաստիարակութիւնն առած է Բարիզի Մուրատեան վարժարանին մէջ։ Երկար ժամանակ յաջողութեամբ վարած է Իզմիրի Ս. Մեսրոպեան վարժարանի տնօրէնութիւնը։ Հիմնած է Արեւելեան Մամուլը, որ առողջահայեաց լուրջ և երկարակեաց պարբերականներէն մին եղած է։ Աշխատակցած է շատ մը թերթերու զանազան կարեւոր յօդուածներով։ Շահինուր ծածկանունով շահագրգռական թղթակցութիւններ ունի գրած Արեւելեան Մամուլի մէջ։ Նշանաւոր են Հայկական նամականին, Անգլիական նամականին և Ներսէս Աշտարակեցիի օրերէն նիւթ առնուած Սեւ լերան մարդը վէպը։ Իր աշխատասիրութեան կը պարտինք կարգ մը օգտակար և կարեւոր թարգմանութիւններ՝ Ժիւլ Վէռնէն, Կէօթէէն, Ալեքսանդր Տիւմա Հօրմէն, Վոլթէրէն, Էօժէն Սիւէն, Ուոլթըր Սքոթէն և բազմաթիւ դասագրքեր՝ հայ լեզուի ու պատմութեան վերաբերող։ Մամուրեանի գրական գործունէութեան յոբելեանը տօնուեցաւ 1899ին։

ՄԵՍՐՈՊ ՆՈՒՊԱՐԵԱՆ.— Զմիւռնիացի ծանօթ գըրագէտ ու թարգմանիչ։ Իզմիրի գրական գործունէութեան ամենէն փայլուն ներկայացուցիչներէն մին է։ Գըրած է շատ մը յօդուածներ այլեւայլ թերթերու մէջ։ Իր լեզուն ճիշդ է ու քերականական, բայց գրաբարա-

խաղն ու խորտուբորդ։ Թարգմանած է կարգ մը կարեւոր գործեր, որոնց գլխաւորներն են Լաֆոնթէնի առակները, չափաբերեալ, Մոլիէրի կատակերգութիւնները (2 հատոր), Հիւկոյի Նօթր Տամ տը Բարին (3 հատոր), Նանզէնի Դէպ ի բեւեռը, Սէնեօպոյի Պատմութիւն քաղաքակրթութեան (հատուած), Նուպար փաշա եւայլն։

ՄԵԼՔՈՆ ԿԻՐՃԵԱՆ (Հրանդ).— Ծանօթ գրագէտ, ուսուցիչ եւ հրապարակագիր։ Ծնած է Բալուի Հաւաւ գիւղը՝ 1859ին եւ դաստիարակուած Կ. Պոլսոյ այլեւայլ վարժարաններուն մէջ։ 80ական թուականներէն սկսած է գրել պոլսահայ թերթերուն՝ գաւառին ու գաւառացիներուն կեանքէն առնուած հոգեբանական զգայուն ու ցնցող պատկերներ։ Յիշատակելի են իր Պանդուխտի կեանքէն պատառիկները, որոնց մէջ կենդանի եւ բնական վրձին մը կը գործածէ Հրանդ։ 90ական թուականներու Հայրենիքին գլխաւոր աշխատակիցներէն մին է։ Երկար ատեն Գաթէմանի աքսորուած է համիտեան ռէժիմին ատեն։

ՄԻՀՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ.— Ուսուցիչ, բանաստեղծ եւ մատենագիր։ Ծնած է Կ. Պոլիս, 1855ին եւ Բերայի Սուլթանիյէ վարժարանին ընթացքն աւարտած։ Երկար տարիներէ ի վեր կը զբաղի ուսուցչութեամբ։ Մշակած է ռամկական բանաստեղծութեան ճիւղը եւ քննադատութիւնը։ Ունի բանաստեղծական երեք հատորներ, Սփոփանք ռամկին, Իտալական կեանքի նուագներ եւ Քնարիկ, որոնց մէջ ի յայտ կուգայ իր բանաստեղծական տաղանդը։ Գրած է բանասիրական ու քննական բազմաթիւ ուսումնասիրութիւններ, որոնցմէ ոմանք առանձին գիրքերով լոյս տեսած են, եւ որոնք են, Քննական պատմութիւն ԺԹ. դարու հայ դպրութեան, Իտալական համբաւներ եւ անոնց քննական արժէքը, Զենոբ Գլակ եւ արդիական քննադատութիւնը։ Գրած է ֆրանսերէնէ հայերէն եւ հայերէնէ ֆրանսերէն բառարաններ եւ քանի մը դասագիրքեր։

ՄԻՆԱՍ ՉԵՐԱԶ.— Ծնած է Կ. Պոլիս 1852ին եւ իր ուսումն առած Շահնազարեան վարժարանին մէջ։ Նշա-

նաւոր գործիչ է Մինաս Չերազ և տաճկահայ յայտնի ուսուցիչ, հրապարակագիր և գրագէտ։ 70-80ական Թուականներու ծանօթ դէմքերէն ըլլալով անդամակցած է 1878ին Պերլին գնացող պատգամաւորութեան։ Երկար ատեն ունեցած է գրչի գործունէութիւն և աշխատակցած է Պոլսոյ թերթերուն՝ քննադատական հմտալից յօդուածներով։ Իր խիզախ ճառերն ու կարգ մը գրուածքները ամփոփուած են Գրական փորձեր, Գրիչ եւ Սուր և Ազգային դաստիարակութիւն անուն հատորներուն մէջ։ Կատաղի աշխարհաբարեան է և երբեմն փորձած է բնապաշտական լեզուի արուեստական գրութիւնը մտցնել մեր մէջ։ Հայաստան եւ Իտալիա և Ինչ շահեցանք Պերլինի վեհաժողովէն գիրքերը գրած է վեհաժողովէն դառնալէն վերջ։ Քաղաքական պաշտօններով արտասահման անցաւ և Ֆրանսայի մէջ սկսաւ հրատարակել ֆրանսերէն L'Armenie հանդէսը։ Եւրոպայի մէջ մեծ գործունէութիւն ցոյց տուած է հայ ցեղը եւրոպացիներուն ճանչցնելու գործին մէջ։ Գրած է գեղեցիկ նորավէպեր ու պատմուածքներ, որոնցմէ ոմանք վերջերս ֆրանսերէնի թարգմանուեցան։

**ՄԻՍԱՔ ՄԵԾԱՐԵՆՑ** (Շաւասպ Ծիածան). — Դուրեանը կը յիշեցնէ արեւմտահայոց այս տաղանդաւոր բանաստեղծը, որ իր դեռատի ու խոստմնալից տարիքին մէջ թոքախտէն զոհ գնաց։ Ծնած է Բինկեանի մէջ 1885ին և աշակերտած նախ Մարզուանի Անատոլիա Գոլէճին և ապա Ղալաթիոյ Կեդրոնական վարժարանին։ Տակաւին պատանի, սկսաւ գողտրիկ և զգայուն ոտանաւորներ գրել պոլսահայ պարբերականներուն։ Ունի հարուստ լեզու, ծաղկեալ ոճ, հայրենաշունչ ոգի և հովուերգական պատկերաւորումներ։ Իր բանաստեղծութեանց ժողովածուներն են Ծիածան և Նոր տաղեր։ Շատ բեղմնաւոր պիտի ըլլար իր տաղանդը, եթէ մահը չի հասնէր։ Մեռած է 1908ին։

**ԲՐՈՖ. ՄԻՔԱՅԷԼ ՄԻՆԱՍԵԱՆ**. — Գիտուն միտք մը և ծանօթ հոգեբան։ Ծնած է Խարբերդի մէջ և իր ուսումը կատարելագործած Ամերիկայի մէջ։ Ո՛չ ոք ի-

րին չափ յաջողած է գիտութիւնն ու իմաստասիրութիւնը գրականացնել և սիրելի դարձնել։ Ամերիկայի մէջ ամբողջ եօթը տարի հրատարակած է Լոյս հանդէսը, որ բռնապետութեան շրջանին Թրքահայ ուսուցիչներու ու գրասէրներու մտունդը մատակարարեց։ Հետեւած է նաև երկրագործական գիտութեանց։ Իբրև առանձին հեղինակութիւններ գրած է Պատանեկան յոյզեր, Բնաշրջականի մը Ներշնչումները, Մեր զգացումները, Կրթական իտէալներ եւ սկզբունքներ և ուրիշ քանի մը գիւղատնտեսական տետրակներ։

ՄԿՐՏԻՉ ԱՃԷՄԵԱՆ.— Քնարերգակ արեւմտահայ բանաստեղծներուն մէջ ծանօթ դէմք մ'է Աճէմեան։ Ծընած է 1838ին Օրթագիւղ և իր դաստիարակութիւնն ըստացած է Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան վարժարանին մէջ։ Երկար ատեն վարած է հեռագրական և թղթատարական նախարարութեան մէջ կարեւոր պաշտօն։ Իր գրական գործունէութիւնը սկսած է 1875էն և աշխատակցած է պոլսահայ բազմաթիւ պարբերականներու։ Հրատարակած է բանաստեղծութեանց շարք մը՝ Ժպիտ եւ Արտասուք, Լոյս եւ Ստուեր, Գարնան Հովեր եայլն խորագիրներով։ Իր գրութեանց ժողովածոն 908ին հրատարակուեցաւ Թրթռուն Ցանցեր վերնագրով։ Ունի նաև Շիլլէրի Աւազակները և ուրիշ թարգմանութիւններ։

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ (1820-1907).— Հայ եկեղեցականութեան մէջ բացառիկ ու պաշտելի դէմք մը, որուն Հայրիկ տիտղոսը տուած է հայ ժողովուրդը։ Ծնած է Վանի մէջ։ Եկեղեցական ասպարէզին մէջ ունեցած է մեծ գործունէութիւն, թէ՛ իբրև վարդապետ, քարոզիչ և թէ՛ իբրև պատրիարք ու կաթողիկոս, այնպէս որ իր անունը ո՛չ միայն հայոց գրականութեան ու եկեղեցական պատմութեան այլև քաղաքական պատմութեան մէջ կապուած է ազգային կեանքին։ Կազմակերպիչներէն մին է Հայկական Հարցին։ Հայկական գաւառային գրականութեան ռահվիրան է Հայրիկ միեւնոյն ատեն։ Գաւառներուն մէջ ա-

ռաջին տպարանը ի՛նք հաստատած է Վանի մէջ և հրատարակած Արծուի Վասպուրականի հանդէսը, զոր յետոյ փոխադրած է Մուշ՝ կոչելով Արծուիկ Տարօնոյ։ 1878ին մասնակցած է Պէրլինի վեհաժողովին առթիւ Եւրոպա մեկնող պատգամաւորութեան։ Պատրիարքական աթոռը գրաւած է 1869-74 թուականներուն և հրաժարիլ ըստիպուած՝ կարգ մը էնթրիկներու հետեւանքով։ Ի՛նք է որ պաշտօնական թագրիրներով առաջին անգամ ձայն բարձրացուցած է Բ. դրան առջեւ՝ Հայաստանի հարըստահարութեանց մասին։ 1890ին Սուլթան Համիտ աքսորեց զինքը Երուսաղէմի վանքը, ուրկէ սակայն Էջմիածնայ կաթողիկոսական աթոռը հրաւիրեց զինքը ազգային քաղձանքը՝ երկու տարի վերջ։ Վախճանած է 1907ին Էջմիածնայ մէջ։ Խրիմեան Հայրիկ եղած է մեծ ուսուցիչ մը և մեծ ալ քարոզիչ մը միեւնոյն ատեն։ Ունի բանաստեղծական խառնուածք. իր արձակ գրութիւններն անգամ քնարերգական շունչ մը ունին կարծես։ Գրած է տաղաչափուած կամ արձակ շատ մը գործեր։ Հայրիկի աշխարհիկ լեզուով գրած բանաստեղծութիւնները հաւաքուած են Վերջալոյսի Ձայներ անուն հատորիկի մը մէջ։ Իր գործերէն ոմանք գրաբար են, ինչպէս՝ Հրաւիրակ Արարատեան և Հրաւիրակ Երկրին Աւետեաց բանաստեղծական գոհարները։ Հայրական տաքուկ շունչով մը և անկեղծ, պարզ ու մտերմիկ ոճով մը գրուած են իր աշխարհաբար գործերը, որոնք մեծ ժողովրդականութիւն ունին։ Անոնք են՝ Պապիկ եւ Թոռնիկ, Դրախտի Ընտանիք, Սիրաք եւ Սամուէլ, Մարգարիտ Արփաւորեան Երկնից, Խաչի Ճառ, Հայգոյժ, Վանգոյժ, Ժամանակ եւ Խորհուրդ իւր Լալոյ։ Խրիմեան Հայրիկ անմահ գործիչ մ՚է և յանկուցիչ գրող մը։

**ՄԿՐՏԻՉ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ** (1829-1868). — Ալիշանի շունչովը լեցուած ու Վենետիկի մէջ դաստիարակուած Թրքահայոց գլխաւոր բանաստեղծներէն մին է Պէշիկթաշլեան, ըլլալով միանգամայն թատերագիր և ազգային գործիչ։ Վենետիկէն դառնալէ վերջ Պոլսոյ մէջ

ունեցած է հասարակական գործունէութիւն և շատ գընահատելի դեր կատարած է կրօնական վէճերու հետեւանքով իրարմէ ուծացած հայկական հատուածներուն միջեւ սիրու յօրաբերութիւն և եղբայրական ոգի ստեղծելու մեծ գործին մէջ: Պէշիկթաշլեան հայ երախտագութեան առաջնորդող առաջդիմական միտքերէն մէկը եղաւ: Ինք զարգացուց թատրոնը և գրեց պատմական թատերգութիւններ ալ, որոնց մէջ, ժամանակի մասնաւթեան հետեւանքով անշուշտ՝ կը պակսի կնոջ դերը: Հռչակաւոր է սակայն իբրեւ բանաստեղծ: Ունի քնարերգական մեծ տաղանդ և քնքոյշ գրիչ: Վենետիկի Մխիթարեան ազդեցութեան տակ գրելէ գրաբար է իր լեզուն: Մեծ և յաջող նմանող մ'է Պէշիկթաշլեան, որ հեղինակութեան շատ գեղեցիկ կը յօրինէ իր նմանողաբար գրած շատ մը կտորները: Իր քերթուածներէն ոմանք կ'երգուին (Դու զո՞վ խնդրես, Ի բիւր ձայնից, Ով ինչ անուշ հովն): Իր գործերն են տաղեր, ճառեր և քերթուածներ: Արշակ Չօպանեան երկու գեղեցիկ ուսումնասիրութիւններով, որոնք հրատարակուած են երկու հատորներով, ծանօթացուցած է Պէշիկթաշլեանը, որուն գործերն ալ երկրորդ անգամ ըլլալով տպագրած է: Իր գլխաւոր թատերգութիւններն են Արշակ Բ., Կոռնակ, Վահէեայն:

ՄԿՐՏԻՉ ՓՈՐԹՈՒԳԱԼԵԱՆ.— Հասարակական հռչակաւոր գործիչ, գրագէտ, ուսուցիչ և հրապարակագիր: Ծնած է Վանի մէջ և գործակցած Խրիմեան Հայրիկի: Ուսուցչական արդիւնաւոր պաշտօնավարութիւն ունեցած է այլեւայլ տեղեր: 1885 ին արտասահման ապաստանեցաւ քաղաքական հալածման պատճառաւ: Մարսիլիոյ մէջ հիմնեց Արմենիա թերթը, որ մինչեւ հիմա կը շարունակուի: Հայկական յեղափոխութեան գաղափարին ու կազմակերպական ոգիին անդրանիկ առաջայախչներէն մին է Փորթուգալեան, որուն հիմնած ընկերութիւնը Արմենական կուսակցութիւն կոչուեցաւ: Գրած է շատ մը առաջնորդողներ և թարգմանած է յեղա-

փոխական կեանքէ առնուած զանազան օտար հեղինակներու հրահանգիչ կտորները։ 1912ին տօնուեցաւ իր գրական և հասարակական գործունէութեան երեսնամեակը։

*ՄՈՒՇԵՂ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԵՐՈԲԵԱՆ* (Զեր - ա - սիմ, Մսեր).— Արմաշի Դպրեվանքին անդրանիկ սաներէն մին է և գրական տեսակէտով ամենէն տաղանդաւորը։ Մուշեղ եպիսկոպոս ծանօթ է իբրև հրապարակագիր և գրագէտ։ Ծնած է Նիկոմիդիոյ Արսլանպէկ գիւղը և վարած է Աբարկիրի ու Ատանայի առաջնորդական պաշտօնները։ Գործունեայ եկեղեցական մէ Մուշեղ եպիսկոպոս և պատուաբեր դէմք մը հայ եկեղեցականներու շարքին մէջ։ Դպրեվանքի գրասեղաններուն վրայէն իսկ սկսած է աշխատակցիլ պոլսահայ թերթերու՝ կրօնական և գրական նիւթերու վերաբերեալ ցնցող յօդուածներով։ Իր ոճը խիզախ, դարձդարձիկ ու պայքարող է։ Մուշեղ Եպ.ի գրական գործունէութիւնը շատ աղմկալից եղած է։ Իր գրութիւններէն հրատարակուած են Հովուական թուղթ, Պատկերներ, Դրուագներ, Մանչեսթրի հայ գաղութին պատմութիւնը և Կիլիկիոյ ջարդն ու պատասխանատուները։ Երկու տարիէ ի վեր կը հրատարակէ Ամերիկահայ Տարեցոյցը խնամոտ բովանդակութեամբ, մասնաւոր նպատակ ունենալով ամերիկահայ գաղութին պատմութիւնը այս եղանակով մաս առ մաս հրատարակել։

*ԲՐՈՖ. ՅԱԿՈԲՈՍ ՃԷՃԻՁԵԱՆ*.— Ծնած է Ադաբազար, ուրտեղ իր նախնական կրթութիւնն առնելէ վերջ աշակերտած է Ռօպերդ Գոլէճին, որուն մէջ կը դասախօսէ այժմ։ Բրոֆ. Ճէճիզեան ծանօթ է իբրև բեմբասաց և գրագէտ։ Տաճկահայոց մէջ առաջինն է ինք բրոֆեսոր տիտղոսն ընդունող։ Ունի գրական նշանակելի գործունէութիւն մը։ Գրած է Շարժմունք երկնային մարմնոց գիրքը և թարգմանած է Մեծն Աղեքսանդրի պատմութիւնը։ Իր քարոզչական և ուսուցչական գործէն զատ Բիւրակնի առաջին շրջանին գլխաւոր խմբագիրն ու 1900-1906 խմբագրապետն եղած է, տալով ընկերային, կր-

բնական, իմաստասիրական և բարոյական նիւթերու վրայ բազմաթիւ յօդուածներ՝ պերճ և ազնուական լեզուով մը։

Հ. ՅԱԿՈԲՈՍ ՏԱՇԵԱՆ. — Հմտագոյն դէմք մը, աշխարհածանօթ գիտնական մը. Վիէննայի Մխիթարեաններուն պարծանքը և հայ ազգին ատողը, ինչպէս կ'անուանեն եւրոպացիներ։ Հանդէս Ամսօրեայի խմբագրապետն եղած է երբեմն։ Տաշեան անմրցելի հանճար մ'է և բացարձակ հեղինակութիւն մատենագրութեան և ձեռագիրներու քննութեան գործին մէջ։ Ծնած է Հայաստան, Տայոց գաւառին մէջ, 1866ին։ Շատ լաւ ուսումնասիրած է հայ մատենագրութիւնը և հայերէն ու գերմաներէն լեզուներով գրած է բազմաթիւ մատենագրական գործեր և ուսումնասիրութիւններ։ Հ. Տաշեան կազմած է Վիէննայի կայս. մատենադարանին և Վիէննայի Մխիթարեան վանքին հայերէն ձեռագրերու մայր ցուցակները, որոնք համբերատար և յոգնաջան աշխատութեան արդիւնք են։ Թարգմանած է եւրոպացի քանի մը հայագէտներու մատենագրական գործերը։ Իր գործերն են՝ Աբգարու Զրոյցը (գերմաներէն), Բարձրագաւառն Ուլնիա կամ Զէյթուն (գերմ.), Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց կայս. մատենադարանին ի Վիեննա (հայ. և գերմ.), Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա. Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, Ժողովածոյ առակաց Վարդանայ, — ըստ Ն. Մառի, Կարիէրի հեթանոս Հայաստանի ութ մեհեանները՝ Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացիի համեմատ, Բեղերբումի Հին հայերէնի ցուցական դերանունները եայլն։ Իր հոյակապ կոթողը պիտի ըլլայ Հայկաբանութիւնը, որ պիտի բաղկանայ 3 հազարէջեայ հատորէ և հայ լեզուի ուսումնասիրութիւնն է։

ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱԼՓԻԱՐ (Փրիգանդէմ). — Երգիծաբանութեան ասպետը կոչեցին զինքը։ Սրամիտ երգիծաբան մ'է Ալփիար, որ բազմաթիւ զուարթաբան յօդուածներ հրատարակած է հայ թերթերու և մանաւանդ Արեւելեան մամուլի մէջ։ Ծնած է Իզմիր, 1864ին և

հմուտ է ֆրանսերէնի։ Օսմ. ազատութենէն վերջ չկրցաւ իր գրիչն յարմարցնել ժամանակակից ընկերային կեանքին ու ըմբռնումներուն և ուստի իր գրական գործունէութիւնը դադրեցաւ ինքնին։

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄՐՄՐԵԱՆ (Ակումիս, Խաչ-ֆնար).— Յայտնի մատենագիր, բանաստեղծ ու վիպագէտ, որ բազմաթիւ աշխատասիրութիւններ ընծայած է հայ մատենագրութեան մէջ։ Ծնած է Իսկիւտար 1860ին և աշակերտած է Խաչատուր Միսաքեանի։ Գրական ասպարէզը մտնելէ առաջ առևտրական եղած ու յետոյ միայն գրականութեան նուիրուած է։ Հմուտ է գրաբարի, պատմութեան և իմաստասիրութեան։ Ինքնատիպ, դասական և հընաբոյր ու անհարթ ոճ մ'ունի։ Իր գլխաւոր գործերն են Հին օրեր, Թրքահայոց մեծատունները, Գուկս Խաչատուր Միսաքեան, Տէրոյենց պատուէր, Ս. Կղզիա յերուսաղէմ, Իննեակ Իմաստասիրական, Թրքահայոց հին վաճառականութիւնը եւ վաճառականն, Պատմութիւն Հայ Գրականութեան, Ս. Հաւատք ևայլն։ Թարգմանած է Լաբէնարէն, Բարբայէն և Իբօլին Թէնէն հատուածներ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱԶԱՆՃԵԱՆ.— Գաւառացի յայտնի բանաստեղծ, ուսուցիչ, լեզուաբան և գրագէտ։ Ծնած է Եւդոկիա 1870ին և հետևած է իրաւաբանական ուսման։ Խղճամիտ ուսումնասիրող է. ունի պարզ, կոկիկ, անաղարտ թեթև ու մաքուր ոճ մը։ 90ական թուականներէն ի վեր կ'աշխատակցի հայ լրագրութեան, հրատարակելով հայ լեզուի ու գրականութեան մասին շահեկան ուսումնասիրութիւններ։ Իր հեղինակութիւններն են Գաղղիերէն կամ ուրուական մտքովեան, Եւդոկիոյ գաւառաբարբառը (Իզմիրեանց մրցանակով պսակուած), Մագնիսականութիւն եւ Ողեհարզութիւն ևայլն։ Գրած է շափարկար լեզուի քերականութեան ընթացք մը, որուն մէջ հայերէնի խոր հմտութիւն կայ։ Երկար ատենէ ի վեր ողեւորական փորձերու հետամուտ է։

ՆԱՀԱՊԵՏ ՌՈՒՍԻՆԵԱՆ (1819-1876).— Ծնած է Կեսարիոյ Էֆքէրէ գիւղը։ Արեւմտահայ գրականութեան

ինքնատիպ գրագէտներէն ու ռահվիրաներէն մին, որ նշանաւոր է իբրեւ ճարտարախօս և իմաստասէր։ Իր ուսումն առած է Բարիզի մէջ այն շրջաններուն, երբ 1848ի ֆրանսական յեղափոխութիւնը կը խմորուէր։ Օտեանի հետ գաղափարակից ու գործակից՝ ռամկավարական սկզբունքներու պաշտպան ըլլալով Ազգային Սահմանադրութեան հիմնադիրներէն մին դարձաւ։ Եռանդուն գործօն մը եղած է ազգային շրջանակներու մէջ։ Ազգ. ժողովին մէջ խօսած է յիշատակելի ճառեր։ Ռուսինեան մեր աշխարհաբարի ախոյեաններէն մին է, և անոր բարենորոգման ու ազնուացման համար հրատարակեց Ուղղախօսութիւն արդի հայ լեզուի անուն գիրքը, որով կ'ուզէր ռամկական բարբառը կանոնի տակ դնել, նոր ուղղագրութիւն մը ստեղծել և բառերու նորագոյն իմաստներով ու նշանակութիւններով լեզուն հարստացնել։ Նահապետ Ռուսինեանի ուրիշ գլխաւոր հեղինակութիւններն են 1854'ի Տաղերգոյցը, որ իր ժամանակի կրօնական իշխանութեան կողմէ դատապարտուեցաւ, 1872ի Տաղերգոյցը և բազմաթիւ արձակ ու ոտանաւոր գրուածներ՝ մեծ մասն անտիպ։ Թարգմանած է Էմէ Մարդէնի Մարց Դաստիարակութիւնը. Հիւկօյի Ռիւ Պլասը ևայլն։

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԶՕՐԱՅԵԱՆ (1821-1859).— Առաջին դէմքն է մեր մէջ տնտեսագիտութեան ճիւղը մշակող և այդ գիտութեամբ հետաքրքրուող։ Ծնած է Կ. Պոլիս, Գում-Գաբու, աշակերտած է Պոլսոյ զանազան վարժարաններուն և ապա Եւրոպա մեկնած ու հոն իր ուսումն առաջ տարած է։ Եւրոպայէ վերադարձին ազատամիտ նոր սերունդին պարագլուխներէն մին հանդիսացաւ Կարապետ Իւթիւճեանի հետ, որ Մասիս օրաթերթը հիմնեց։ Զօրայեան և Իւթիւճեան աշխարհաբարի զարգացման գործին մեծապէս նպաստեցին՝ թէ՛ մամուլի միջոցաւ և թէ իրենց անձնական ազդեցութեամբ։ Զօրայեան ունի աշխարհիկ լեզուաւ գրուած շատ մը գրութիւններ՝ այլ և այլ նիւթերու վրայ։ Իր գործերուն գլխաւորներն են՝ Նկարագիր Ազգային Դաստիարակութեան, Ընթերցասիրութիւն, Բա-

ղափական Տնտեսութեան վրայ տեղեկութիւններ, Վարժութիւն Ընթերցանութեան և այլն։ Իր ատենին համար յատուկ էին իր տնտեսագիտական յօդուածները, որոնք Մասիս օրաթերթին մէջ կը հրատարակուէին Օ. Ստորագրութեամբ։

ՏՈԳԹՈՐ ՆԱԶԱՐԷԹ ՏԱՂԱՒԱՐԵԱՆ. — (Սկսնակ բանասէր). — Սեբաստիոյ մէջ ծնած է Տոգթ. Տաղաւարեան, յայտնի գրագէտ բժիշկ, գիտուն միտք, անխոնջ պրպտող և ազգային գործիչ։ Իր ուսումն առած է Բարիզի մէջ և վերադարձին ունեցած է եռանդուն գործունէութիւն մը։ Ունի բազմաթիւ հեղինակութիւններ՝ գիտական և բանասիրական նիւթերու շուրջը։ Ժամանակ մը հրատարակած է Գիտական Շարժում հանդէսը։ Գլխաւոր գործերն են ընդարձակ և համառօտ Առողջապահութիւններ, Մարդկային ընդարձակ Կազմախօսութիւն եւ Հիւսուածաբանութիւն, Մարդակազմութիւն, Անասնական Առողջաբանութիւն, Մանրէաբանութիւն, Ցուցակ ախտանուանց եւ դեղօրէից, Տարրաբանականութիւն, Տիեզերք եւ իր Կազմութիւնը և այլն։ Բանասիրական գործերուն մէջ նշանաւոր են Հին հայոց կրօնները, Ուրուագիծ Հայոց Պատմութեան, Ծագումն Հայ Տառից, (պսակուած Իզմիրեանց մրցանակով) և այլն։ Հմուտ է երկրագործական գիտութեանց, և այդ նիւթին շուրջ գրած է օգտակար տետրակներ։ Օսմ. Երեսփ. Ժողովի առաջին շրջանին մէջ Սեբաստիոյ ներկայացուցիչն էր։

ՆՈՐԱՅՐ ԲԻՒԶԱՆԴԱՑԻ. — Բնիկ Կ. Պոլսեցի, աշակերտ Վիէննայի Մխիթարեան վանքին, քաջահմուտ հայերէն, ֆրանսերէն, լատիներէն, գերմաներէն և իտալերէն լեզուներու և ազգային դպրութեանց։ Անխոնջ բառակրկիտ մ'է Բիւզանդացի և հայագիտութեան մէջ վարպետ հեղինակութիւն։ Ունի շատ մը բանասիրական անտիպ գործեր։

ՏՕԳԹ. ՅՈՎՍԷՓ ՇԻՇՄԱՆԵԱՆ (Ծերենց). — Ծնած է Կ. Պոլիս 1832ին։ Ծանօթ հրապարակագիր էր Ծերենց և վիպասան։ Իր նախնական դաստիարակութիւնն առած էր Մխիթարեաններու վարժարանին մէջ և բժշկու-

թեան ճիւղին հետեւած՝ Բարիզ։ Շիշմանեան նախ գաթոլիկ էր, բայց Հասունեաններու եւ Հակա-Հասունեաններու պայքարի միջոցին Հայ Եկեղեցիի ծոցը վերադարձաւ։ Գրած է շատ մը գրութիւններ այս ու այն թերթերուն մէջ։ Իր նշանաւոր գործերն են պատմական երեք վէպեր.— Թորոս Լեւոնի, Երկունք եւ Թէոդորոս Ռշտունի։ Ծերենց մեծ ժողովրդականութիւն շահած էր իր այս գործերով, որոնք իր վիպագրի տաղանդը կը յայտնեն։ Մեռած է Թիֆլիզ՝ 1888ին։

ՊԵՏՐՈՍ ԱԴԱՄԵԱՆ (1842-1891).— Անուանի տաղանդաւոր դերասան, որ թէ ռուսահայ եւ թէ տաճկահայ բեմին վրայ երեւցած է եւ մեծապէս գնահատուած ամեն տեղ։ Ծնած է Գաղատիա։ Առաջին անգամ բեմ ելած է սպայի դերով՝ Վիլհելմ Աշխարհակալի մէջ։ Երկար ատեն ներկայացումներ տուած է Թիֆլիզի մէջ։ Շատ լաւ կրնար խաղալ Շէյքսփիրի ամենէն դժուարին թատերգութիւնները.— ինչպէս՝ Համլէդ, Օթելլօ, Լիր, Գոբէի Դարբինները եւայլն։ Ունի 70 ի մօտ մեծ ու փոքր ոտանաւորներ՝ Հ. Վ. Հացունիի կազմած հատորին մէջ։ Գրած է քննական ուսումնասիրութիւն մը, Շէյքսփիր եւ իր Համլէդ Ողբերգութիւնը։

ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ (1851-1872).— Արեւմտահայ աշխարհիկ գրականութեան առաջնակարգ եւ հանճարեղ բանաստեղծն էր Պետրոս Դուրեան, որ սերած էր աղքատիկ ծնողքէ մը, Կ. Պոլիս։ Նախնական կրթութիւնն առած է Իսկիւտարի Ճեմարանին մէջ։ Տակաւին դպրոցական գրասեղաններուն վրայ՝ սկսաւ գրել թատերախաղեր։ Հետամուտ էր թատրոնի եւ գրաւուած էր անով։ Աշխատակցած է Օգսէն Խօճասարեանի Օրագիրին եւ Յ. Պարոնեանի Թատրոնին։ Իբրեւ բանաստեղծ գերազանցօրէն բարձր արտադրութիւններ ունի։ «Մահուան տխուր մը զմնդալի նախազգացումը ներշնչեց դեռահաս քերթողին յօրինել իր վսեմ տաղերէն մէկ քանին, ինչպէս Ցոլք, Լճակ, Սիրեմ, Դժգոհ, Տրտունջ, Իմ ցաւը, Իմ մահը» եւ

այն, որոնք պարզապէս հրաշալի էջեր են։ Դուրեանի գլխաւոր թատերգութիւններն են Վարդ եւ Շուշան, Սեւ հողեր, Թասրոն կամ Թշուառներ և այլն։ Բարսեղ Էքսէրճեան գրած է Դուրեանի կենսագրութիւնը։ Ի վերջոյ Արշակ Չօպանեանի վիճակեցաւ Դուրեանի կեանքին ու գործերուն յաջող վերլուծումը։ Սա վաղամեռիկ բանաստեղծին լաւագոյն ոտանաւորներէն մէկ քանին ֆրանսերէնի ալ թարգմանեց։ Դուրեանի քանի մը բանաստեղծութիւններն ալ Ամերիկայի մէջ անգլիերէնի թարգմանուեցան։ Հէք երիտասարդը հազիւ երեք տարուան գրական կեանք ունեցաւ՝ ա՛յնչափ բեղմնաւոր,

ՌԵԹԷՈՍ ՊԷՐՊԷՐԵԱՆ (1851-1907).—Մեծանուն ուսուցչապետ, հրապարակագիր, գրագէտ ու բանաստեղծ։ Ծնած է Կ. Պոլիս և կրթութեան գործին նուիրած ինքզինքը։ Հիմնած է Իսկիւտարի Պէրպէրեան վարժարանը, որ շատ մը սերունդներ կրթած և մտաւորական նշանակելի գործիչներ արտադրած է։ Այս վարժարանի հաստատութեան յոբելեանը տօնուեցաւ հիմնադիրին կենդանութեանը։ Պէրպէրեան մեծ հաւատք ունէր դաստիարակութեան գործին վրայ։ Իբրեւ գրագէտ՝ բազմաթիւ յօդուածներ ունի գրած այս ու այն թերթերուն ու Տարեցոյցներուն մէջ։ Իր բանաստեղծական գործերն են Առաջին Տերեւ և Խոհ եւ Յոյզ։ Ունի ընտիր թարգմանութիւններ և հրապարակագրական և իմաստասիրական գրուածքներ, որոնց մէկ մասը Մարդիկ եւ Իրք, Դպրոց եւ Դպրութիւն և այլ գործերուն մէջ են։ Ամեն տարի Պէրպէրեան Վարժարանի ընթացաւարտ կարգին ուղղած Հուսկ Բանքերը Դաստիարակի մը խօսքերը գիրքին մէջ ամփոփուած են։ Պէրպէրեան ունի ճոխ և բարձր լեզու և ակադեմական արտայայտութիւն։ Ռէթէոս Պէրպէրեան յարգուած գրական դէմք մ'է։

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆ.— Գաւառացի գրագէտներու ամենէն աչքառու դէմքերէն մին, յաջողագոյն արձակագիր և հեքեաթներու վարպետը։ Ծնած է Խարբեր-

դի մէջ, 1874ին և իր ուսման ընթացքն աւարտած է Թլկատինցիի վարժարանին մէջ: Ինքնօգնութեան բարեկ-ներէն մին ալ Զարդարեանն է: Երկար ատեն ուսուցչական պաշտօն վարած է Խարբերդի ու Մանիսայի մէջ, ուրկէ Իզմիր աքսորուած է 1904ին. և վերջապէս արտասահման փախած: Պոլսոյ թերթերուն 90ական թըւականներէն սկսած է աշխատակցիլ՝ տալով գաւառական կեանքէն առնուած հիանալի պատկերներ ու սքանչելի էջեր: Յիշատակելի են մանաւանդ իր հէքեաթները, պատմուած ինքնատիպ և հարուստ ոճով մը: Ֆիլիպէի մէջ խմբագիրն եղած է Ռազմիկ թերթին: Օսմ. Սահմանադրութենէն վերջ Կ. Պոլիս հաստատուած է, ուր չորս տարիէ ի վեր Ազատամարտ օրաթերթի խմբագրութիւնը կը վարէ: Իր գրուածքներուն մէկ մասը Ցայգալոյս անուն հատորով մը լոյս տեսաւ 1910ին: Հեղինակած է հայ լեզուի ընթերցանութեան դասընթացք մը, Մեղրագէտ անունով:

ՌՈՒԲԷՆ ՈՐԲԵՐԵԱՆ.— Եփրատ Գոլէճի արժանաւոր ընթացաւարտներէն մին է Որբերեան, գաւառացի լաւագոյն բանաստեղծներէն մէկը, որ ծնած է Մալաթիոյ մէջ 1874ին: Շատ կանուխ, աշակերտական օրերուն մէջ իսկ սկսած է բանաստեղծութիւններ գրել՝ հանդէս բերելով ինքնատիպ ու գողտրիկ գրիչ մը և տաղանդ: Բաւական ժամանակ ուսուցչութիւնով զբաղած է մասնաւորաբար Իզմիրի մէջ, ուրկէ ապա Ճիպութի անցած է իբրև առևտրական մարդ: Իր բանաստեղծութեանց անդրանիկ հատորը Կ. Պոլսոյ մէջ հրատարակուեցաւ՝ Յիշատակաց Ծաղիկներ անունով: Հապէշիստան անցնելէն վերջն ալ երբեմն երբեմն գրեց թերթերուն: Հոն գտնըւած միջոցին էր որ Ծփանքներ խորագրին ունեցող հատորի մը մէջ ամփոփեց իր կարգ մը բանաստեղծութիւնները ալ: Որբերեան ունի բազմաթիւ քերթուածներ՝ այլեւայլ թերթերու և պարբերականներու մէջ: Իր գրութիւնները ընդհանրապէս մելամաղձոտ են, յուսահատ, և երբեմն ալ յանդուգն ու ըմբոստ: Հրաշալի են պարզա-

պէս իր ոգւոյն չափով յօրինած քանի մը կտորները, Հանգիստ, Ադամին անէծքը և այլն։

Հ. ՍԻՄԷՈՆ ԵՐԵՄԵԱՆ (Աստուշան).— Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան կարկառուն դէմքերէն մին է Հ. Երեմեան, ծնած 1871ին Տրապիզոն և վարդապետ ձեռնադրուած 1896ին։ Սկսած է գրել Վիեննայի Բազմավէպ ամսաթերթին մէջ, ուր հրատարակած է բազմաթիւ յօդուածներ։ Հայոց գեղարուեստական տպագրութեան մեծ ծառայութիւն մատուցած է, մանաւանդ Որոտնեցի և Գերդանեցիներու շքեղ տպագրութեամբ և ընդհանրապէս Վիեննայի վանքին արտադրած վերջին գեղատիպ ու հոյակապ գործերով։ Շատ մը թերթերու կ'աշխատակցի՝ բանասիրական, քննադատական կամ նկարագրական յօդուածներով, զորս Աստուշան կը ստորագրէ։ Նշանակելի են հայ գրական դէմքերու վերլուծումները, որոնց մէջ իր նուրբ ճաշակն ու քննական կարողութիւնը ի յայտ կուգան։ Ունի գիտական գիրքեր (Կենդանաբանութիւն, Հանքաբանութիւն, Տարրաբանութիւն, Բանգիրք գործնական գիտութեանց, Հայ բժշկարանք և այլն), վէպեր ու ողբերգութիւններ (Տուրքին, Սարգիսիկ, Անէծք, Ուխտը և այլն.) կենսագրութիւններ (Կենսագրութիւն Հ. Ղ. Ալիշանի և այլն) և Հայ Միտքը հաւաքածոն։ Ձեռագիր վիճակի մէջ կը գտնուի իր Գրական Դէմքեր 7 ստուարահատոր գործը, որուն մէջ խղճամտօրէն ուսումնասիրուած են ժամանակակից և արդի գրագէտները։ Ամբողջ վեց տարի Բազմավէպի խմբագրութիւնն ստանձնած է։

ՍՄԲԱՏ ԲԻՒՐԱՏ.— Բնիկ Զէյթունցի. ուսուցիչ, վիպասան և ազգ. գործիչ։ Երկար ատեն բռնապետական կառավարութեան հալածանքներուն ենթարկուած է։ 1896ին արտասահման անցած է։ Իր գրական ամենէն բեղմնաւոր շրջանը կարելի է համարել Օսմ. Սահմանադրութենէն ետքը, երբ հրատարակեց իր բազմահատոր վէպերը՝ ժամանակակից հայ կեանքէն քաղուած։ Իր գլխաւոր գործերն են Բանտէ Բանտ, Ելէք Սասուն, Դէ-

ակապուտները, Դէկի Երտըգ, Իմնուանը վէց, Երգերի Պօմպան և այլն: Վերջերս հրատարակեց Հայոց Պատմութիւնն Ա. հատորը: Սմբատ Բիւրատ գեղարուեստական վիպագիր մը ըլլալէ աւելի հրապարակագիր մ՚է, որուն գործերը պատմական արժէքէ զուրկ չեն, առլով հոյակապ յեղափոխութեան և մարտիրոսացումի պատկերները:

ՍՈՒՐԷՆ ՊԱՐԹԵՒԵԱՆ (Սիսակ Պարսիզպանեան). — Արեւմտահայ գրագէտներու առողջագոյն ու կորովի դէմքերէն մէկն է Սուրէն Պարթեւեան: Ծնած է 1876ին Գատը Գիւղ: Աշակերտած է Պէրպէրեան և Կեդրոնական վարժարաններու և 1895ին քաղաքական չփոթութեանց հետեւանքով արտասահման անցած: Վարած է Վաղուան Ձայնը, Նոր Կեանք, Ձայն Հայրենեաց և Ազգ թերթերու խմբագրութիւնը: Օսմ. Սահմանադրութենէն վերջ անցած է Կ. Պոլիս ու ապա Իզմիր, ուր հիմնեց Դաշինք օրաթերթը: Պարթեւեան ունի գրական հիանալի ոճ ու վերջին ծայր սահուն ու հարուստ լեզու: Նա աւելի իբրեւ հրապարակագիր երեւցած է, թէեւ վիպական յաջող արտադրութիւններ ալ ունի՝ չքեղ նկարագրութիւններով: Հրատարակած է Քայքայում և Հայուհին հատորները, որոնք վիպական պարունակութիւն ունին, և Կիլիկիոյ աղէտին առթիւ Կիլիկիոյ Արհաւիրքը հոյակապ նկարագրականը: Ժամանակ մը Հուսանք շաբաթաթերթը հրատարակելէ վերջ, հիմա Գահիրէի Լուսաբեր-Արեւ թերթին խմբագրապետն է: Իբրեւ պերճախօս մեծ համբաւ ունի:

ՍՏԵՓԱՆ ՈՍԿԱՆ (1825-1901). — Այս ազատամիտ և հռչակաւոր հրապարակագիրը ծնած է Իզմիրի մէջ: Իր նախնական ուսումը առած է տեղւոյն Մեսրոպեան վարժարանին մէջ: Բարիզ ապրած է երկար տարիներ և աշխատակցութիւն ունեցած ֆրանսերէն թերթերու: Հոն հրատարակած է Արեւելք, Արեւմուտք և "La reforme" թերթերը: Ոսկան հրապարակագրական իր կարողութեանց կը միացնէր և բանաստեղծական խառնուածք: Ներկայացուցիչն է ազատամիտ, առաջդիմական և ուժեղ մտքի

մը, և Նոր Հոսանքներու։ Կատաղի աշխարհաբարեան մը և ռամկավարական ոգիի տէր, պայքարած է յետադիմական տարրին դէմ։ Եւրոպայէն դառնալէ վերջ Ս. Մեսրոպեան վարժարանի տեսչութեան հրաւիրուեցաւ, բայց ապա իրեն դէմ յարուցուած խնդիրներու պատճառաւ հրաժարեցաւ իր պաշտօնէն, քէն լրաւ ազգին, ուխտեց հայերէն չգրել և հիմնեց Փրանսերէն "La reforme" թերթը։ Սանփան Ոսկան փորձեց որոշ բարեփոխութիւններ մտցնել հայ լեզուին մէջ, որոնցմէ մին ալ բառերու կրճատումն էր։ Նա՝ դատողութեան տեղ՝ դատում, մտաւորականի տեղ՝ մտական, կախաղանի տեղ՝ կախան, խրողութեան տեղ խրութիւն կը գրէր։

ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ (1842-1901). — Տաճկահայոց նշանաւոր կին գրողներէն մին, աշակերտը Մկրտիչ Պէշիկթաշլեանի և ամուսինը՝ Տիւսաբ փաշայի։ Հայոց մէջ առաջին կին գրողը, որ կանանց ազատագրութեան հարցին է հետաքրքրուած և պայքարած անոր անունով։ Տիկին Սրբուհի Տիւսաբ իր կրթական գործունէութենէն զատ արտադրած է երեք վէպեր, որոնք միևնոյն նիւթը կը շօշափեն, և թէև իբրև վիպական արուեստի արտադրութիւն շատ մեծ արժէք մը չունին, սակայն իբրև հրապարակագրութիւն յատկապէս նշանակելի են։ Մայտա, Սիրանոյշ և Արաքսիա կամ Վարժուհին առած են իրենց լաւ տեղ մը հայ գրականութեան մէջ։ Ասոնցմէ զատ գրած է նաև Աշխարհաբար հայ լեզուն անուն ուսումնասիրական գրքոյկ մը։

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ (Համշիրակ Բ., Աստղ, Սարէն Տիրանեան). — Գրագէտ, բանաստեղծ, հրապարակագիր և ազգ. գործիչ է Վահան Թէքէեան։ Ծնած է Կ. Պոլիս, 1878ին և աշակերտած Պէրպէրեան ու Կեդրոնական վարժարաններուն։ Գրական գործունէութեան սկսած է 90ական թուականներուն՝ աշխատակցելով Հայրենիքի ու Մաղիկի։ Թէքէեան զգայուն ու գողտրիկ բանաստեղծ է և լաւ գրագէտ։ Արտադրած է պատկերալից ու գեղեցիկ էջեր։ Հայկական կոտորածներէն վերջ, երբ արտասահ-

մանի մէջ էր, աշխատակցած է Նոր կեանք, Անահիտ, Ազատ բեմ և Լուսաբեր թերթերուն: Եգիպտոսի մէջ Միքայէլ Կիւրճեանի հետ հիմնած է Շիրակ թերթը, որ ի վերջոյ Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն վերջ Կ. Պոլիս փոխադրեց: Առանձին հրատարակուած են իր քերթուածներէն ոմանք՝ Հոգեր անունով հատորի մը մէջ:

ՎԱՀԱՆ ՄԱԼԷԶԵԱՆ.— Յայտնի փաստաբան է Մալէզեան, որ իբրեւ բանաստեղծ ու հրապարակագիր ալ ոչ նուազ ծանօթ է: Ծնած է Ռումանիոյ մէջ 1873ին: Վկայուած է Օսմ. իրաւագիտական վարժարանէն: Գրականութեան մէջ երեւցաւ 90ական թուականներէն: Ունի գրած տաղանդաւոր քերթուածներ, թախծոտ՝ բայց սիրուն ու ազնիւ թօնով մը: Իր բանաստեղծական հատորներն են Մրմունջք և Անիծեալը: Վերջերս հրատարակուեցաւ Կերոնները՝ շքեղ տպագրութեամբ:

ՎԱՀԱՆ ՎԱՐԴ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ (Պարտիզակցի).— Նշանաւոր առակագիր և երգիծաբան գրագէտ: Ծնած է Պարտիզակի մէջ՝ 1850ին, վարդապետ ձեռնադրուած է 1874ին և կարեւոր ազգ. գործունէութիւն ունեցած: Ունի գրական նշանակելի արտադրութիւններ, որոնք են՝ Անգիր դպրութիւն եւ առակք (2 հատոր), Աքեղաձագ, Աշխարհաբար Աւետարան եւ մեկնութիւն: Հրատարակած է Լոյս հանդէսը: Յաջող երգիծաբան է:

ՏԻԳՐԱՆ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ (Անգորդ).— Տաճկահայ նշանաւոր գրագէտ մ'է Կամսարական, ծնած 1866ին, Կ. Պոլիս, և կանուխէն իսկ մասնակցած հայ աշխարհիկ գրականութեան շարժման: Աշխատակցած է Հայրենիքի, Մասիսի և արտասահմանեան ուրիշ թերթերու: Իրապաշտական մէկ վէպը,— Վարժապետին աղջիկը,— որ հրատարակուեցաւ Արեւելքի մէջ, այդ ուղղութեամբ եղած առաջին փորձն է մեր մէջ: Ունի մանր մունր շատ մը յօդուածներ, բայց անոնց մէջ նշանակելի է Պզտիկ նօթերու շարքը, որ Արեւելքի մէջ հրատարակուեցաւ Անգորդ ծածկանունով: Իր նախաձեռնութեամբ կազմուած է Շիրվանզադէի յա-

ընկեանին ձօնուած մեծարանքի հատորը: Առեւտրական գործով կը գտնուի այժմ Եգիպտոս:

ՏԻԳՐԱՆ ՉԻԹՈՒՆԻ.— Գաւառական հարազատ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչներէն մին ու նշանակելի բանահաւաք է Չիթունի: Ծնած է Վանի մէջ, 1881ին, և անդ ուր Երամեան վարժարանի ընթացքն աւարտած է: Աշխատակցած է պոլսահայ և արտասահմանի թերթերուն՝ իր բուն անունով և կամ Վրոյր, Շեմիր և Հեռաղէս ծածկանուններով: Մշակած է բանասիրական-ազգագրական ճիւղը և այդ ուղղութեամբ պատրաստած է շատ մը գործեր, որոնց մէջ առանձին գիրքով հրատարակուած են Սասնանց տունը ու Լեռի մշուշը: Իր գործերէն Արեւելեան խաղաշխարհը Իզմիրեանց մրցանակով պսակուած է: Գրած է բնատոհմիկ կեանքը ներկայացնող շատ մը յօդուածներ և ուսումնասիրութիւններ: Չիթունի ինքնատիպ գրագէտ է և բեղմնաւոր միտք մը:

ՔԱՍԻՄ (Միսաք Գօչունեան).— Թրքահայ հրապարագիր և վիպագիր: Ծնած է Կիւրին և կանուխէն սկսած է լրագրական աշխատութեամբ զբաղիլ: Նախապէս գրած է տաճկաբարբառ էջեր, բայց ի վերջոյ հայերէն գրել սկսած: Ունի ընդարձակ վէպեր, որոնք Բիւզանդիոնի մէջ հրատարակուած են իբրեւ թերթօն: Երկար ատեն վարած է խմբագրապետութիւնը Մանզումէի, ուր գրած է Օրուան մտածումներ խորագրով ընկերային և բարոյական նիւթերու շուրջ գործնական յօդուածներ: Թարգմանած է Նարեկը: Առանձինն հրատարակած ունի Խեւ Կարապետ վէպը, Նարեկն ու Տունէն ներս:

ՕՆՆԻԿ ՉԻՖԹԷ ՍԱՐԱՖ (Յովհաննէս Ասպէս).— Ծնած է Իսկիւտար 1874ին և տաճկահայոց տաղանդաւոր գրագէտներէն ու վիպագիրներէն մին է: Տոգորուած է ֆրանսական գրականութեան տաք շունչովը: Իր յայտնութիւնն եղաւ Բիւզանդիոնի մէջ և այնուհետեւ գրեց բոլոր հայ թերթերուն ու պարբերականներուն մէջ շատ մը նկարագրական՝ չքնաղ յօդուածներ և հարուստ էջեր: Չիֆթէ Սարաֆ իրապաշտ գրող է: Զօլայական են իր

գրուածքները, որոնց մէջ ամենէն նշանաւորն է Միամիտի մը արկածները, Եւրոպա ըրած իր ճամբորդութեան առթիւ գրուած, որ առանձին գրքով ալ լոյս տեսած է։ Գողական եւ գիւղական տեսարաններն ու Եւրոպական ճանապարհորդական պատկերներու շարքը իրենց մասնաւոր տեղն ունին հայ գեղարուեստական գրականութեան մէջ։ Զիֆթէ Սարաֆ ըլլալով յաջողակ թարգմանիչ միեւնոյն ատեն՝ Բօլ Պուրժէի Փիլիսոփային աշակերտը հայացուցած է։ Ունի ուրիշ շատ մը թարգմանութիւններ ալ։

## ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ՈՒՐԻՇ ԳՐՈՂՆԵՐ

Արեւմտահայ գրողներու ցանկը վերջինով չվերջանար։ Թէ Պոլիս, Իզմիր և թէ գաւառներն ու արտասահման կան բազմաթիւ գրողներ, զորս միառմի չենք կրնար իրենց գործերով ծանօթացնել՝ գործիս ծաւալը չըստուարացնելու համար։ Ստորեւ կը դնենք անունները այն դէմքերուն, որոնք առաւել կամ նուազ գնահատելի գրական կեանք ունեցած են՝ իբրեւ գրագէտ, բանասէր, խմբագիր, բանաստեղծ, դասագիրքերու հեղինակ, հրապարակագիր և այլն (1)։

Ա. Աբիկ Մուպահեաճեան, Աբիկ Տէր Մինասեան, Աբրահամ Այվազեան, Բրոֆ. Աբրահամ Տէր Յակոբեան, Աբրահամ Ճարեան, Աթանագինես Վ. Երամեան։ Աթանաս Վ., Թիրոեան, Ալեքսան Վ. Սիրունի, Աղեքսանդր Շաքլեան, Բրոֆ. Ալեքսան Պէզճեան, Աղեքսանդր Արք. Պալճեան, Ա. Գալֆաեան, Ա. Հայկունի, Աբրահամ Սէքլէմեան, Հ. Ն. Անդրանիկեան, Ա. Նուարեան, Աշոտ Բէչեան, Արամ Գազանճեան, Արամ Զարրգ, Արիստակէս Վ. Գասգանտիլեան, Արմէն Լուսինեան, Տիկին Արշակուհի Թէոդիկ, Արշակ Մահտեսեան (Ատիլ), Արտա-

(1) Մտադիր ենք առանձին հրատարակել Հայոց Նոր Գրականութեան ընդարձակ պատմութիւն մը, որուն մէջ անշուշտ իւրաքանչիւր գրող պիտի գրաւէ իր արժանաւոր տեղը։ Հոս այբուբենական ցանկ մը միայն պիտի ըլլայ մեր տալիքը։

չէս Գուլփաքճեան, Արտաւազդ Վ. Գալէնտէրեան, Առաքել Պիպէռճեան, Բրօֆ. Աստուածատուր Խաչատուրեան, Աւօ (Տիգրան Օտեան), Արսէն Երկաթ, Արսէն Կիտուր, Արսէն Վ. Միքրեան, Աւետիս Կիւլպէնկեան (Սուսեր) և այլն։

Բ. Տօքթ. Բարունակ Իւթիւճեան, Բարունակ Տ. Բարսեղեան, Բարսեղ Էքսէրճեան (Հմայեակ Քհնյ.), Բարսեղ Շահպազ, Հ. Բարսեղ Սարգիսեան, Բիւզանդ Պօզաճեան և այլն։

Գ. Գաբրիէլ Եպ. Այվազովսկի, Գաբրիէլ Խանճեան (Վարդգէս), Գալիկ Տէվէճեան (Պնել), Գալիկ Օղանեան, Գալուստ Անդրէասեան, Գարեգին Կոզիկեան (Եասլեմ), Գարեգին Պէշկէօթիւրեան, Գառնիկ Ֆընտըգլեան, Գ. Գապպէնճեան, Գեղամ Բարսեղեան, Գէորգ Ծ. Վ. Ասլանեան, Բրօֆ. Գ. Ց. Կիւլեան (Վարդունի), Գէորգ Պուպլի, Գ. Պաղտասարեան, Գրիգոր Մալխաս, Գրիգոր Շահինեան, Գուիտոն Իշխան Լուսինեան և այլն։

Դ. Դաւիթ Խաչկոնց, Հ. Դաւիթ Նազարէթեան և այլն։

Ե. Եդուարդ Գօլանճեան, Եղիազար Տէվլէթեան, Եղիշէ Վ. Այվազեան, Ենովք Արմէն, Ե. Կ. Տ. Հայկունի, Երուանդ Սրմաքէշխանլեան, Երուանդ Տէր Անդրէասեան, Եւտերպէ, Եւփիմէ Աւետիսեան, Եւփիմէ Օտեան և այլն։

Զ. Զապէլ Զաքարեան, Զարեհ Գապազեան, Զարեհ Նեմցէ, Զարմայր Քահանայ Կէօզլիւրեան, Տիկին Զարուհի Գալէմքէրեան և այլն։

Թ. Թադէոս Կէօզլիւրեան, Թաթուլ Վանանդացի (Հ. Վարդան Հացունի), Թորգոմ Եպ. Գուշակեան և այլն։

Ժ. Ժագ Սայապալեան (Փայլակ) և այլն։

Լ. Լեւոն Էսաճանեան, Լեւոն Լարենց, Լեւոն Շաթըրեան, Լեւոն Սրապեան և այլն։

Խ. Խաչիկ Ուզուրիկեան, Խորէն Եպ. Աշըգեան, Խ. Ց. Սարաճ, Խոսրով Քէչիշեան և այլն։

Կ. Կարապետ Գաբիկեան, Կարապետ Գարագաշ, Կարապետ Գօճաճեան (Կէտիկցի Կարօ), Կարապետ Իւթիւճ-

եան , Կ. Նաւասարդ , Կ , Կոստանդեան , Կարապետ Պարստմեան (Կարպօ) , Կարապետ Ոսկեան , Բրոֆ . Կ Սողիկեան , Կարապետ Ստեփանեան , Կարապետ Սօլաքեան, Հ. Կ . Սիպիլեան , Կորիւն Վ . Եսայեան և այլն ։

Հ . Համբարձում Ալաճաճեան, Տիկին Հայկանոյշ Մարք-Թօշիկեան , Հերանոյշ Արշակեան , Հերոնիմոս Բարսեղեան , Հմայեակ Արամեանց (Մ . Տ. Ծուռ) . Հրանդ Նազարեանց , Տիկին Հռիփսիմէ Արապեան և այլն ։

Ղ . Ղեւոնդ Վ . Դուրեան , Ղեւոնդ Եպիսկոպոս Չիչմանեան (Վրոյր) , Հ . Ղ . Յովնանեան , Ղուկաս Վարպետեան և այլն ։

Մ . Մալէզեան Պասուելլի , Մամիկոն Վարժապետեան, Մաննիկ Պէրպէրեան, Մանուէլ Միրախորեան , Մանուկ Դանիէլեան , Տիկին Մարի Արվաճեան , Մարկոս Աղաբէկեան , Մարկոս Նաթանեան (Յուսակ) , Մարտիրոս Նալբանդեան (Մ. Ն . Բնագէտ) , Հ . Մ . Պօտուրեան , Մատթէոս Արք . Իզմիրեան , Մելիք Թէվէքէլ, Մելքոն-Աստուր , Մելքոն Նազիկլեան , Մելքիսեդեկ Եպ. Մուրատեան, Միհրան Ասքանազեան, Միհրան Խապիկեան (Վրոյր), Միհրան Ուլուրլեան , Հ . Մինաս Նուրիխան , Մինաս Ծապեան, Միրիճան Պարսամեան , Մկրտիչ Թուրեան , Մ . Մանուէլեան (Հրայր) , Միքայէլ Կիւրճեան , Միքայէլ Շամտանճեան . Բրոֆ . Մ . Որբերեան և այլն ։

Յ . Յ . Ալլահվէրտեան , Յակոբ Գուրգէն (Սրէտ) , Հ . Գաթրճեան , Յակոբ Էտիլեան , Բրոֆ . Յ . Թ . Գայաեան, Յակոբ Թէրզեան (Յակիթէր) , Տօքթ . Յակոբ Թոփճեան , Յակոբ Տ . Յակոբեան , Յակոբ Տ . Յակոբեան (Մաննիոն), Յակոբ Քիւֆէճեան , Յարութիւն Շահպազ , Յարութիւն Շահրիկեան (Ատոմ) , Յովհաննէս Ալիքսանեան . Յովհաննէս Հինդլեան, Յովհաննէս Քահանայ Հիւնքեարպէյէնտեան, Յ.Մ. Հիսարլեան , Բրոֆ . Յովհաննէս Յակոբեան , Յովհաննէս Շահնազար , Բրոֆ . Յովհաննէս Պուճիգանեան , Յովհաննէս Սէթեան , Տօքթ . Յովսէփ Տ . Ստեփանեան և այլն։

Ն . Նազարէթ Ներսէսեան , Ներսէս Եպ. Դանիէլեան ,

Ներսէս Արք. Վարժապետեան, Օր. Նինի, Հ. Ն. Ճնտոյեան, Նիկողայոս Թօթվայեան, Նշան Գոնտոյեան, Նշան Ճիվանեան (Հորոյ) և այլն։

Շ. Շահան Նաթալի, Շահան Զրպետ, Շահնազար Որբունի, Շաւարշ Միսաքեան և այլն։

Պ. Պարոյր Քէչեան, Պերճ Մուշլու (Միհրան Տամատեան), Պերճուհի Եազըճեան, Պետրոս Ատրունի, Հ. Պօղոս Յովնանեան, Տոքթ. Պօղոս Քօլօլեան և այլն։

Ռ. Ռուբէն Զիլինկիրեան (Ռ. Սեւակ), Ռուբէն Բագուպեան, Ռոտոլֆ Սամիկեան (Տոմինօ) և այլն։

Ս. Սահակ Վ. Խապայեան, Հ. Սահակ Թոռնեան, Սահակ Վ. Օտապաշեան, Սահակ-Մեսրոպ, Հ. Սամուէլ Գանթարեան, Սեդրակ Տ. Սարգիսեան, Հ. Սերոբէ Տէրվիչեան, Սահակ քահանայ Սարգիսեան, Սիմոն Գաբամաճեան, Սիմոն Զէօմլէկճեան, Սիմոն Ֆէլէկեան, Տոքթ. Սըմբատ Գաբրիէլեան, Սմբատ Դաւթեան, Սրապիոն Թղլեան, Սուքիաս Վ. Պարոնեան և այլն։

Վ. Վահան Ալան; Վահան Թօշիկեան, Վահան Յարութիւնեան, Վահան Փափազեան (Լիլա), Վահրամ Թաթուլ, Տոքթ. Վահրամ Թորգոմեան, Վահրամ Սվաճեան, Վահրամ Եպ. Մանկունի, Վարդան քահանայ Ասլանեան, Բրոֆ. Վ. Յ. Յակոբեան, Հ. Վ. Ասկէրեան, Հ. Վարդան Ըստկարեան և այլն։

Տ. Տաճատ Վ. Ասլան, Տէրոյենց Պատուելի, Տիգրան Արփիարեան, Տիգրան Ելքէնճեան, Տիգրան Զաւէն, Տիգրան Զէօկիւրեան, Տիգրան Սէթեան, Տիգրան Սիւրմէեան, Տիրայր Վարդապետ, Տիրան Զրաքեան, Տրդատ Եպիսկ. Պալեան և այլն.

Ք. Քերովբէ Լիմոնճեան (Լիոնքէ), Քերովբէ Վ. Քուչնէրեան և այլն։

Օ. Հ. Օգսենտիոս Գուրգէնեան, Օննիկ Դերձակեան (Ա. Վասմեան) և այլն։



# ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ



*Ծանօթութիւններ.— Արեւելահայ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչները.— Արեւելահայ ուրիշ գրողներ։*

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*Մինչեւ ԺԹ. դարու կէսը աշխարհիս ամէն կողմերը ապրող հայ մտաւորականութիւնը կը սնանէր գրաբար լեզուով եւ հին գրականութիւնը տիրապետող էր ամէն տեղ։ Ասկէ հարիւր տարի առաջ Ռուսահայ գրականութեան անունն ալ չկար։ Եւ սակայն ասպարէզ եկաւ ռուսահայոց նոր սերունդը, Ռուսիոյ տիրապետութենէն վերջ քաղաքական պայմանները նպաստաւոր դարձան, աշխարհագրական դիրքը օգնեց եւ ահա ստեղծուեցաւ Ռուսահայ կամ Արեւելահայ գրականութիւնը։ Պետական համեմատաբար ազատ կարգերու մէջ, ուր կեանքի, պատւի ու ինչքի բռնաբարման հոգը չկար դէթ, Ռուսիոյ մէջ ապրող հայ ժողովուրդն ու գրագէտները զարգացուցին գրականութիւնը, եւ ո՛չ միայն իր պերճանքի դերէն դուրս բերին գիրը, իրեն իսկական ասպարէզին մէջ դրին, այլեւ միացուցին զայն ժողովուրդին ցաւերուն ու այն հոսանքներուն, որոնք վերջին տարիներու հայ կեանքը յեղաշրջեցին։ Ա՛յս իսկ ըմբռնումով Ռուսահայ գրականութեան մէջ արուեստը մնաց անկատար ու ձեւը բացակայ։ Հոն ժողովրդային կեանքն էր որ կը պատկերանար գրականութեան մէջ՝ բանաստեղծութեան, վէպի, թատերգութեան եւ կամ այլեւայլ սեռերու միջոցաւ։*

*Արեւելահայ աշխարհիկ գրականութիւնն ալ կը պարտինք եւրոպական ազատ մտքին։ Եթէ Թրքահայ աշխարհիկ գրականութեան հիմնադիրները ճշդել կարելի չէ, միջ-*

Նազարեան ռամկօրէնի շրջանէն վերջ ԺԸ. և ԺԹ. դարերու ռամկագիր մատենագիրներու ալ գործունէութեան բերումով, արեւելահայ գրականութեան մէջ որոշ են այն գրական դէմքերը, որոնք ծնունդ տուին ներկայ աշխարհիկ գրականութեան։ Մխիթարեան միաբանութիւնը միեւնոյն վճիռ ներշնչարանն է, ինչպէս տաճկահայ, նոյնպէս ալ ռուսահայ ազատամիտ սերունդին։ Անկէ, Ա. Ղազարէն է որ կուգայ գրական շունչը, և կը հասնի Նահապետի քնարին թրթռումը։ Մեսրոպ Թաղիադեանց և Յարութիւն Ալամդարեան ալ կը նպաստեն արեւելեան աշխարհիկ բարբառին գրականացման, բայց անոնց մէջ կը պակսի կարծես այն վճռական ուղղութիւնը, որ Խաչատուր Աբովեանինն է առաւելապէս, իբրեւ առաջին գըրագէտը, որուն կը պարտի Արեւելահայ գրականութիւնը իր աշխարհիկ շրջանին սկզբնաւորութիւնը։

Կրթական և քաղաքակրթական ազդակներ հողը պատրաստած էին արդէն Ռուսահայոց մէջ. կը մնար միայն կեանք տալ ռամկավարական ձգտումին և լեզուին ու գրականութեան մէջ ալ ժողովրդական բարբառին տալ գերազանցութիւնը։ Խաչատուր Աբովեան և Ռուսահայ գրականութեան միւս ռահվիրաները,— Ռափայէլ Պատկանեան, Ստեփաննոս Նազարեանց, Միքայէլ Նալբանդեան, Սմբատ Շահազիզ և այլն,— առաջնորդողն ու ղեկավարը դարձան այն Նոր հոսանքին, որ լաւ ընդունելութիւն գտաւ հասարակութեան խաւերուն մէջ։ Արեւելահայ գրականութիւնը 50 ական թուականներուն սկսած՝ արագ ծաղկում և ազատ բարգաւաճում ստացած է։ Արտադրած է նշանաւոր բանաստեղծներ, վիպասաններ, պատմագիրներ, թատերագիրներ, բանասէրներ և այլն, որոնք մշակած են ռուսահայերէն բարբառը։ Պէտք է խոստովանիլ որ աւելի կեանք, ոյժ և ջիղ կայ Ռուսահայ գրականութեան մէջ, քան արեւմտահայ աշխարհիկ դպրութեան մէջ, որովհետեւ մինչ բռնապետութիւնը սպաննեց հայ միտքը, կտրեց հայ լեզուն և կոտրեց հայ գրիչը Տաճկա-

տանի մէջ, անգլին Ռուսիոյ հայերը հնարաւորութիւն ունեցան օգտուելու եւրոպական հսկայ գրականութիւններէն։ Ներկայիս մէջ նախանձելի գրականութիւն մը կայ արեւելահայ լեզուով մշակուած։ Հայ միտքն աւելի արեւելեան գրականութեան մէջ արտայայտուած է կարծես։ Մասիսին ու Էջմիածնին, Անիին ու Հայաստանի ոգին ու շունչը կը ծաւալի կարծես արեւելահայ աշխարհիկ գրականութեան մէջ։

Միեւնոյն ուղղութեան հետեւելով՝ պիտի տանք արեւելահայ գրականութեան գլխաւոր ներկայացուցիչները և երկրորդական դէմքերէն ոմանք, նախընտրելով այբուբենական կարգը։

# ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԱՇԽԱՐՀԻԿ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԳԼԽԱՒՈՐ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ

ԱՂԵՔՍԱՆԴՐ ԵՐԻՑԵԱՆ (1842-1902). — Բազմահմուտ պատմաբան մը ու մեղուաջան աշխատող մը, որ արեւմտահայ գրականութեան մէջ պատկառելի դէմք մը կը դարձնէ զինքը։ Ծնած է Թիֆլիզի մէջ, իր կրթութիւնն ստացած է Ներսիսեան վարժարանը և ապա գիմնազիոնի աշակերտած։ Իր գլխաւոր մասնագիտութիւններն էին Կովկասագիտութիւնն ու հայոց նորագոյն պատմութիւնը։ Փորձ ամսագրի նշանավոր աշխատակիցներէն մին էր, որ գրեց անոր և Մշակի մէջ՝ շատ լուրջ աշխատութիւններ և շահագրգիռ ուսումնասիրութիւններ, ինչպէս, Տաճկաստանի Հայոց իրաւունքները եւ նրանց Սահմանադրութիւնը (1876-77), Ներսէս Ե. ի մանկութիւնը եւ պատանեկութիւնը (1877), Ներսէս Աշտարակեցին վարդապետ ժամանակ (1877-78), Ներսէս Ե. Աշտարակեցի (1881), Խաչատուր Աբովեանի կենսագրութեան համար նոր նիւթեր (1880), Ստեփաննոս Նազարեան եւ

նոր գրական գործունէութիւնը (1879, Արձագանգ)․ Թոնրակեցի հայք մեր օրերում (1880, Արձ.), Հայկական Տըպագրութեան Պատմութիւն (1881) եւայլն։ Բայց իր պատմական գործերու գլուխ-գործոցներն են՝ Ամենայն հայոց կաթողիկոսութիւնը եւ Կովկասի Հայք ԺԹ․ դարում (2 հատոր) և Պատմութիւն 75ամեայ գոյութեան Ներսիսեան հոգեւոր դպրոցի (հայկական նորագոյն պատմութեանց մանրամասն էջեր տալով 1827-1857)։ Աղեքսանդր Երիցեանց հրատարակած է նաեւ Վենետիկի Մխիթարեանները եւայլն։

ԱՂԵՔՍԱՆԴՐ ԾԱՏՈՒՐԵԱՆ.— Ցայտնի ռուսահայ բանաստեղծ։ Ծնած է Զաքաթալա քաղաքին մէջ։ Աղքատ ծնողքի զաւակ, Թիֆլիզ կը մեկնի ուսման ընթացքի մը հետեւելու, բայց չյաջողիր և թշուառ կեանք մը վարելէ վերջ Մոսկուա կ՚անցնի։ Իր գրական գործունէութիւնն սկսած է թարգմանութիւններով։ Նախ հայացուցած է Շիլլէրի Մանուկն օրօրոցումն և յետոյ սկսած է հեղինակել ու զանազան ռուսահայ պարբերականներու աշխատակցիլ։ Ծատուրեան տաղանդաւոր բանաստեղծ է, բայց չունի այն արտակարգ չեշտը, որ կուգայ բանաստեղծը բարձրագոյն ոլորտներու հասցնել․ այսուհանդերձ նա մաքուր, վայելուչ ու զգայուն գրող է։ Ծատուրեանի բանաստեղծութիւններուն մէջ չեշտուած ձգտում մը չկայ․ անիկա կեանքի երգիչն է, որ մերթ բնութիւնը կ՚երգէ, մերթ սէրը, վի՛շտը, ազգը, հայրենիքը եւայլն։ Ունի յաջող կտորներ, ինչպէս Սիրուն զարուն, Հայ երգիչին, Բլբուլ, Երկրի մշակներ, Մի՛ վհատիր, Սերմնացան և այլն։ Իր երգերէն ոմանք կ՚երգուին (Մի՛ լար, բլբուլ, էլ մի՛ խնդրիր), ոմանք ալ դասագիրքերու մէջ մտած են։ Ծատուրեանի բանաստեղծութիւնները երկու հատորներով հրատարակուած են։ Երգիծական կտորները Գրչի Հանաքներ ժողովածուին մէջ կը գտնուին։ Աղեքսանդր Ծատուրեան իբրեւ լաւագոյն թարգմանիչ եւս իրաւունք ունի յիշատակուելու։ Ինք է որ հայացուցած է Թուրկինէֆի և Պուշկինի բանաստեղծական գործերը և երկու

հատորներով լոյս ընծայած ։ Իր ոտանաւորներէն ոմանք ռուսերէնի թարգմանուած են ։ Ռուսերէնի վերածած է Գ. Սունդուկեանի Պէպօ թատերգութիւնը ։

ԱՏՐՊԵՏ (Սարգիս Մուբայեաճեան) .— Վիպագիր և բանասէր ։ Ծնած է 1850ին Կարս քաղաքին մէջ ։ Շատ լաւ ուսումնասիրած է տաճկահայոց կեանքը և իր բոլոր գրութիւններու մեծագոյն մասին նիւթը կը կազմեն հայութեան այդ հատուածին վիճակը, բռնապետութեան երեսէն կրած զրկանքները, հարստահարութիւններն ու խժդժութիւնները ։ Ատրպետ աշխատասէր գրող մ'է և համբերատար ուսումնասիրող մը, որ իր բեղմնաւոր արտադրութիւններու միջոցաւ փորձած է վիպականօրէն ներկայացնել իր եղբայրակիցներու դրութիւնը ։ Արուեստը եթէ ոչ բոլորովին, գոնէ նշանակելի չափով կը բացակայի իր գրութիւններուն մէջ, սակայն իր ճոխ տեղեկութիւններն ու հմտութիւնն զգալի կ'ըլլան ։ Գրած է տասնէ աւելի վիպական հատորներ, որոնց մէջ լաւագոյնն է Խեւ Կարապետը, հրատարակուած 1889ին ։ Յաջորդաբար արտադրած է Աղմասը, Վիլֆէրայի զաղտնիքը, Ջաւահիր, Բըժժածներ ևայլն ։ Ատրպետ իր վիպական գրուածքներէն զատ ունի քանի մը ուսումնասիրական հատորներ, ուշագրաւ՝ իրենց բովանդակութիւնով և գնահատելի՝ իբրև խղճամիտ երկեր, որոնք իր քննասէր միտքին ու ջանասիրութեան ապացոյցներ են ։ Անոնցմէ են՝ Իմամաթ, Խիլաֆաթ, Կաղուածաշիրական խնդիրը Ատրպատականում, Բաբիներ ևայլն ։

ԱԻԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆ (Ղարիբ) .— Արեւելեան գրականութեան հոյակապ դէմքերէն մին է Ահարոնեան, որ իրաւամբ կոչուած է «հայկական զուլումներու երգիչը» ։ Ծնած է Երեւանի Իգտիր աւանին մէջ, իր ուսումն առացած է Գէորգեան Ճեմարանէն և կատարելագործած Եւրոպայի մէջ ։ Գրել սկսած է իննսունական թուականներուն ։ Իր գեղարուեստական առաջին արտադրութիւնն է Մշակի մէջ հրատարակուած Պուտ մը կաթը, որ մեծ ուշադրութիւն հրաւիրեց իր վրայ ։ Հետզհետէ իր արտադրած վիպական պատկերները երեւան բերին իր բարձր տաղանդն

ու շքեղ մրձինը։ Ամենէն զգայուն սրտին ու հոգիին տէր այս գեղագէտ գրիչը ունի եւ խորունկ ներշնչում ստոյգ, երբ հայկական կոտորածներու արհաւիրքին հետեւանքով փախստականներու լեգէոններ Կովկաս ապաստանեցան։ Ահարոնեան մօտէն ուսումնասիրեց այս դժբաղդ գաղթականները՝ իրենց զարհուրելիօրէն թշուառ կացութեան մէջ։ Ու քնարը, որուն թրթռուն լարերը այնքան վարպետ ձեռքերու մէջ կը պտտուէին, առաւ նոր թափ՝ այս սոսկալի տեսարաններուն առջեւ։ Հարուստ ոճ, վսեմ պատկերացումներ, սրտայոյզ դէպքեր իր գրչին տակ ստացան վառ գոյն եւ ահեղաշունչ ու հէքեաթանման հնչեղութիւն։ Ահարոնեանի բոլոր գործերուն մէջ ալ հսկայական դիւցազներգութեան մը դրուագները կան կարծես։ Անոնց մէջ են ստրկութեան չարիքները, հալածական ու անտէրունջ ցեղի մը տուայտանքները, մարտիրոսացած ժողովուրդի մը մարտական ոգին ու զուլումը մանաւանդ՝ իր բովանդակ լայնատարածութեամբ։ Ահարոնեանի գրած այս հիանալի պատկերներուն նշանաւորները գտնուած են Ազատութեան ճանապարհին, Խենթերը, Պատկերներ, Արազի եւ այլ աշխատութիւններուն մէջ։ Իր վիպական գործերուն մէջ նշանաւոր են Մրրկի Սուրբը, Լռութիւնը եւայլն։ Իտալիայում գիրքը ուղեւորական նօթեր պարունակող սքանչելի հատոր մ'է։ Հրո կինը ազգագրական ուսումնասիրութիւն մ'է։ Վերջերս Ահարոնեան սկսեց թատերական գործեր ալ արտադրել, որոնց մէջ գլխաւորներն են Արցունքի հովիտը, Սեւ թոյնը, Ուխտուածները։ Անոնց մէջ թատերական արուեստն ու պատկերներու վառ փոփոխականութիւնը չի տեսնուիր, սակայն իւրաքանչիւրը համակ բանաստեղծութիւն է, գեղանիւս յօրինուածքով եւ յուզիչ դրուագներով։ Իր ամենավերջին գործերն են Անդունդ, Մոխիրների տակից եւ Խաւարի մէջ պատկերները։ Ահարոնեանի կարգ մը գործերը Ֆրանսերէնի թարգմանուեցան այս տարի։ Հայ գրականութեան աստղերէն մին է Ահարոնեան։

ԱՒԵՏԻՍ ԱՐԱՄԽԱՆԵԱՆ.— Ստեփաննոս Նազարեանցէն ու Գրիգոր Արծրունիէն վերջ Մուրճի խմբագիր Արամխանեանցն է որ իր ձեռնարկով ռուսահայոց վերածնութեան շրջանի գլխաւոր գործիչներէն մին դարձաւ և հին ու նոր մտայնութիւնները կապեց իրարու հետ։ Ծընած է Վերին Ագուլիս, 1857ին, և իր նախնական ուսումն առնալէ վերջ աւարտած է Լայփցիկի ու Բերլինի իրաւաբանական և քաղաքական գիտութեանց համալսարանները։ Այս փայլուն ընթացաւարտին համար չէին պակսեր լաւ ասպարէզներ, բայց ինք սիրով նախընտրած է հայ ժողովուրդին մէջ հասարակական գործիչ դառնալ։ Իր ամենէն մեծ հեղինակութիւնը պէտք է համարել Մուրճ ամսագիրը, որ շատ մեծ դեր կատարած է ռուսահայոց մտաւորական կեանքին մէջ։ Արամխանեանց ամբողջ 13 տարի Մուրճը անկաշառ և անշեղ ուղղութեամբ և անսայթաք վարելէ վերջ յուսահատ հեռացաւ գրական ասպարէզէն։ Իր հրապարակագրութեան բոլոր ընթացքին մէջ՝ նա ջատագովն էր քննական մեթոտին և կատաղի թշնամի աւանդականութեան։ Քաջալերած է նոր գրողներէն շատեր, որոնք այսօր շնորհիւ իր աջակցութեան՝ գրական նշանաւոր դէմքեր դարձած են արևելահայ գրականութեան մէջ։ 1898ին տօնուեցաւ Մուրճի տասնամեայ յոբելեանը։ Մեռաւ 1912ին։

ԱՒԵՏԻՍ ՆԱԶԱՐԲԷԿԵԱՆ (Աւօ, Լեռենց).— Հայկական Յեղափոխութեան անդրանիկ նուիրուածներէն և Հնչակեան Կուսակցութեան հիմնադիրներէն մին, որ բանաստեղծական տաղանդով օժտուած ըլլալով հանդերձ՝ աւելի իբրև յեղափոխական գրագէտ և ընկերաբան ճանչցուեցաւ։ 1890 թուականին հրատարակուեցան անոր բանաստեղծութիւնները՝ Բեղրապուրկ։ 95ին կրկին ուրիշ հատոր մը հրատարակեց՝ Նուագ եւ Մեղեդի խորագրով։ Աւետիս Նազարբէկեան առաջին դէմքն է, որ ընկերվարական գիտութիւնն ու գաղափարները փոխադրեց հայ լեզուին ու գրականութեան մէջ։ Երկար

տանն խմբագրեց Հնչակեան Կուսակցութեան կեդրոնական օրկանը, Հնչակ ամսաթերթը, որուն մէջ գրած է ցնցող, յեղափոխաշունչ և բանաստեղծական աւիւնով լի խմբագրականներ ու յօդուածներ, որոնք հրահրեցին յեղափոխական կայծը: Ունի գեղեցիկ ոտանաւորներ Ապտակ վաւերաթերթին մէջ: Ինք խմբագրած է Գաղափար պարբերականը և ընկերվարական պրօպագանտին նուիրուած կարգ մը հատորիկներ: Ունի նաև շատ մը թարգմանութիւններ: Նազարբէկեան նշանաւոր տեսաբան է:

ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆ (Հայ Գուսան).— Ռուսահայոց ժողովրդական բանաստեղծներու լաւագոյններէն է Աւետիս Իսահակեան: Ծնած է 1875ին, Ալեքսանդրապոլ: Աշակերտած է Գէորգեան Ճեմարանին և ապա հետեւած՝ Վիէննայի ու Լայպցիկի մարդաբանական և ազգագրական դասախօսութիւններուն: Իսահակեանի առաջին գրութիւնները 90ական թուականներուն հրատարակուած են: Իր բանաստեղծական առաջին ժողովածոն հրատարակուեցաւ 1898ին՝ Երգեր ու Վէրքեր անունով: Իր երկրորդ լիակատար հաւաքածոն հրատարակուեցաւ 1903ին: Իսահակեան յաջողակ քնարերգակ է, որ ժողովուրդին կեանքէն կ'առնէ իր նիւթը, և՝ սէր, թախիծ, յոյզ, կարօտ ու վիշտ կ'երգէ ինքնատիպ կերպով: Յայտնի ու տարածուած իր ոտանաւորներն են Ուխտն աղբեր, Մաճկալ եմ, բեզարած եմ, Դարտըս լացէք, Կռունկները շարան շարան եկան, որոնց շատերը եղանակով կ'երգուին: Ունի շատ գեղեցիկ կտորներ, որոնք նոյնչափ գեղեցիկ տաղանդ մը կը յայտնեն: Իսահակեան միևնոյն ատեն լաւ արձակագիր մ'է: Իր գրուածները Հայնէն կը յիշեցնեն և Նիցչէականութեան կը ձգտին: Աշխատակցած է ռուսահայ թերթերու: Վերջերս Պոլսոյ մէջ հրատարակեց Աբու Լալա Մահարի անունով արեւելեան սիրուն բանաստեղծութիւն մը:

ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ.— Հռչակաւոր բանաստեղծ Գամառ-Քաթիպայի հայրն է Գաբրիէլ քահանայ Պատ-

կանեանը. Ինք ալ բանաստեղծ մը, թէեւ անբաղդատելի իր մեծատաղանդ որդիին հետ։ Պատկանեան հիմնած է Արարատ շաբաթաթերթը, որ ժամադրավայրը դարձաւ Գամառ-Քաթիպայի, Միքայէլ Նալբանդեանի և ուրիշ աշխարհիկ գրողներու, որոնք գրաբար յօդուածներու քովիկը կուգային բազմիլ ժողովրդային լեզուով գրուած ոտանաւորներով։ Գ. Պատկանեանի գլխաւոր տաղաչափուած բանաստեղծական գործերն են՝ Անուշաւան, Մանի Պարէտի, Պարոյր կամ Առումն Նինուէի, Զաւան եւ Փառնակ եւայլն։

**ԳԱԲՐԻԷԼ ՍՈՒՆԴՈՒԿԵԱՆ** (1825-1912).— Ռուսահայ գրականութեան փառքերէն մէկն ու Հայ Թատրոնի զարդն է Գաբրիէլ Սունդուկեան, ծնած Թիֆլիզ, բարեկեցիկ ծնողաց զաւակ և խնամոտ կրթութիւն ստացած։ Համալսարանական ընթացքի հետեւեցաւ Պետրբուրգի մէջ և իր ուսանողական շրջանին բուռն հետաքրքրութիւնով հետեւեցաւ թատերական կեանքին։ Իր առաջին գրուածքը կատակերգութիւն մէ, Գիշերուայ սարը խեր է անունով։ Սունդուկեան հետզհետէ հրատարակեց իր ուրիշ թատերական գործերը, Խաթաբալան, Օսկան Պետրովիչը էն կէնքումը, Մալխաս կամ Էլի մէկ զոհ, Քանդուած Օջախ, Ամուսիններ, Բաղնիսի պոռչան, Սէր եւ ազատութիւն եւայլն, որոնք յաջողութեամբ ներկայացուած են ռուսական և ռուսահայ թատրոններուն մէջ։ Սունդուկեան Մոլիէրէն ունի թարգմանած Ժորժ Տանդէնը և ուրիշ խաղեր։ Բայց իր համբաւաւոր գլուխ-գործոցն է Պէպօն, որ անզուգական է հայ թատերգութեան մէջ, ահագին ժողովրդականութիւն վաստկած և անթիւ ու անհամար անգամներ ներկայացուած թատրոններուն մէջ։ Սունդուկեան տաղանդաւոր թատերգակ է։ Գիտէ հետաքրքրական դարձնել իր գործերը և պատկերոտ, նուրբ ու հոգեբանական էջերով զարդարել զանոնք։ Սունդուկեան անհաւասարելի է իր տաղանդով։ Իր գրական գործունէութեան 25 ամեայ յոբելեանը կատարուեցաւ 1888ին։

**ԳԻՒՏ ՔԱՀԱՆԱՅ ԱՂԱՆԵԱՆՑ**.— Ռուսահայ գիտուն և բանասէր քահանայ, որ նշանաւոր դարձած է իր կարևոր երկասիրութիւններով և հրատարակութիւններով։ Խմբագիրն է Լումայ ազգագրական հանդէսին, որ մեծ ծառայութիւն մատուցած է հայ բանասիրական գրականութեան։ Իր գլխաւոր գործերն են դասական կարգ մը գիրքերէ զատ՝ Կարնոյ գաղթը, Հինգ նորից երանախօսութիւն, Դիւան Հայոց պատմութեան (10 հատոր), բազմաթիւ թարգմանութիւններ և հրատարակութիւններ։

**ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ** (1845-1892).— Հռչակաւոր ռուսահայ հրապարակագիր և ազգային գործիչ։ Ոչ ոք իրեն չափ լաւ ըմբռնած է ողջամիտ և ուղիղ լրագրութիւնը։ Արծրունի յարգուած դէմք մըն է, ո՛չ միայն արևելահայ գրականութեան՝ այլև տաճկահայոց մէջ։ Նա հաւասարապէս հետաքրքրուած էր, ինչպէս ռուսահայոց ազգային-հասարակական կեանքով, նոյնպէս ալ յատկապէս ուշադրութիւն դարձուցած էր տաճկահայոց կեանքին և անոր զանազան երևոյթներուն։ Գրիգոր Արծրունի ծնած է Մոսկուայի մէջ տոհմիկ ընտանիքէ։ Հայրը զօրավար մ'էր։ Առած է նախնական ոչ-ազգային խնամոտ կրթութիւն, աւարտած գիմնազիոնի ընթացքը և հետևած Մոսկուայի ու Պետրպուրկի համալսարաններուն բնագիտական ճիւղին։ Նա իր ընդունակութեան շնորհիւ շուտով հայերէն սորվեցաւ Պետրպուրկի մէջ ու հետզհետէ սկսաւ հայասէր դառնալ։ Առաջին գրութիւնը հրատարակուեցաւ Մեղու Հայաստանի լրագրին մէջ (1865)։ Արծրունի ի վերջոյ հետևեցաւ Հայտէլպէրկի համալսարաններուն մէջ Քաղաքատնտեսութեան և Փիլիսոփայութեան։ Իր հայ լեզուի հմտութիւնը կատարելագործելու համար, Վիէննայի ու Վենետիկի հայրերուն քով մնաց ժամանակ մ'ալ ու 1871ին Թիֆլիզ դառնալով հիմնեց իր թերթը և յաջորդ տարի Մշակը իբրև շաբաթաթերթ սկսաւ հրատարակել։ Արծրունի նուիրուած էր ամբողջովին իր սիրելի Մշակին, որ կոչուած էր հա-

յոց հասարակական ու մշակութական կեանքին մէջ հրակայական դեր խաղալ։ Ռուսահայոց մէջ պահպանողական և ազատական տարրերը դէմ դիմաց էին։ Իր դերը պիտի ըլլար լուսաւորել ժողովրդական լայն խաւերը և միացնել անոնց՝ լոյսը, գիտութիւնը և ժամանակակից ազատական ոգին։ Ու Արծրունի իր Մշակով յաջողեցաւ այդ բանն ընելու։ Նա պաշտպան էր ազգային զարգացման, մայրենի լեզուի մշակման, կրօնական խնդիրներու մէջ՝ լայնախոհութեան, կրթական գործին մէջ՝ եւրոպականացման, կանանց հարցին մէջ ազատամիտ. մէկ խօսքով Արծրունի մամուլը կը ծառայեցնէր լուսաւոր գաղափարներու տարածման։ Հայոց կեանքին մասին միշտ գրած է Արծրունի։ Հայկական Հարցին մէջ մեծ դեր կատարած է իբրև առաջնորդող մամուլի ներկայացուցիչ և ազգ. գործիչ։ Ամբողջ 20 տարի Արծրունի ու Մշակ երիտասարդութեան սիրեցին։ Մշակի դպրոցէն պատրաստուեցան ու [illegible] բազմաթիւ գրողներ ու գործիչներ։ Կատաղի պայքարող էր Արծրունի։ Շատ փառաւոր էր իր թաղումը։ 300է աւելի պսակ կար և տասնեակ հազարաւորներ յուղարկաւոր։

ԳՐԻԳՈՐ ԲԱԼԱՍԱՆԵԱՆ .— Ռուսահայ ազգագիր և գրագէտ։ Իր բանաստեղծական գրքոյկը (Որբիկների արցունքը) տեղի տուաւ բանասիրական գործերուն առջեւ։ Գրած է Սասունցի Դաւիթ, Երկու պահլաւան, Պստիկ Մըհեր, Առիւծաձեւ Մհեր, Ռոստոմ եւ Սալման և այլն։

ԲՐՈՖ. ԳՐԻԳՈՐ ԽԱԼԱԹԵԱՆՑ (1847-1902) .— Խղճամիտ ու արդիւնաւոր պատմաբան, վաստակաւոր գիտնական և անզուգական ազգագիր ու հայերէնագէտ։ Բրոֆ. Խալաթեանց որոշ ծառայութիւններ մատոյց հայ լեզուին, գրականութեան ու պատմութեան։ Աւարտած է Մոսկուայի համալսարանին պատմա-լեզուաբանական ճիւղը։ Պատկանելով հանդերձ հարուստ գերդաստանի մը, [illegible] ասպարէզը։ Մոսկուայի Լազարեան [illegible] ուսուցիչ էր մինչև իր

մանր։ Իր ուսանողութեան օրերուն իսկ Մշակին յօդուածներ կը գրէր Մոսկուայէն։ Իր գրական առաջին գործն է Սասունցի Դաւիթին ռուսերէն թարգմանութիւնը։ Երեսուն տարի անընդհատ աշխատեցաւ հայագիտական գործերու, և ռուսերէն, հայերէն ու գերմաներէն լեզուներով շատ մը յօդուածներ ու գիրքեր գրեց։ Իր երկասիրութիւններուն ցանկը շատ երկար է. թուենք միայն իր գլխաւոր գործերը. Ղազար Փարպեցի եւ գործք նորին, Զենոբ Գլակ, Մովսէս Խորենացու Հայոց պատմութիւնը, Գիրք մնացորդաց ըստ հնագոյն թարգմանութեան, Ուրուագիծ Հայաստանի պատմութեան, Ծրագիր հայ ազգագրութեան եւայլն, բոլորն ալ մեծ հմտութիւն և համբերատար աշխատութիւն պահանջող խղճամիտ ուսումնասիրութիւններ։ Բրոֆ. Խալաթեանց շատ համբաւաւոր է Եւրոպացի գիտնականներու մէջ ալ։

ԵՐՈՒԱՆԴ ԼԱԼԱԵԱՆ.— Ռուսահայ նշանաւոր ազգագիր և բանահաւաք։ Մեծ ծառայութիւն մատուցած է հայկական բանասիրութեան։ Ձեռնհասութեամբ կը վարէ Ազգագրական հանդէսը։ Իր կարեւոր գործերն են, բացի երկրորդական բազմաթիւ յօդուածներէ և ուսումնասիրութիւններէ, Բորչալուի կամ Հարք գաւառ, Գանձակի գաւառ (2 հատոր), Ժողովրդական առակներ (2 հատոր), Սասմայ ծռեր, Վարանդա, Զանգեզուրի գաւառ, Երեւանի նահանգ եւայլն։

ԷՄԻՆ ՏԷՐ ԳՐԻԳՈՐԵԱՆ.— Բնիկ Երեւանցի ռուսահայ թարգմանիչ է։ Գրած է շատ մը կատակերգութիւններ, որոնք ընդհանրապէս անյաջող են։ Իր երեք թարգմանութիւնները սակայն,— Դամոկլեան սուր, Սուր եւ Հուր և Բարեգործութեան դիմակին տակ,— զինքը կը դընեն հայ թարգմանական գրականութեան պատմութեան մէջ։

ԹՈՐՈՍ ԹՈՐԱՄԱՆԵԱՆ.— Ռուսահայ նշանաւոր ճարտարապետ և հայագիտական ուսումնասիրութեանց հետամուտ յարգելի դէմք մը։ Բրոֆ. Ն. Մառի հետ մասնակցած է Անիի պեղումներուն և այդ առթիւ շատ մը

համալից յօդուածներ գրած ։ Իր նշանաւոր գործն է Հայ Ճարտարապետութեան պատմութիւնը, որ այս տարի Իգմիրեանց մրցանակով պսակուեցաւ ։

ԼԵՒՈՆ ՄԱՆՈՒԷԼԵԱՆ .— Արեւելահայ գրականութեան մէջ ծանօթ բանաստեղծ, ուսուցիչ և գրագէտ է Մանուէլեան ։ Ծնած է նիրքին Ագուլիսի մէջ, 1864ին ։ Ստացած է նախնական լաւ կրթութիւն, աւարտած է Թիֆլիզի գիմնազիոնը և Մոսկուայի համալսարանի պատմական լեզուագիտական ճիւղը ։ Երկար ատեն յաջողութեամբ վարած է ուսուցչական պաշտօն՝ այլ և այլ տեղերու մէջ ։ Ունի այլևայլ թերթերու մէջ գրած շատ մը ոտանաւորներ և արձակ գեղեցիկ գրութիւններ, պատմական-քերթուածներ և թարգմանութիւններ ։ Գրել սկսած է 1887ին Աղբիւր ամսաթերթին ։ Իր գրուածներուն մէջ առանձինն հրատարակուած են Տիգրանուհի, Չալաբիների արշաւանքը, Խորտակուած կեանքը, Դոկտոր Բօշայեան, Վերածնունդը, Բանաստեղծութիւններ և Պոեմներ (2 հատոր) ։ Մանուէլեան առհասարակ ունի մաքուր և դասական լեզու ։ Իր կարեւոր մատենագրական աշխատութիւնն է Ռուսահայ գրականութեան պատմութիւնը, որուն չորս մասերը հրատարակուած են մինչեւ հիմա ։

ԼԷՕ (Առաքել Բաբախանեան) .— Ժամանակակից նշանաւոր պատմաբան, գրագէտ, վիպագիր և հրապարակագիր ։ Ծնած է Շուշի, 1860ին ։ Իր գրական գործունէութիւնն սկսած է Մշակի մէջ, ուր գրած է վիպական գործեր ։ Հեղինակ է 10 ի չափ վէպեր արձակ գրեց, որոնց մէջ նշանաւորներն են Պանդուխտ, Այծարած, Ծայրեր, Կորածներ, Թաթախման գիշեր, Վերջին վէրքեր, Մէլիքի աղջիկը եայլն ։ Ասոնց մէջէն վերջին երկուքը սակայն աւելի ծանօթ են և արժէքաւոր ։ 1895էն վերջ Լէօ մէկ կողմ թողուց գեղարուեստական գրականութիւնը և ինքզինքը տուաւ հայագիտական-պատմական ուսումնասիրութիւններու ։ Իր սիրուն ոճը, խանդուած աշխատասէր և տաղանդաւոր գրագէտի մը հմուտ միտ-

քին, բնական էր որ արտադրէին նշանաւոր և մանաւանդ մատչելի գործեր։ Անոնց մէջ յայտնի են Հայկական Տըպագրութիւն (2 հատոր), Գրիգոր Արծրունի (3 հատոր), Ս. Մեսրոպ, Յովսէփ եպիսկոպոս Արղութեանց, Ստեփաննոս Նազարեանց, Կղասըսքըն, Ռուսահայոց գրականութիւնը ևայլն։ Լէօ ունի շատ նկարէն և ժողովրդական ոճ մը. իր գործերուն մէջ անդիմադրելի հրապոյր մը կայ ընթերցման առաջնորդելու։ Յոբելեանը կատարուեցաւ 1908ին։

**ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎԵԱՆ**.— Արեւելահայ գրականութեան մեծանուն հիմնադիրն ու առաջին բանաստեղծ-վիպասանը, որ գրեց աշխարհիկ լեզուով։ Աբովեան ծնած է Երեւանի Քանաքեռ գիւղը՝ 1804-1805 թուականներուն։ Դաստիարակուած է նահապետական կեանքի մէջ և առո՛ր համար անշուշտ բնութեան սիրահար։ Աւարտած է Թիֆլիզի Ներսիսեան դպրոցը և ապա Էջմիածին մեկնած՝ կաթողիկոսական գրագրի պաշտօնով։ Աբովեան ընկերացած է Դորպատի համալսարանի ուսուցչին Բրոֆ. Պարրոտի գիտական նպատակով ըրած Մասիսի հետազօտութեան, ու այս առթիւ իսկ շնորհիւ նոյն բրոֆէսէօրին համալսարան ընդունուեցաւ։ Աբովեան Դորպատի մէջ նախ գերմաներէն սորվեցաւ և ապրեցաւ համակրական մթնոլորտի մը մէջ՝ ամբողջ վեց տարի, մինչեւ որ աւարտեց համալսարանի ընթացքը։ Իրեն յանձնեցին Թիֆլիզի նահանգական դպրոցին տեսչութիւնը, զոր վարեց յաջողութեամբ և ապա փոխադրուեցաւ Երեւան։ Իր մեծագոյն ցանկութիւնն էր Էջմիածինը օժտել տիպար վարժարանով մը, բայց կարելի չեղաւ որեւէ կերպով համոզել իր ժամանակի կաթողիկոսները։ 1848ի սկիզբները արձակուեցաւ իր պաշտօնէն։ Նա օր մը լուսադէմին տունէն դուրս ելաւ, բայց այլեւս չերեւցաւ։ Մինչեւ այսօր ալ իր անյայտացումը խորհրդաւոր ու անստոյգ մնացած է։ Աբովեան նախ գրաբար կը գրէր, ապա սակայն Դորպատի միջավայրը փոխեց իր ըմբռնումները։ Գրած է գրաբար և աշխարհաբար շատ մը արձակ և ո-

տանաւոր գրութիւններ, յիշատակարաններ, նկարագրութիւններ եւայլն. սակայն իր գլուխ-գործոցն ու փառքն է Վէրք Հայաստանին, հայ հերոսի մը Քաջն Աղասիի եւ իր ընկերներու անձնուիրութիւնն ու յաղթանակները, ինչպէս նաեւ Թուրք ամբոխին բարբարոսութիւնները, — կոտորած, թալան եւայլն, — նկարագրութիւնը՝ վիպական հանգոյցով, արարատեան աշխարհիկ բարբառով եւ առատաբուխ ոճով։ Աբովեան յաջողակ նկարագրող է եւ ոգեւորուած գրող։ Վէրք Հայաստանին 1841ին գրուած է, բայց հազիւ կրցած է հեղինակը զայն հրատարակել՝ 1858ին։ Մինչեւ այդ ատեն ռուսահայոց աշխարհիկ բանաստեղծութիւնն ալ սկսած էր արդէն եւ Բարիզի Արեւմուտքն ու Մոսկուայի Հիւսիսափայլը բաւական հող պատրաստած էին աշխարհիկ լեզուին։ Վէրք Հայաստանիէն զատ Աբովեանի ուրիշ գործերն են Պարապ վախտի խաղալիք, Թէօդորա կամ որդիական սէրը, Օսաննա եւայլն։ Աբովեան արեւելահայ աշխարհիկ գրականութեան ռահվիրան է։ 1897ին իր բոլոր գործերը մէկ հատորի մէջ լոյս տեսան։ Վէրք Հայաստանին առանձինն ալ հրատարակուած է։

**ԽԱՉԱՏՈՒՐ ՄԱԼՈՒՄԵԱՆ** (Է. Ակնունի). — Հ. Յ. Դաշնակցութեան ականաւոր գործիչներէն, փայլուն գրագէտ, բեմբասաց եւ հրապարակագիր։ Գ. Արծրունիին Մշակի դպրոցին մէջ պատրաստուած ընդունակ միտք եւ խմբագիր Մշակի։ Աւարտած է Թիֆլիսի Ներսիսեան վարժարանը։ Ունի շատ պատկերաւոր ոճ մը եւ հրապուրիչ գըրելակերպ։ Հեղինակած է շատ մը յեղափոխական-պատմական բնոյթ ունեցող գիրքեր, որոնց մէջ գլխաւորներն են՝ Կովկասեան վէրքեր, Դէպի կռիւ, Բողոքի ձայն եւայլն, որոնցմէ ոմանք ֆրանսերէնի ալ թարգմանուած է։ Է. Ակնունի իբրեւ գրագէտ աչքառու դէմք մ՚է։ Օսմ. Սահմանադրութենէն վերջ շատ անգամ Պոլիս բեմի վրայ երեւցաւ ազատաշունչ եւ ոգեւորիչ ճառերով։

**ԽՈՐԷՆ ԵՊԻՍԿ. ՍՏԵՓԱՆԷ.** — Ռուսահայոց գիտուն եկեղեցականներէն մին, որ ունեցած է գրական բեղուն

գործունէութիւն մը։ Գրական գլխաւոր գործն է Մովսէս Խորենացիի Հայոց Պատմութեան աշխարհիկ արեւելահայ լեզուի թարգմանութիւնը՝ հմտալից ներածութեամբ մը։ Ունի նաեւ ուրիշ կարգ մը թարգմանութիւններ եւ ինքնագիր գրուածքներ։

ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ.— Ճշմարիտ հայագէտ մը եւ տաղանդաւոր լեզուաբան մը։ Հրաչեայ Աճառեան ո՛չ միայն հայ լեզուաբաններուն մէջ կը մնայ անհաւասարելի, այլեւ կը գերազանցէ բոլոր օտար լեզուաբանները՝ դէթ հայ լեզուի վերաբերեալ հարցերու համար։ Հմուտ է հին ու նոր հայերէններու եւ մանաւանդ՝ հայկական գաւառաբարբառներու։ Ծնած է Կ. Պոլիս եւ Կեդրոնական վարժարանի նախկին աշակերտներէն, որ ապա իր արեւելեան լեզուաց ուսումը կատարելագործած է Բրոֆ. Կարիէրի եւ Բրոֆ. Հիւպշմանի քով։ Կարճ ժամանակի մէջ Աճառեան արտադրած է շատ մը աչքառու գործեր, որոնք իրեն արժանաւոր համբաւ մը չինած են՝ նոյնիսկ եւրոպացի լեզուաբան-գիտնականներու շրջանին մէջ։ Իր գլխաւոր գործերն են՝ Արուշանքէլի բարբառին քննութիւնը, Հին հայերէնի պայթուցիկները, Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանի, Հայկական բարբառ, Քննութիւն Ղարաբաղի բարբառին, Թուրքերէնէ փոխառեալ բառեր, Վանի բարբառին քննութիւնը, Հայոց նոր վկաները, Քննութիւն եւ համեմատութիւն Եզնիկայ նորագիւտ ձեռագրին, Պատմութիւն Հայոց նոր գրականութեան, Ս. Մեսրոպի գրերու գիւտի պատմութեան աղբիւրներն ու անոնց քննութիւնը, Ցուցակ հայ ձեռագրաց Թաւրիզի եւ այլն։ Ունի նաեւ բազմաթիւ լեզուաբանական-բանասիրական յօդուածներ Հանդէս Ամսօրեայի, Բազմավէպի, Արարատի եւ ուրիշ մասնագիտական հանդէսներու եւ հատորներու մէջ։ Հրաչեայ Աճառեան այժմ կը վարէ Նոր Նախիջեւանի հոգեւոր վարժարանին տեսչութիւնը։

ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆ (1840-1912).— Ռուսահայ նշանաւոր մանկական գրագէտ, բանաստեղծ-վիպասան եւ

մանկավարժ։ Ծնած է Թիֆլիզի մօտ Խաչէն գիւղի մէջ։ Աւարտեց յաջողութեամբ Ներսիսեան դպրոցը և երբ գիւղ վերադարձաւ՝ հայրն չհանդուրժելով իր ըմբոստութեանը՝ դո՛ւրս ձգեց տունէն։ Այնուհետեւ Աղայեան դարձաւ ինքնագլուխ և թափառական՝ հոս ու հոն։ Ունեցած է կրթական և գրական կարեւոր և նշանակելի գործունէութիւն։ Հայոց Անտէրսնը կոչած են գինքը, իր մանկական սիրուն ու յանկուցիչ գրութիւններուն համար։ Աշխատակցած է զանազան ռուսահայ թերթերու։ Իր վէպերուն մէջ նշանակելի են Յարութիւն և Մանուկ, Անահիտ, Սէրը տարաժամուած եայլն։ Գրած է հայկական Տորք-Անգեղի առասպելը՝ բանաստեղծական չափականութեամբ մը։ Գրուածքներուն մէջ յայտնի են Գիւլնազ Տասի հէքեաթը, Արեգնազան եայլն, իսկ բանաստեղծութիւններուն մէջ՝ Ծիտ իմ ծիտ իմ, Մանի՛ր մանի՛ր, Ձմեռ, Արեւ արեւ եայլն։ Ղազարոս Աղայեանց թարգմանած է Պուշկինի Ոսկի Ձկնիկը։ Ունի Մայրենի լեզու անունով 4 հատոր դասագիրքեր, որոնցմով մեծ ծառայութիւն մատուցած է՝ ռուսահայ լեզուին։ Ասոնցմէ զատ առանձինըն հրատարակած է՝ Հայկական հէքիաթներ վասին, Մի երեք մեր նորագոյն պատմութիւնից, Մեր ուսուցիչների ընկերական նուէր եայլն։ Ղազարոս Աղայեանց այժմ ընդունուած արեւելահայ ուղղագրութեան կարգադրիչն է։ Իր կրթական ու գրական գործունէութեան քառասնամեակը տօնուեցաւ 1902ին,

ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ (Կոմս Էմմանուէլ). — Ռուսահայ նշանաւոր գրագէտ, հրապարակագիր և բանաստեղծ։ Ծնած է Նոր-Նախիջեւանի մէջ 1829ին, ըստացած է նախնական կանոնաւոր ուսում և ապա Մոսկուայի համալսարանի բժշկական ճիւղին հետեւած։ Հոն տաղանդաւոր այս միտքը մօտիկ բարեկամութիւն մշակեց Ս. Նազարեանցի հետ և երբ Հիւսիսափայլը սկսաւ հըրատարակուիլ՝ Նալբանդեան իր աշխատակցութեամբ անոր փայլը և խմբագիրին մեծագոյն աջակիցն հանդիսացաւ։

Սրկածալից կեանք մը ունեցած է Նալբանդեան և ռուս յեղափոխականներու հետ իր ունեցած յարաբերութեանց ու գործակցութեան համար հալածուած ռուս կառավարութենէն: Վերջին անգամ ձերբակալուած ըլլալով՝ 3 տարի աքսորանքի մէջ մնաց ու ազատուելէն ետքը շատ չանցած մեռաւ 1866ին: Իր գերեզմանը Նոր Նախիջեւանի մէջ է: Իր գրական գործունէութիւնն սկսաւ Արարատի մէջ 1851ին. սակայն աչքառու արտադրութիւններ չունի այդ առաջին շրջանին: Նալբանդեան 1857ին սկսաւ թարգմանել Էօժէն Սիւի Թափառական հրեայն, որուն Ա. հատորը միայն հրատարակեց՝ անոր կցելով Իգնատիոս Լայօլայի կենսագրութիւնը, իբրեւ առաջաբան: Նալբանդեանի հրապարակագրական գործունէութեան ամենալաւ շրջանը Հիւսիւսափայլի հետ կապուած է: Պատրաստուած միտք մըն էր նա՝ որ խիզախ ոգիի մը հետ միացուցած էր և՝ անկեղծութիւն, համոզկեր լեզու, փաստացի տրամաբանութիւն ու ուղղամտութիւն: Նալբանդեան պաշտպան էր աշխարհաբարի: Իր համբաւը տարածուեցաւ կարգ մը ժողովրդական ոտանաւորներով, որոնք զինք պանծացուցին և սիրցուցին: Անոնցմէ ոմանք նոյն իսկ մինչեւ հիմա ոգեւորութեամբ կ'երգուին, ինչպէս Մեր Հայրենիքը, Ազատն Աստուածը, Ցուրտը փչեց, Մանկութեան օրերը, Հիմի՞ էլ խօսինք, Հայկ ու Լեւոնինը եւայլն: Իր բանաստեղծական տաղանդը չհաւասարիր Գամառ-Քաթիպայիին, բայց իր անկեղծ չեշտը առինքնած է ամենքը: Նալբանդեանցի գլխաւոր երկասիրութիւնն է Երկրագործութիւնը որպէս ուղիղ ճանապարհ ուսումնասիրութիւնը, որ տնտեսագիտական լաւ փորձ մ'է՝ բնավարական տեսութեանց վրայ հիմնուած: Երկար ատեն այս գիրքը արգիլուած էր Ռուսիոյ և Թուրքիոյ մէջ: Նալբանդեանց ունի մաքուր և ընտիր աշխարհիկ լեզու, գրաբարով համեմուած: Գրած է թարգմանութիւններ ալ:

**ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ.**— Ընկերային գիտութիւններու և տնտեսագիտական ուսմանց հմուտ իմաստասէր

հրապարակագիր մ՚է Դաշնակցութեան առաջնակարգ այս տեսաբանը։ Երկար ատեն վարած է Դրօշակի խմբագրութիւնը, զայն զարդարելով ուժեղ առաջնորդողներով և ընկերաբանական-տնտեսագիտական ուսումնասիրութիւններով։ Ունի շատ մը հեղինակութիւններ, որոնց մէջ գլխաւորներն են Գորդեան Հանգոյցը, Փիլիսոփայ սոցիոլօգ, Համաժողովրդական բանակը, Վերածնող Հայրենիքը եւ մեր դերը, Հոսանքներ և այլն։ Վերջերս Դրօշակի մէջ սկսեց հրատարակել Հայկական շարժման նախապատմութիւնը։ Վարանդեանի լեզուն հարուստ է և ոճը պատկերոտ ու գեղեցիկ։

*ՄԿՐՏԻՉ ԷՄԻՆ*.— Արժէքաւոր բանասէր, հմուտ հայագէտ և ուսուցիչ։ Ունի մատենագրական-գրական մեծ գործունէութիւն մը, որ ահագին համբաւի մը տիրացուցած է զինքը։ Իր գլխաւոր երկասիրութիւններն են՝ Մխիթար Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, Մեծին Վարդանայ Բարձրաբերդեցւոյ պատմութիւնն տիեզերական, Մովսէս Խորենացին եւ հայոց հին վէպերը, Ստեփաննոսի Սիւնեաց Եպիսկոպոսի պատմութիւնն տանն սիւնական, Մովսէսի Կաղանկատուացւոյ պատմութիւն և այլն։ Իր նախաձեռնութեամբ հրատարակուած են Էմինեան Ազգագրական Ժողովածուները՝ աշխատակցութեամբ Ս. Հայկունիի և Հ. Աճառեանի։ Մկրտիչ Էմին հայկական բանասիրութեան ժիր մշակներէն մին է։ Ընդհանրապէս ռուսերէն լեզուով գրած է շատ մը գործեր, ինչպէս՝ Հայոց հեթանոսական կրօնը, Հայ եկեղեցւոյ պատմութիւնը, Հայոց Տարականը և այլն, Մեր պատմութիւնը ծանօթացուցած է Էմին՝ ռուսներուն։

*ՄՈՒՐԱՑԱՆ* (Գրիգոր Տէր Յովհաննէսեան).— Ծնած է Շուշի 1854ին։ Ստացած է խնամոտ կրթութիւն։ Գրելու սկսած 1880ին և աշխատակցած է Մեղուին, Նոր Դարին, Արձագանգին և Լումային։ Մուրացան իր միտումներով ազգայնական է։ Իր հռչակը կը պարտի Ռուզանին, որ հայ բեմի սիրուած պատմական մէկ թատերխ-

գութիւնն է ։ Մուրացանի վիպական գրուածքներուն մէջ ամենէն աղմկալիցն է իր առաջին արտադրութիւնը՝ Հայ բողոքականի ընտանիքը, որուն յաջորդեցին հետզհետէ Իմ հարսնացուն և Անդրէաս Երէցը, որոնք միակողմանի գործեր են պէտք է ըսել ։ Ժողովրդական կեանքին ու անոր ծառայութեան նուիրուած գրուածներուն մէջ ծանօթ են Խորհրդաւոր Միանձնուհին, Նոյի Ագռաւը, Առաքեալը և այլն ։ Մուրացանի գլուխ-գործոցն ու տաղանդաւոր պատմական վէպն է Գէորգ Մարզպետունին, որ վերջին ծայր արուեստոտ է ու հետաքրքրական ։ Ասոնցմէ զատ տակաւին շատ մը մանր մունր պատմուածքներ ու գրութիւններ ունի Մուրացան ։ Իր լեզուն շատ ընտիր է ու մաքուր հայկաբանութեամբ օժտուած, այնպէս որ ունի խիստ փայլուն էջեր ։ Մուրացան արեւելահայ գըրականութեան մէջ աչքի զարնող դէմք մ՚է ։

ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ.— Ժամանակակից ընկերային կեանքի դառնութիւններէն ներշնչուող և աշխատաւոր ու ճնշուած դասակարգին երգիչն է բանաստեղծ Յակոբ Յակոբեան ։ Ծնած է 1869ին և գրել սկսած 1893ին ։ Իր ոտանաւորները տպուած են Մուրճի և զանազան ամսագիրներու մէջ ։ Իր բանաստեղծութիւններուն մէջ յայտնի կտորներ են Գարնանամուտին, Հողագործուհին, Լռեց սոխակը, Գալիս են, Տեսե՞լ ես ընկեր, Մեռան՝ չկռւան, Էլ ձեզ մատաղ և այլն, որոնց մէջ կը տեսնուի մասնաւոր ձգտում ընկերային գաղափարներու նոր հոսանքներ առաջ բերելու ։ Ի՛նք հայացուց Իտալացի նշանաւոր բանաստեղծուհի Ադա Նէկրիի երգերը՝ յաջող թարգմանութեամբ մը, որ մեծ ընդունելութիւն գտաւ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹՈՒՄԱՆԵԱՆ.— Ռուսահայոց լաւագոյն և ժողովրդական քնարերգակ բանաստեղծներէն մին և յաջող դիւցազներգակ ։ Ծնած է 1869ին Լոռի Դսեղ գիւղին մէջ՝ ազնուական սերունդէ ։ Թէև միջակ կըրթութիւն ստացած է, այսուհանդերձ իր տաղանդով շա՛տ սիրուած և շա՛տ ալ գնահատելի յայտնութիւն ունեցած է,

գրելով շատ կանուխէն իսկ: Իր բանաստեղծութիւնները կը բաժնուին չորս դասակարգերու. 1. Մանր քնարերգական կտորներ, 2. Առակներ, 3. Պատմական-աւանդական քերթուած-գրութիւններ (պօէմա), 4. Թարգմանութիւններ: Թումանեանի քնարերգական կտորներուն մէջ են կարգ մը ժողովրդական երգեր և պզտիկ քերթուածներ, որոնց մէջ նշանաւորներն են՝ Էյ աստղեր, Համերգ, Սարերում, Իմ սէրը, Իմ երգը, Հին օրհնութիւն, Ճպտուն աչեր և այլն: Թումանեան կ'երգէ իր քընարով բնութիւնն ու ժողովրդային կեանքը՝ անուշ և զգայուն թօնով մը, որ միացած պատկերաւոր և անուշ լեզուի մը, ջերմ հրապոյր կուտայ իր գրուածքներուն: Իր առակները շատ սիրուն են ու ինքնատիպ, թէև հայկական աւանդութիւններու վրայ հիմնուած: Անոնց գլխաւորներն են՝ Անբաղդ վաճառականներ, Զարի վերջը, Արծիւն ու կաղնին, Շունն ու կատուն, Աղուէսը, Կաքաւիկը և այլն: Յովհաննէս Թումանեանց մեծ հռչակ հանած է իր պատմական-բանաստեղծութիւններով, որոնք վեր կը հանեն հայկական հին բանաւոր բանահիւսութիւնը և կը վերապրեցնեն զանոնք՝ գրականութեան նոր վերարկուն հագցնելով: Յատկապէս ուշադրութեան արժանի են և նշանաւոր՝ գլխաւորաբար Անուշը, Սասունցի Դաւիթը, Թմկաբերդի առումը, Դէպի անհունը, Ախթամար և այլն: Բանաստեղծը ասոնց մէջ կիրարկած է պարզ և ժողովրդական հնչեղ լեզու մը: Ունի շատ յաջող թարգմանութիւններ Լերմոնտովէն, Պուշկինէն, Կէօթէէն և այլն: Թումանեան արուեստագէտ բանաստեղծ է: Իր գրուածքները լիակատար հաւաքածոներն լոյս տեսած են 1903ին և 1908ին: Մասնակցած է Հասկեր մանկական ամսագրի հիմնարկութեան և խմբագրութեան (մանկական գրուածքներով) ու Հայ գրողներու 2 հատորներուն հրատարակութեան:

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**.— Յովհաննէս Յովհաննէսեան ռուսահայոց նշանակելի և տաղանդաւոր բանաստեղծներէն մին է, ծնած 1864ին Վաղարշապատ: Ա-

աշակերտած է Գէորգեան Ճեմարանին և տակաւին դպրոցական՝ ցոյց տուած է բանաստեղծական մեծ ընդունակութիւն: Իր գրուածքներուն առաջին հաւաքածոն 1887 ին լոյս ընծայած է, Մոսկուա: Առաջին շրջանին մէջ Յովհաննէսեան իր գրութեանց մէջ խոր դրոշմը կը կրէ Լերմոնտովի, Սմբատ Շահազիզի և Ս. Նազարեանի: Հետզհետէ Հայնէն ալ գրաւած է զինքը: 1908 ին հրատարակուեցաւ իր լիակատար ժողովածուն: Երկար ատենէ ի վեր կը գրէ այլեւայլ ռուսահայ թերթերու մէջ: Ունի զուտ սիրային-քնարերգական, ժողովրդական և պատմական քերթուածներ ու թարգմանութիւններ: Առաջինները մանր մունր կտորներ են, թէեւ արուեստագիտական շունչով գրուած: Աւելի սիրուն և հիւթեղ են իր ժողովրդական քերթուածները, որոնցմէ ոմանք կ'երգուին ալ: Գլխաւորներն են՝ Արագն եկաւ, Ալագեազ բարձր սարին, Նոր գարուն, Այ վարդ աղջիկ եւայլն: Յովհաննէսեանի պատմական երկերգներու մէջ ծանօթներն են Արտաւազդ, Վահագնի ծնունդը, Լուսաւորչի կանթեղ, Սիւնեաց իշխան, Տղմուտ եւայլն: Օտար հեղինակներէն հայացուցած է Շիլլերի, Կէօթէի, Ուլանտի, Նատսոնի, Հերվէգի, Լէրմոնտովի, Էննիսընի, Նեկրասովի բանաստեղծական գրութիւններէն ոմանք: Իր թարգմանութիւններուն մէջ յայտնի են՝ Երգչի անէծքը, Գերի արագիլը, Պոլիկրատեսի մատանին, Սպիտակ զգեստ եւայլն: Այս տարի Յովհաննէսեանի գրական գործունէութեան երեսնամեայ յոբելեանը պիտի տօնուի:

**ՇԻՐՎԱՆԶԱՏԷ** (Ալեքսանդր Մովսիսեան).— Ռուսահայ գրականութեան ամենէն կարկառուն դէմքերէն մին, տաղանդաւոր վիպագիր և համբաւաւոր թատերգակ, որուն երեսնամեայ գրական գործունէութեան յոբելեանը կատարուեցաւ 1911ին: Ծնած է Շամախիի մէջ 1858ին, և այլեւայլ գործերով զբաղելէ վերջ ինքզինքը նուիրած է գրականութեան: Նախ գրած է թղթակցութիւններ և յօդուածներ, ու ի վերջոյ յայտնագործուած իր

քուն ընդունակութիւններուն ու ճիղին մէջ։ Իր առաջին վիպական գործը գրեց Մշակի մէջ՝ 1883ին, Հրդեհ նաւթահանքերում ուշագրաւ վէպ մը, որուն նիւթն առնուած էր ժամանակակից կեանքէ։ Անոր յաջորդեց Գործակատարի յիշատակարանից, որուն մէջ այլեւս սկսաւ չեշտուիլ գրականութեան մէջ իր ըմբռնած ձգտումը։ Հետըզհետէ գրեց Նամուսը, Արամբին, Արսեն Դիմաքսյանը, Ցաւագարը, Զուր յոյսեր, Քաոսը, Արտիստը եւայլն։ Շիրվանզադէ իր բոլոր վէպերուն, ինչպէս և թատերգութիւններուն մէջ, նիւթը ժողովուրդին կեանքէն կ'առնէ, զայն ներկայացնելով իրական ու վերջին ծայր նրբամիտ կերպով։ Վէպերուն մէջ գլուխ-գործոց կը նկատուին Արտիստն ու Քաոսը։ 90 ական թուականներէն ի վեր Շիրվանզադէ հռչակ հանած թատերագիր է, հանդիսանալով հայ թատերական գրականութեան լաւագոյն մշակը։ Իր թատերգութիւններուն մէջ նշանաւոր են Պատուի համարը, Եվգինեն, Արմենուհին, Իշխանուհին, Ավերակների վրան, Կործանուածը եւայլն, որոնցմէ ոմանք թարգմանուած են եւրոպական լեզուներու։ Շիրվանզադէի առաւելութիւններն են հոգեբանական յաջող վերլուծումներ, վարքի ու բարքի մանրակրկիտ նկարագիր և տիպարներու լաւ ճանաչողութիւն։ Նա սիրուած ու փնտռուած հեղինակ է։ Իր գործերը առանձինն և ամբողջապէս հրատարակուած են։

ՏԻԿԻՆ ՇՈՒՇԱՆԻԿ ԿՈՒՐՂԻՆԵԱՆ. — Ռուսահայերու առաջին բանաստեղծուհին և տաղանդաւոր քերթողներէն մին։ Ծնած է 1876ին, Աղեքսանդրապոլի մէջ և ինքնօգնութիւնով զարգացած։ Իր առաջին գրուածքը երեւցաւ 1899ին Տարազ շաբաթաթերթին մէջ. այնուհետեւ Շուշանիկ գրեց ամեն տեղ։ Իր գրուածքներու առաջին ժողովածուն, Արշալույսի ղողանջներ անունով, հրատարակուեցաւ 1907ին։ Կուրղինեան զգայուն բանաստեղծ է, գիտող, ըմբռնող և արտայայտելու կարող։ Իր երգերուն մէջ քերթողական արուեստը շատ շնորհալի

է և աչքառու։ Երգիչն է թշուառներու, հողագործներու, բանուորներու և ճնշուող դասակարգին. կ'երգէ անոնց ցաւերը, վիշտը, մարտը, յոյսը և կեանքը վերջապէս։ Ժողովրդական են իր գրութիւնները և սիրուած։ Յիշատակելի քերթուածներն են՝ Հանգցրէք ջահերը, Մի գիշեր, Երգանիկը, Բլբուլին, Արծւի սէր, Արծիւը եայլն։ Տիկին Շուշանիկ կը խոստանայ դառնալ արեւելահայ գըրականութեան գործերէն մին։

ՊԵՐՃ ՊՐՕՇԵԱՆ (Յովհաննէս Տէր Առաքելեան).— Ռուսահայ նշանաւոր վիպագիր։ Ծնած է Երեւանի նահանգին Աշտարակ գիւղը։ Նախնական դպրոցն աւարտելէ վերջ շատ տեղեր ուսուցչական պաշտօն վարած է և ունեցած կրթական և հասարակական որոշ գործունէութիւն։ Իր առաջին գրուածքը ոտանաւոր մ'էր Առանձկացին Շուշան՝ դուստր Վարդանայ, Մեղու Հայաստանի մէջ, 1860ին։ Անոր յաջորդեց Կռունկի մէջ իր Սօս եւ Վարդիթեր վէպը, որ աւելի ազգագրական գրուածք է՝ քան վիպական։ Ժամանակ մը լռութեան դատապարտեց Պռօշեան իր գրիչը, բայց 1876ին, Փորձ ամսագրին հետ ստացաւ նոր եռանդ։ Այս շրջանին մէջ գրեց Հացի խնդիրը, Կռուածաղիկը և Շահէնը։ Ժամանակաւոր դադարէ մը վերջ Արասխաննեանի Մուրճը կրկին զինքը բերաւ գրական ասպարէզ և իրարու ետեւէ լոյս տեսան իր նոր վէպերը, Ցեցեր, Բղդէ, Յուլիօ եայլն։ Ասոնցմէ զատ Պռօշեան գրած է տակաւին ուրիշ վէպեր, թարգմանութիւններ և մանր մունր գրութիւններ ալ։ Իր հեղինակութիւններէն կ'արժէ յիշատակել Յուշիկները, որ հեղինակին ինքնակենսագրութիւնն է՝ մինչեւ 60ական թուականները հասած։ Պռօշեան գիւղը և գիւղական կեանքը պատմողն է, բեղմնաւոր գրող, բայց գեղարուեստական կատարելութենէ հեռի։ Իր լեզուն խառն է և անհրապոյր, բայց տիպերու բերանը դրուած լեզուն Աշտարակեցւոց բարբառն է՝ իր բոլոր նրբութիւններով և համ ու հոտով։ Իր գրական գործունէութեան քառասնամեակը տօնուեցաւ 1899ին։ Մեռաւ 1907ին։

**ՌԱՓԱՅԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ** (Գամառ-Քաթիպա). — Տաղանդաւոր միտք և հայոց ազգային սիրուած ու ժողովրդական երգիչը։ Որդին է Գաբրիէլ քհնյ. Պատկանեանի և եղբայրը՝ Պրոֆ. Պատկանեանի։ Ծնած է Նոր Նախիջեւանի մէջ, 1830ին և իր նախնական կրթութիւնը հօրը քով առնելէ վերջ՝ աշակերտած Մոսկուայի Լազարեան Ճեմարանին և Թիֆլիզի Ներսիսեանին։ Այնուհետեւ Դորպատի համալսարանը մտաւ։ Հոն խմբուած էր արդէն ուսանող գրականութիւնը՝ կարգ մը տաղանդաւոր ուսանողներու մէջ, որոնցմէ մին էր Պատկանեան, իբրեւ արեւելահայ աշխարհիկ բանաստեղծութեան հիմնադիրը։ Պատկանեան Մոսկուա անցնելով հոն կազմակերպեց գրական ընկերութիւն մը, որուն անունը, — Գամառ Քաթիպա, — կազմուած էր անոր անդամներուն (Մինաս Թիմուրեան և Գէորգ Քանանեան) անուններուն սկզբնատառերովը (Գ. Մ. Ռ. և Ք. Թ. Պ.)։ Ասոնց նպատակն էր գրել և հրատարակել շարք մը ժողովուրդին օգտակար տետրակներ ու գիրքեր։ Ի վերջոյ սակայն միւս ընկերները գործը լքեցին և Ռափայէլ Պատկանեան առանձինն իր վրայ թողուց Գամառ-Քաթիպա անունը։ Գամառ-Քաթիպա հասած է ժողովրդականութեան ամենաբարձր աստիճանին, որուն ո՛չ ոք հաւասարած է ցարդ։ Իր ոտանաւորներէն շատերը տարածուած երգեր են։ Նախ Գամառ-Քաթիպայի չափաբերական աշխատութիւնները վերնագրով տետրակներու միջոցաւ հրատարակուեցան անոր երգերը և շուտով ստացան ահագին ծաւալ։ Իր յաջողութեան պատճառները երեք էին։ 1. ժողովուրդին կեանքէն կը գրէր, 2. ժողովուրդին սրտին մօտիկ նիւթեր կը մշակէր և 3. ժողովուրդին լեզուով կը գրէր։ Ռ. Պատկանեան որչափ բանաստեղծ, նոյնչափ ալ սրամիտ երգիծաբան է։ Իր ոտանաւորներուն մէջ շատերը հռչակուած են. յիշենք մի քանին. Մայր Արաքսի, Հի՞մի էլ լռենք, Վարդան Մամիկոնեանի մահը, Ձայն բարբառոյ յանապատի, Մեզի մոռցաւ, Վանեցիին աղօթքը, Հայե-

ռուս բաղձանքը, Թէ իմս աղւոր եայն: Գամառ-Քաթիպա տաճկահայոց կեանքը շօշափող և զանոնք ըմբոստացնող բանաստեղծն ու ազատ երգիչն է: Անոր ազդեցութիւնը մեծ եղած է Հայկական Յեղափոխութեան նախապատմութեան մէջ: Պատկանեան ունի նաև արձակ գրուածքներ, վիպական ու երգիծական: Վէպերուն մէջ յայտնի են Փառասէրը, Մոնթէն, Տիկին եւ Նաժիշտ եւն.: Ամենատաղանդաւոր գրութիւնները երգիծականներն են, որոնք գրուած են Նոր-Նախիջեւանի բարբառով, ինչպէս Փորսուղին Աւագը, Քաղկեդոն, Դոսգիեն, Վարպետ և այլն: Գամառ-Քաթիպա անմահ դէմք մ՚է հայ գրականութեան պատմութեան մէջ: Մեռած է՝ 1892ին:

**ՍՄԲԱՏ ՇԱՀԱԶԻԶԵԱՆ** (1841-1807).— Արեւելահայ տաղանդաւոր բանաստեղծ, հրապարակագիր և արեւելահայ աշխարհիկ գրականութեան հիմնադիրներու գլխաւոր գործակիցն է Սմբատ Շահազիզ: Ծնած է Աշտարակ գիւղին մէջ: Լազարեան Ճեմարանէն շրջանաւարտ ըլլալէն վերջ միջոց մը ուսուցչական պաշտօն վարած է: Իր գրական կեանքը երկու շրջան ունի, մին բանաստեղծական և միւսը՝ հրապարակագրական: Ճեմարանի աշակերտած ատեն հրատարակուեցաւ իր անդրանիկ բանաստեղծական ժողովածոն՝ Ազատութեան ժամեր խորագրով: Ամենախոր ազդեցութիւն կրած է Ս. Նազարեանէն, Մ. Նալբանդեանէն ու Ռ. Պատկանեանէն և մանաւանդ Պայրընէն: Հիւսիսափայլ Շահազիզեանի ալ կռուանն եղաւ, 1865ին լոյս տեսաւ իր երկրորդ ժողովածոն, որուն մէջ կային 60ի չափ ոտանաւոր և Լեւոնի Վիշտը նշանաւոր պատմական-քերթուածը, որուն մէջ Շահազիզեան կը խտացնէ ժամանակակից գաղափարները, ձգտումները ու լեզուն: Այդ թուականէն վերջ աւելի հրապարակագրական նիւթեր մշակած է: Իր երկրորդ ընդարձակ գրուածքը Ամառնային Նամակներ խորագիրն ունի, շօշափելով այլ և այլ խնդիրներ և Մովսէս Խորենացիի պատմութիւնը: Գրած է նաև Վարդանանց տօնի առթիւ գրքոյկը: Սըմ_

բառ Շահազիզ աշխարհաբարի ախոյեանն է և անոր տարածման աշխատողներու գլխաւորներէն մին։ Յոբելեանը կատարուեցաւ 1892ին։

*Ս. ՍԱՊԱՀ-ԳԻՒԼԵԱՆ*.— Տաղանդաւոր հրապարակագիր, հռչակաւոր ընկերաբան-տնտեսագէտ, առաջնակարգ բեմբասաց և Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան ամենայայտնի տեսաբանը։ Ծնած է Կովկասիոյ մէջ, աւարտած է Թիֆլիզի Ներսիսեան վարժարանն ու ապա Բարիզի Քաղաքական Գիտութեանց համալսարանի փայլուն ընթացաւարտն հանդիսացած։ Երկար ատեն ուսուցչական պաշտօն վարած է Ռուսաստանի, Հայաստանի և Պուլկարիոյ մէջ։ Այլեւայլ թերթերու մէջ գրած է շատ մը պատմական, քաղաքական և տնտեսական հմտալից յօդուածներ։ Երեք տարի խմբագրած է Ամերիկայի Երիտասարդ Հայաստան թերթը և տարիներէ ի վեր Հնչակեան Կուսակցութեան կեդրոնական օրկանին Հնչակի խմբագրապետն է։ Օսմ. Սահմանադրութիւնէն վերջ Տաճկաստան եկաւ և երբեմն Նոր-Աշխարհ թերթին գլուխն անցաւ։ Առանձին գիրքերով լոյս տեսած են կարգ մը թարգմանութիւններն ու ինքնագիր գրքոյկներն, որոնք են, Եւրոպայի քաղաքական դրութիւնը Պերլինի վեհաժողովից յետոյ, Երիտասարդ Թուրքիա եւ Հայերը, Հերդեր եւ իր քաղաքական հայեացքները, Տնտեսագիտական հարցեր, Սոցիալիզմ եւ Հայրենիք, Դարիբաշիս Դասակարգը. Գործաւոր դասակարգը եւայլն։ Սապահ Գիւլեան հմուտ միտք մէ և վերին աստիճանի ուժեղ ու տրամաբանող լեզու ունի։ Ձեռագիր վիճակի մէջ կը մնայ իր հոյակապ մէկ գործը, Արեւելեան խնդրոյ պատմութիւնը։ Կ. Պոլիս և գաւառները խօսած է ազդու և հմտալից ճառեր, հազուագիւտ պերճախօսութեամբ։

*ՍՏԵՓԱՆՆՈՍ ՆԱԶԱՐԵԱՆՑ* (1810-1879).— Արեւելահայ աշխարհիկ գրականութեան հիմնադիրներէն մին, կռուող հրապարակագիր և ազատամիտ գործիչ։ Ծնած է Թիֆլիսի մէջ, աւարտած է Ներսիսեան դպրոցը և ա-

չափերտած Դորպատի համալսարանի լեզուագիտական ճիւղին։ Ուսուցչութեամբ պարապելով հանդերձ գրական գործունէութեան սկսաւ և 1858ին հիմնեց Հիւսիսափայլ հանդէսը, որ ամբողջ վեց տարի հրատարակուեցաւ՝ անհագին ազդեցութիւն առաջ բերելով ռուսահայոց ազգային և գրական կեանքին մէջ ու ժամադրավայրն հանդիսանալով իրեն գործակից աշխարհաբարի ախոյեաններուն,— Նալբանդեանի, Գամառ-Քաթիպայի և Ծահազիզի։ Հիւսիսափայլ ազատաշունչ թերթ մ'էր, որ լեզուի մշակներէն մին դարձաւ։ Նազարեանցի առաջին գրական գործերը ռուսերէն են (Հայոց գրականութեան համառօտ պատմութիւնը, 2 հատոր)։ Այնուհետեւ նա գրած է ռուսերէն և հայերէն ուրիշ կարգ մը] գիրքեր, շահեկան առաջաբաններով։ Նշանակելի է իր Հանդէս հայախօսութեանը, ընթերցանութեան դեղեցիկ հաւաքածոն։ Նազարեանց ունի նաեւ շատ մը թարգմանութիւններ։ Այս տաղանդաւոր հրապարակագիրը առաջդիմական գաղափարներով ու քննադատական սուր միտքով օժտուած գրագէտ մ'է, հաւատացող ժողովուրդի լուսաւորութեան և հայ ազգին պատմական մեծ դերին, պաշտպան կրթական գործին և հակառակորդ՝ հնութեան, պահպանողականութեան և տգիտութեան։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՄԱԼԽԱՍԵԱՆ.— Ռուսահայ ծանօթ լեզուագէտ, բանասէր և ուսուցիչ։ Ունի լեզուաբանական ու պատմական գործեր, ինչպէս Գրաբարի հոլովումը, Գրաբարի համաձայնութիւնը, Պոլիկս եւ իր վարդապետութիւնը, Սեբէոսի պատմութիւնը եւ Խորենացի, Ներսիսեան դպրոցի համառօտ պատմութիւնը եայլն։ Թարգմանած է Շէյքսփիրի Արքայ Լիրը։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՊԱԼԱՍԱՆԵԱՆ.— Ռուսահայոց լաւագոյն պատմաբաններէն մին և ուսուցիչ։ Ծնած է Ռումանիոյ մէջ։ Իր դաստիարակութիւնն ստացած է Բարիզի Մուրատեան վարժարանը։ Պալասանեան հանդիսացաւ խղճամիտ ու ձեռնհաս ուսուցիչ մը և երկար ա-

տան պաշտօն վարեց հոս ու հոն։ Աշխատակցած է Կովկասի շատ մը թերթերուն ինչպէս՝ Կռունկ, Մշակ, Մեղու Հայաստանի, Փորձ, Վարժարան եւ Արարատ, որոնց մէջ ընդհանրապէս հայ լեզուի ու գրականութեան վերաբերեալ յօդուածներ գրած է։ Իր ամենէն նշանակելի երկասիրութիւնն է Հայոց Պատմութիւնը, խնամոտ աշխատութեան արդիւնք և կոկիկ գործ։ Ս. Պալասանեանի ուսուցչական գործունէութեան 25 ամեայ յոբելեանը տօնուեցաւ 1883ին։

ՎՐԹԱՆԷՍ ՓԱՓԱԶԵԱՆ(Ապրօ).— Արեւելահայ գրականութեան փայլուն ներկայացուցիչներէն մին է ծանօթ գեղարուեստական գրող Վ. Փափազեանը։ Ծնած է Վանի մէջ, 1866ին, և երկար ատեն Կովկաս մնացած ըլլալով՝ իւրացուցած ռուսահայ լեզուն ու ոճը։ Տաղանդաւոր վիպագիր է Վրթանէս Փափազեան, մանաւանդ մանըր ու սեղմ պատմուածքներու մէջ անուանի։ Մինչեւ 1894 թիւը, Փափազեանի գրութեանց նիւթը կը կազմէր տաճկահայոց կեանքը՝ իր բոլոր տառապանքներով ու արհաւիրքներով, ընկերային ու քաղաքական բոլոր չարիքներով. բայց տակաւ առ տակաւ նա անդրադարձաւ համամարդկային նիւթերու։ Գրած է բազմաթիւ մանր պատմուածքներ, որոնց մէջ նշանաւորներն են Անազանգ. Կոյրեր, Աննա, Պատկերներ գիւղից, Ըմբոստի երգեր, Սանքո, Հողի աշխատութիւններ ևայլն։ Հանի Բէկ՝ իր վիպական գրուածքներու գլխաւորն է։ Մշակի ու Մուրճի մէջ Ապրօ ծածկանունով ունի շատ մը նամակներ՝ Տաճկահայաստանէն, Պարսկահայաստանէն, Սեւ ծովի ափերէն և եւրոպական կեդրոններէն։ Ունի նաեւ կարգ մը թարգմանութիւններ՝ Նիցշէէն (Այսպէս էր խօսում Զրադաշտը), Էրկման Շատրիանէն (Մի գիւղացու պատմութիւն) ևայլն։ Փափազեան իր գրութեանց մէջ անիրաւութեանց, զրկանքներու, բռնապետութեան և ամեն տեսակ ճնշումներու դէմ բողոքող է և ըմբոստացող։ Իր այս ձգտումին կը միանայ սահուն բայց հզօր գրիչ մը և պատմելու ընդունակութիւն, — որոնք հետաքրքրականութիւն և կենդանութիւն կուտան իր գրուածքներուն։

**ՐԱՖՖԻ** (Յակոբ Մելիք-Յակոբեան, 1835-1888). — Արեւելահայ գրականութեան ամենէն նշանաւոր եւ ժողովրդականացած դէմքն է Րաֆֆի, հայոց մեծ վիպագիրն ու յեղափոխական գաղափարի քարոզիչ հրապարակագիրը։ Ծնած է Սալմաստի Փայաջուկ գիւղը (Պարսկաստան)։ Չկայ որեւէ գրագէտ հայ որ լսած չըլլայ իր անունը եւ կամ իր մէկ կամ աւելի գործերը կարդացած չըլլայ։ Ինչ որ է Գամառ-Քաթիպա բանաստեղծութեան մէջ, նոյնն է եւ Րաֆֆի՝ վիպագրութեան մէջ, տոգորուած միեւնոյն մարտակոչ ձգտումներով եւ յեղափոխական վառվռուն զգացումներով։ Րաֆֆի ճամբորդած է Հայաստան եւ բազմաթիւ ազգագրական ու տեղագրական տեղեկութիւններ ձեռք բերած։ Իր վէպերուն մէջ դուրս կուգայ իբրեւ հիանալի ուսումնասիրող մը՝ ժողովրդային տոհմիկ բարքերու։ Րաֆֆի մուտ գործեց հայ գրականութեան մէջ՝ Մշակի միջոցաւ։ Գրիգոր Արծրունի գնահատեց զինքը եւ քաջալերեց։ Այնուհետեւ Րաֆֆի անունը կապուեցաւ Մշակի հետ։ Րաֆֆիի տարածուած եւ խանդավառիչ վէպերն ու գրութիւնները մեծ ազդեցութիւն առաջ բերած են տաճկահայերու վերածնութեան գործին մէջ։ Իր անդրանիկ գրութիւնը, *Աղթամարայ վանքը*, երեւցաւ Հիւսիսափայլի մէջ։ Մշակի մէջ նախ գրեց *Ուղեգրութիւններ Պարսկաստանում* եւ պարսկահայ կեանքէն շատ մը պատկերներ, ինչպէս՝ *Սովը*, *Կուսագրութիւն*, *Մի օրավար հող*, *Գեղեցիկ Վարթիկ*, *Անբախտ Հռիփսիմէ*, *Բիբի Շարաբանի*, *Խազ փուշը*, *Հարէմը* եւ այլն։ Ունի նաեւ Թիֆլիզի բարքերը նկարագրող պատմուածքներ, որոնք են՝ *Ոսկեայ մանձանուկի*, *Անզեղ վաճառ* եւ *Տնային փեսայ*։ Իր գրականութեան երկրորդ շրջանին Րաֆֆի թողուց մանր պատմուածքները եւ սկըսեց գրել մեծ վէպեր։ Անոնցմէ *Ջալալեդդին*, *Խենթը* եւ *Կայծեր*, բացառապէս Տաճկահայոց կեանքէն առնուած են։ *Խաչագողի Յիշատակարանը*, *Ոսկի Աքաղաղն* ու *Ղարիպ Մշեցին*՝ հայկական ընկերային կեանքի արտայայտութիւն-

ներն են, իսկ Դաւիթ Բէկ, Սամուէլ և Պարոյր Հայկազն պատմական նշանաւոր վէպերն են։ Րաֆֆիի պատմական աչքառու ուսումնասիրութիւնն է Խամսայի Մելիքութիւնները, որոնք նոր էջ մը կը պարզեն հայոց պատմութեան կարեւոր մէկ շրջանին վերաբերեալ։ Թարգմանած է՝ Կայենի կտակը և Ղարաբաղի աստղագէտը եւն։ Ցայտուն ուսումնասիրական գործ է նաև Հայ կինը եւ հայ երիտասարդութիւնը։ Րաֆֆի բեղմնաւոր գրող է և տաղանդաւոր վիպագիր։ Նա իր վէպերով տարածեց ընթերցանութիւնը, սիրցուց աշխարհիկ լեզուն և յեղափոխական ու դիւցազնական շեշտ տուաւ ստրկացած հայ ժողովուրդին։ Տաճկահայեր ռուսահայ լեզուին ծանօթացած են նախ Րաֆֆիի գործերով, որոնց մեծագոյն մասը իրենց ժամանակակից կեանքը կը ներկայացնէր։ Րաֆֆի հայ գրականութեան անմահ մշակն է։

## ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ՈՒՐԻՇ ԳՐՈՂՆԵՐ

Արեւելահայ աշխարհիկ գրականութեան դաշտին մէջ գործող այս գլխաւոր դէմքերով բաւականանալով, կ'անցնինք այբուբէնի կարգով տալ կարգ մը անուններ ալ, որոնք ունեցած են գրական գործունէութիւն։

Ա. Ա. Արարատեանց, Աբգար Յովհաննիսեանց, Ա. Բահաթրեան, Ա. Բուդաղեան, Ազարիա Դանիէլեան (Ա. Աղեկեան), Ալեքսանդր Աբելեան, Ա. Քալանթար, Ա. Խրնկոյեան, Ա. Շահնազարեան, Աշոտ Աթանասեան, Ա. Ջանեան, Արօրի, Արամ Զարըգ, Արիստակէս եպ. Սեդրակեան, Արշալոյս Մխիթարեան, Արշակ Ագայեան, Արշակ Մոճառեան, Արշակ տէր Միքայէլեան, Արշակ Օլթեցեան եւայլն։

Բ. Բագրատ Այվազեան, Բ. եպ. Գէորգեան եւայլն։

Գ. Գաբրիէլ եպ. Այվազեան, Գաբրիէլ Խատիսեան, Գալուստ տէր Մկրտիչեան, Գ. Ալթունեան, Գարեգին Ենգիբարեան, Գարեգին Լեւոնեանց, Գարեգին Խաժակ, Գարեգին Վ. Յովսէփեան, Գ. Էդիլեան, Գէորգ Բաշին-

ջաղեան, Գէորգ Բարդուխարեանց, Գ. Շէրենց, Գրիգոր Ղազարեան, Գրիգոր Եղիկեան (Վաստակունի), Գր. Վանցեան, Գ. Տէր Աղէքսանդրեան եայլն։

Դ. Դերենիկ Դէմիրչեան եայլն։

Ե. Եղիշէ Թօփչեան, Ե. Շահազիզեան, Երուանդ Վ. Տէր Մինասեան եայլն.

Է. Էմին Տէր Գրիգորեան, Էմմանուէլ Նազարեան եյն.

Ի. Իսահակ Յարութիւնեան եայլն։

Լ. Լեւոն Բաբաեան, Լեւոն Սարգիսեան եայլն։

Խ. Տիկին Խատիսեան (Տիկին Մարիսեան) եայլն։

Կ. Կ. Խատիսեան, Կ. Կոստանդեանց, Կոստանդին Մելիքշահեան (Տմբլաչի Խաչան) եայլն։

Հ. Համբարձում Առաքելեան (Շահրիար), Հայկ Տ. Աստուածատուրեան եայլն։

Ղ. Ղաչաղեցի եայլն։

Մ. Մանուկ Աբեղեան, Մատաթ Պետրոսեան, Մարգար Աւետիսեան, Մ. Արք. Սմբատեան, Բժ. Մ. Բարդուխարեան, Մ. Եկմալեան, Մեսրոպ եպիսկոպոս, Միքայէլ Մանուէլեան, Միքայէլ Յովհաննէսեան (Նար-Դոս), Միքայէլ Պատկանեան, Բժ. Միքայէլ Տէր Գրիգորեանց, Մ. Վ. Բժշկեան, Մսեր Մսերեանց, Մ. Տ. Շւոտ (Հմայեակ Արամեանց) եայլն։

Յ. Յ. Ազարաբեան, Յակոբ Կարինեան, Յ. Դաղբաշեան, Յարութիւն Եսայեան, Յարութիւն Թումանեան, Յարութիւն Ճուղուրեան, Յարութիւն Սոլովեան, Յովհաննէս Արաբաճեան, Յովհաննէս Կոստանդեան, Յովհաննէս Մալխասեան, Յովհաննէս խան Մասեհեան եայլն։

Ն. Բժ. Ն. Փուզինեան եայլն։

Շ. Շիրմազանեան եայլն։

Պ, Պետրոս Մոճոռեան, Պետրոս Սիմէոնեան եայլն։

Ջ. Աչըղ Ջիւանի եայլն։

Ռ. Ռուբէն Աբրահամեան, Ռուբէն Խան-Ազատ եյն։

Վ. Վահան Միրաքեան, Վահան Տէրեան, Բժ. Վահրամ Արծրունի, Վ. Մաթեան եայլն։

Տ. Տիգրան Նազարեանց, Տ. Նաւասարդեանց եյն։

Փ. Փառնակէս, Փ. Վարդանեան, Փուզինեան եյն։

Ք. Քերովբէ Պատկանեան եայլն։

# ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ

## (ՀԱՄԱՌՕՏ ԱԿՆԱՐԿ ՄԸ)



*Լրագրութեան դերը.— Լրագրութեան ծագումը.— Հայ լրագրութեան սկիզբը.— Անդրանիկ հայ լրագիրը.— Հայ լրագրութեան շրջանները.— Հայ լրագրութիւնը Տաճկաստանի մէջ.— Հայ լրագրութիւնը արեւելահայոց մէջ.— Լրագրական այլ կեդրոններ.— Կուսակցական մամուլ.— Կարեւոր հայ թերթեր.— Ի՞նչ կը պակսի հայ լրագրութեան։*

ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ ԴԵՐԸ.— Լուսաւորեալ երկիրներու մէջ հացի չափ անհրաժեշտ պահանջ մը է լրագիրը, որ ժողովուրդին ամենօրեայ կամ պարբերական ընթերցարանն է, և կամ մարդկային կեանքի յիշատակարանը։ Անիկա հասարակութեան առաջնորդն է, որ մամուլի բեմէն կ՚արձակէ իր խրոխտ պատգամները՝ հասարակական ամէն տեսակ խնդիրներու նկատմամբ։ Ժամանակակից մամուլը արդի քաղաքակրթութեան ոգին է։ Անիկա գլխաւոր ազդակն է քաղաքական, ընկերային, տնտեսական, գիտական և այլ առաջդիմութիւններու, արտայայտութիւնը՝ ժամանակակից միտքին և պատկերը՝ քաղաքակրթութեան։ Ամէն երկրի մէջ ալ ժողովուրդը իր աչքերը լրագիրներուն յառած՝ ամէն բան մամուլէն կը յուսայ։ Գիտութեան, գրականութեան և գեղարուեստի բոլոր ճիւղերն ալ անոր թանկագին օժանդակութեան կը սպասեն։ Պարբերական մամուլը կամ լրագրութիւնը թարգմանն է աշխարհի գործունէութեան և հետեւաբար ալ հրապարակային ոյժը՝ ընկերային կազմակերպութեան մեքենային։

ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ ԾԱԳՈՒՄԸ.— Ոմանք կը կարծեն թէ լրագրութեան ծագումը նոր է և հետեւանք սպա-

գրութեան գիւտին։ Ճիշդ է որ Կիւթէմպէրկի գիւտը մեծ մղում և զարգացում տուաւ լրագրութեան գործին և թէ առանց անոր լրագրութիւնը անկարող պիտի ըլլար ծառայել իր նպատակին, սակայն և այնպէս անիկա,— լրագրութիւնը,— շատ աւելի հին է քան տպագրութիւնը։ Ամենահին ժամանակներու մէջ Հռոմէական պետութիւնը ունէր երկու լրագիրներ։ Հռոմայեցիներէն վերջ կը տեսնենք Չինաստանը, որ քրիստոսի 336 թուականէն սկսեալ պարբերական հրատարակութիւններ ունի։ Եւրոպական երկիրներու մէջ Իտալիա առաջինն էր որ 1563ին ունեցաւ իր անդրանիկ լրագիրը, Ֆրանսա՝ 1605ին, Զուիցերիա՝ 1609ին, Գերմանիա՝ 1612-15ին, Անգլիա՝ 1622ին, Սպանիա՝ 1626ին, Շուէտ՝ 1644ին, Ռուսիա՝ 1703ին։ Զանազան երկիրներու լրագրական հին հրատարակութիւնները՝ բաղդատելով ներկայիս գոյութիւն ունեցող այլալեզու և բազմաճիւղ լրագիրներու և պարբերականներու հետ, բնականաբար այնքան խեղճ ու նախնական պիտի գտնենք առաջինները, որքան բարգաւաճ և կատարելագործեալ են վերջինները։

**ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ ՍԿԻԶԲԸ.**— Ինչպէս որ հայկական տպագրութեան օրօրանը Հայաստանի մէջ չէր, այնպէս ալ հայկական գաղթավայրերուն վիճակուած էր կարծես հայ լրագրութեան անդրանիկ ձեռնարկը։ Մենք տեսանք արդէն թէ ԺԷ. դարէն սկսեալ մեծ և նշանակելի շարժում մը ստացան գաղթավայրերու հայերը և սկսան դպրոցներով, տպարաններով ու վանքերով ժողովրրդային լուսաւորութեան գործին և հայ քաղաքակրրթութեան ծառայել։ Հնդկաստանն էր այն երկիրը, ուր հիմը դրուեցաւ հայ լրագրութեան։ Նախապէս Կալկաթայի մէջ տպագրուած կը կարծուէր անդրանիկ հայ լրագիրը, Ազդարար, սակայն ի վերջոյ ձեռք բերուած օրինակներէն հաստատուեցաւ թէ անիկա Հնդկաստանի Մատրաս քաղաքին մէջ հրատարակուած է և թէ հայ լրագրութեան ծնունդը պէտք ողջունել ԺԸ. դարու վերջին

տարիներուն մէջ, 1794ին։ Աւելորդ է ըսել թէ ԺԸ. դարը արդէն շատ արդիւնաւոր շրջան մ'էր հայ դպրութեանց և հայկական տպագրութեան համար։ Հայերը իրենց առաջին այս լրագրով, կը դառնան աշխարհիս քաղաքակրթուած ազգութիւններու մէջ տասներկուերորդ տեղը գրաւող ժողովուրդ մը, որ շատ մը ուրիշ քաղաքակրթուած ազգերէ առաջ, նոյն իսկ Ամերիկայէն ու Ցունաստանէն ալ առաջ, լրագիր ունեցած է։

ԱՆԴՐԱՆԻԿ ՀԱՅ ԼՐԱԳԻՐԸ.— Այսօր այլեւս հաստատուած և ընդունուած ճշմարտութիւն մ'է որ հայոց անդրանիկ լրագիրն եղած է Ազդարար պարբերականը։ Քահանայ մ'է Հայ Լրագրութեան հիմնադիրը. որ 1794 տարուան Հոկտ. ամսուան մէջ հրատարակած է Ազդարարը Մատրասի մէջ։ Այդ պատուական ու անմահ անձնաւորութիւնը Պարսկաստանի Շիրազ քաղաքէն Յարութիւն քահանայ Շմաւոնեանն էր։ Սա քաջալերուած Մատրասի ազգայիններուն գրասէր ընթացքէն ու ուսումնասիրական ոգիէն, տպարան բացաւ, և վերջոյ տեղւոյն անգլիացիներու հրատարակած լրագիրներէն օրինակ առնելով՝ հայերէն թերթ մը հիմնելու գաղափարն յղացաւ։ Ազդարար լոյս կը տեսնէր ամէն ամսոյ վերջերը։ Դըժբաղդաբար, հակառակ գրասէրներու կողմէ գտած բարոյական քաջալերութեան, խմբագիր քահանան հազիւ երկու տարի յաջողեցաւ շարունակել իր ամսաթերթին հըրատարակութիւնը և նիւթական պատճառներով թերթը դադրեցաւ 1796ին։ Ամսագրին մահուան հետ գրեթէ տեղի ունեցաւ առաջին հայ խմբագրին մահն ալ՝ երկուշաբաթ տարբերութեամբ, Հայոց առաջին լրագիրը բաւական կանոնաւոր կերպով խմբագրուած էր. ունէր այլեւայլ օգտակար յօդուածներէ զատ, ազգային-տեղական լուրեր, տեղեկութիւններ և նոյն իսկ առեւտրական ծանուցումներ, ոմանք գրաբար եւոմանք աշխարհաբար։ Թէեւ թերթին լեզուն գրաբար է, սակայն կան նաեւ աշխարհիկ լեզուով գրուած թղթակցութիւններ և յօդուածներ։

ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ.— Հայ լրագրութեան պատմութիւնը, որ կը սկսի 1794էն, Ազդարար ամսագրով, շատ հետաքրքրական է։ Շատ մը հայերէն թերթեր կան հրատարակուած այլեւայլ ժամանակներու մէջ՝ այլեւայլ առաջադրութիւններով։ Անոնց ուսումնասիրութիւնը, առանց շրջաններու բաժանման, շատ դժուարին պիտի ըլլար։ Հայ լրագրութիւնը զարգացման և գործունէութեան միեւնոյն աստիճանին մէջ գտնըւած չէ միշտ։ Ունեցած է բարձրացումներ և անկումներ, համաձայն բնականաբար՝ տնտեսական, ազգային, ընկերային ու քաղաքական պայմաններու փոփոխութեան։ Որպէսզի լիակատար ըլլայ հայոց պարբերական մամուլին կատարած գործին ուսումնասիրութիւնը, հարկ է մանել պատմական այն բոլոր գործօններուն ու ազդակներուն մէջ, որոնք լրագրութեան միջավայրը կազմեցին։ Իսկ սուղ էջերու մէջ միմիայն ուրուագիծ մը կրնայ տրուիլ։

Հայ լրագրութեան պատմութիւնը տուող երկու գըլխաւոր բանասէրները,— Հ. Գրիգորիս Վ. Գալէմքէրեան (1893) և Գարեգին Լեւոնեանց (1895),— շրջաններու բաժանման մէջ չեն համաձայնիր իրարու հետ։ Հ. Գ. Գալէմքէրեան չորս բաժանումներ կ'ընդունի հայ լրագրութեան պատմութեան մէջ, հետեւեալ կերպով։

ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ.— Հայ լրագրութեան սկիզբէն մինչեւ 1840, երբ հայոց պարբերական մամուլի զարգացումը շատ դանդաղ է։

ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ (1840-1860).— Հայկական կեանքին մէջ զարթօնք մը կը նշմարուի, նորանոր թերթեր կ'երեւին և հայ լրագրութեան մէջ համեմատական աճում մը և գործունէութիւն մը կ'երեւայ։

ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (1860-1875).— Լրագիրները կը շատնան. գրական նոր հայեացքներ ի յայտ կու գան հրապարակագրութեան մէջ.

ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (1875-1893).— Հայ լրագրութիւնը կը գտնուի իր առուգութեան մէջ։

Հաւանաբար Հ. Գ. Գալէմքէրեան հինգերորդ շրջան պիտի նկատէր 1898-1913 ժամանակամիջոցն ալ, եթէ այսօր գրէր իր պատմութիւնը։

Գարեգին Լեւոնեանց սակայն այդ կերպով չի զատեր հայ լրագրութեան շրջանները(1)։ Անիկա տասնամեակ-

(1) Գարեգին Լեւոնեանի այս նիւթին վրայ խօսող բազմաշխատ գործն է ՀԱՅՈՑ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ, Պատմական տեսություն, Ըսկզբից մինչև մեր օրերը (1794-894), ընդարձակ ծանօթություններով, 1895, Ալեքսանդրապոլ։ Մենք ո՛չ միայն կը հետեւինք իր գծած շրջաններուն, այլեւ լիուլի կ'օգտուինք իր գործէն, այս գլուխին պատրաստութեան մէջ։

ներու կը վերածէ հայոց պարբերական մամուլի գործունէութիւնը, և անոնց իւրաքանչիւրը կը ներկայանէ ճոխ ծանօթութիւններով, խղճամիտ մանրամասնութիւններով և գլխաւոր լրագրողներով։ Կ'ամփոփենք իր գործը։

Ա. ՇՐՋԱՆ (1794-1800). — Հայ լրագրութեան հիմը դրուեցաւ Հնդկաստանի մէջ։ Այս վեցամեայ շրջանին մէջ ունեցած ենք միայն մէկ լրագիր. — Ազդարար։ Նշանաւոր գործողն է Յարութիւն քահանայ Շմաւոնեան։

Բ. ՇՐՋԱՆ (1800-1810). — Այս Բ. շրջանին մէջ ունեցան 3 հայ պարբերական հրատարակութիւններ, որոնք են՝ Տարեգրութիւն, Եղանակ Բիւզանդեան և Յիշատակարան։ Այս ատենամիջոցին մէջ լրագրութիւնը Վենետիկի մէջ ալ սկսաւ։ Գլխաւոր գործողն է Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան։

Գ. ՇՐՋԱՆ (1810-1820). — Այս շրջանին մէջ միայն մէկ ծանօթ պարբերական ունեցած ենք, — Դիտակ Բիւզանդեանը, — Վենետիկ։ Գործող Հ. Մանուէլ Վ. Ջախջախեան։

Դ. ՇՐՋԱՆ (1820-1830). — Հայոց մէջ լրագրութեան գործը ջլատուեցաւ 1820ական թուականներուն։ Բացի Կալկաթա հրատարակուած Հայելին, ուրիշ թերթ չունեցանք։

Ե. ՇՐՋԱՆ (1830-1840). — Այս շրջանը նշանաւոր է անով որ տաճկահայ լրագրութիւնն սկսաւ։ Ի բաց առեալ ուրիշ տեղեր, Կ. Պոլսոյ մէջ հրատարակուեցաւ Լրոյ գիր մեծի Տէրութեան Օսմանեան թերթը։ Լրագրութեան մէջ ամերիկացի միսիոնարները ունեցան ճարպիկ գործունէութիւն։ Չորս լրագիրներ կան. (Շտեմարան, Կալկաթա, Լրագիր, Կ. Պոլիս, Շտեմարան պիտանի գիտելեաց, Իզմիր, միսիոնարական հրատարակութիւն)։

Զ. ՇՐՋԱՆ (1840-1850). — Տասնըչորս լրագիր կայ այս շրջանին մէջ։ Ռուսահայոց պարբերական մամուլը կը հիմնուի Կովկաս լրագրով։ Տաճկաստանի լրագրութիւնը կանոնաւորուած է։ Այս ատենամիջոցին լրագրական ասպարէզին մէջ նշանաւոր գործողներն էին՝ Մեսրոպ Թաղիադեանց, Յովհաննէս Տէրոյենց, Ղուկաս Պալդազարեան, Յակոբ Կարինեան, Միքայէլ Պատկանեան,

միսիոնարներ, բողոքական քարոզիչներ և Վենետիկի Մխիթարեան միաբանութիւնը։ Հրատարակուած են 14 թերթեր, որոնք են, Արշալոյս Արարատեան, Ազդարար Բիւզանդեան, Բազմավէպ, Հայրենասէր, Աւետաբեր, Ազգասէր, Կովկաս, Սուրհանդակ Կ. Պոլսոյ, Հայաստան, Եւրոպա, Ցայտարար գիր շրջ, Սուրհանդակ Բիւզանդեան, Բանասէր, Ուսումնասէր, Օճաքափիռեան և Աւետ Հայաստանի։

Է. ՇՐՋԱՆ (1850-1860).— Հայ լրագրութեան գործըն հետզհետէ տարածուեցաւ Ռուսաստանի, Ֆրանսայի և Հայաստանի կեդրոններուն մէջ։ Կ. Պոլիսն ու Թիֆլիսը կ'ընդարձակէին իրենց գործունէութիւնը։ Ունեցած ենք 25 լրագիրներ, որոնց գլխաւորներն են՝ Արարատ, Բանասէր, Մասիս, Արփի Արարատեան, Արծուի Վասպուրականի, Մասեաց Աղաւնի, Աւետիք, Երեւակ, Մեղու, Հիւսիսափայլ, Եւրոպա, Արեւմուտք և այլն։ Այս շրջանին լրագրական ասպարէզին մէջ նշանաւոր գործողներն են՝ Մկրտիչ վարդապետ Խրիմեան, Կարապետ Իւթիւճեան, Գաբրիէլ քահանայ Պատկանեան, Մսեր Մագիստրոս Մսերեանց, Ստեփան քահանայ Մանդինեանց, Գաբրիէլ Եպիսկոպոս Այվազովսկի, Ստեփաննոս Նազարեանց, Յարութիւն Սվաճեան և այլն։

Ը. ՇՐՋԱՆ (1860-1870).— Այս շրջանը հայ լրագրութեան ամենէն փայլուն շրջաններէն մէկն է։ Թերթերու աճումն ու զարգացումը զգալի է պարզապէս։ Մանաւանդ Տաճկաստանի ու Կ. Պոլսոյ մէջ տասնեակներով նոր թերթեր կան հրատարակուած։ Ամբողջ 45 նոր թերթեր կան, որոնց կարեւորներն են՝ Կռունկ, Փունջ, Կիլիկիա, Ծաղիկ, Հայկական աշխարհ, Արծուիկ Տարօնոյ, Միօն, Արարատ, Օրագիր և այլն։ Նշանաւոր լրագրական գործողներն են՝ Գարեգին Վ. Սրուանձտեանց, Խորէն Վ. Ստեփանէ, Մարկոս Աղաբէկեան, Համբարձում Ալաճաճեան, Օգսէն Խօճասարեան, Մխիթարեաններ, Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի հայ միաբանութիւնը և այլն։

Թ. ՇՐՋԱՆ (1870-1880).— Բաղդատմամբ նախորդ

տասնեամեակին, այս շրջանը բեղուն չէ, բայց լրագրութիւնն աւելի հասունցած է։ Կը քարոզէ ժողովուրդին, կը կրթէ հասարակութիւնը, զայն կ'առաջնորդէ որոշ ձգտումներու։ Քաղաքական փոփոխութիւնները, տնտեսական, ընկերային ու քաղաքակրթական պայմանները ժողովուրդը գիտակցութեան կը բերեն հետզհետէ։ Այս շրջանին մէջ հրատարակուած են 21 թերթեր, որոնց աչքառուներն են՝ Ցոյս, Հայրենիք, Երկրագունդ, Արեւելեան Մամուլ, Մշակ, Դպրոց, Նոր Դար, Լոյս, Փորձ, Մանկավարժական թերթ և այլն։ Լրագրական գլխաւոր գրողներն են՝ Հմայեակ Եպ. Դիմաքսեան, Վահան Վ. Բաստամեան, Զարմայր Մսերեան, Մատթէոս Մամուրեան, Գրիգոր Արծրունի, Աբգար Յովհաննիսեան և այլն։

Ժ. ՇՐՋԱՆ (1880-1890). — Հայ դրականութիւնը 80 ական թուականներուն մէջ ծաղկեցաւ ու բարգաւաճեցաւ։ Պարբերական մամուլն ալ սկսած է առաջդիմել արագ արագ. պէտքը շատ է ամեն կողմ և պահանջը մեծ։ Ժողովուրդը լրագիր կը կարդայ այլեւս եւ նորութիւններ կը փնտռէ։ Հասարակական ամեն մէկ գործունէութիւն լրագրութեան նիւթ կը դառնայ։ Շատ մը գնահատելի պարբերականներ սկսան հրատարակուիլ։ Հիւսիսափայլի և Մեղու Հայաստանի օրով սաեղծուած կուսակցութիւնները այս տասնամեակին մէջ մարմին առին, որոշ դոյներ առացան։ Աղատականներու և պահպանողականներու պայքարը ամեն դասակարգերու պատկանող մարդիկ ալ կը հետաքրքրէ հիմա։ Քաղաքական, գիտական, մանկավարժական, մանկական և այլ ծրագիրներով հրատարակուող հայ թերթերը յեղաշրջեցին հայ հասարակութեան կեանքը և զայն դրին առաջդիմական նոր շաւիղի մը մէջ։ Այս շրջանին մէջ 44 նոր լրագիր ունեցանք Տաճկաստանի, Ռուսաստանի և Կովկասիոյ ու արտասահմանի մէջ։ Ատոնց գլխաւորներն են՝ [illegible], Բիւրակն, Արձագանգ, Դրակն եւ իմաստասիրական շարժում, Վարժարան, Բուրաստան Մանկանց, Աղբիւր, Երկրագունդ,

Նոր Դար, Արեւելք, Խիկար, Արմենիա, Ծաղիկ, Հանդէս Ամսօրեայ, Հնչակ, Արաքս, Հայաստան, Մուրճ, Սուրհանդակ եայլն։ 1880-90 լրագրական նշանաւոր գործիչներն են՝ Բիւզանդ Քէչեան, Աբգար Յովհաննիսեան, Յովհ. Փալագաշեան, Սպանդար Սպանդարեան, Աւետիս Արասխանեան. Մ. Փորթուգալեան, Աւետիս Նազարբէկեան, Հ. Ս. Տէրվիշեան, Վիէննայի Մխիթարեանները եայլն։

ԺԱ. շրջան (1890-1900).— Այս շրջանը թէեւ առաջին տարիներու մէջ լրագրութեան աճում մը ցոյց չի տար, սակայն 1894 էն վերջ լրագրական նոր գործունէութիւն մը կը սկսի, մանաւանդ արտասահմանի մէջ, ուր հայ կուսակցութիւններ իրենց օրգանները կ՚ունենան և կամ Տաճկաստանէն փախած բազմաթիւ գրագէտներ ու յեղափոխական անհատներ իրենց անհատական ջանքերով թերթեր կը հիմնեն։ Տաճկաստանի մէջ մամուլը կ՚իյնայ բոլորովին և գրաքննութիւնը կը ճզմէ գրական բոլոր ձեռնարկները։ Լրագիրները գունատ են բոլորովին և 1895էն ետքը մամուլը գրեթէ ոյժ չի ներկայացներ և ճշմարտութեան արձագանգ չըլլար։ Այս շրջանը պոլսահայ լրագրութեան համար մանաւանդ՝ բեղմընաւոր է։ Նշանաւոր գործիչներն են՝ Յովհաննէս Բարդուխարեան, Արփիար Արփիարեան, Լեւոն Բաշալեան, Արշակ Չօպանեան, Երուանդ Օտեան, Արամ Անտոնեան, Տիգրան Արփիարեան եայլն։ Հրատարակուած գլխաւոր թերթերն են՝ Տարազ, Պատկեր, Դրօշակ, Հայք, Անահիտ, Նոր Կեանք, Հանրագիտակ, Բիւզանդիոն, Սուրհանդակ, Մանզումէի Էֆքեար (հայերէն), Շիրակ, Բանասէր, Ձայն Հայրենեաց, Իրաւունք, Շարժում, Լոյս, Հայրենիք եւն.։

ԺԲ. ՇՐՋԱՆ (1900-1913).— Հայ լրագրութեան ոսկեդարն է այս շրջանը։ Հայ ժողովուրդին օր աւուր աճող հետաքրքրութենէն զատ՝ Ռուսական և Օսմանեան երկիրներու մէջ Սահմանադրութիւն հրատարակուելուն հետեւանքով ռուսահայ և տաճկահայ բազմաթիւ թերթեր հիմնուեցան ամեն տեղ։ Մինչեւ 1905 արդէն իսկ մեծ թա-

փով առաջ կը տարուէր լրագրական գործը Ռուսաստանի մէջ։ 1905 էն Սահմանադրութիւն յայտարարուեցաւ և անա սկսան լրագիրներ հրատարակուիլ մանաւանդ Կովկասի մէջ։ Նոյն երեւոյթը տեսնուեցաւ նաեւ Տաճկաստանի մէջ՝ Օսմ. Սահմանադրութեան յայտարարութեան թուականէն (1908) անմիջապէս վերջ։ Ճիշդն ըսելով սունկի պէս կը բուսնէին թերթերը։ Հետզհետէ սակայն երբ թերթ հրատարակելու գործը «արգիլեալ պտուղ» ի բնոյթէն հեռացաւ, շատ մը թերթեր չկրցան շարունակուիլ, և հիմա հետզհետէ հրապարակին վրայ կը մնան անոնք միայն, որոնք նիւթական տեսակէտով կրնան ապրիլ։ Այս շրջանին մէջ հրատարակուած գլխաւոր նոր թերթերը կարելի է համարել, Ապագայ, Յառաջ-Հորիզոն, Երիտասարդ Հայաստան, Ազգ, Ասպարէզ, Դաշինք, Ազատամարտ, Ժամանակ, Նոր Աշխարհ, Յառաջ, Նոր Այգ, Հայկունի, Եփրատ, Աշխատանք, Բժիշկ, Կոհակ, Մարմնամարզ, Տաճար Ոստան, Վանտոսպ, Բողբոջ, Նոր դպրոց, Արօր, Լուսարձակ, Գիտութիւն եւն։ Ներկայիս մէջ քաղաքական կեանքն այնքան փոթորկալից և անակնկալներով լի է որ մի՛այն լրաթերթերն են որ յաջողութիւն կը գտնեն։

**ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ ՄԷՋ.**— Տաճկաստանի հայ ժողովուրդը մտաւորական գործունէութեան մէջ միշտ առաջընթաց ըլլալ ուզած է։ Տաճկահայ լրագրութիւնն ալ իր տպագրութեան պէս՝ աւելի՛ հին է, քան արեւելեան հայերունը։ Առաջին տաճկահայ լրագիրն է Լրոյ գիր մեծի տէրութեանն օսմանեան (շաբաթաթերթ), որ նախապէս թուրքերէն հրատարակուող Թագվիմը Վէգայիին յաջորդած էր։ Լրագիր հրատարակելու ընդհատ փորձեր ըլլալէ վերջ՝ բողոքական միսիոնարներու Շտեմարանը, Դիտակ Բիւզանդեանը և Ազդարար Պօլսոյն եւս տեւականութիւն չունեցան։ Իզմիրի մէջ Ղուկաս Պալթազարեան իրաւ է թէ 1840 ին հիմնեց Արշալոյս Արարատեանը, որ կարեւոր դեր գրաւեց, սակայն, ԺԹ. դարու տաճկահայոց նշանաւոր դէմքերէն Յովհաննէս Տէրոյենցի վե-

ճակուած էր առաջին կանոնաւոր լրագրին հրատարակութեան գործը։ Տէրոյենց 1846 ին սկսաւ հրատարակել Հայաստանի Թերթը՝ աշխարհաբար լեզուով, Պատրիարքարանի հովանիին տակ։ Այնուհետեւ արդէն լրագիրները բազմացան, մանաւանդ 50 ական թուականներու երիտասարդ գործիչները նոր հոսանքներ բերին և տաճկահայ լրագրութիւնը հետզհետէ բարգաւաճեցաւ։ Այժմ տաճկահայերն ունին վեց օրաթերթեր, մէկ երկօրեայ լրագիր և շատ մը շաբաթաթերթեր, ամսաթերթեր ևայլն։

ԼՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԿՈՎԿԱՍԻ ՄԷՋ.— Առաջին հայ լրագիրը, որ հրատարակուած է ռուսահայերուն մէջ, Կովկաս շաբաթաթերթն է, խմբագրութեամբ Յակոբ վարժ. Կարինեանի և Միքայէլ Պատկանեանի։ 1846 ին սկսաւ հրատարակութիւնն այս թերթին, որուն շուրջն հաւաքուեցան անմիջապէս ժամանակակից հայ գրողները։ Կովկաս կը խմբագրուէր գրաբար լեզուով և աւելի պաշտօնական տեղեկութիւններ կը պարունակէր։ Մէկուկէս տարիի չափ հրատարակուեցաւ, ու վերջապէս «անխուսափելի» նիւթական պատճառներով դադրեցաւ։ Այնուհետեւ Գաբրիէլ քահանայ Պատկանեան Թիֆլիզի մէջ 1850 ին հիմնեց Արարատ շաբաթաթերթը, կրօնական ուղղութեամբ և աշխարհաբար լեզուով։ Ոչ Կովկաս և ո՛չ ալ Արարատ բան մը գրած են Եւրոպայի նոյն ատենի կարեւոր անցքերուն մասին։ 1858 ին Մեղու Հայաստանին և Հիւսիսափայլը, 1859 ին՝ Ճռաքաղը, 1860 ին՝ Կռունկը՝ և Մասեաց Աղաւնին յաջորդեցին Կովկասահայ անդրանիկ այդ թերթերուն։ Ասոնցմէ միայն Ճռաքաղն էր որ գրաբար կը գրուէր, միւսները առհասարակ աշխարհաբար լեզուով կը հրատարակուէին։ Ասոնց մէջ ամենէն մեծ դեր կատարողը Հիւսիսափայլն էր, որ գործունէութեան բոլորովին նոր ուղի մը գծեց։ Վերջապէս շատցան հետզհետէ հայ թերթերը և մտաւորական զգալի առաջդիմութիւն ստեղծուեցաւ Ռուսաստանի հայոց մէջ։ Այժմ ռուսահայերն ունին երկու օրաթերթ և բազմաթիւ շաբաթաթերթ ու հանդէսներ։

ԼՐԱԳՐԱԿԱՆ ԱՅԼ ԿԵԴՐՈՆՆԵՐ .— Տաճկաստանէն և Ռուսաստանէն զատ լրագրական կեդրոններ ունեցած ենք Եւրոպայի ու Ամերիկայի մէջ և աշխարհի ամեն կողմը։ Այլեւայլ ժամանակներու մէջ զանազան թերթեր հրատարակուած են նաեւ՝ Հնդկաստան (Կալկաթա, Մատրաս և Պոմպէ), Սինկափուր, Իտալիա (Վենետիկ), Աւստրիա (Վիէննա), Ֆրանսա (Բարիզ և Մարսիլիա), Անգլիա (Լոնտոն և Մանչեսթըր), Զուիցերիա (Ժընէվ և Լօզան), Յունաստան (Աթէնք), Պուլկարիա (Վառնա, Ռուսճուգ, Ֆիլիպէ ևլն), Եգիպտոս (Աղեքսանդրիա և Գահիրէ), Պարսկաստան (Դաւրէժ), Ամերիկա (Նիւ եորք, Պօսթըն, Ֆրէզնօ) ևայլն։ Տաճկաստանի կոտորածներէն վերջը մանաւանդ, երբ արտասահմանեան հայ գաղութները կազմակերպուեցան՝ թերթերն ալ շատցան անոնց հետ։ Հինէն ի վեր հայ թերթերը մեծ դեր կատարած են հայկական գաղութներու մէջ և գաղթականներուն մէջ ազգային զգացումը վառ պահած։

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ .— Արտասահմանի լրագրական գործունէութեան մէջ ամենէն մեծ և կարեւոր տեղը պէտք է բռնէ անշուշտ կուսակցական մամուլը, որ իր պաշտօնական և անպաշտօն լրագրական հրատարակութիւններով թէեւ կուսակցական տեսակէտներու հետապնդութեան նուիրուած է աւելի, սակայն և այնպէս չդադրիր ըլլալէ մեծագոյն ազդակը գաղութներու մտաւորական գործունէութեան և զարգացման ու բարգաւաճման։ Այս հայեցակէտով Հնչակեան, Դաշնակցական, Վերակազմեալ Հնչակեան կամ Սահմանադիր - Ռամկավար կուսակցութիւններ մատուցած են նշանակելի ծառայութիւններ։ Աւելորդ կ՚ըլլայ հոս մի առ մի յիշել իրենց օրկանները, որոնք միշտ արծարծած են ապազգայնացման փորձութեան մէջ ինկալու ենթակայ հայ գաղթականներու մէջ՝ հայրենիքի սէրը, ազգային ոգին և հասարակական պարտականութեան գաղափարը։

ԿԱՐԵՒՈՐ ՀԱՅ ԹԵՐԹԵՐ .— Մէկ կողմ թողելով պահ մը այն թերթերը, որոնք ասուպներու նման եկած

ու անցած են լրագրական հորիզոնին վրայէն, կ՚արժէ նկատել որ հայ լրագրութեան պատմութիւնը կուտայ անունները կարգ մը թերթերու, որոնք հսկայական ծառայութիւններ մատուցած են հայ մտքին, հայ գրականութեան ու հայ կեանքին։ Նկատի չունենալով այն թերթերը, որոնք մինչև այսօր ալ կը հրատարակուին, հոս կը թուենք նշանաւոր հայ պարբերականները. Անահիտ, Արարատ, Արևելք, Արևելեան Մամուլ, Արևմուտք, Արձագանգ, Արմենիա, Աւետաբեր, Բազմավէպ, Բանասէր, Բիւզանդիոն, Բուրաստան մանկանց, Բիւրակն, Դրօշակ, Ծաղիկ, Հայաստան, Հանդէս Ամսօրեայ, Հիւսիսափայլ, Հնչակ, Մասիս, Մեղու Հայաստանի, Մշակ, Նոր Դար, Տարազ, Օրագիր և այլն։

ԻՆՉ ԿԸ ՊԱՐՏԻՆՔ ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ.— Մեր մէջ մանաւանդ լրագրութիւնը գրականութեան և զարգացման տեսակէտով մեծ նշանակութիւն ունի։ Մեր շատ մը նշանաւոր գրիչները լրագրութեան մէջ մարզուած են և շատ մը լաւ արտադրութիւններ՝ լրագրութեան մէջ հրատարակուած։ Հայկական մշակոյթին մէջ հայ լրագրութիւնը աւելի քան գնահատելի դեր ունի։ Անիկա հայ ժողովուրդը լուսաւորած է և նորագոյն գաղափարներու ու հոսանքներու ընտանեցուցած։ Հայ մատենագիրներու չափ ալ հայ խմբագիրներու երախտագիտութիւն կը պարտինք։



# ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

## (ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ ՄԸ)



*Տպագրութեան գիւտը.— Հոլլանդական տպագրութեան սկիզբը.— Հայ տպագրութեան երախայրիքները.— Աբգար Դպիր և իր տպագրութիւնը.— Հոլլանդական տպագրութիւնը ԺԷ. դարուն մէջ.— ԺԸ. դար, ԺԹ. դար եւ մեր օրերը։*

*ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԳԻՒՏԸ.—* ԺԵ. դարը Եւրոպայի իմացական վերածնութեան շրջանն էր։ Գրականութիւն, գեղարուեստ և գիտեր քաղաքակրթական հորիզոն մը բացած էին մարդկութեան համար։ Միջին դարու հազարամեայ թմբիրը վերջ գտած էր ու դարուն մտաւորականութիւնը զարթած։ Եւրոպական բոլոր առաջադէմ երկիրներուն մէջ ընդհանուր շարժում մը կար, ստեղծագործ գործունէութիւն մը, որ ամէն կողմ իր գոյութիւնն զգալի կ'ընէր։ Բայց դարուն ամենամեծ յեղաշրջութիւնը Տպագրութեան Գիւտին վերապահուած էր կարծես։ Ան էր որ ճշմարիտ վերածնութիւնը կը ստեղծէր և մարդկային միտքին լոյս կուտար։ Առանց անոր՝ մարդկային փորձառութիւնները ձեռագիրներու մէջ պահուած պիտի մնային տակաւին և անկարող՝ արտագրուելու և բազմաթիւ օրինակներով տարածուելու. մինչդեռ տպագրութիւնը գործը կ'արագացնէր, գիրքը կը ժողովրդականացնէր և ամբողջ մարդկութիւնը մտաւոր եղբայրակցութեան կապով մը իրարու կը մօտեցնէր։

Տպագրութեան հրաշալի գիւտը կը պարտինք գերմանացի Յոհաննէս Կիւթէմպէրկի, որ շարժական տառերու գաղափարին յղանալով՝ զայն կիրարկեց Մայանսի մէջ առաջին անգամ և աշխարհի հսկայական մտաւոր յեղափո-

խութիւնը յայտարարեց։ Կիւթէմպէրկ, որ ապրեցաւ 1397-1468 տարիներուն մէջ, երկար ժամանակ տպագրութեան կատարելագործութեան աշխատած էր արդէն։ Վերջապէս 1456ին աւարտեց Աստուածաշունչի մը տպագրութիւնը, շարժական տառերով։ Տպագրութեան գաղափարը նոր բան մը չէր, որովհետեւ փայտէ կաղապարներու միջոցաւ պատկերներու և կամ ուրիշ մանր մունր գիրքերու տպագրութիւններ կատարուած էին Եւրոպայի մէջ ԺԵ. դարուն սկիզբները։ Ասիկա, որ փայտագրութիւն (Xylography) կ'ըսուի, հին դարերէ ի վեր Չինաստանի մէջ կը գործածուէր և տակաւ ալ Գերմանիոյ, Հոլանտայի և Վենետիկի մէջ մուտ գտած էր, Այս տպագրութիւնը սակայն ունէր շատ մը անպատեհութիւններ, որովհետեւ՝ 1. Գիրերն անշարժ էին, 2. Պատրաստութիւնը դժուար էր, և 3. Մեծածախս էր։ Կիւթէմպէրկի շարժական տառերու տպագրութեան գիւտը ահաւասիկ եկաւ անհուն դիւրութիւններ տալ իմացական աշխարհին։

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ՍԿԻԶԲԸ.— Տպագրութիւնը արագութեամբ տարածուեցաւ Եւրոպայի ամէն կողմերը և ստացաւ մեծ զարգացում։ Գրեթէ կէս դարու ընթացքին մէջ ինը տասը քաղաքակրթուած երկիրներու մէջ տպագրութիւն հաստատուած էր։ Իտալիա ևս, իբրև իմացական վերածնութեան օրրան և ընդունակ երկիր, շուտով իւրացուց Կիւթէմպէրկի գիւտը։ Կարճ ժամանակի մէջ իտալական քանի մը քաղաքներ օժտուեցան մամուլով։ Բայց Վենետիկ մասնաւորաբար առաջնակարգ դիրք ունեցաւ տպագրութեան տեսակէտով, որովհետեւ ամբողջ արեւելքի վաճառականութիւնը կը կեդրոնացնէր. ունէր աշխարհագրական և քաղաքական նպաստաւոր դիրք, մեծ բարգաւաճում և արուեստագիտական զարգացում։ Շուտով Վենետիկի մէջ տպագրութիւնն ընդհանրացաւ և տպարաններն իրարու յաջորդեցին, այնպէս որ տպագրութեան գիւտէն 25 տարի վերջ 200է մօտ տպարաններ կային հաստատուած։

Եւրոպայէն եկած և կամ Արևելքէն հոն ապաստանած ամեն ազգեր կը ջանային իրենց լեզուով տպագրութիւններ կատարել։ Տեսակ մը համաշխարհային կեդրոն դարձած էր։ Հայերը Ռուբինեանց շրջանէն ի վեր մանաւանդ՝ յարաբերութիւններ ունէին Վենետիկի հետ, և հոն հաստատուած գաղութ մըն ալ կար. ուստի անբընական պիտի ըլլար անշուշտ, եթէ, իբրև արևելքի արւամիտ և ընդունակ ցեղերէն մէկուն զաւակները, չուզէին իրենց բաժինն ունենալ տպագրական արուեստին այս ընդհանուր ծաւալման մէջ։

ԺԶ. դարուն սկիզբը, 1512 թուականին, սկիզբ կ'առնէր Հայկական Տպագրութիւնը, այս պարագաներուն տակ, Վենետիկի մէջ։ Մէկ տարուան ընթացքին մէջ հինգ հատ հայերէն գիրքեր կը հրատարակուին։ Այժմ մեր ձեռքը գտնուած տպագիր անդրանիկ հայ գիրքերն այդ ցոյց կուտան։ Բայց ո՞վ է տպագրիչը. ի՞նչ ազգի կը պատկանի, ո՞ւրտեղացի է.— այս հարցերուն պատասխան չկար. այն նշանը, որ D. I. Z. A. գրերը կը պարունակէ կլոր շրջանակի մը մէջ և Վենետիկ տպագրուած հայերէն առաջին հինգ գիրքերուն վրայ ալ կը գտնուի, և ոչ ալ այն յիշատակարանը, որ անոնցմէ մէկուն մէջն է և կ'ըսէ թէ գործը Մեղապարs Յակոբի գործըն է և կարդացողը թող թողութիւն խնդրէ անոր համար։ Ահա պաշտելի անձ մը, որուն անհուն երախտագիտութիւն ունենալով հանդերձ լաւ չենք ճանչնար դըժբաղդաբար։ Հարկ կա՞յ արդեօք ըսել թէ հայկական տըպագրութեան սկզբնաւորութիւնը ո՛րքան դժուար բան էր, և հետևաբար ալ ո՛րքան աւելի մեծ է այն ծառայութիւնը, զոր հայոց անդրանիկ տպագրիչը մատուցած է հայկական դպրութիւններուն։

*ՀԱՅ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ՆՐԱԽԱՅՐԻՔՆԵՐԸ.*— Վենետիկի մէջ 1512-1513 թուականներուն D. I. Z. A. տըպարանին կողմէ հրատարակուած գիրքերը ծանօթացնենք համառօտակի։

1. ՊԱՐԶԱՏՈՒՄԱՐ.—Սա առաջին տպագրուած հայերէն օրացոյցն էր, որ ցոյց կու տար եկեղեցական տօները։ Ունէր նաւագացոյցի և մարմնախտաղացի բաժիններ՝ նախապաշարումներով և գուշակութիւններով։

2. ՊԱՏԱՐԱԳԱՏԵՏՐ (Խորհրդատետր Ս. Պատարագի).— Հայ Եկեղեցւոյ մէջ գործածելու յատուկ ծանօթ գործ մը։

3. ՈՒՐԲԱԹԱԳԻՐՔ.— Ասիկա տեսակ մը բժշկարան էր, որ կու տար սատանաներ ու դեւեր հալածող զօրաւոր աղօթքներ, երդմնեցուցչութիւններ, չար ճագարէ ազատող ու պահող հմայքներ, աղօթքներով բժշկուելու խրատներ, գուշակութիւններ և այլն։ ԿԻՊՐԻԱՆՈՍ անուն աղօթագրքին աղօթքներէն մէկ քանին ասկէ առնուած են։

4. ԱՂԹԱՐՔ.— Միեւնո՛յնն է գրեթէ աս ալ, բժշկարան, միայն ունենալով վիճակի ու բաղդի գուշակութիւններ, բարի և չար օրերու ցուցակներ՝ լուսնի թիւերով, երազներու բացատրութիւն, երկրաշարժի մեկնութիւն և այլն։

5. ՏԱՂԱՐԱՆ.—Հաւաքածոյ մը միջնադարեան հայ երգիչներու տաղերուն։ Գլխաւորաբար Յովհաննէս Թլկուրանցիի երգերը կը պարունակէ։

ԱԲԳԱՐ ԴՊԻՐ ԵՒ ԻՐ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆԸ.— Մինչև վերջերս այնպէս կը կարծուէր թէ Եւդոկիացի Աբգար Դպիրն էր առաջին հայ տպագրիչը։ 1545ին Վենետիկ տպուած Սաղմոսարան մը այդ ենթադրութեան հասցուցած էր բանասէրները։ Բայց նոր հետազօտութիւններ և գտնուած աւելի հին տպագրութիւններ հերքեցին այս կարծիքը և առաջնութիւնը տուին Յակոբին, որ Վենետիկի մէջ 1512-1513ին տպագրած էր Պարզատումարն ու վերը յիշատակուած միւս չորս գիրքերը։

Հայերը իրենց թշուառութիւններուն մէջ միշտ օժանդակութիւն կը սպասէին Արեւմուտքէն՝ իրենց վիճակին բարուոքման համար։ Խաչակիրներու շրջանին ալ արդէն սերտ յարաբերութիւն ունեցած էին Վատիկանի և արեւմտեան արքունիքներուն հետ։ Մահմետական տիրապետութենէն վերջ, երբ Հայաստան պարսից ու թուրքերուն հըպատակ էր, կրկին Արեւմուտքի դիմում ընել յարմար նկատուեցաւ։ Հրաժարեալ կաթողիկոս Միքայէլ Սեբաստացի Եւդոկիացի Աբգար Դըպիրը Հռոմ ղրկեց՝ իր Սուլթանշահ տղուն և Աղեքսանդր քահանային հետ, որպէսզի Պապին յիշեցնէր Եւրոպայի խոստումը՝ Արեւելքի քրիստոնեաներուն ազատագրութեանը համար, իմանար թէ արեւմտեան քրիստոնեաները ի՞նչ կը խորհէին հայոց համար, հայոց փրկութեան գործին համար Պապը համոզել ջանար և միջնորդ ըլլար՝ Հռոմի Պապին և Հայոց Հայրապետին միջև տեսակցութիւն մը կարգադրելու։ Աբգար ներկայացաւ Պիոս Դ. Պապին (1564) և շատ տաք ընդունելու-

թիւն գտաւ, սակայն Կրօնական Բարեկարգութիւնը (Reformation,) որ ցնցած էր Հռոմի գահը, Պապն անկարող կը դարձնէր՝ հայոց օգնելու։ Աբգար Հռոմէն Վենետիկ կուգայ՝ հաւանաբար քաղաքական նպատակաւ, և հոն բնականաբա՞ր կը հետաքրքրուի տպագրութեան արուեստով։ Պոլիս դարձին տաճկահայոց առաջին տպարանը կը հաստատէ հոն։ Կրնայ հարց ծագիլ թէ ինչո՞ւ Աբգար Դպիր Վենետիկ չհաստատեց իր տպարանը։ Պատասխանը պարզ է.— որպէսզի Վատիկանի հսկողութենէն ազատ ըլլայ և ուղղակի Հայ Եկեղեցիին ծառայէ։

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԺԷ. ԴԱՐՈՒ ՄԷՋ. — Ամբողջ ԺԶ. դարուն մէջ, 1512էն յետոյ՝ հայերէն միմիայն ինը գիրք տպագրուած է։ Բայց ԺԷ. դարուն, երբ հայ գաղութները զարգանալու վրայ էին, կը սպասուէր մտաւորական շարժում մը։ Դարուն առաջին կէսին քանի մը պատահական տպագրութիւններ միայն կ'ըլլան Լեհաստանի Իլվով քաղաքին, Հռոմի, Միլանի ու Բարիզի մէջ, իսկ բնաշխարհը կը լռէ՝ մոռցած բոլորովին գիր, գիրք ու գրականութիւն։ Բայց ահա Սիւնեաց Տաթեւի վանքին, Բաղէշի Ամրտոլու վանքին ու Նոր Ջուղայի մէջ իմացական շարժում մը և ուսումնական գործունէութիւն մը սկսաւ։ Հայ կղերին մէջ գտնուած էին դէմքեր, որոնք հետաքրքրուած էին արդէն տպագրութեան արուեստով՝ կրօնական-եկեղեցական տեսակէտով։ Գրական գործիչներն ալ տարբեր հայեցակէտներով տպարանի նշանակութիւնը կ'ըմբռնէին։ Ջուղայի առաջնորդը Խաչատուր Կեսարացի՝ Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքը գրական և կրթական ծաղկեալ կեդրոն մը դարձուց և ձեռնարկեց տպարանի կազմակերպութեան։ Վերջապէս 1640ին տպագրուեցաւ Հարանց վարք անուն գիրքը, որ ինքնատիպ կերպով պատրաստուած կոշտ ու կոպիտ գործ մ'է, թէեւ միեւնոյն ատեն գնահատութեան արժանի։ Խաչատուր վարդապետ տպագրութիւնը կատարելագործելու համար Յովհաննէս վարդապետը ղրկեց Իտալիա, որպէսզի կամ լաւ մը ուսանի տպագրութեան արուեստը և կամ վարպետ մը բերէ միասին։ Յովհաննէս Վ. գաթոլիկ հոգեւորականութեան յարուցած բազմադիմի արգելքներուն հակառակ յաղթելով կը

յաջողի տանիլ փոխադրել Նոր Ջուղա, ուր տպարանը մեծ գործունէութիւն կ'ունենայ այլեւս: Էջմիածնի կաթողիկոս Յակոբ Ջուղայեցին Մատթէոս Ծարեցի դպիրը կը ղրկէ Եւրոպա 1656ին, կրկին հայ տպագրութիւնը զարգացնելու համար: Նոյն հալածանքը գաթոլիկ կղերին կողմէ, մինչեւ որ Ամստէրտամ կ'ապաստանի Ծարեցի եւ հոն կը հաստատէ տպարանը՝ ազատ բոլորովին Վատիկանի հետապնդումէն: Ծարեցին կը մեռնի եւ տպարանը կ'անցնի ձեռքը վաճառականի մը, որ անոր եղբայրը Ոսկան վարդապետը կը հրաւիրէ գործի գլուխ: Ոսկան վարդապետ հայ տպագրութեան ամենամեծ գործիչներէն մէկըն է, կրթուած եւ լեզուագէտ մարդ, որ բաղդը կ'ունենայ առաջին անգամ հայերէն Աստուածաշունչը տպելու: Միեւոյն տպարանին մէջ տպուեցան ուրիշ գիրքեր ալ: Ժամանակ վերջը Ոսկան Վ. տպարանը Եւրոպայի մէջ տեղէ տեղ կը պտտցնէ անյայտ պատճառներով եւ շատ մը զրկանքներու կ'ենթարկուի գաթոլիկներուն կողմէ, մինչեւ որ վերջապէս ինք կը մեռնի եւ տպարանն ալ կը փակուի (1685): Իր գործը շարունակեց Մատթէոս Վանանդեցի գրաշարը, Թովմա եպս. Նուրիճանեանի հետ: Ասոնք լաւ պայմաններով Ամստերտամի մէջ տպագրութեան նոր գործունէութիւն մը կը սկսին: Մինչեւ 1717 բաւական գիրքեր լոյս կը տեսնեն եւ վերջապէս տպարանը կրկին կը փակուի, երբ գործողները կը մեռնին: Ահա այսպէս տպագրութեան գործին շուրջ շատ մեծ ոգեւորութիւն կայ սկսուած ԺԷ. դարուն մէջ, եւ իմացական նոր շարժում մը խմորուած: Անշուշտ ատոր հետեւանքն է եւ Իսրայէլ Օրիի ձեռնարկը՝ պարսկահայոց ազատագրութեան համար:

**ՀԱՅ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԺԸ. ԴԱՐ.**— Այս դարուն մէջ այլեւս նախնական ու ընդհատ ձեռնարկներ չեն տպագրական արուեստին շուրջ թափուած ջանքերը: Մասնաւոր կեդրոններ կան հաստատուած այլեւայլ տեղեր՝ իմացական եւ տպագրական: Ամեն տեղ մեծ ոգեւորու-

թիւն կը տիրէ։ Մամուլը հետզհետէ լոյս կը տարածէ և գիրով ու գրականութիւնով հետաքրքրուողներ կը յայտ-նուէին։ Դպրոցներն ալ անշուշտ իրենց մասնակցութիւնն ունէին այս ընդհանուր քաղաքակրթիչ առաջխաղացման հետ։ Ահա ԺԸ. դարու տպագրական գլխաւոր կեդրոն-ները։ Իտալիոյ մէջ՝ Վենետիկ (Մխիթարեան Միաբա-նութիւնը), Աւստրիոյ մէջ՝ Թրիէստէ և Վիէննա (Մխի-թարեան Միաբանութիւնը), Թուրքիոյ մէջ՝ Կ. Պոլիս և Իզմիր, Հնդկաստանի մէջ՝ Մադրաս, Պարսկաստանի մէջ՝ Էջմիածին, Ռուսաստանի մէջ՝ Աստրախան, Նոր Նախի-ջեւան ևայլն։ Այս տեղերուն մէջ հաստատուած տպարան-ները աւելորդ է ըսել թէ ունեցան օգտակար գործունէ-ութիւն, և դերը օգտակար դարձուցին՝ ոչ միայն մա-տենագրական, այլև տպագրական արուեստի տեսակէտով։

ԺԹ. ԴԱՐ ԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ.— Հայկական տպա-գրութեան պատմութեան մէջ ամենէն բեղմնաւոր շրջա-նը, գուցէ և ոսկեդարը ԺԹ. դարն է։ Ժամանակակից քաղաքակրթութիւնը՝ իր բոլոր գործօններով կը ստեղծէ մտաւորական նոր կեանք մը և տպագրութիւնը կը տա-րածուի ամեն կողմ։ Հայերէն գիրքեր ու թերթեր կը շատ-նան ամեն երկիրներու մէջ ալ։ Մինչև ԺԹ. դարու սկիզբը, հազիւ 600 կտոր հայերէն գիրք կայ հրատարակուած, մինչդեռ անհամար են ԺԹ. դարու մէջ տպագրուած մեծ ու փոքր հատորներն ու թերթերը։ Տաճկաստան և Կովկաս գլխաւոր կեդրոններն են մեր հայկական տպագրութեան։ Օսմ. Սահմանադրութենէն վերջ, երբ տպարան բանալու յայտնի դժուարութիւնները պակսեցան, գաւառներու մէջ ալ հիմնուեցան մամուլներ և սկսան գիրքեր ու թերթեր հ-րատարակուիլ։ Կովկասի և Ռուսաստանի տպագրական կարեւոր կեդրոններն են՝ Պետերբուրգ, Մոսկուա, Թէո-դոսիա, Ռոստով, Նոր Նախիջեւան, Թիֆլիզ, Էջմիածին, Շուշի, Շամախի, Բագու, Երեւան, Ալեքսանդրապոլ, Գանձակ ևայլն։ Տաճկաստանի յայտնի տպագրական կեդրոններն էին արդէն՝ Կ. Պոլիս և Իզմիր. ասոնց վրայ

ունեցան նաեւ Վան, Մուշ, Երուսաղէմ, Սրմաշ, Կարին, Մարզուան, Սըվազ, Խարբերդ, Տրապիզոն, Կիրասոն, Սամսոն եւայլն։ Արտասահման անցնելով կը գտնենք Իտալիոյ մէջ՝ Վենետիկը գաղթեալ, Աւստրիոյ մէջ՝ Վիէննան, Ֆրանսայի մէջ՝ Բարիզը, Մարսիլիան, Պարսկաստանի մէջ՝ Նոր Ջուղա, Թեհրան, Թաւրէժ, Հնդկաստանի մէջ՝ Մատրաս, Կալկաթա, Եգիպտոսի մէջ՝ Աղեքսանդրիա, Գահիրէ, Պուլկարիոյ մէջ՝ Ռուսճուգ, Վառնա, Ֆիլիպէ, Ռումանիոյ մէջ՝ Կալաց եւ Եաշ, Գերմանիոյ մէջ՝ Լայբցիկ, Մարպուրկ, Անգլիոյ մէջ՝ Լոնտոն, Մանչէսթըր, Յունաստանի մէջ՝ Աթէնք, Զուիցերիոյ մէջ՝ Ժընէվ եւ Լօզան, Շուէտ-Նորվէկիոյ մէջ՝ Սթօքհոլմ, Ամերիկայի մէջ՝ Նիւ Եորք, Պոստըն, Ֆրէզօ եւ Բրովիտէնս, եւայլն։



# ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ

## (ԻԲՐԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾ)



*Արդիական Բանասիրութիւնը.— Հին շրջան ազգային բանասէրներու.— Հայագիտութիւնը Եւրոպայի մէջ.— Հայագիտութեան կարեւորութիւնը.— Օտար հայագէտներու գործը.— Ժօն Շրէօտըր.— Վիստըն եղբարք.— Վիլ-ֆրուա.— Լըվայեան տը Ֆլորիվալ.— Էտուար Տիւլօրիէ.— Կարիէր.— Սէն Մարթէն.— Պրոսէ.— Վիքթոր Լանկլուա.— Փելիքս Նէւ.— Պեթերման.— Փօլ տը Լակարտ.— Ֆրետրիխ Միւլլէր.— Հէնրիկ Հիւպշման.— Հերման Կուտշմիտ.— Լօրտ Պայրըն.— Ա. Մէյէ.— Նիկողայ Մառ.— Ուրիշ Հայագէտներ։*

*ԱՐԴԻԱԿԱՆ ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ.—* Ներկայիս մէջ գիտութեանց ճիւղերը քաղաքակիրթ երկիրներու մէջ այնչափ առաջ գնացած են որ մասնագէտներ իրենց կեանքը կը նուիրեն մասնաւոր նիւթերու մշակման համար։ Մասնագիտութեան այս նախընտրութիւնը երեւան բերած է՝ նորանոր ճիւղեր և հետեւաբար ալ ուսումնասիրելի բազմաթիւ նիւթեր։ Բանասիրութիւնը նոր գիտութիւն մը չէ, բայց արդիական բանասիրութիւնը բոլորովին նոր հիմունքներու վրայ հաստատուած է։ Բանասիրական գիտութեանց մէջ ամենէն ծանօթ նիւթն է լեզուաբանութեան ճիւղը, սակայն հիմա անոր կարեւորութիւն կը տրուի մատենագիտական բանասիրութեան ալ, որ շատ մը պատկառելի գիտուններ կը զբաղեցնէ։ Արդիական բանասիրութիւնը.— որու երկու ճիւղերն են Լեզուականն ու Մատենագրականը,— չգոհանար վարկպարագի ենթադրութիւններով ու տեսութիւններով և

չխաբուիր պատահական նմանութիւններով։ Անիկա ունի իր մասնաւոր գիտական օրէնքները, որոնց հետեւելո՛վ միայն իր վճիռը կու տայ այս կամ այն խնդիրին նկատմամբ։

ՀԻՆ ՇՐՋԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԲԱՆԱՍԷՐՆԵՐՈՒ.— Հայ Բանասիրութիւնը կամ Հայագիտութիւնը իր մասնաւոր կարեւորութիւնն ունի ընդհանուր բանասիրական աշխարհին մէջ, իրեն կալուած ունենալով հին լեզու մը եւ հին ալ մատենագրութիւն մը։ Խոստովանելու ենք որ մեր ազգային բանասէրներէն շատեր, հին շրջաններուն մէջ, գիտական սկզբունքներէ բոլորովին հեռի, աւանդականութեանց մէջ մոլորած էին եւ հասած ա՛յնպիսի եզրակացութիւններու, որոնք ճշմարտութենէ զուրկ էին։ Ազգային հին բանասիրութիւնը չկրցաւ երկար ատեն դիմանալ արդիական քննադատութեան առջեւ, եւ հետեւաբար՝ Չամչեաններ, Հիւնքեարպէյէնտեաններ եւայլն տեղի տուին վերջապէս։

ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ.— Եւրոպացիներ այլեւայլ առիթներով ծանօթացած էին հայ ազգին, իր լեզուին ու գրականութեան հետ՝ դարերէ ի վեր։ Երեք պարագաներ կարելի է մատնանշել Եւրոպացիներու այս յարաբերութեան նկատմամբ։ Առաջինը քաղաքական-դիւանագիտական էր լոկ, երբ արեւմտեան ազգերը իրենց քաղաքական եւ աշխարհագրական դիրքին բերմամբ ճանչցած էին ընդհանրապէս արեւելեան կարգ մը ազգեր եւ մանաւանդ հայերը։ Երկրորդը՝ կրօնական առաքելութեան շրջանն էր, երբ հոգեւոր գործունէութեան առթիւ հայ լեզուն ու մատենագրութիւնը սորված եւ կամ ուսումնասիրած էին։ Երրորդը՝ զուտ ուսումնական-բանասիրական պահանջներու ծնունդ էր։ Այժմ Եւրոպայի մէջ կայ գիտուններու խումբ մը, որ հայագիտական ուսումնասիրութիւններով կը զբաղի եւ օրէ օր նորանոր յայտնութիւններով կը լուսաբանէ հայոց հին մատենագրութեան ու լեզուին զանազան կէտերը։

ՀԱՅԱԳԻՏՈՒԹԵԱՆ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ.— Մեր

մէջ շատ քիչեր կը հետաքրքրուին հայագիտական հարցերով։ Շատ քիչերու համար միայն մատենագրական ուսումը շահագրգիռ կողմեր ունի։ Հայոց բանասիրական-հայագիտական թերթերը ինքզինքնին իսկ չեն կրնար ապրեցնել, և նոյն ճիւղին վերաբերեալ կարեւոր գործեր քիչ անգամ լոյս կը տեսնեն։ Ամեն հայ մտաւորական որ քիչ ու շատ գրական ճաշակ ունի, կ'արժէ որ սիրէ հայագիտութեան ուսումը և ըմբռնէ անոր կարեւորութիւնը։ Որչափ պատմական խնդիրներ չլուսաբանուած պիտի մնային, եթէ բանասիրութիւնը չգար գոհացում տալ։

**ՕՏԱՐ ՀԱՅԱԳԷՏՆԵՐՈՒ ԳՈՐԾԸ**.— Օտար հայագէտներու գործը այս տեսակէտով՝ ամէն տեսակ գնահատութեան և երախտագիտութեան արժանի է։ Անոնք են որ իրենց համբերատար ջանքով ու մանրախոյզ ուսումնասիրութիւններով՝ միասին կը վերլուծեն հայոց հին մատենագրութիւնն ու լեզուն և կը մատուցանեն անգնահատելի նպաստը՝ հայ բանասիրութեան։ Եթէ մանրամասն հաշուի առնենք, մեծ արդիւնք մը պիտի տեսնենք օտար հայագէտներու գործերուն ու աշխատութեանց գումարութիւնով։ Ծանօթագրական ուսումնասիրութիւն մըն ալ այդ պիտի ըլլար ինքնին։ Մենք հեռի ենք բոլորովին այդ նպատակն ունենալէ։ Միայն թէ եւրոպացի գլխաւոր հայագէտ բանասէրներու դէմքերը ճանչնալը՝ կը նպաստենք հայ լեզուի ու գրականութեան պատմութեան մէկ մասը, որ անտեսուած է դարդ։

**ԺՕՆ ՇՐԷՕՏԷՐ** (1680-1756).— Գերմանացի նշանաւոր գիտուն և հայագէտ։ Ծնած է Նորքէօփինկի մէջ. հմուտ էր արեւելեան լեզուներու։ Հայերէնը սորվեցաւ Ամստերտամի մէջ՝ Թովմաս Գողթնացի եպիսկոպոսէն, որ գիրքեր տպագրելու համար հոն եկած էր։ Իր գլխաւոր հայագիտական գործն է *Արամեան լեզուի գանձ* (1711), որուն մէջ երկարօրէն կը խօսի հայ լեզուի հնութեան, յեղաշրջումներուն, յատկութեանը, գործածութեանը, քերականութեանը, առոգանութեանը, չափականութեանը

և գործածութեանը վրայ։ Այս գրքին առաջաբանը շատ պատուաբեր է հայ լեզուին համար։

ՎԻՍՏՈՆ ԵՂԲԱՐՔ.— Անոնք հրատարակիչ-թարգմանիչներն էին, որոնք 1736ին հայկական բնագրովը հրատարակեցին լատիներէն Մովսէս Խորենացւոյ պատմութիւն և աշխարհագրութիւն գործը։ Այս թարգմանութիւնը ունի ընդարձակ և հմտալից առաջաբան մը՝ ոսկեդարի հայ լեզուին և Խորենացիի գործին մատենագրական արժէքին վրայ։

ՎԻԼՖՈՌՍ (1690-1777).— ԺԸ. դարու հռչակաւոր արևելագէտ, որ ծնած է Բարիզի մէջ։ Իր մասնագիտութիւնն էր Ս. Գրոց բաղդատական ուսումը, որ զինքը մղած էր արևելեան հին լեզուներու ուսումնասիրութեան։ Իր հայագիտական գործերն են. Փարիզու ազգ. մատենադարանի հայկական ձեռագրաց վրայ ինքնագիր ծանօթութիւններ, Աւեգակի արդարութեան չարականին թարգմանութիւնը, Ոսկեբերանի Ներբողին հայերէնէ լատիներէնի թարգմանութիւնը և այլն։

ԼԸՎԱՅԵԱՆ ՏԸ ՖԼՈՐԻՎԱԼ.— Բարիզի արևելեան լեզուաց դպրոցի ուսուցիչ։ Իր անդրանիկ հայագիտական գործն է Ուղղափառ հայոց դէմ 1828ին ի Կ. Պօլիս տրուած հալածանաց պատմութիւն։ Ապա ֆրանսերէնի թարգմանեց Մխիթար Գօշի առակները, Մովսէս Խորենացիի Պատմութիւնը, Եղնիկ Կողբացիի Եղծ Աղանդոցը և այլն։ Մեռած է 1862ին։

ԷՏՈՒԱՌ ՏԻՒԼՕՐԻԷ (1807-1881).— Ծնած է Ֆրանսայի Թուլուզ քաղաքը։ Հմուտ էր արաբ, հայ, ռուս և ղպտի լեզուներու։ Իր ամբողջ կեանքը բանասիրութեան նուիրում մ՚է։ Տիւլօրիէ մեծ ծառայութիւն մատոյց հայ բանասիրութեան, ուսումնասիրելով բոլոր հայ ձեռագիրները, ձեռք բերաւ հայ պատմագիրներու շարքը և այնուհետև սկսաւ իր հայագիտական արտադրութեանց։ Տիւլօրիէի նպատակն էր Դ. դարէն սկսեալ մինչև ԺԳ. դարու հայ պատմիչներու լատինական թարգմանութիւնը՝

հայերէնով միասին, և առոր համար նոյնիսկ Իտալիոյ թագաւորին դիմում ըրաւ. սակայն իր առաջարկը (1809) քաղաքական փոթորիկներու հետևանքով անգործադրելի մնաց: Գաղղիոյ համար ընդունելի եղաւ ի վերջոյ այս առաջարկը. սակայն միայն որ Տիւլորիէ չկրցաւ անձամբ ի գլուխ հանել: Նախ հրատարակուեցաւ Մատթէոս Ուռհայեցիի և Գրիգոր Երէցի պատմութիւններուն գաղղիերէնը (1850): 1869ին լոյս տեսաւ Հաւաքումն խաչակրաց պատմչաց, հայկական վաւերականաց, հատոր Ա. (Փրանս.): Կարևոր են նաև իր հրատարակած Ուսումնասիրութիւն Հին Հայաստանի պատմական երգոց և ժողովրդական աւանդութեանց, Պատմութիւն, Վարդապետութիւն, Աւանդութիւնք և պատարագամատոյցք (ասորերէնէ գաղղիերէն), Հայկական ընկերութիւն ԺԹ. դարու և իր քաղաքական, կրօնագրական դիրքը և ուրիշ բազմաթիւ հայագիտական ուսումնասիրութիւններ:

Ա. ԿԱՐՐԻԷՐ.— Աւգուստ Կարրիէր ծնած է Լիւնըրէյ (Ֆրանսա), Ժընէվի աստուածաբանական վարժարանն աւարտած է ու ապա ինքզինքը նուիրած բանասիրութեան: Երկար ատեն յաջողութեամբ վարեց արևելեան կենդանի լեզուաց վարժարանին մատենադարանապետութիւնը և ուսուցչութիւնը: Իր առաջին հայագիտական գործն է՝ հայկ. Աստուածաշունչ գրոց թարգմանութեան մէջ պահուած Յովսէփի և Ասանեթի պատմութեան թարգմանութիւնը: Վասիլեւսքիի մէջ գտնուած նշխարատուփի մը վրայ գրուած հայերէն յիշատակի թարգմանութիւնը, Լաւէրի Հայերէն Քերականութեան Փրանսերէնի թարգմանութիւնը, Բանք կամ խօսք հայոց անուն լատինահայ բառագիրքը, Մովսէս Խորենացի և նահապետական ծննդաբանութիւնքը, Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ եւայլն իր գլխաւոր երկասիրութիւններն են: Կարրիէր Խորենացիի մեծ քննադատներէն մին է:

ՍԷՆ ՄԱՐԴԷՆ (1791-1832).— Վաճառականի մը որդին է Սէն Մարդէն, ծնած՝ Բարիզի մէջ: Իր երիտա-

*սուրբ տարիքին մէջ գրագիտական արտադրութիւններ ունեցաւ, բայց այս ինքզինքը նուիրեց բանասիրութեան։ Իր անդրանիկ հայագիտական գործն է Հայաստանի վրայ պատմական եւ աշխարհագրական յիշատակագիրներ (2 հատոր)։ Գրած է շատ մը ուրիշ ուսումնասիրութիւններ, բանասիրական թերթերու մէջ։ Գլխաւորներն են՝ Ի վերայ նայկական առակաց Վարդանայ. Ի վերայ յեղափոխութեանց Հայաստանի առ Արշակաւ Բ. ի ի չորրորդ դարու, Զնայկական աւանդագրութեանց ի Պոլկարի, երկու Հեքումն, վէպ Լեւոնի թագաւորաց Հայաստանի, Հայոց Գրիգորեանի կաթողիկոսութիւն, Մովսէս Խորենացի, Մար Աբաս Կատինա, Մխիթարեանք եայլն։ Այն Մարդէն թողուցած է շատ մը ձեռագիրներ հայ մատենագիրներու թարգմանութիւններէն, ինչպէս Ղազար Փարպեցի, Մովսէս Խորենացի, Եղիշէ եայլն։ Իր մահուընէն վերջ հրատարակուեցաւ Յովհան կաթողիկոսի հայոց պատմութիւնը (ֆրանսերէնի թարգմանուած) եայլն։*

ՊՐՈՍԷ (1802-1880).— *Այն Մարդէնի գործը շարունակողն եղաւ Պրօսէ, որ երկար ատեն հոս հոն այցելելով՝ հայերէն և վրական լեզուներն ուսումնասիրեց։ Իր գլխաւոր գործերն են Հնախօսական ճանապարհորդութեան մը տեղեկագիրը, Աւերակք Անւոյ եայլն։ Իր թարգմանութիւններու մէջ կարևոր են՝ Հայ պատմիչներու հատաւածք, որուն առաջին 2 հատորները միայն հրատարակուեցան, Տեղեկութիւն հայ գրչագրաց վրայ, Հայկական մատենագրութեան վրայ եայլն։ Բազմաթիւ են իր բանասիրական գործերը, ամբողջ հայ մատենագրութեան նըուիրուած։ Պրօսէ փայլուն հայագէտ մ'է։*

ՎԻԿԹՈՐ ԼԱՆԿԼՈՒԱ։ *Ծնած է Փրանսա՝* 1829 *ին և ուսած կենդանի լեզուներու վարժարանին մէջ։ Ուսումնական-հնագիտական Ուղեւորութիւններ կատարած է Կիլիկիա և Փոքր Հայք։ Այս առթիւ գրած է Ուղեւորութիւն ի Կիլիկիա եւ ի Լերինս Տաւրոսի։ Ունի մատենաշարք հայագիտական դրամագիտական, Հայաստանի դրութեանց, Վենետիկի Մխիթարեան Միաբա-*

նութեան և հայկական հրատարակներու վերաբերեալ ուսումնասիրութիւններ։ Աս ալ ձեռնարկեց հայ պատմիչներու հրատարակութեան։ Իր բազմաթիւ հայագիտական ուսումնասիրութիւնները նո՛յն իսկ թուելու համար տեղ չունինք։

**ՓԻԼԻՔՍ ՆԷՒ** (1816-1893). — Գերմանացի նշանաւոր հայագէտ և անուանի արեւելագէտ։ Անոր թարգմանութիւններ՝ հայ Շարակնոցէն, Դրուագներ Ե. դարու նախաձական շրջանէն, Ցաճախապատումէն հատուածներ և այլն։ Իր նշանաւոր և հոյակապ հայագիտական գործը կը սեպուի Քրիստոնեայ Հայաստան եւ իր մատենագրութիւնը, որ փառաւոր կոթող է իր հմտութեան։

**ԲԵԴԵՐՄԱՆ** (1801-1876). — Նշանաւոր հայագէտ, որ Ս. Ղազարի վանքին մէջ մնացած էր ժամանակ մը։ Իր գլխաւոր հայագիտական գործերն են՝ Գործնական համառօտ Քերականութիւն, Հայաստանի արդի ուսմանց, Խաչակրաց պատմութիւն, ըստ հայկական աղբերաց և բազմաթիւ հայագիտական ուսումնասիրութիւններ՝ թերթերու, համայնագիտարաններու և գիրքերու մէջ։

**ՓՕԼ ՏԸ ԼԱԿԱՐԴ** (1827-1894). — Իմաստասիրութեան և աստուածաբանութեան վարդապետ, որ ծնած է Պերլին։ Հռչակաւոր բանասէր է։ Իր հայագիտական գործերն են՝ Հայոց նախնական պատմութեան վրայ, Հայկական ուսումնասիրութիւն, Բաղդատութիւն հայ եւ սանսքրիտ բաղաձայններու և այլն։

**ՓՐԵՏՐԻԽ ՄԻԼԼԷՐ** (1834-1896). — Ծնած է Պոհեմիոյ մէջ։ Երկար ատեն Վիեննայի համալսարանին ուսուցիչ էր։ Միլլէր ինքզինքը նուիրած էր բանասիրութեան։ Իր գլխաւոր գործն է՝ Ակնարկ գիտութեան լեզուի, զոր լրացուցած է ապա՝ Ընդհանուր ազգագրութիւն գործով։ Ունի գրած շատ մը հայագիտական-լեզուաբանական երկեր այլեւայլ թերթերու և գիրքերու մէջ։ Փ. Միլլէր հայ լեզուն իրանեան ճիւղին մէջ կը դնէ։

**Հ. ՀԻՒՊՇՄԱՆ** (1848-1908). — Ծնած է Էրֆուրթ

և վկայուած Սթրազպուրկի համալսարանէն։ Հռչակաւոր բանասէր և հեղինակաւոր հայագէտ է Բրոֆ. Հէնրիկ Հիւպշման, որուն ծառայութիւնները հայ լեզուին կարելի չէ ուրանալ։ Իր բազմաթիւ հայագիտական գործերէն յիշենք միայն մի քանի գլխաւորները, որոնք են՝ Հետազօտութիւնք ի վերայ կազմութեան հայերէն լեզուի, Հայ լեզուի դիրքը, Ցաղագս փոխագրութեան իրանեան լեզուաց եւ հայկականին եւայլն։

ՀԵՐՄԱՆ ԿՈՒՏՇՄԻԴ (1831-1887).— Ծնած է Գերմանիա և երկար ատեն բանասիրական ուսմանց պատրաստուած։ Ունի շատ մը գործեր, արեւելեան հին պատմագրութեան վրայ, բայց իբրեւ հայագիտական գործեր, գրուածքներ ունի Ագաթանգեղոսի և Մովսէս Խորենացիի վրայ, որուն կատաղի քննադատն է։

ԼՈՐՏ ՊԱՅՐԸՆ.— Անգլիացի մեծ մատենագիր, որ 1816ին Վենետիկի մէջ հայագիտութեամբ պարապեցաւ։ Ունի Ս. Գրային թարգմանութիւններ, հայերէնէ անգլերէն։

ԲՐՈՖ. Ա. ՄԷՅԵԷ.— Արդիւնաւոր հայագէտ մը, որ աշակերտած է Հ. Յ. Տաշեանին և անոր քով կատարելագործած հայերէնը. ուսումնասիրած է հայկական ձեռագիրներն ու հայ գաւառաբարբառները։ Իր հայագիտական գործերուն գլխաւորներն են՝ Զայնական տեղեկութիւններ հայ լեզուի մասին, Ստուգաբանութիւններ, Հին հայերէնի համեմատական քերականութեան ուրուագիծ մը, Համեմատական հետազօտութիւններ Հայերէնի համաձայնութեան, Քննութիւններ Հայերէնի գոյականներուն, բայերուն փոփոխումներուն եւ շեշտին վրայ եւայլն։ Ա. Կարիէրի մահէն վերջ Բարիզի արեւելեան կենդանի լեզուներու վարժարանին հայերէնի բեմը Մէյեէի յանձնուեցաւ։

ԲՐՈՖ. ՆԻԿՈԼԱ ՄԱՌ.— Նշանաւոր ռուս-վրացի հայագէտ։ Ուսումնասիրած է հայկական առակները և այդ նիւթին վրայ ունի հրատարակած հմտալից գործեր։ Ինք է որ մասնակցած է Անիի պեղումներուն և երեւան բերած հայկական ճարտարապետութիւնը, որուն վրայ

*շատ մը յօդուածներ և ուսումնասիրութիւններ գրած է արժէքաւոր ռուսերէն հանդէսներու մէջ։ Բրոֆ. Մառ պատրաստած է լեզուաբանական հսկայ ուսումնասիրութիւն մը, որուն մէջ կովկասեան և հայ լեզուներու դիրքը ճշդել փորձած է։ Ասիկա ձեռագիր վիճակի մէջ է տակաւին։*

*ՈՒՐԻՇ ՀԱՅԱԳԷՏՆԵՐ.— Ասոնցմէ դուրս կան տակաւին շատ մը հին ու նոր օտար հայագէտ-բանասէրներ, որոնք հետազօտութեան առարկայ դարձուցած են հայ լեզուն ու հին հայ մատենագրութիւնը, և մեծ ծառայութիւն մատուցած են հայկական բանասիրութեան։ Ասոնց հետ յիշատակել պէտք է նաև թէ կարգ մը հմուտ և լեզուագէտ հայ բանասէրներ ալ ունինք, որոնք օտար լեզուներով գրած են շատ մը հայագիտական ուսումնասիրութիւններ։ Երբ հայ մատենագիրներն ու գրագէտները երախտագիտութեամբ կը յիշենք, պէտք չէ մոռնալ որ այս օտար հայագէտներն ալ ոչ նուազ նպաստ բերած են հայկական ուսմանց, որոնք անոնց շնորհիւ հիմա տարածուած են Արևմուտքի մէջ։*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

### (ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ)



## ՀԱՅ ԼԵԶՈՒ

### ԼԵԶՈՒԱԲԱՆԱԿԱՆ ՆՕԹԵՐ



### ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ



## ՀԱՅ ԳԻՐԸ

### ԳՐԻ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

## ՀԱՅ ԳՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ



## ՀԱՅ ԳՐՉԱԳՐԵՐ



## ՀԱՅ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆԸ

### ԲԱՆԱՒՈՐ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ



## ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

### ՄՈՒՏՔ



### ԱՄԵՆԱՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

2. ՌԱՄԿՕՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

(Ընդհանուր ակնարկ մը)



## ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ

(Իբրեւ յաւելուած)



